Bzhshkean, Minas

Chanaparhordutiwn i Lehastan ew...

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

# ՚Ի ԼԵՀԱՍՏԱՆ

ԵՒ ՅԱՅԼ ԿՈՂՄԱՆՍ ԲՆԱԿԵԱԼՍ ՚Ի ՀԱՅԿԱԶՆԱՑ ՍԵՐԵԼՈՑ
՚Ի ՆԱԽՆԵԱՑ ԱՆԻ ՔԱՂԱՔԻՆ

ՇԱՐԱԳՐԵԱԼ ՀԱՆԴԵՐՁ ԶԱՆԱԶԱՆ ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ
ՏԵՂԵԿՈՒԹԵԱՄԲՔ

ՏՆ· Հ· ՄԻՆԱՍԱՅ ԲԺՇԿԵԱՆՑ

ՎԱՐԴԱՊԵՏԻ ՚Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ
ԱՌԱՋՆՈՐԴԻ ՚Ի ՏԱՒՐԻԱ

ՏՊԱԳՐԵԱԼ
՚Ի ՅԱՒԷՐԺԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ ՀՈԳՒՈՑ
ԲԱԶՄԱՎԱՍՏԱԿ ԵՒ ՄԵԾԱՆՈՒՆ ՎԱՃԱՌԱԿԱՆԻՆ
ԱՂԱ ՍՏԵՓԱՆԻ ԱՄՊԱՐԵԱՆ ՏՐԱՊԻԶՈՆՑՒՈՑ
ՓԱՓԱՔՈՂԻ ԳՈՐԾՈՅՍ

424 p. + 1 [illegible]



՚Ի ՎԵՆԵՏԻԿ
՚Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑ ՂԱԶԱՐՈՒ

1830 ՌՄՀԹ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ազգ երթայ և ազգ գայ՝ և երկիրս յաւիտեան կայ, ասաց Սողոմոն ։ Վասնզի Արարչապետն բոլորեցուն գեղեցիկ արարչագործեալ զայս մեծատարած աշխարհ ետ մարդկութեանս 'ի բնակութիւն ։ Այնպէս զի՝ բազմացեալ 'ի նմին միասցին ընկերական ոգւով և յաջորդաբար 'ի տեղի միմեանց փոխաբերելով շէն և զարդարուն պահեսցեն զաշխարհ բնակութեան իւրեանց ։ Որով մնայ նիւթականս աշխարհ 'ի կայի իւրում յաւիտեան, թէև բնակիչք անդադար փոփոխեսցին յանկայուն յաջորդութեան իւրեանց ։ Սակայն և այնպէս ոգի ընկերական գիտէ յաւէրժաբար թագաւորել յաշխարհի յորդւոց յորդիս առ 'ի պահել զնոսա 'ի քաղաքականութեան և զաշխարհ 'ի շինութեան կարգօք և կանոնօք, ըստ որում անկ մարդկութեանս բանական մասին, որով միայն լինի ճանաչել և ծառայել Արարչապետին 'ի բնական կարգի ունելով զամենայն ։

Տինա՝ ընդ տեսանել մարդկան զարև՝ սկսան բնաբոյս բերմամբ շինուածս կառուցանել և բնակարանս հաստատել առընթեր միմեանց առ 'ի միանալ ընկերական ոգւով ։ Յոր որչափ առաւել սովորել կրթե-

ցան, այնչափ առաւել իմաստնացան քաղաքաւորութեամբ եւ միաբանասիրութեամբ. մինչեւ ձեռն 'ի գործ արարեալ վայելուչ կանգնել մեծաշէն քաղաքս եւ հաստատել տէրութիւնս: Այլ ուր ուրեք բազում չէին առ միմեանս շարունակեցին, անդ եղեւ մեծ քաղաք եւ մեծ միաբանութիւն. եւ ուր սակաւ՝ սակաւ միաբանութիւն եւ փոքր քաղաք կամ գիւղաքաղաք:

Եւ քանզի 'ի կենակցիլ բազմաց 'ի միասին՝ մեծ եւ զօրաւոր լինի ոգի ընկերական, անպակաս ուսանելով յիրերաց զպիտանիս, եւ հաղորդելով միմեանց զհանճար եւ զգիւտ. նմին իրի անդէն եւ անդ ծովանայ ոյժն եւ յառաջ գան հիասքանչ մեծագործութիւնք, եւ իմաստուն կարգք մեծիմաստ աշխարհաշինաց 'ի մայրաքաղաքս աշխարհի. յորս թագաւորէ պանծանօք ոգի ընկերական եւ քաղաքականութեան: Նորին ազդաւ ուղղադատ իմաստունք ընդ տեսանելն 'ի քաղաքամէջս զերեւելի եւ հոյակապ շինուածս՝ անվրէպ կշռադատէին, թէ գոյ անդ ընկերական ոգի, եւ անպակաս միաբանասէր աշխարհաշէնք:

Ըստ այսմ 'ի սկզբան անդ 'ի բազմանալ աճելութեամբ ծննդոց Նախահօր՝ հարկ եղեւ վեհ աշխարհապետաց քաղաք շինել. որպէս զի միացեալ 'ի մի մարդիկ զօրասցին քաղաքականութեամբ. որով եւ եղեն արուեստապետք պիտոյից մարդկութեան եւ ճարտարապետք մեծագործութեանց աշխարհի. (Ծն. 568): Այսպէս յետ աշխարհակուլ ջրհեղեղին երկրորդ Նախահայր մարդկութեան ընդ կոխել 'ի ցամաք, յառաջին գործման կարգեաց կառուցանել զասպնջարան անձին զիւրն Նախիջեւան, որպէս զի՝ յառաջ քան ըզցրուիլ մարդկան՝ տեսցի անդ ոգի միաբանութեան եւ քաղաքական ընկերութեան:

Իսկ զկնի աշտարակաշինութեան իբրեւ ցան եւ ցիր եղեն մարդիկ տարագնաց խուճապմամբ՝ գունդ գունդ 'ի կողմանս կողմանս աշխարհի եկեալք եւ միացեալք քաղաքականութեամբ տէրութիւն կազմեցին, քաղաք շինեցին, ազգք եւ ժողովուրդք եղեն ոգւով միաբանութեան։ Ուր ուրեք առաւել զօրացաւ այն ոգի, անդ բազմաժողով ազգ եղեւ ծաղկեալ կարգօք իմաստութեամբ եւ վաճառականութեամբ։ Եւ ուր ոչ զօրացաւ՝ անդ եւ ոչ մի ինչ 'ի լաւագունից տեսաւ. մանաւանդ զի մարդիկ անուս եւ անքաղաք մնացին անմիաբան ոչ ինչ ընդհատ 'ի լեռնաբնակ գազանաց, որպէս տեսանի ցարդ յանկիւնս ինչ ինչ աշխարհաց. (Հմր. 284)։ Ապաքէն 'ի հնումն բազում էին այսպիսի վայրենամիտ անմիաբանասէր ազգք, մանաւանդ 'ի Յունաստան եւ յԻտալիա. որք ապա պիտանի կարգօք եւ իմաստուն օրինօք փիլիսոփայից յղացան զհոգի ընկերսիրութեան, եւ անդէն իջեալ 'ի լերանց անտի մերկացան զվայրենութիւն, եւ միացեալ քաղաքականութեամբ բոլորեցին զքաղաքս, եւ հաստատեցին զտէրութիւնս զարմանալի կարգաւորութեամբք. որպիսի էին Աթենացիք, Հռովմայեցիք, եւ այլք։

Այսպիսի իմն օրինակաւ եղեն քաղաքական եւ Ամերիկացիք, որոց վայրենութիւն գլխովին օտարացուցեալ զնոսա 'ի մարդկութենէ՝ տայր նոցա որսալ զմիմեանս եւ ուտել գազանաբար, համարելով զայն գործ իմն բարեպաշտութեան (Ռոպէն ; դիր. ծէ.)։ Եւ սակայն մեծահանճար օրէնք բազմիմաստ Եւրոպացւոց այնպէս 'ի գեղեցիկ քաղաքավարութիւն ածին զնոսա, մինչեւ յապուշ կրթիլ իմաստուն մտաց 'ի վերայ մեծագործութեանց եւ բարեկարգութեանց նոցին։

Եւ այսպէս Եւրոպացիք և Ամերիկացիք որչափ առաւել զօրացան ոգւով միաբանութեան, այնչափ առաւել մեծացան աշխարհօք՝ թագաւորութեամբք և իմաստութեամբ, մինչև կանոնս և օրէնս տալ աշխարհի։ Իսկ Ասիացիք և Աֆրիկեցիք 'ի սկզբան անդ գոլով քաղաքական և միաբանասէր, նախ քան զայլս ինքեանք ծաղկեցան յաշխարհի քաջալաւութեամբք հաստատելով զականաւոր մայրաքաղաքս և մեծազօր տէրութիւնս։

Ասպաքէն Հայկ և Հայկազունն նահապետք, նաև Բէլ, Նինոս, և Շամիրամ մեծապանծ գործովք զաշխարհ դողացուցին, և զԱսիա դշխոյ կացուցին 'ի վերայ ամենայն աշխարհաց երևելի շինութեամբք, կարգօք, և մեծութեամբք։ Սեստրեմ շինօղ Եգիպտոսի, ևս և Փիւնիկեցիք, Սիդոնացիք, և Կարկեդոնացիք այնպէս ծաղկեցան քաղաքականութեամբ, մինչև հետք մեծագործութեանց նոցա յապուշ կրթէ զմիտս իմաստունս։ Սոքա եղեն կանգնիչք եօթնաթիւ հրաշալեաց աշխարհի (Տես. 546։) 'Ի սոցանէ եղեն առաջին թագաւորք, առաջին բանիբունք և հանճարիչք գիտութեանց, արուեստից և ամենայն կարգաց։ Սակայն զարմանք մեծ, զի երբ Եւրոպացիք սկիզբն արարին քաղաքականութեան, Ասիացիք և Աֆրիկեցիք սկսան վերջանալ անտի։ Սոքա միաբանութեամբ հաստահիմն կանգնէին զմեծանուն քաղաքս, նոքա անմիաբանութեամբ տապալել բերէին զանքակտելի ամրութիւնս իւրեանց։ Սոքա բազմահանճար կարգօք թագաւորութիւնս ծաղկեցուցանէին, նոքա վայրենացեալ զիրեարս կոտորէին մոռացեալք արդարև զմարդկութիւն։ Որով հիմնայատակ եղեն այն մեծաշէն մայրաքաղաքք և հոյակապ արքունիք, անհետ լինելով ան-

նուաճելի թագաւորութեանցն ընդ ամենայն ճոխութեանց և բարեկարգութեանց։ Մինչ զի՛ այն անբաւ ժողովուրդք ոչնչացեալք կէս մի ինքնահալած ցրուեցան յանմիաբանութենէ ընդ ոլորտս երկրի. և կէս մի ծախեցան ՚ի ծառայս սրոյ թշնամեաց։ Նոյնպէս զի՛ ծառայք իւրեանց առին զմիաբանական ոգի նոցա, եղեն ազգ և զօրացան, և տիրեցին տէրանց իւրեանց։ Իսկ ինքեանք վատացեալք գերի և ծառայ եղեն ծառայից իւրեանց դանդաչեալք յօտար աշխարհս և ՚ի ժողովուրդս։

Մանաւանդ ազգ Հայոց, որչափ յինքն պահէր զոգի միաբանութեան պանծալի հանդիսանայր արութեամբք և մեծագործութեամբք. որպէս վկայեն ցարդ դրութիւնք օտարաց, և հետք շինութեանց նոցին։ Բայց սակայն ընդ կորուսանել զայն ոգի՝ իբրև զոյժ Սամփսոնեան, վերացաւ ՚ի նոցանէ և ոգի արութեան՝ անբաժ գտեալ յամենայն բարելաւութեանց, զրկեալ ՚ի մեծապանծ թագաւորութենէ ընդ գեղեցկադիր շինանիստ գաւառաց, և յարքայակերպ նախարարութեանց։ Որոց տեարք և բնակք եղեն օտարազգիք կամ այլազգիք, ինքեանք ցրուեալք ՚ի հեռաձիգ խորշս աշխարհաց յորս դէպ եղև մեզ ըստ մասին ճանապարհորդել։

Արդարև ողբալի լինէր պատմութիւնս, եթէ մարթ էր զամենայն արկածս թշուառութեանց պատահելոց ազգիս ՚ի գիր արձանացուցանել։ Նշէտալի դարձեալ՝ եթէ զանցս ամենայն երևելի քաղաքաց մերոց լինէր ինձ բանագրել ՚ի կարգիս, թէ զի՛նչ ինչ կրեցին այն բարեշէն քաղաքք. և թէ զիա՞րդ բազմաթիւ ժողովուրդք գերի վարեալ տանակոծ եղեն։ Դառն է ապաքէն լսել անգամ զաղէտ տարակուսա-

նաց, զոր անցուցին պարսիկք ընդ քաղաքս և ընդ ազգն մեր՝ սրով, հրով, և գերութեամբ մաշեալ զամենեսեան :

Այլ մեզ յայսմ վայրի յաւէտ ընտրելի, 'ի բաց միանգամայն թողեալ զայն ամենայն՝ միայն զանցս մեծի քաղաքին Անւոյ առնուլ 'ի վէպ յայս հիւսխաձեմ ուղեգնացութեան մերում, յորս բնակեալ հայկազունք ըստ մեծի մասին գոլով սերեալք 'ի նախնի Անեցւոց, ցանկալի է նոցա գիտել զանցս և զպատմութիւն Անւոյ, իբր նախնի հայրենեաց իւրեանց : Վասն որոյ քննելով նախ պատմեսցուք թէ զիարդ ծաղկեցաւ, և որպիսի թագաւորք տիրեցին, և զօրացան 'ի նմին :

Երկրորդ՝ թէ քանիցս առաւ 'ի թշնամեաց, և որպիսի աւերմամբ կործանեցաւ :

Երրորդ՝ թէ ուր ցրուեցան Անեցիք, և յինչպիսի վիճակի կան մինչև ցայժմ :

Չորրորդ՝ թէ յինչ աշխարհս բնակին այժմ. և զինչպիսի շինութիւնս արարեալ են : Ուր շրջեալ մեր անձամբ 'ի բազում տեղիս յորս ցրուեալ կային ազգ մեր 'ի կողմանց անտի Անւոյ, և ստուգեալ աշխարհագրական քննութեամբ 'ի մատենից և 'ի զննութեանց՝ պատմեմք, սկսեալ զվէպն 'ի Շիրակ գաւառէ, ուր է Անի. և անցեալ ընդ տեղիս՝ յորս մասամբ իւիք յածեալ է մեր՝ ընդ Լեհաստան, ընդ Ռուսաստան, ընդ փոքրն Թաթարստան, և ընդ Վլաստան, բովանդակեալ զամենայն յերիս մասունս :

Առաջին մասն է Տեղեկութիւն 'ի վերայ Անւոյ : Երկրորդ մասն է Ճանապարհորդութիւն, կամ բուն Պատմութիւն ուղեգնացութեան մերոյ : Իսկ երրորդ մասն է Յաւելուած, կամ շարունակութիւն պատմութեան :

Այս գործ ակներև ունի ցուցանել խոհական մտաց զոյժ և զզօրութիւն աշխարհաշէն միաբանութեան, և զաղէտալի վնաս աշխարհակործան անմիաբանութեան. միոյն երկնահանդէտ բարձրացաւ Նինի, և միւսոյն անկանգնելի կործանեցաւ: Յորմէ պանծալի հանդիսանայ ճշմարտութիւն բնաբանիս, թէ Ազգ երթայ և ազգ գայ, ոչ միայն փոփոխականութեամբ ծննդեան և մահուան, այլև անմիաբանութեամբ և անքաղաքականութեամբ. իսկ երկիրս անքակ միաբանեալ ընդ տարերաց՝ յաւիտեան այսինքն ցկատարած աշխարհի կայ անսասան:

* ԺԱՄԱՆԱԿԱՑ ԵՐԿԱՐՈՒԹԵԱՄԲ ԵՍ ՈՉ ՀՆԱՆԱՄ,
ՀՈՂՄՈՑ ՀՆՉՄԱՄԲ ՈՉ ՍԱՇԱՆԻՄ, ԱՅԼ ԿԱՆԳՈՒՆ ԿԱՄ․
ԵՍ ԵՄ ՊԱՏՃԱՌ ԵՐԻՑ ՍԵՌԻՑ ԿԵՆԴԱՆՈՒԹԵԱՆ,
ՆՈՅՆ ՄԱՀՈՒ ԴԱՐՁԵԱԼ ԼԻՆԻՄ ԵՍ ԳԵՐԵԶՄԱՆ ||։

*Շնորհալի ։*

# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## ՈՐ Է

## ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

### 'Ի ՎԵՐԱՅ ԱՆԻՈՅ ԵՒ ԱՆԵՑՈՅ

Ըստ ծանուցանելոյ մեր 'ի յառաջաբանութեան, քանզի ցանկալի է ամենայն հայկազանց սփռելոց յօտար աշխարհս Եւրոպիոյ, յորս շրջեցաք, գիտել զվիճակ Անի քաղաքին, յորմէ է նախկին ծագումն նոցա, վասն որոյ նախ քան զսկսանել մեր զպատմութիւն ժամանակագրութեան մերոյ, յայսմ վայրի պատմեսցուք կարգաւ զսկզբնաւորութիւն այնր մեծի քաղաքի և զկատարած նորա:

Արդ Անի 'ի հնումն էր փոքրիկ և աննշան բերդ շինեալ յԱրարատեան աշխարհի 'ի Շիրակ գաւառի. քանզի 'ի ժամանակս թագաւորութեան Արշակունեաց՝ արքայանիստ քաղաքն էր Վաղարշապատ. ուրանօր էին և ծաղկեալ քաղաքք Հայոց. իսկ Շիրակ գաւառ չէր 'ի համարի: Ապա յամի Տեառն 321. յորժամ Տրդատ արքայ ետ զայն գաւառ Կամսար իշխանին, այնուհետև կամսարական նախարարք տերեին Շիրակայ և Անւոյ. որ սկսաւ հետզհետէ ծաղկիլ իմաստուն կառավարութեամբ իշխանացն. զորմէ ասէ Խոր. Բ. 90. * Տայ ժառանգութիւն (Կամսարայ նահապետին) ... զգաւառն Շիրակ ||:

2. Դիրք գաւառիս գոլով դաշտավայր մերձ յԵրասխ գետ՝ այնչափ բարելի և արգաւանդ է՝ զի 'ի հնումն Թոռն Հայկայ Արմայիս ետ զայն Շարայի որդւոյ իւրում, որպէս զի մարթասցի հայթայթել ըզպէտս շատակերն այն առատութեամբ երկրին՝ ըստ

Խոր. ա. 12: * Նա զորդին իւր զՇարայ զյոլովածին „ և զշատակեր, առաքէ ամենայն աղխիւ իւրով 'ի „ դաշտ մի մօտաւոր արգաւանդ և բարի, յորում „ գնան ջուրք... յորոյ անուն և զգաւառն ասեն ա- „ նուանել Շիրակ: Վասն որոյ արդարանայ թուի „ առասպելին՝ որ ասի 'ի մէջ գեղջկաց, թէ քո Շարայի „ որկորն է ասեն, մեր Շիրակայ ամբարքն չեն»: Այս է, եթէ դու նման Շարայի շատակեր իցես, սակայն մեք չունիմք զբարելից համբարս Շիրակայ յագեցուցանել զքեզ:

3. Այս գաւառ թէպէտ 'ի սկզբանէ անտի անուանի եղև, մանաւանդ առ Կամսարական իշխանօք, սակայն բերդն Անի կառուցեալ 'ի դաշտավայրի անդ՝ փոքր էր. և մնաց այնպէս մինչև ցբարձումն Թագաւորութեան Արշակունեաց: Իսկ զկնի անկման այնր մեծապանծ Իշխանութեան, վեր 'ի վայր տապալեցաւ Հայաստան յերեսաց կրակապաշտ Պարսից, և անմիաբանութեամբ Նախարարաց Հայոց: Յայնմ հետէ նուազեցան ամենայն բարեկարգութիւնք, և նսեմացան ծաղկեալ քաղաքք մեծամեծ նահանգաց. և իսպառ անչքացաւ թագաւորանիստ քաղաքն Վաղարշապատ յԱրարատեան նահանգի:

Այնուհետև ապա նախարարք Հայոց թողեալ զաշխարհն 'ի ձեռս օտար ազգաց՝ ոչինչ փոյթ առնէին. նմին իրի՝ էր զի Պարսիկք տիրէին 'ի ձեռն Մարզպան իշխանաւորաց, և էր զի Այլազգիք 'ի ձեռն Ոստիկանաց: Որք և այնչափ բռնացան և կեղեքեցին ըզՀայս, մինչ զի բարձաւ բոլորովին ոգի միաբանութեան 'ի Հայաստանեայց, և ամենեքեան շուարեալ կային յուսակտուր: Նմին իրի արժանապէս ողբայ Շնորհալին յողբան Եդեսիոյ:

4. 'Ի նմին իսկ ժամանակի Աշոտ և Շապուհ իշխանազունք եղբարք որդիք մեծի իշխանին Սմբատայ բագրատունւոյ՝ վառեալք ոգւով ազգասիրութեան՝ այնպիսի քաջութեամբ պատերազմեցան և յաղթեցին օտարաց, մինչև զամենայն թշնամիս հալածական արարին 'ի Հայաստանէ և խաղաղացուցին զաշխարհն: Նա ապա 'ի ձեռն բազում գանձուց գնեցին զՇիրակ գաւառ 'ի կամսարական նախարարութենէ: Յայնժամ Աշոտ, որ և 'ի հագարացւոց կոչեցաւ մսակեր,

նորոգ շինեալ ամրացոյց զԱնի, և անդ բնակեցոյց զընտանիս իւր յամի Տեառն 783 ։

5. Ի մէջ ծաղկիլ քաղաքին Անւոյ ամենայն վայելչութեամբ սկսաւ յաւուրս Աշոտոյ Գ. Թագաւորին, զորմէ ունիմք գրել առորև. քանզի յայնմ հետէ արդարակորով իշխանք կառուցին հետզհետէ զերևելի շինուածս, մեծամեծ պալատս, զականաւոր եկեղեցիս, իջևանս և վաճառանոցս այլովքն հանդերձ. մինչև անուանեցաւ մայրաքաղաք նոյն գաւառին. զոր Մատթէոս պատմիչ կոչէ Թագաւորաբնակ ։ Ուրանոր ապա զօրացաւ ոգի ընկերսիրութեան և քաղաքականութեան, մինչև լինել ցանկալի բազմաց, և վայր իմաստնոց ։ Եղեն 'ի նմին մեծանուն հայրապետք, մեծազօր Թագաւորք, հոյակապ եկեղեցիք և վանորայք, մեծաշէն հայրապետանոցք և գեղեցիկ արքունիք ։ Վասն զի բագրատունի Թագաւորք 'ի Շիրակ գաւառի զօրացան, և յԱնի սկսան Թագաւորել ։ Սկիզբն այսր պայազատութեան եղև յԱշոտ իշխանէ յամի Տեառն 856. և ձգեցաւ մինչև ցվերջին Գագիկ Թագաւոր յամի 1079 ։ Ուստի Ձոխութիւն և Թագաւորութիւն Բագրատունեաց տևեաց զամս 224 ։

6. Եւ արդ՝ ժամ է մեզ կարգաւ ընել զյաջորդութիւն Թագաւորաց նոցա նշանակելով, թէ զինչպիսի շինութիւնս արարին, և զիարդ ծաղկեցուցին կամ թէ որպէս զօրացան ինքեանք օգնով ազգասիրութեան և զիարդ նանրացան անմիաբանութեամբ ։ Որով և գեղեցիկ քաղաքն Անի, թափեալ 'ի փառաց անկանգնելի կործանեցաւ. մինչև կոչել զայն յողբս իւր Շնորհալւոյն յասելն դիմառնութեամբ.

* Բայց և ըզքեզ յայս հրաւիրեմ,
„ Արևելեան քաղաքդ Անի ...
„ Շինեալ եղեր տուն արքունի,
„ Ընտրեալ նահանգըդ Շարայի.
„ Թագաւորաց բագրատունի,
„ Որ 'ի ցեղէն Իսրայելի ...
„ Գեղեցկանուն զարմանալի,
„ Որ երրակի տառիւ բերի ||։

Ողբ. Եդես. ։

7. Թագաւորք Անուոյ էին 'ի նախարարութենէ Բագրատունեաց 'ի ցեղէն Հրէից: Իբրեւ զի՝ յորժամ Նաբուքոդոնոսոր եառ զԵրուսաղէմ եւ զՅուդա գերի վարեաց 'ի Բաբելոն իբր 600 ամօք յառաջ քան զՔրիստոս, Հայկակ արքայ Հայոց գոլով ընդ նմա՝ խնդրեաց եւ եառ 'ի Նաբուքոդոնոսորայ զիշխանաւոր Հրեայն Շամբատ հանդերձ ընտանեօքն, եւ բերեալ բնակեցոյց պատուով 'ի Հայաստան յամի աշխարհի 3398: Ի ցեղէ սորա էր Բագարատ քաջ եւ զօրաւոր իշխան. զոր արքայն Վաղարշակ կարգեաց Թագադիր Նախարար յամի աշխարհի 3859. որոց պաշտօն էր Թագ դնել արքայից Հայոց յորդւոց յորդիս: Սոքա յերկար ժամանակ պահելով զիւրեանց աստուածպաշտութիւն՝ ոչ դարձան 'ի կռապաշտութիւնս Հայոց. մինչ զի բազումք նահատակեցան վասն չզոհելոյ կռոց 'ի ժամանակս Արշակայ արքային մերոյ:

Իսկ 'ի ժամանակս քրիստոնէութեան, որչափ առաւել քրիստոսասէր եւ բարեպաշտք էին, այնչափ զօրացան բազումք 'ի նոցանէ: Որոց վառեալ ոգւով ազգասիրութեան՝ բազում երեւելի գործս կատարեցին քաջութեամբ հալածելով զԹշնամիս եւ ազատելով զազգն 'ի բռնութենէ անհաւատից. մինչեւ արժանացան օծանիլ Թագաւոր 'ի վերայ Հայոց. որոց առաջին եղեւ Աշոտ իշխան: Այս անուն ելեալ է յանուանէս Ասուդ. որ էր որդի առաջնոյն Շամբատայ, եւ աստի ելեալ է անունս Սմբատ:

8. Արդ Բագրատունեան ցեղ յետ լինելոյ Թագադիր նախարար Արշակունեան Թագաւորաց Հայոց, եւ յետ բարձման այնր Թագաւորութեան միշտ մեծանուն գտաւ. եւ 'ի տեղիս տեղիս զօրացան բազումք 'ի նոցանէ Սպարապետութեամբ եւ Կիւրապաղատութեամբ կամ Պատրկութեամբ. որպէս Սմբատ Բագրատունի կարգեցաւ Կիւրապաղատ 'ի Լեւոն կայսերէ յամի Տեառն 695: Ապա յամի Տեառն 743. առաւել նախապատիւ հանդիսացաւ Աշոտ իշխան որդի Վասակայ Բագրատունւոյ. եւ կացուցաւ Պատրիկ կամ Իշխան իշխանաց 'ի Մրուան Ոստիկանէ հագարացւոյ:

Որոյ երեց որդին էր Սմբատ. և սորա որդին էր վե-
րոյգրեալ քաջն Աշոտ մսակեր, որ գնեաց զԿ՟նի քա-
ղաք (4). Որդին Աշոտոյ էր Սմբատ խոստովանօղ,
որ մեռաւ 'ի հալածանս հագարացւոց. և սորա որդին
էր Աշոտ իշխան, որ օծաւ թագաւոր:

9. ա̃. Աշոտ սմբատեան մեծազօր իշխան նախ եղև
Սպարապետ Հայոց. և այնչափ գեր 'ի վերոյ հանդի-
սացաւ յաւէտ քաջութեամբ, իմաստութեամբ, առ-
գասիրութեամբ և բարեպաշտութեամբ, մինչև փա-
րելի և սիրելի լինել ամենեցուն՝ շահելով զբոլոր ազգն
յամի Տեառն 856. զորմէ այսպէս գրէ պատմիչն Յով-
հաննէս կաթողիկոս. * Ի տիս հասեալ միջակու-
„ թեան՝ քաջահասակ էր նա և անձնեայ և թիկնա-
„ ւէտ և զուարթերես և մրայօն. նկարէն իմն և նիշ
„ արեան յաչս ունելով, որպէս զյակինթ կարմիր 'ի
„ մէջ մարգարտի ծագեալ, և վայելչացեալ գեղեցկու-
„ թեամն աւեաք. մեծիմաստ և քաղցրաբան. և առ
„ կերակուրս խրախճանաց զգաստ. ոչ խանդացեալ նա-
„ րա ընդ լաւագոյնսն, և ոչ արհամարհեալ զնուաս-
„ տագոյնսն. այլ հաւասարակաց 'ի վերայ տարածէր զըգ-
„ գեստ խնամոց իւրոց, և լծակօք իմն կշռէր նախ զիւր,
„ և ապա զամենեցուն կենցաղս. միանգամայն իսկ ա-
„ սել, եթէ որ ինչ մարդկութեանս է պիտանի, ոչինչ
„ կասեցուցանէր ||:

Դարձեալ նա ինքն գրէ այսպէս * Դուրեթէ ամենե-
„ ցուն քան զնա նախագունիցն վեհագոյն ճանաչիւր.
„ վասն զի ընկալեալ զմեծարանս՝ 'ի բաց արհամար-
„ հէր զանարգանս. և միշտ 'ի հրահանգս բարւոյ կըր-
„ թութեան զինքն վարժէր, և բարի աղդուամն իւրոյ
„ ոգւոյն տայր, ընդ ամենեսեան կալեալ սերտ սէր,
„ ոչ 'ի հակառակութիւնս ինչ կամ 'ի կռիւս ընդ թըշ-
„ նամիսն մաքառեալ, քան թէ բարեզգեաց բանիւք
„ և բարի օճանաւ զնոսա ածել յուղղութիւն և 'ի
„ կամս իւր. իսկ զպաճարանս սնոտի շահուց վնաս իւր
„ վարկեալ, և առատաձեռն առ ամենեսեան գտեալ՝
„ յինքն զբազմաց միտս յանգուցանէր սիրալիր սրտիւ.
„ որպէս զի՝ յայսմ սակի ամենեքեան իսկ նմա հաճեալ
„ հաւանեալ էին ||:

Իսկ Կոստանդին կայսրն Պերփիւռուժէն այսպէս
գովաբանէ. * Մեծն այն և տիտանեան հայ, երկայ-

„նաձեռն այն և յերկոցունց ձեռաց յաջողակն, զոր „ʼի հայ բարբառ Աշոտ կոչէին. զայն ասեմ՝ որ եկն „ երբեմն առ Լևոն (հայր իմ) երևելի կայսր Կ. Պոլսոյ ։

Աշոտ սպարապետ այսպիսի իմաստութեան և բարեպաշտ կարգօք այնչափ մեծամեծութեան պանծացաւ, մինչև Մաքսամ Ամիրապետ լուեալ զհամբաւ նորա՝ առաքեաց առ նա պարգևս մեծագինս և ազնիւ զգեստս, անուանելով զնա Իշխան Իշխանաց. որ և այնուհետև իբր անկախ սկսաւ պայազատել՝ տալով միայն հարկս Ամիրապետին ։

10. Յամի տն 859 սկսաւ Աշոտ գեղեցիկ իմն բարեկարգել զաշխարհ իւր և զզօրս. և եդ սպարապետ ʼի վերայ զօրաց իւրոց զեղբայր իւր Աբաս ։ Այս մեծամեծ քաջագործութեամբք խոնարհեցոյց ʼի կամս իւր զամենայն ապստամբս. յետ որոյ նստաւ իբրև մեծ Պայազատ կառավարելով զազգն ամենայն խոհեմութեամբ ։ Այս մեծագործութիւնք և քաջալերութիւնք ստիպեցին զնախարարս և զկաթուղիկոսն խորհել վասն թագաւորեցուցանելոյ զԱշոտ ʼի վերայ Հայոց, զոր և ծանուցին Ամիրապետին Բաբելոնի ։ Որ և յոյժ հաճեցաւ ընդ խորհուրդ նոցա, և առաքեաց վասն նորա թագ և զգեստ թագաւորական, զարդ և ձի ահաւոր. զորս եբեր Ոստիկանն Յիսէ ։ Այս մեծաւ հանդիսիւ եդ զթագն ʼի գլուխ Աշոտոյ, և արկեալ զնովաւ զարքայական զգեստն ʼի մէջ պալատի նորա՝ անուանեաց զնա Թագաւոր ʼի դիմաց Ամիրապետին ։ Ընդ էին ամենայն նախարարք Հայոց և Գէորգ Կաթուղիկոս, որք մեծաւ հանդիսիւ ածին զնա յեկեղեցին, և անդ կաթուղիկոսն եօծ զնա թագաւոր յամի տեառն 885 ։ Իբրև լուաւ կայսրն Յունաց Վասիլ, ինքն ևս առաքեաց առ Աշոտ թագ և մեծագին զարդ, անուանելով զնա որդի սիրելի. և ʼի սէր նորա յետս դարձոյց զբերդսն Հայոց, զորս սեպհականեալ էին Յոյնք ։

11. Աշոտ յետ օծանելոյ թագաւոր՝ ձեռն էարկ նորոգել զամենայն եղծեալ կարգս, և հաստատել զօրէնս՝ կարգելով զպետս, զիշխանս, զդատաւորս, ևս և զօրականս, տանապետս, հարիւրապետս և հազարապետս ։ Կառոյց զամրոցս, արար և զերևելի երևե-

ւր շինութիւնս. միով բանիւ, բարեզարդեաց զհայաստան ամենայն ճոխութեամբ և վայելչութեամբ ։ Իսկ զաթոռ թագաւորութեան եդ 'ի Բագարան քաղաք շինեալ յարքայէն Երուանդայ 'ի վերայ Ախուրեան գետոյ ։

Սա չոգաւ 'ի Կոստանդինուպօլիս և մեծապէս պատուեցաւ 'ի Լևոն կայսերէ ։ Իբրև դարձաւ անտի, 'ի ճանապարհին մերձ 'ի Տիրակ հիւանդացաւ. և կոչեալ առ ինքն զկաթուղիկոսն՝ կատարեաց զամենայն հոգևոր գործս աստուածպաշտութեան՝ բաշխելով բազում գանձս աղքատաց՝ եկեղեցեաց՝ և վանորէից ։ Եւ այսպէս բազում գովութեամբ և օրհնութեամբ վախճանեցաւ Աշոտ արքայ 72. ամաց, զկնի հնգամեայ օծութեան իւրոյ. յամի տեառն 889. պայազատեալ ընդ ամենայն ամս 31 ։ Իսկ մարմին նորա թաղեցաւ թագաւորական հանդիսիւ 'ի մայրաքաղաքն Բագարան. թողեալ զթագաւորութիւն իւր երէց որդւոյ իւրում Սմբատայ ։

Տեսաք զաւետարան մի մագաղաթեայ երկաթագիր գրեալ 'ի սմին ժամանակի, ըստ որում պատմէ 'ի ընկիզքն այսպէս. * Գրեցաւ սուրբ եւ կենսաբեր աւե-
„ տարանս այս ՅԼԶ (887) թուականութեան հայոց.
„ 'ի հայրապետութեանն Գէորգայ հայոց կաթուղի-
„ կոսի եւ յիշխանութեանն Աշոտի իշխանաց իշխանի.
„ և 'ի տէրութեան Սմբատայ բագրատունւոյ. ես սա-
„ հակ վանանդացի որդի վարդա վանանդացւոյ. որում
„ կրկին մեհ կոչէրն ‖. և այլն ։

12. Բ. Յամի տեառն 890. Սմբատ յաջորդեաց հօրն և շինեաց զհոյակապ եկեղեցին Սուրբ Փրկիչ յԵրազգաւորս քաղաք, որ է Շիրակաւան. ուրանոր եդ զաթոռ թագաւորութեան իւրոյ ։ Սոյն զկնի երկուց ամաց իբրև լուաւ Ամիրապետն զթագաւորել նորա 'ի տեղի հօրն՝ առաքեաց առ նա թագ արքայական և զգեստ ոսկէզարդ. և այնուհետև հանդէս արարեալ օծաւ 'ի կաթուղիկոսէն թագաւոր յիւր շինեալ եկեղեցւոջ ։ Յետ այսորիկ Լևոն կայսր առաքեաց առ նա թագ և նամակ սիրոյ հանդերձ մեծամեծ պարգևօք՝ նորոգելով զսէր բարեկամութեան իւրոյ, զոր ունէր ընդ հօր իւրում. նաև ամ ըստ ամէ առաքէր առ նա ընծայ և զանձ ։

Որչափ փառաւորեցաւ անուն Սմբատայ, մինչև մեծամեծ իշխանք 'ի հեռուստ երկրային 'ի տես նորա, և զարմանային ընդ իմաստութիւն և ընդ քաջութիւն նորա: Որչափ առաւել պանծայր հանդիսացաւ անուն նորա, այնչափ առաւելոյր բարեսիրութիւն և խոհա-կանութիւն նորա. մինչ զի լուեալ Ամիրապետին ըզ-համբաւ լաւութեան նորա՝ առաքեաց առ նա զար-ձեալ թագ, ոսկի կամար, և սուր. նաև հրաման ա-րար, զի ինքնին կարգաւորեսցէ զամենայն ինչ՝ առանց ոստիկանի, և վճռեսցէ ըստ խոհականութեան իւրում. զորմէ այսպէս գրէ Յովհաննէս Կաթ. * Յաւուրսն յայ-
„ նոսիկ այց արարեալ տեառն, և պարապեալ և յա-
„ ջողեալ 'ի բոլոր բարութիւնս՝ բնակեցան իւրաքան-
„ չիւր ոք 'ի ժառանգութիւնս իւրեանց: Այլ սեպհա-
„ կանեալ զերկիր՝ անկեցին զայգիս, և արմատացու-
„ ցին բուրաստանս ձիթենեաց և պարտիզաց. հերկե-
„ ցին հերկս արտաքոյ փշոց, և կթեցին պտուղս հա-
„ րիւրաւորս ... Այլ գլխաւոր նախարարք մեր յապա-
„ հովացեալք 'ի հինից ասպատակաց՝ շինէին եկեղեցիս
„ վիմաւոր հաստահեղյս ձուլեալ կրով ... 'Ի վերայ
„ այսոցիկ բարերարութեանց՝ թագաւորն հոռոմոց
„ լեալ ոչինչ սակաւ նախախնամէր զարքայն ... և բա-
„ զում ընծայս և պարգևս և պատիւս ամ յամէ ա-
„ ռաքէր ||:

13. Մեծանուն արքայն Սմբատ արդարև ըստ բա-րեպաշտութեան իւրում ունէր և զաստուածային յա-ջողութի. որով դողացուցեալ զամենեսեան՝ հալածա-կան առնէր զթշնամիս 'ի սահմանաց իւրոց, և զօրա-նայր քաջութեամբ՝ ցորչափ նախարարք իւր ունէին զգեցեալ զոգի ազգասիրութեան և միաբանութեան: Այլ երբև մերկացան զայն, հեռացաւ 'ի նոցանէ աստուածային յաջողութիւնն, և զրկեցան 'ի մեծու-թենէ անտի: Որովհետև ոմանք սկսան նախանձել ընդ միմեանս և հակառակիլ ատելութեամբ. և ոմանք ապստամբել յարքայէն: Որչափ եղև կատաղութիւն նոցա, մինչև ոմանք յանդգնեալ յարձակեցան 'ի քա-ղաքն ուր նստէր նա, և կողոպտեցին, յորժամ չէր արքայն 'ի Շիրակ:

Լուր եղև այս թշնամեաց, որք անգէն և անդ զօ-րացան, և սկսան հարստահարել զՀայաստան: Իսկ

անմիաբան նախարարքն փոխանակ միանալոյ ընդ ար-
քային և հալածելոյ զԹշնամիս, միաբանեցան ընդ Յու-
սուփ ոստիկանին, և սկսան պատերազմիլ ընդ Սմբատայ և ընդ Հայոց ։ Յետ բազում աղէտից տե-
սեալ մեծին Սմբատայ, Թէ Հայք սպառին 'ի մի-
մեանց և ոտնակոխ լինին յայլազգեաց անձնատուր ե-
ղև Յուսփայ և դադարեցոյց զպատերազմն, զի մի իսպառ կործանեսցի ազգն ։ Իսկ անօրէն Ոստիկանն ընդդէմ երդմանն զոր արարեալ էր նմա՝ անտանելի տանջանօք չարչարեաց զնա, որպէս զի ուրացուսցէ զնա 'ի հաւատոց ։ Այլ նորա քաջութեամբ ընդդէմ դարձեալ նահատակեցաւ յամի տեառն 914. յետ Թագաւորելոյ ամս 24 ։

14. Դ. Աշոտ Բ. որդի նահատակին Սմբատայ գոլով 'ի հեռաւորութեան իբրև լուաւ զմահ հօրն 'ի խոր խո-
ցեցաւ անհնարին տրտմութեամբ. Այլ սթափեալ եկն 'ի Հայաստան, և ժողովեալ զքաջս՝ սկսաւ հալա-
ծական առնել զԹշնամիս և վրէժխնդիր լինել արեան հօրն ։ Այնչափ էր 'ի սմա ոգի ազգասիրութեան, մինչ չև 'ի սուղ ժամանակի զօրացեալ քաջութեամբ՝ չէր ոք, որ համարձակէր ելանել ընդդէմ նորա ։ Յետ վա-
նելոյ յաշխարհէն զամենայն Թշնամիս, տեսին նախա-
րարքն, Թէ Աստուած օգնական է նմա յաջողութեամբ, եկին առ նա յամենայն կողմանց, և միաբան ոգւով Թագաւորեցուցին զնա 'ի տեղի հօրն յամի տն 915. Սկսաւ այնուհետև ուղղութիւնս առնել և զօրացու-
ցանել զՀայս ։

15. Յայնժամ Կոստանդին Պորփիւրոժէն կայսր Յունաց հրաւիրեաց զնա առ ինքն, և նա յօժարու-
Թեամբ չոգաւ անդ 'ի Կոստանդինուպօլիս քանի մի նախարարօք ։ Կայսրն յոյժ սիրեաց զնա և մեծարեաց ընդ նախարարացն ։ Յոյն պատմիչք բազում գովու-
Թիւնս գրեն սորա քաջագործութեանց Աշոտոյ, հաս-
տատելով, Թէ յաւուր միում առեալ 'ի ձեռն զհաստ գաւազան երկաթի՝ ոլորեաց պսակաձև, և յայնմա-
նէ անուանեցաւ Աշոտ Երկաթ ։ Այս զկնի դարձին 'ի Կոստանդինուպօլսոյ այնչափ մեծամեծ պատերազմունս մղեաց և քաջութեամբ յաղԹեաց բազմաց, մինչև տկարացեալ հիւանդացաւ, և առ մեծի վշտացն, զոր կրեաց յանմիաբանութենէ ազգակից նախարարաց ան-

ու՝ վտանգեցաւ, և մեռաւ անորդի յամի տեառն 928. յետ տիրելոյ ամս 14. և ամիսս 6:

16. Գ. Աբաս եղբայր Աշոտոյ Թագաւորեաց յամի տեառն 929. և խաղաղացոյց զազգ իւր ՚ի թշնամեաց անտի. նմին իրի ՚ի բազում տեղիս երևելի երևելի շինուածք կառուցան, և բազում վանորայք հաստատեցան. յորս ոչ սակաւ գիտնական վարդապետք ծաղկեցան: ՚Ի նմին ժամանակի կառուցան կամ նորոգեցան Դպրեվանքն և Նարեկայ վանքն. յորս ծաղկեցան սուրբն Գրիգոր Նարեկացի և Բարսեղ: * Եւ արար (ասէ Վարդան) ՚ի ձեռն սրբոյն Բարսղի մականուն „ Ճոն կոչեցելոյ, որ էր առաջնորդ սուրբ ուխտին՝ որ „ Դպրավանքն կոչի ՚ի գաւառին Անոյ ||: Եւ այլուր ասէ. * ՚Ի Դպրավանից տարան զխաչն որ յանուն „ սուրբ աստուածածնին. որ արդ վարձիոյ կոչի ... և „ է սրբոյն Մեսրոպայ օրհնեալ և կամ Բարսղի սրբոյ „ Ճոնին. և ունի գիր հայերէն յաջ թևն, և ծածկեալ „ են ոսկով ||: Պատմէ Ասողիկ վասն վանացն, զոր շինեաց Մովսէս վարդապետ, և զայն եւս ասէ * Բա„ րեզարդ կարգադրութեամբ, բազմութեամբ եղ„ բարց, բազմապայծառ բանական իմաստնովք ||:

Իսկ Աբաս արքայ այսպիսի բարեշինութեամբ ՚ի խաղաղութեան պահելով զաշխարհն իւր մեռաւ ՚ի 951. յետ տիրելոյ ամս 24:

17. Ե. Աշոտ Գ. որդի Աբասայ Թագաւորեաց ՚ի տեղի հօր իւրոյ. որ և զամս հինգ զարմանալի քաջագործութեամբ վանեաց զթշնամիս և հալածական արար. որով և ազատեաց զՀայաստան ՚ի բռնաւորաց անտի. այնպէս զի աշխարհն իւր ՚ի մեծի խաղաղութեան վայելէր: Յայնժամ ամենայն նախարարք միաբանեալ ժողովեցան յԱնի. ուր եդուն բերել զԱնանիա կաթուղիկոս, որ էօծ զԱշոտ Թագաւոր յամի տեառն 961: Ընդ էին անհամար իշխանք և իշխանազունք. նաև արքայն Աղուանից:

Այնուհետև ապա Անի եղև արքայանիստ քաղաք, ուր շինեցաւ հոյակապ պալատ արքունի և այլ մեծակառոյց շինուածք: Շինեցան յայնժամ ՚ի Շիրակ գաւառի երևելի վանորայք և եկեղեցիք. մինչ զի ամենեքեան ջանային վասն շինութեան աշխարհին: Իսկ Խոսրովանոյշ բարեպաշտուհի Դշխոյն Աշոտոյ շինեաց

զերկու հռչակաւոր վանորայս . զմին ՚ի գիւղն Սանա-
հին, և զմիւսն ՚ի Հաղբատ, միով ժամաւ հեռի ՚ի մի-
մեանց, որք են մեծակառոյց շինուածք . մանաւանդ
Հաղբատայ վանքն սուրբ Նշան որ ամրաշէն է մինչև
ցայժմ : Տեսաք գյիշատակարանս, որք յիշեն զՍմբատ
և զԳուրգէն Թագաւորս . տես ՚ի Թիւն 119 :

18 . Որդ՝ Աշոտ արքայ այնչափ զօրացաւ մեծա-
մեծ քաջագործութեամբք, մինչև Ամիրապետն յղեաց
առ նա կրկին Թագս անուանելով զնա Շահնշահն .
զորմէ այսպէս գրէ Ասողիկ . * Այս Աշոտ խաղաղա-
„ սէր բարուք կալեալ զաշխարհս հայոց խոնարհու-
„ թեամբ և ողորմածութեամբ զանցոյց ամենեքումբք :
„ Սասն զի զգոնջացեալսն և զկաղսն և զկոյրսն հա-
„ ւաքէր առ ինքն՝ բարձակից ինքեան առնելով ՚ի
„ խրախճանութիւնսն . որոց զոմանս իշխանս, և իշ-
„ խանաց իշխանս և կիւրապաղատս անուանէր ... Նաև
„ այնքան առատաձեռնութեամբ բաշխէր կարօտելոց,
„ մինչև ՚ի մահուն իւրոյ ոչ լինել դրամ մի ՚ի գան-
„ ձատան նորա ‖ : Նա և վասն այսպիսի բարեգործու-
թեանց անուանեցաւ Աշոտ ողորմած :

19 . Աշոտ շինեաց զներքին պարիսպս Անւոյ և ամ-
րացոյց մեծագործ աշտարակօք և զարմանալի բրգօք :
Ուրանօր կառոյց զմեծաշէն պալատս, զվանորայս,
պայծառ եկեղեցիս, կուսանոցս, աղքատանոցս, հի-
ւանդանոցս և զայլ հոգևոր պիտանի շինուածս . մինչև
ըստ ամենայնի զարդարեցաւ քաղաքն՝ ամենայն բարե-
զարդութեամբ և գեղեցկաշինութեամբ . և եղև մի
՚ի Թագաւորանիստ մայրաքաղաքաց . * Զ փոքր պա-
„ րիսպ քաղաքին Անոյ շինեաց (Աշոտ, ասէ Սար-
„ գան) և զամենայն բրգունսն եկեղեցիս յօրինեաց
„ ՚ի ՆԺԳ Թիւն ‖ (964) : ՚Ի սմին ժամանակի այնչափ
զօրացեալ էր ոգի միաբանութեան և սիրոյ ՚ի մէջ
Անեցւոց, զի ամենեքեան ՚ի պատիւ զմիմեամբք ելա-
նէին . մեծ և փոքր վառեալ էին ոգւով ազգասիրու-
թեան . նմին իրի միշտ ՚ի լաւ անդր Թևակոխէին մե-
ծութեամբ :

20 . Այս Թագաւոր ոչ միայն ողորմած էր, այլև
ազգասէր և խոնարհ, փութաջան միայն վասն օգտի
հասարակաց . իշխանք և մեծամեծք ՚ի մի կապ սիրոյ
հաստատեալք՝ ծայրագոյն հպատակութեամբ ջանային

վասն զօրութեան թագաւորին, և վասն պայծառութեան ազգին։ Զմտաւ ածեալ միանգամայն խոհական կշռութեամբ, թէ երբ գլուխ իւրեանց լինի զօրաւոր, ինքեանք եւս զօրաւոր լինին. ապա թէ ոչ՝ ամենեքեան 'ի կորուստ դիմեն։ Եւ նորին աղագաւ օր քան զօր ինքեանք զօրանային, և թշնամիքն կորանային. քաղաքք և ժողովուրդ իւրեանց պայծառանային. իսկ թշնամիքն խաւարեալ կործնէին. ուր և գնային՝ յաղթօղ հանդիսանային յամենայն մրցմունս։ Մինչ զի օտար թագաւորք և այլազգիք սասանեալ կային 'ի սարսափ զօրութենէ Հայոց. քանզի աստուածային զօրութիւն ակներև փայլէր 'ի վերայ միաբանասիրացն այնոցիկ։

Ուստի և 'ի բազում տեղիս սկսաւ ծաղկիլ գիտութիւն. երևեցան յայնժամ մեծանուն գիտնական վարդապետք, և լուսաւորեցին զՀայաստան. որպիսի էր Յովհաննէս գիտնական առաջնորդ վանից Սանահնի. մեծն Խոսրով Անձևացի, և մեծիմաստ որդիք իւր Յովհաննէս վանական, և Գրիգոր Նարեկացի. Պետրոս վարդապետ փիլիսոփայ, Յովհաննէս խաչակիր, Մեսրոպ երէց և այլք. Նա այսպիսի գեղեցիկ կարգաւորութեամբ և զարմանալի քաղաքավարութեամբ կառավարեաց Աշոտ զազգն զամս 26. և ապա մեռաւ յԱնի. յամի տեառն 977։

21. Է. Սմբատ Բ անդրանիկ որդի Աշոտոյ 'ի նմին աւուր նստաւ թագաւոր յԱնի։ Այլ քանզի հայրն բազում բարեկարգութիւնս արարեալ և զհիմն պիտանի պիտանի գործոց եդեալ էր, նմին իրի Սմբատ կալեալ զգովելի շաւիղ հօր իւրոյ, անդէն զօրացաւ և անուանի եղև քան զամենայն թագաւորս Հայոց։ Ոչ եթող 'ի Հայաստան ապստամբ և բռնաւոր ոք. դողացոյց զհեռաւորս և զմերձաւորս, մինչև կոչեցաւ յայլազգեաց Շահնշահորդին կամ Տիեզերակալ։

22. Սմբատ Տիեզերակալ կամելով մեծագործ ինչ յիշատակ թողուլ յաշխարհի յամի տեառն 979. կառոյց շուրջ զքաղաքաւ Անւոյ զահագին մեծ և լայն պարիսպ բարձր յոյժ, որ սկսեալ յԱխուրեան գետոյ հասանէր մինչև 'ի ծաղկոցաձորն։ Ուրանօր կանգնեաց զբարձրաբերձ բրգունս և աշտարակս. նաև ետ փորել շուրջ զպարսպաւ խրամ խոր և լայն. զոր և

պատեաց քարաշէն և ամրակառուցած որմովք, որոյ վասն աշխատ եղև ամս 8. ուստի առաւելին քաղաքն կոչեցաւ ներքին բերդ: Գրէ Ասողիկ Գ. 11: * Իբր տեսեալ
„ պարսպափակ առնէ զպարիսպն Անւոյ, յԱխուրեան
„ գետոյ մինչև ցձորն Ծաղկոցաց՝ կրով և վիմով մա-
„ նուցեալ մահարձանօք և աշտարակօք բրգացն բարձ-
„ րաբերձ պարսպեալ, բայնազոյն քան զՀին պարիսպն
„ յընդարձակութիւն քաղաքին, և մայրաքերան դը-
„ րամբք երկաթագամ հաստահեղոյս բևեռապինդ ա-
„ մրացուցեալ ||:

Նա ինքն Սմբատ շինեաց 'ի մէջ Անւոյ հոյակապ և մեծապայծառ եկեղեցիս. նաև հիմն եդ կաթողիկէ մայր եկեղեցւոյն ձեռամբ մեծանուն հայ ճարտարապետին Տրդատայ յամի 989: Այս հուշակելի քաղաք բաց 'ի փառաւոր շինուածոց ունէր անբաւ մեծութիւն. և լի բազմութեամբ մեծամեծաց. միայն հարիւր հազար պալատք և հազար մի եկեղեցիք կային 'ի նմա: Ուստի ռամիկք 'ի վերայ 1001 եկեղեցեաց երդնուին: Այսպէս պատմէ յիշատակարան հին Յայսմաւուրաց, զոր գտաք 'ի Նոր Ռուսիա. * Մեծ թագաւորանիստ քա-
„ ղաքն մեր Անի իշխանաց և ազնուականաց էր բնա-
„ կութիւն. և զի ոչ կարեմք նեղ սահմանի արկանե-
„ լով պատմել՝ զանսահման և զանհուն հարստութենէ՝
„ յիշխանացն ազնուականացն մինչև ցդռնեհիկս. և
„ բաց 'ի զանազան ոսկեղօծ պալատից իւրաքանչիւ-
„ րոցս ունէաք նաև 'ի նմա հազար և մէկ եկեղեցիս ||:
* Այսպէս երդնուին (ասէ Կիրակոս) Անոյ հազար և
„ մի եկեղեցին ||:

Իւ արդ՝ ահա այսպէս է գործ միաբանութեան և ազգասիրութեան, սա միայն է շինօղ աշխարհաց և հաստատութիւն թագաւորաց: Վասնզի յառաջ քան զԱշոտ՝ կորուսեալ իշխանաց զօդի միաբանութեան, և անկեալ 'ի խորշս Հայաստանու պարուէին 'ի թշնամեաց. բայց ընդ լինել միաբանութեան՝ եհաս առ նոսա նախախնամութիւնն աստուածային. որով հալածական արարեալ զամենայն թշնամիս բռնացեալս՝ ազատեցին զՀայս յայնչափ աւերմանց և գերութեանց. նաև այնքան հիացմանց շինութեամբք պայծառացուցին զազգն միանգամայն և զքրիստոնէութիւնն:

իգ 'Ի նմին ժամանակի բազում էին 'ի Հայաստան

Երեւելի եւ բարեպաշտ իշխանք, որք միամիտ հպատակութեամբ միացեալ ընդ Սմբատայ գործէին զարմանալի քաջագործութիւնս։ Մեծ իշխանն Սահակ պալհաւունի 'ի ցեղէն Լուսաւորչայ էր Սպարապետ, որոյ որդին էր Գրիգոր Մագիստրոս։ Իսկ Վահրամ եղբայր Վասակայ այնչափ բարեպաշտ եւ աշխարհաշէն էր, մինչեւ կառուցանել զբազում վանորայս. մանաւանդ զմեծագործ Մարմարաշէն եկեղեցին, որ մինչեւ ցայժմ կանգուն կայ. զորոյ արձանագիր տես 'ի կարգս յիշատակարանաց (116)։ Յայս յիշէ եւ Սամուէլ յասեղն 'ի Թուին ՆԼԵ (986) * Սկիզբն շինուածոյ մեծ-
„ անուն եւ վայելչաշէն զարմանակերտ եւ հոյակապ
„ ուխտին Մարմաշինոյ՝ 'ի քրիստոսասէր իշխանաց իշ-
„ խանէն Վահրամայ „։ Որոյ աւարտն եղեւ 'ի ՆԽԳ (994)։ Նոյն իշխան ապա նահատակեցաւ վասն 'ի Քս հաւատոց (66)։

Յայսու ժամանակաւ Խաչիկ կաթուղիկոս շինեաց մերձ յԱնի 'ի մէջ Արգինայ գիւղաքաղաքի զփառաւոր կաթուղիկոսարան եւ զմեծագործ եկեղեցի զարդարեալ զարմանալի արձանօք եւ զարդուք։ Շինեաց նաեւ զերկս փառաւոր եկեղեցիս նորաձեւս, եւ զգրատուն մի փառաւոր՝ լի մատենիւք։ Նոյն Կաթուղիկոս ընտրեցաւ յԱնի 'ի ձեռն ժողովոյ։ Իսկ Սմբատ տիեզերակալ յետ Թագաւորելոյ ամս 13. ամենայն յաջողութեամբ, մեռաւ յամի տեառն 989։

24. Է. Գագիկ Ա. միջին որդի Սմբատայ՝ որ կարգեալ էր իշխան իշխանաց, 'ի նմին աւուր նստաւ Թագաւոր յԱնի, եւ կոչեցաւ Շահնշահ։ Բայց յառաջ քան զհանդէս Թագաւորութեանն կին նմա անեցի շփոթութիւն իմն եհան, թէ երազ տեսի՝ զի օձ է Սմբատ արքայ. յորմէ այնչափ մեծ այլայլութիւն եղեւ 'ի մէջ ժողովրդեան, մինչեւ Գագիկ ոչ կարաց այլազգ խափանել զայն, բայց եթէ՝ տուեալ հանել զմարմին Սմբատայ. զոր եւ ցուցեալ ժողովրդեան՝ հանդարտեցոյց։

Իսկ սակս Գագկայ արքային այսպէս գրէ Ասողիկ ակնատես. * Էր այր սրամիտ եւ վարժ 'ի պատերազ-
„ մի, եւ առատաձեռն 'ի բաշխել. եւ իւրով իմաստու-
„ թեամբ եւ քաջութեամբ՝ զբաժ հարկաց յոլովից տե-
„ ղեաց ազատեաց. եւ զկիւրակեայն զցայգուն պաշ-

„ տօն սաղմոսերգութեանն կատարէր ||: Եւ Լաստի-վերացին անուանէ զնա *Այր հզօր և յաղթօղ 'ի „ պատերազմի. սա 'ի խաղաղութեան կալաւ զաշխարհս „ Հայոց. 'ի սորա ժամանակս պայծառացան կարգք ե-„ կեղեցւոյ, և լուսաւորեցան մանկունք ուխտի սրբու-„ թեանն ||:

25. Կատրամիտէ թագուհի սորա կատարեաց զԿա-թուղիկէ եկեղեցին Անւոյ, զոր հիմնեալ էր Սմբատ արքայ (22), և եղև պայծառ յոյժ և մեծագործ բարձ-րակամար և գմբէթայարկ, զարդարեալ և զներքին վայրսն եկեղեցւոյն անգին զարդուք, արծաթեղէն և ոսկեղէն անօթովք: Որ և կատարեցաւ յամի 993, և այնուհետև յԱնի հաստատեցաւ աթոռ կաթուղիկո-սութեան: Այս եկեղեցի դեռ կանգուն կայ յԱնի առ-էրի թագաւորական պալատին. տես զարձանագիրն 'ի կարգս յիշատակարանաց (113): Նա և ինքն թագու-հին բարեպաշտութեամբ և աղօթասիրութեամբ կան-խեալ հանապազ յեկեղեցին՝ պարապէր յաղօթս:

Յիշէ Ասողիկ (գ. 30). թէ ոչ կարաց Սմբատ 'ի գը-լուխ հանել զայս եկեղեցի առ կանխելոյ օրհասին և կա-տարեաց Կատրամիտէ թագուհի կին տն Գագկայ ար-քային. *Այլ կին նորա Կատրամիտէ թագուհի (ասէ) „ բարեպաշտուհի եղեալ, որ էր դուստր վասակայ սիւ-„ նեաց իշխանին, շինեաց զհիմնարկեալ եկեղեցին „ Սմբատայ, ամենապայծառ վայելչութեամբ, բարձ-„ րաբերձ կամարօք գմբեթաւորեալ խորան երկնա-„ նման. և զարդարեաց 'ի զարդ ծիրանեծաղիկ սու-„ կէթել նկարագործ անկուածոց, արծաթեղէն և ոս-„ կեղէն անօթոց, և բազմապայծառ լուսատու անօ-„ թոց վայելչութեամբ, որովք ջահանայր ըստ երկ-„ նային կամարին կաթուղիկէն սուրբ՝ որ 'ի քաղա-„ քին Անւոյ ||:

Ըստ այսմ երգէ և Շնորհալին.

* Յարմարածով յօրինուածով,
„ Կաթուղիկէ եկեղեցի.
„ 'Ի Նոր հանգէս և հաւասար,
„ Սերնակառոյցն խորանի,
„ Հայրապետք եպիսկոպոսք,
„ Եւ քահանայք այլ ըստ կարգի.

«Նաև որդիքն Սիմէոնի,
«Նման գառանցըն հզեղինի»։
Ոդէ. Նշդեւ։

Իսկ Գագիկ արքայ յետ թագաւորելոյ ամս 30, մեռաւ յամի տեառն 1020. թողեալ ՚ի բարեպաշտ թագուհւոյն իւրմէ զերկու որդիս զՅովհաննէս և զԱշոտ։

29. Ը. Յամի տեառն 1020. Յովհաննէս երէց որդին նստաւ թագաւոր յԱնի քաղաք յանձնարարութեամբ հօրն. որ թէպէտ էր այր խոհական, բայց տկար և թուլամորթ էր յոյժ. իսկ եղբայրն Աշոտ ընդհակառակն էր այր քաջ և փառաւոր։ Այսին իրի մերժեալ զեղբայր իւր՝ կամեցաւ ինքն թագաւորել. յորմէ բազում խռովութիւնք ծագեցան, և բաժանումն չարաչար։ Սակայն և այնպէս ժողովուրդն միշտ ըզՅովհաննէս ճանաչէր թագաւոր։ Յայնժամ զօրաժողով եղև Աշոտ և բազում զօրօք եկն և պաշարեաց զԱնի, որ ՚ի նմին ժամանակի ամենակերպ մեծութեամբ և ճոխութեամբ պանծայր. նախարարք Հայոց խորհեալ ընդ Կաթուղիկոսին գիտացին, թէ այն գործ ՚ի չարն ունի եղերիլ. ջանահնար եղեն հաշտեցուցանել զնոսա։ Բայց նախ զերդումն առին յերկոցունց այսու դաշամբ, զի Յովհաննէս նստցի թագաւոր յԱնի, և տիրեսցէ նորին կողմանց. իսկ Աշոտ իբր երկրորդ թագաւոր իշխեսցէ այլ կողմանց Հայաստանեայց. և թէ Յովհաննէս յառաջ մեռցի, Աշոտ լիցի թագաւոր։

Այսու թէպէտ խաղաղութիւն եղև, այլ չար բաժանումն անկաւ ՚ի մէջ. քանզի ոմանք ՚ի նախարարաց զմի կողմն, և այլք զմիւս կողմն ունէին. որով և անդէն տկարացաւ և նուաղեցաւ տէրութիւնն. իսկ թշնամիքն զօրացեալք գլուխ ամբարձին. և կատարեցաւ բան տեառն, թէ * Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ աւերի, և ամենայն քաղաք կամ տուն բաժանեալ յանձն իւր՝ ոչ կացցէ»։

30. Արդ՝ Յովհաննէս արքայ որչափ սիրող էր խաղաղութեան, այնչափ անպակաս էր խռովութիւն, և կործանումն յաւէտ անմիաբանութեամբ նախարարաց. մինչև կորուսին ընդ քաղաքական հոգւոյ, և զյաջողութիւն աստուածային. ըստ որոյ նկարագրէ Կա-

զոր Փարպեցին զանմիաբանութիւն իշխանաց իւրումն ժամանակի. * Ի միաբանիլն՝ (ասէ) տեսանէին զոյժ
„ օգնականութիւն յանձինս և յաշխարհս. և ՚ի քա-
„ կելն և ՚ի պառակտիլն՝ զվնաս և զկորուստ և յան-
„ ձինս և յաշխարհս ‖:

31. Այլ ահա այսպէս եղև. սկիզբն կործանման ամենայն թագաւորութեանց. ուր փոխանակ զիրեարս շահելոյ, ջան դնէին իշխանք զմիմեանս կործանել դառն ատելութեամբ. և որ չարն է, երթան միանան ընդ թշնամեաց, և կուրութեամբ իմն կոչէին զնոսա փութալ կործանել զաշխարհ և զտունն իւրեանց. որպէս արարին ՚ի սմին ժամանակի Սիւնեցիք: Վասնզի ոմանք յիշխանաց դիմեցին առ թագաւորն Սըրաց, որպէս զի զօրութեամբ նորա ձգեսցեն զՅովհաննէս ՚ի թագաւորութենէ: Ածին զօրս Սըրաց մերձ յԱնի, և դարանեալ սպասէին, զի ընդ ելանելն ՚ի քաղաքէ արքային՝ կալցեն զնա: Իսկ նորա ոչ գիտելով զայս խորհուրդ թշնամեաց՝ ել յԱնւոյ գնալ ՚ի ձմերոցն, և ահա դարանակալ Սըրացիք յանկարծ յարեան ՚ի վերայ նորա: Յովհաննէս գոլով թանձրամարմին ոչ կարաց փախչել. նմին իրի կալան զնա, և մտեալ յԱնի կոտորեցին զբազումս, և մտին ՚ի կաթուղիկէ եկեղեցին, և հանեալ զբևեռս խաչելութեանց՝ աղաղակէին նախատանօք, թէ զայսոսիկ բևեռս արասցուք պայտս երիվարաց մերոց. քանզի ինքեանք առանց բևեռի ունին զխաչս:

32. Արդ՝ ածին զՅովհաննէս արքայ ՚ի Սըրաստան առ Գորգի թագաւոր իւրեանց. որ արկ զնա ՚ի բանտ, և ապա զերիս ամրոցս առեալ ՚ի նմանէ՝ արձակեաց ՚ի տեղի իւր: Սակայն ոչինչ փոյթ եղև նախարարաց օգնել արքային, և վրէժս հանել ՚ի թշնամեաց. այլ ատելութիւնն քաղցրացոյց նոցա կրել զայնչափ թշնամանս ՚ի Սըրացւոց. և երագել անձանց զաղէտալի կործանումն: Զայսպիսի ցուրտ և վտանգաւոր անմիաբանութիւն տեսեալ Աշոտոյ՝ հաստատեաց ՚ի միտս իւր, թէ ցորչափ ողջ է Յովհաննէս, նախարարք ոչ միաբանին ոչ ընդ ինքեան, և ոչ ընդ արքային: Նմին իրի խորհուրդ վատ եդ ՚ի մտի իւրում. փոխանակ միաբանելոյ ընդ եղբօր իւրում, և վանելոյ զթշնամիս, որպէս բազում անգամ արարեալ էին, հիւանդ ձևա-

ցաւ, և 'ի նմին օրինակի մերձ 'ի մահիճ իւր եւս փարել զորոգայթ, և ապա կոչեաց զՅովհաննէս 'ի տեսութիւն։ Իսկ նա ընդ մօտիլն առ Աշոտ՝ անկաւ 'ի մէջ որոգայթին։ Յայնժամ հրամայեաց Աշոտ իշխանին Ապիրատայ կապել զեղբայր իւր և սպանանել. իսկ Ապիրատայ ոչ հաւանեալ ընդ անգթութիւն Աշոտոյ՝ կապեաց զՅովհաննէս և տարեալ յԱնի՝ նստոյց յաթոռ իւր ատելով. լաւ է Հայոց ունել զարքայ խնամատուն, քան զանողորմ բռնաւոր։

33. Իսկ Թշնամիքն տեսեալ զայսօրինակ Թշուառութիւն աշխարհին՝ զօրացան, մանաւանդ զի տեսեալ զանմիաբանութիւն նախարարաց՝ սկսան նեղել զազգն յամենայն կողմանց։ Ուստի ոչ միայն Պարսիկք և Այլազգիք, այլև Հոռոմք և Վրացիք հարստահարէին զՀայս։ Իսկ իշխանք ընդդիմացեալք՝ ոչինչ շարժէին 'ի տեղւոջէ իւրեանց, միայն զանձանց օգուտ խնդրելով. և զայն ոչ զմտաւ ածէին, թէ երբ գլուխն վիրաւորի և ճնշի, զիա՞րդ անդամանց մարթ իցէ ողջ մնալ. և յորժամ տունն կործանի, զիա՞րդ կարեն ընտանիքն 'ի հանգստեան մնալ։

34. Յամի տեառն 1021. Գէորգի թագաւոր Վրաց ապստամբեցաւ 'ի տէրութենէ Յունաց, որում խորհրդակից և ձեռնտու եղև Յովհաննէս արքայ։ Իսկ Վասիլ կայսր 'բազում զօրօք եկ 'ի վերայ նորա, և նկուն արարեալ՝ առնակօխ արար զՎրաստան, մինչև մազապուրծ փախեաւ Գէորգի։ Յայնժամ յուսահատեալ Յովհաննէս՝ սկսաւ դողալ. զի լսէր թէ կայսրն հանդերձեալ է ելանել 'ի վերայ նորա։ Այլ նա չուքաւ 'ի Տրապիզոն՝ ձմերել անդ. ուստի իբրև լուաւ Յովհաննէս թէ կայսրն 'ի գարնան ունի յարձակել 'ի Հայաստան, խորհեցաւ առ ահի բռնութեանն զխորհուրդ վտանգաւոր։ Զի այս է գործ փոքրոգի տկարաց՝ 'ի նեղ ժամանակի նկուն լինել առաջի թշնամեաց. իսկ առաքինիք քաջ ևս արիանան յայնպիսում ժամանակի։ Նմին իրի լաւ էր թէ այնպիսի անձինք բնաւ ոչ զհետ պնդէին իշխանութեան. այլ մնային յառանձնութեան, առ 'ի չլինելոյ պատճառ կործանման տէրութեանն, զոր նախնիքն ստացեալ էին այնչափ աշխատանօք զարիւնս թափելով։

35. Արդ՝ յամի տեառն 1022. Յովհաննէս արքայ

առաքեաց զՊետրոս կաթուղիկոս 'ի Տրապիզոն առ կայսրն՝ խօսիլ 'ի հաշտութիւն։ Մանաւանդ քանզի Յովհաննէս անզաւակ էր, և անարգեալ յամենայն իշխանաց Հայոց, նմին իրի խորհեցաւ տալ կայսեր զքաղաքն Անի։ Ուստի գրեաց առ նա նամակ հանդերձ երդմամբ, թէ տաց կայսեր զԱնի ընդ ամենայն գաւառաւ, միայն թէ յորչափ ողջ եմ՝ ասէ՝ մնասցես թագաւոր, և դու լիցիս ինձ բարեկամ և պաշտպան։

Իբրև ընթերցաւ կայսրն զայս թուղթ՝ խրախ եղև, և հաճեցաւ ընդ դաշնադրութիւնն անկարծելի. զոր բազում զգուշութեամբ պահէր առ իւր։ Այլ զՊետրոս կաթուղիկոս մեծարեալ՝ պահեաց առ իւր ժամանակ մի. և 'ի տօնի մկրտութեան ետ օրհնել զջուրն 'ի գետն Տրապիզոնի. որպէս տեսաք զտեղին, ուր և երևեցան սքանչելիք։ Տե՛ս 'ի Պոնտոս 134։

36. Կայսրն Վասիլ յետ դառնալոյ 'ի Կոստանդնուպօլիս՝ ոչ յետ բազմաց մեռաւ, և թագաւորեաց Կոստանդին եղբայր իւր յամի տեառն 1025. որ զկնի երից ամաց սաստիկ հիւանդացաւ, և տեսեալ թէ մեռանի, հարցաւ խնդիր նորա, և յիշեալ զնամակ Յովհաննու արքային՝ ցուցեալ 'ի վերայ ազգին Հայոց։ Ուստի հրամայեաց գտանել զհաւատարիմ ոք 'ի Հայոց անտի Կոստանդնուպօլսոյ. և նոցա գտեալ զերէց ոմն Կիրակոս անուն, որ յառաջ եղեալ էր հիւրատես կաթուղիկոսարանին, և գնացեալ էր անդր սակս գործոց ինչ, ածին առ կայսրն, որ ետ նմա զայն նամակ ասելով. Տուր զայս թուղթ արքային ձերոյ և ասա յինէն կողմանէ. որովհետև հողածին եմք, եհաս ինձ մահ իմ, և ոչ կամիմ զի նամակ նորա մնասցէ առ իս. տացէ զթագաւորութիւնն զաւակի և ազգի իւրում և որդւոց որդւոց իւրոց փոխանցուցեալ պահեսցեն զտէրութիւն իւրեանց, և մի լիցին գերի օտարաց, և կործանեսցին քաղաքք և աշխարհն գլխովին։ Այս ասէ ցԿիրակոս քահանայ. տես որչափ է գութ իմ 'ի վերայ ազգի ձերոյ. յորմէ օրինակ առեալ ձեր՝ ուսարուք ունել սէր և միաբանութիւն։ Եթէ դու ևս հաւատարիմ գտցիս, այսու մեծի փառաց արժանի լինիս։ Իսկ Կիրակոսի յամի տեառն 1028. առեալ զայն նամակ 'ի կայսերէ՝ պահեաց առ իւր լռութեամբ։

37. Առակ է օտարաց, թէ վասն Հայոց չէ հարկ յայլոց խնդրել զթշնամի. այլ ինքեանք են զօրաւոր թշնամի 'ի կորուստ ազգին: Բաւական է սուր իւրեանց կոտորել զիւրեարս, և չէ պիտոյ մատնիչ և լըրտես վասն նոցա, զի ինքեանք քաջ մատնիչ և լրտես են կորուսիչ. որպէս եղև և այս Կիրակոս երեց: Քանզի զինի կայսերացն Կոստանդեայ և Ռոմանոսի իբրև նստաւ կայսր Միխայէլ, այս անօրէն քահանայ չոքաւ առ կայսրն, և ետ նմա զայն նամակ Յովհաննու արքային, և էառ զանձ բազում 'ի նմանէ յամի տեառն 1034: Իսկ կայսրն ուրախութեամբ պահեաց զայն թուղթ յարքունի դիւանին, և սպասէր մահուան Յովհաննու. որպէս զի՝ առեալ զԱնի տիրեսցէ բոլոր Հայաստանեայց: Ընդ որ այսպէս ողբայ Արիստակէս վարդապետ. * Ո՜վ դառն վաճառուն ախտորիկ. քանի՞ ա-
„ռեանց զանձն պարտական կացոյց. քանի՞ եկեղեցիք
„'ի ձեռն վաճառուն ախտորիկ աւերեցան. քանի՞ գա-
„ւառք անմարդ յամայի դարձան. քանի՞ մեծանիստ
„աւանք մարդաթափ 'ի բնակչաց եղեն ... Այս վա-
„ճառ անմարդագոյն գոլ թուի ինձ, քան զՅուդայ-
„ին. քանզի անդ թէպէտ վաճառօղն ընդ պարսաւա-
„նօք, այլ վաճառն գինք եղև փրկութեան ամենայն
„աշխարհի ... իսկ աստ վաճառօղն յոյժ ապառումն
„և տմարդի. զի այսքան չարեաց զանձն պարտական
„կացոյց. զի այգի, զոր տնկեաց տէր, և մշակեաց Լու-
„սաւորիչն մեր իւրով հնդետասանամեայ քրտնալից
„աշխատութեամբն, նա քակեաց զցանկ նորա, և կոր-
„ծանեաց զաշտարակս նորա և արար զնա կոխան ան-
„ցաւորաց. մինչև ապականեաց զնա խոզ անտառի,
„և կինճ վայրի ճարակեցաւ 'ի նմա, ըստ դաւթական
„ողբոցն ||:

38. Յամի տեառն 1036. հրամանաւ Յովհաննու արքային եղև մեծ ժողով յԱնի վասն բարեկարգութեան, ուր կային բազմութիւն հայրապետաց և վարդապետաց. յորս էին բազում երևելի և գիտնական անձինք: 'Ի սմին ժամանակի դեռ պանծալի էր Անի մեծագործ շինուածովք, փարթամութեամբ և բազ-

համարդութեամբ . մինչ զի՝ մի էր յականաւոր մայրաքաղաքաց աշխարհի ։ Այնպէս թուէր թէ բազում ժամանակաց , և մեծի դժուարութեան կարօտի տիրել մեծի մայրաքաղաքիս սակս զօրմանալն ամրութեան , անմատչելի մարտկոցաց և աշտարակաց ։ Մանաւանդ զի անկարելի թուէր , թէ ոտք թշնամեաց ունիցին կոխել 'ի նմին յերեսաց անպարտելի քաջաց պատերազմականաց , որք 'ի սուղ ժամանակի օգնով միաբանութե՛ հալածական արարեալ զամենայն թշնամիս ոչ միայն ազատեալ էին զազգն 'ի գերութենէ , կանգնելով զաթոռ թագաւորութեան Բագրատունեաց , այլև յայն վիճակ հասուցեալ էին զքաղաքն Անի , մինչև ցանկալի լինել արքայից և կայսերաց ։

39 . Բայց սակայն անյեղլի է վճիռ իմաստնոց , թէ չէ մարդն տիրող աշխարհի , և ոչ կայսերաց զօրութիւն , այլ միաբանութիւն հանդերձ իմաստութեամբ . զի ուր գոյ իմաստութիւն զոյգ ընդ միաբանութեան , անդ գոյ ամենայն բարելաւութիւն անթերի . և ուր պակասի՝ անդ տկարանայ ամենայն զօրութիւն , փութով կործանի անկանի տէրութիւն և մեծութիւն ։ Նաև հեռանայ իսկ աստուածային յաջողութիւն , որպէս եղև յԱնի . ուր քարինք , և ամրոցք ոչ ինչ զօրեցին ընդդէմ անմիաբանութեան . այլ ամենայն զօրութիւնք և կարծեալ մեծութիւնք 'ի սուղ ժամանակի յոչինչ դարձան . ազատ ազատ ոտնակոխ արարին թըշնամիք . կործանեցին զահեղ ամրութիւնս և բարձին զամենայն վայելչութիւնս ։ Եւ չեն ինչ զարմանք . զի ասէ Եղիշէ վարդապետ , թէ * Ընդ քակտիլ միաբա„նութեան , և երկնաւոր առաքինութիւնն հեռանայ ։

40 . Արդ՝ յամի տեառն 1039 . մեռաւ Յովհաննէս արքայ Հայոց յետ թագաւորելոյ ամս 20 . և յառաջ քան զնա 'ի նմին ամի մեռաւ և Աշոտ եղբայր նորա . և երկոքին իսկ թողեցան յԱնի 'ի գերեզմանս արքայից . և մնաց որդի մի Աշոտոյ Գագիկ անուն 14 ամաց , մանուկ իմաստուն և քաջ , ուր Յովհաննէս գըրով անորդի՝ սա էր ժառանգ թագաւորութեան ։ Սակայն նախարարքն անմիաբանութեամբ գլխովին անպիտանացեալ էին . և չունէին փոյթ դնել թագաւոր ։ Նմին երի մնաց Հայաստան անտէր , և Անի անխնամ ։ Մինչ զի նախարար ոմն Վեստ Սարգիս կոչեցեալ բըռ-

նացաւ յԱնի, և կողոպտեաց զգանձն արքունի, և խորհէր նստել թագաւոր ։

41. Իսկ կայսրն Միխայէլ իբրև լուաւ զմահ Յովհաննու, սկսաւ ջանահնար լինել յափշտակել զԱնի, իբրև սեպհական ժառանգութիւն իւր, որպէս խոստացեալ էր Յովհաննէս (35)։ Նմին իրի դեսպան առաքեաց 'ի Հայս՝ յանձնել նմա զքաղաքն Անի։ Հայք իբրև լուան զայս՝ շուարեալ խռովեցան, և բնաւ ոչ հաւանեցան տալ. վասն զի մի միայն մնացեալ էր 'ի Հայաստան մեծաշէն, բազմագանձ և մարդաշատ քաղաք։ Սակայն և այնպէս Միխայէլ կայսր ոչ դադարէր 'ի պահանջելոյ զայն. բազում անգամ դեսպանս առաքելով՝ հնարս հնարէր 'ի ձեռս բերել։ Նոյն իբրև ետես թէ ամենայն հնարք իւր 'ի դերևս ելին՝ խորհեցաւ պատերազմաւ վճարել զգործն. ուստի առաքեաց 'ի Հայաստան զօրս հարիւր հազար առ 'ի տիրել Անւոյ ։

42. Այս բնութիւն է Հայոց. զի երբ կորուսանեն զոգի միաբանասիրութեան, առաւել ընտրեն ծառայել օտար ազգաց և սիրելի լինել նոցա. և որ չարագոյն է, արհամարհեալ զազգն միանան ընդ թշնամեաց։ Որպէս եղև անօրէն Վեստ Սարգիս, որ յայնժամ գլուխ գոլով անգլուխ ազգին՝ ել ընդդէմ զօրացն Յունաց. բայց փոխանակ հալածելոյ զնոսա, օգնական եղև նոցա, որք անաշխատ մտեալ 'ի Հայաստան՝ սկսան չարաչար հարկանել և կողոպտել զՀայս ։ Ուր չէր ազգասէր ոք, որ ընդդէմ դառնայր նոցա. նորին աղագաւ յաճախ ոտնակոխ առնելով զաշխարհն, տկարացուցին զզօրութիւն նոցա, մինչև յառաջացեալ հասին Յոյնք 'ի Շիրակ գաւառ, և պաշարեցին զԱնի ։ Թշուառ Հայք յայնժամ զարթեան 'ի քնոյ, և բորբոքեալ սրտմտութեամբ դիմեցին ամենեքեան առ ծեր Սպարապետն Վահրամ Պահլաւունի, և խնդրեցին լինել նոցա առաջնորդ առ 'ի պատերազմել ընդդէմ Յունաց։ Վահրամ վառեալ ոգւով ազգասիրութեան՝ յանձն էառ. խնդրեաց 'ի նոցանէ 30 հազար հետևակս, և 20 հազար ձիաւորս. որք յերիս գունդս բաժանեալ՝ ելին 'ի Ծաղկոցաձորանէ արտաքս, և յանկարծ անկեալ 'ի վերայ բանակին Յունաց՝ չարաչար չփոթեցին զզօրսն՝ ամենայն քաջութեամբ և արագութեամբ.

մինչ զի Յոյնք սարսափեալ ցիրւցան եղեն և առ հասարակ սկսան փախչիլ։ Իսկ զօրքն Հայոց արագութեամբ իմն կալեալ զառաջս նոցա, այնպէս անխնայ կոտորեցին, մինչև արիւնն հեղեղեալ ընդ փողոցս ներկեաց զջուր Ախուրեան գետոյ. շատք ևս գետակուր եղեն։

43. Տեսեալ Յունաց, թէ սպառին ՚ի ծարաւ սրոյ Հայոց, սկսան աղաղակել, զի խնայեսցեն ՚ի նոսա։ Յայնժամ քաջն Վահրամ յառաջ մատուցեալ սկսաւ յորդորել զզօրս իւր դադարել ՚ի հարկանելոյ զՅոյնս։ Իսկ այսպէս հազիւ կարաց դադարեցուցանել զնոսա. որով և Յոյնք ոգի առեալ սկսան փախչիլ մինչև յաշխարհ իւրեանց։ Իսկ անօրէնն Սարգիս սկսաւ այնուհետև զաղտնի հնարիւք որսալ զսիրտս Հայոց, նուաճուցանել զինքն յԱնի թագաւոր։ Սակայն Վահրամ սպարապետ 30 իշխանօք և նախարարօք խորհեալ ընդ Պետրոս Կաթուղիկոսի՝ որոշեցին օծանել թագաւոր զԳագիկ եղբօրորդի Յովհաննու արքային, որ փախստական շրջէր ՚ի ձեռաց Սարգսի. ուստի ամենայն զգուշութեամբ ետուն բերել զնա յԱնի և օծին թագաւոր։

44. Թ. Յամի տեառն 1042. Գագիկ Բ. եօթնետասանամեայ նստաւ թագաւոր յԱնի. որ ՚ի մանկական տիս կրթեալ ՚ի պէսպէս ուսմունս Հելլենացւոց, և ՚ի գեղեցիկ կարգս աստուածպաշտութեան, եղև զօրաւոր և քաջ, իմաստուն և վեհանձն։ Յորոյ վերայ այնպէս փայլէր ա̃ծային յաջողութիւն, զի եթէ նախարարք միաբան և միակամ լինէին ընդ նմա՝ ոչ ինչ պակաս քան զնախնի Հայկազունս տիրէր բոլոր Ասիոյ, և շարժէր ՚ի տեղւոջէ իւրմէ զկայսերութիւն Յունաց։ Սակայն երբ ազգն էր անմիաբան և տիրատեաց, ոչ ինչ ունէին զօրել այն ամենայն քաջութիւն և մեծութիւն. թագաւորն ծրջափ իմաստուն և քաջ լիցի, երբ ժողովուրդն է անմիաբան, և խնդրօղ կորստեան, զինչ օգուտ անտի։ Որպէս ոչինչ օգուտ գիտաց առնել իմաստութիւն և քաջութիւն Գագիկ թագաւորին. զի բարձեալ էր յիշխանաց ոգի ազգասիրութեան, և տիրեալ էր չար ոգի անմիաբանութեան և ատելութեան, մինչ զի ընտանի իմն թշնամի եղեալ էին բնիկ Տէրութեան. որոց գլուխ և առաջնորդ էր անօրէնն Սարգիս։

ՎՌանգի այս Սարգիս տեսեալ, թէ Գագիկ նստաւ թագաւոր, ժողովեալ զսիկարեանսն՝ եմուտ 'ի ներքնաբերդն Անւոյ, և անդ ամրացաւ ։ Զայն լուեալ արքային անդէն և անդ ել միայնակ՝ և չոքաւ 'ի ներքս անդ. և զայնպիսի իմաստուն և զօրաւոր բանս խօսեցաւ անվեհեր, մինչև նկուն արար զՍարգիս առաջի իւր ։ Սակայն այր նենգամիտ ոչ գիտէ դադարել 'ի չարեաց իւրոց. այլ միշտ ջան դնէ անհանգիստ առնել զամենեսեան ։ Սապէս և այս անօրէն սկսաւ գրգռել զՅոյնս ընդդէմ Հայոց, և ինքն աստանդական շրջեալ հարկանէր զՀայաստան ։ Իսկ Գագիկ քանի մի քաջ արամբք ել 'ի վերայ նորա, և կալեալ կապեաց զՍարգիս, և տարեալ յԱնի եդ 'ի բանտի. այլ խնայելով 'ի նա ոչ կամեցաւ սպանանել, և 'ի խնդրոյ ոմանց ազատեաց զնա ։

45. Ապաքէն վտանգ մեծ է մեծամեծաց երբ կարի իմն 'ի գութ շարժեալ բարիս առնեն անզգամաց. որք ոչ միայն այնու ոչ ուղղին, այլ և համարձակութիւն իմն գտեալ՝ չարաչար ևս զհետ լինին կորուսանել զբարերարս ։ Որպէս արար Սարգիս Գագկայ արքայի, որ խաբեալ 'ի կեղծուպատիր բանից նորա, արար զնա իւրքեան խորհրդական. իսկ նա գոլով միշտ նոյն, միշտ մատնիչ եղև արքային, և արքունական քաղաքին Անւոյ։

46. 'Ի նմին ժամանակի Գագկայ պատերազմեալ ընդդէմ Սկիւթացւոց՝ մեծ յաղթութիւն արար հալածելով զթշնամիս ։ Յայնժամ Մոնոմախոս նստաւ 'ի Կոստանդնուպօլիս կայսր Յունաց զկնի Միխայէլի. որ և գտեալ 'ի դիւանի իւրում զնամակն տուեալ յարքայէն Հայոց (35). դեսպան առաքեաց առ Գագիկ՝ զի տացէ նմա զքաղաքն Անի ։ Գագիկ մեծ պատուով և խոհեմութեամբ խօսեցաւ՝ ցուցեալ զինքն խոնարհ հպատակ կայսեր. սակայն ոչ երբէք հաւանեցաւ տալ զարքայանիստ քաղաքն Անի ։ Մոնոմախոս անդադար ստիպէր զնա տալ. այլ իբրև ետես թէ չէ հնար լինել կամագիւտ, ժողովեաց զբազում զօրս և տուեալ 'ի ձեռս Նսիտ իշխանին առաքեաց 'ի վերայ Անւոյ ։ Որք բազում հնարս հնարեցին յափշտակել զայն. բայց Գագիկ անպարտելի քաջութեամբ ել ընդդէմ նոցա, և այնպիսի չարաչար հարուածս ետ Յունաց, մինչև խայտառակեալ փախեան 'ի Հայաստանէ ։

47. Ընդ այս աւելի իմն զչարեալ կայսեր՝ մեծաւ պատրաստութեամբ առաքեաց զՆիկողայոս զօրավարն. նաև նամակ գրեաց առ Ապուսվար պարսիկ իշխանն Դվնայ, զի 'ի միւս կողմանէ ելեալ շփոթեսցէ զՀայս. որ և յանկարծ ելեալ յափշտակեաց զբազում ամրոցս։ Իսկ Գագիկ ել քաջութեամբ ընդդէմ Նիկողայոսի, և ահագին պատերազմաւ աշխատ արար զնա յոյժ։ Այլ տեսեալ թէ Ապուսվար պարսիկ 'ի միւս կողմանէ զօրանայ, զարմանալի խոհեմութեամբ հաշտութիւն խօսեցաւ ընդ նմա, և շատ գանձ տուեալ բարեկամացաւ։ Ապա դարձեալ անդրէն 'ի վերայ Յունաց կոտորեաց զնոսա, և խորտակեալ զզօրութիւն ահեղ պատրաստութեանն՝ հալածական արար զնոսա յաշխարհէ իւրմէ։ Սակայն և այնպէս ոչ օգուտ ինչ եբեր այս մեծ յաղթութիւն. զի թէպէտ արտաքին թշնամիք կորագլուխ կորեան, այլ ներքին թշնամին միշտ գոլով ընդ նմա, իբրև լրտես և մատնիչ միշտ գրգռեր զՅոյնս առնուլ զԱնի։ Եւ ոչ այսչափ միայն, այլև անդադար քսութիւն և բանսարկութիւն արարեալ էարկ զատելութիւն 'ի մէջ արքային և իշխանաց. նոյնպէս ցրտութիւն պատճառեաց 'ի մէջ կաթուղիկոսին և արքային։ Մինչ զի եւ փախուցանել 'ի Հայաստանէ զերևելի գիտնական իշխանն Գրիգոր Մագիստրոս։

48. Եւ այսպէս Սարգիս գոլով անօթ սատանայի էարկ 'ի մէջ մեծամեծաց Հայոց խռովութիւն ամենաչար՝ քակեալ յիրերաց զամենեսեան։ Եւ բիւրակերպ կեղծաւորութեամբ քայքայեաց զազգն, և վրտանգեաց զտէրութիւնն։ Եւ քանզի ոչ զօրեաց զօրութիւն Յունաց և Պարսից խորտակել զանպարտելի ոյժ Գագկայ և Հայոց, այնչափ հնարք և պատերազմունք չկարացին պարտել զՀայս։ Սմին իրի հարկ եղև 'ի ձեռն ունել զովորական կորուստ ազգին. այն է անմիաբանութիւն. զի բաց յայնմանէ այլ հնար ոչ գոյր, որպէս բազում անգամ փորձեալ էին։

49. Այն զի՝ ցորչափ 'ի տեղի ազգասիրութեան ազգատեցութիւն բունեալ էր 'ի մէջ Հայոց՝ չէր ինչ դժուարին նկուն առնել զանդրդուելի քաջութիւն արքային, և մատնել զմեծաշէն արքայանիստ քաղաքն Անի։ Որով և յաջողեցաւ անօրէն Սարգսի մատնել

զայն օտարաց, և կործանել զազգն գլխովին. որպէս եղև առ քաջն Մարդանաւ, ուր յաջողեցաւ անօրէն Մատակայ մատնել զաշխարհն և զազգն Հայոց ՚ի ձեռս Պարսից: Պողով և Սարգիս ՚ի ցեղէ նորա՝ ժառանգ գտաւ կեղծաւորութեան նորա, մատնութեան և վատանունութեան: Ուստի իմաստութեամբ ասաց Յովհան Մանդակունի. * Միայն անօրէնութիւն եր- „բեմն ստացեալ բորբոքի, և երբեմն դադարի. „իսկ քինահանութիւնն միշտ բորբոքի յանօրէն խո- „րամանկութեան խորհուրդս ‖:

50. Կարի վտանգաւոր է և պատճառ կործանման մեծամեծաց՝ յորժամ իշխանաւորք հաւատան կեղծաւորաց, և հաճելի լինին նոցա շողոմոգ բանք մարդելուզաց. մանաւանդ երբ փորձ և խոհական մարդիկ ազդ առնեն հեռի կալ ՚ի ստուտակապաշտ բանից, և նոքա ոչ ինչ լսօղ լինին: Այս որ չար ևս է, թագաւորք ոչ միայն զայնպիսիսն ոչ հեռացուցանեն յինքեանց, այլ և զխորհուրդ բարեխորհուրդ բարեկամաց թողեալ, այնպիսի խորամանկ խորհրդականաց հետևին: Եւր թէ և ոչ ինչ չար երևէր նոցա բանսարկութիւն մարդահաճոյից, դէթ պարտ էին հետևիլ ազդարարութեան հաւատարիմ խոհականաց: Ուստի որ միանգամ զայս կանոն ոչ պահեաց, միշտ սխալեցաւ հանդերձ մեծամեծ կորստեամբք. և պատճառս ետ կործանման, թէ անձին և թէ տէրութեան: Քանզի ծառ չար պտուղ բարի ոչ առնէ. և այր անօրէն չունի գործել զգործ օրինաւոր: Ապա վայ նմա, որ անկեալ ՚ի ձեռս անօրինին՝ հաւատայ բանից նորա. որով և խաբի չարաչար. որպէս եղև Պագիկ արքայ, որ խաբեալ ՚ի բանից չարարուեստ Սարգսի՝ ոչ ինչ կամեցաւ այնուհետև անսալ օգտակար ազդարարութեանց հաւատարիմ բարեկամաց և իշխանաց: Այս որ չարն է, արհամարհեալ զհաւատարիմ անձինս՝ անձնատուր եղև մատնչին, և կործանեաց զթագաւորութիւնն. զի գոյ և իմաստնոց քուն:

51. Արդ՝ խորամանկ Սարգիս առ 'ի գլուխ տանել զվատ խորհուրդ իւր՝ գաղտ ծանոյց Մոնոմախոս կայսեր որչափ ինչ քսութիւնս արարեալ էր և որչափ ատելութիւնս սերմանեալ 'ի մէջ իշխանաց, կամ թէ որպիսի որոգայթ լարեալ էր վասն Գագկայ: Կայսրն լուեալ զայս ամենայն՝ ուրախ եղև յոյժ. և վստահ եղև, թէ այս ամենայն վասն իւր են մեծ յաջողութիւնք, և վասն Հայոց պատճառք կործանման: Նմին իրի յուսայր թէ սակաւ աշխատանօք կարասցէ տիրել Անւոյ, և բառնալ զթագաւորութիւն Հայոց: Ապա պատգամ առաքեաց առ Սարգիս և առ այլ նախարարս խոստանալով բազում ինչ, որպէս զի որսացեալ զմիտս Գագկայ արքային հաւանեցուսցեն տալ զԱնի կայսեր:

52. Այս անօրէն իշխանք գոլով միախորհուրդք 'ի ծածուկ, սկսան այնուհետև զօրանալ. և խորհուրդ չար խորհեցան մատնել զԱնի և զԳագիկ միանգամայն: Ուստի գրեցին թուղթ առ կայսրն՝ խորհուրդ տուեալ, զի պատճառաւ իմն հաշտութեան կոչեսցէ զԳագիկ 'ի Կոստանդնուպօլիս, և արկցէ 'ի բանտ: Այնուհետև, ասեն, հեշտ լինի առնուլ զԱնի և զտէրութիւն Հայոց: Ըստ որոյ և կայսրն գրեաց առ Գագիկ թուղթ սիրոյ լի կեղծուպատիր բանիւք. և յորդորէր զնա երթալ 'ի Կոստանդնուպօլիս առ 'ի հաստատել զսերտ բարեկամութիւն: Բայց Գագիկ ամենևին ոչ կամեցաւ երթալ. զի կասկած ունէր, թէ Յոյնք վրէժխնդիր լինին այնչափ արեանհեղութեանց, զոր կրեցին: Ապա կրկին անգամ գրեաց կայսրն մեծամեծ երդմամբք վկայ կոչելով զսուրբ խաչն և զսուրբ աւետարանն. մինչև խոստացաւ տալ նմա զնամակն Յովհաննու արքային, և հաստատել 'ի մէջ իւրեանց սէր և հաշտութիւն մշտնջենական: Սակայն Գագիկ առաւել ևս կասկածոտ եղև սակս երդմանցն. և հաստատեաց 'ի միտս չերթալ բնաւ: Որովհետև Վահրամ մեծ սպարապետ և այլք յիշխանաց միաբան անդադար յորդորէին զարքայն, չհաւատալ երբէք Յունաց և ոչ գնալ 'ի Կոստանդնուպօլիս:

53. Իսկ նենգամիտն Սարգիս ընդ խորհրդակից նա-

խարարաց սկսաւ ստիպել զարքայն գնալ առ կայսրն ։ Եթէ ոչ կամիցիս գնալ, ասէին, մեծամեծ չարիք և խռովութիւնք ծագին 'ի մէջ մեր և Յունաց. և մեք չկամիմք այլ ևս պատերազմիլ ընդ կայսեր ։ Արդ եթէ ունիցիս կասկած ինչ, ահա աստ եմք մեք, և պատրաստ պաշտպանել, թէ զքեզ, և թէ զաշխարհ մեր ։ Սակայն և այնպէս Գագիկ ոչ հաւանեցաւ բանից նոցա. մինչև կոչեցին զՊետրոս կաթուղիկոս և զայլ նախարարս երդուան զահագին երդմունս առաջի սրբոյ պատարագին. և որպէս ասեն պատմիչք, զգիր երդմանն գրեցին արեամբն Քրիստոսի, և յանձնեցին 'ի ձեռս կաթուղիկոսին ։

54. Գագիկ արքայ վստահացեալ ընդ երդմունսն հաւանեցաւ և պատրաստեցաւ գնալ 'ի Կոստանդինուպօլիս ։ Իսկ յանձնեաց զքաղաքն Կաթուղիկոսին, և յատկապէս եդ վերակացու զիշխանն Ապիրատ ։ Իսկ զընտանիս իւր յանձնեաց անօրէն Սարգսին. և ինքն հաւատարիմ արամբք չոգաւ առ կայսրն 'ի չորրորդ ամի թագաւորութեան իւրոյ. յամի տ̃ն 1045 ։ Մոնոմախոս իբրև լուաւ զգալուստ Գագկայ ուրախութեամբ մեծաւ առաքեաց զմեծամեծ իշխանս ընդ առաջ նորա, որք մեծաւ փառօք ածին զնա առաջի կայսեր. որ յայնժամ մեծ պատիւ և սէր եցոյց նմա ։ Այլ զկնի աւուրց ինչ սկսաւ պահանջել 'ի նմանէ ըզքաղաքն Անի. և խոստանայր տալ նմա փոխանակ ըզՄալաթիա քաղաք փոքր Հայաստանու ։ Իսկ Գագիկ ամենևին չէառ յանձն տալ. մինչև կատաղեալ կայսեր արգել զնա չփախչիլ 'ի քաղաքէն. և ընդդէմ ահագին երդմանցն եդ զնա թշուառաբար 'ի բանտի 'ի կղզի ինչ Պօլսոյ ։

55. Անձկելի կալանաւոր եղև առիւծանման արքայն երբ փակեցաւ 'ի բանտի անդ. որ առ անհնարին տրտմութեան ոչ գիտէր զինչ առնել ։ Եդ միջնորդ զմեծամեծս, որպէս զի հաւանեցուսցեն զկայսրն, այլ չեղև հնար ։ Յիշեցուցանէր նմա զսոսկալի զերդմունսն զոր արարեալ էր. և թէ զիարդ խաբեաց զնա. մանաւանդ թէ զա̃ծ. և թէ այսպիսի անարգ կեղծաւորութեամբ որպէս արգել զինքն ընդդէմ կամացն Աստուծոյ. որ ոչ խաբի, այլ արդար է և արդարապէս հատուցանէ փութով ։

56, Ի զուր եղեն այս ամենայն արդարացի բանք Գագկայ, որ ջանայր զանխիղճ կայսրն 'ի խիղճ ածել. որոյ սիրտ քարացեալ էր շահատիրութեամբ. մանաւանդ՝ երբ զմտաւ ածէր զքաղաքագանձ ճոխութիւն և զմարդաշատ ընդարձակութիւն մայրաքաղաքին Անւոյ, այլ յայլմէ լինէր, թէ այս որպիսի յաջողութիւն իցէ, որ պատահեցաւ ինքեան: Մտամախոս հազիւ եհաս բաղձամեայ փափաքանաց. և զիարդ կարէր խորհել զարդարութիւն և երկնչել յանիրաւ երդմանցն կամ արձակել զԳագիկ 'ի բանտէն: Որ 'ի նեղ վայրի տագնապեալ իմանայր զինչ պատահեցաւ նմա հաւատալով սուտ բարեկամաց. ուստի արիւն նորա եռայր յերակունս, այլ զինչ շահ. զի յամենայն կողմանց պաշարեալ կայր, օգնութիւն խնդրէր յազգէ իւրմէ, այլ գտանէր զմատնութիւն: Յուսայր թէ գէթ իշխանք իւր երկուցեալ 'ի սոսկալի երդմանցն, զոր արարին առաջի Աստուծոյ, մնալ ունին հաստատ, և ոչ մատնեն զԱնի մայրաքաղաք: Սակայն այն երդումն եղեալ էր միայն 'ի կորուսանել զնա, և ոչ պաշտպանել. ջան նոցա էր առ 'ի ձգել զնա յորոգայթ, և ոչ ազատել: Կարծէր ողբալին, թէ գէթ վասն օգտի իւրեանց ջանահնար լինին չմատնել անարգութեամբ 'ի ձեռս Յունաց: Բայց այն երդմնազանց ուխտադրուժք այնպէս կուրացեալ էին չար նախանձու, զի կամէին յաւէտ գերի լինել Յունաց՝ քան ազատութեամբ ունել ըզթագաւորութիւն: Ուստի բարւոք ասաց Իգնատիոս Վարդապետ. * Չար է նախանձ. և որք նովաւ վա-
,, րակեալ են, չածեն ինչ 'ի պատշաճիցն զմտաւ ||:

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՏՆՈՒԹԻՒՆ ԱՆԻՈՅ

57. Իշխանք Անւոյ իբրև լուան զկալանաւորիլ արքային՝ խռովեցան, և ոչ գիտէին, թէ զինչ արասցեն. քանզի որք դաշնադիր էին ընդ կայսեր, ստիպէին զայլս միանալ ընդ նոսա և մատնել զքաղաքն: Իսկ այլք յիշելով զսարսափելի երդումնն՝ զոր արարին, ընաւ ոչ հաւանէին նոցա: Յայսմ մեծի շփոթութեան անօրէնն Սարգիս կեղծուպատիր բանիւք որսաց 'ի կողմն իւր զայլ իշխանսն: Նոյնպէս և Պետրոս կաթուղիկոս

հաւանեցոյց զամենեսեան տալ կայսեր զԱնի քաղաք, և յանձնել Յունաց զտէրութիւն Հայոց, և մի՛ մնալ այնպէս երերեալ և անգլուխ։ Այսմ վնասակար խորհրդոյ հետևեցան ամենեքեան և միաբան գրեցին թուղթ առ արևելեան իշխանն Յունաց, խոստանալով թէ մեք պատրաստ եմք տալ կայսեր զԱնի. միայն թէ պաշտպանեսցէ զմեզ ՚ի թշնամեաց։ Զկնի այսորիկ ապա Սարգիս ընդ իւր համախոհից առաքեաց առ կայսրն զբանալիս Անւոյ և թագաւորական պալատին, գաղտ ՚ի կաթուղիկոսէ և ՚ի բարեպաշտ նախարարաց։ Նաև գրեաց թուղթ, թէ այսուհետև ձեր է Անի և բոլոր Հայաստան։ Եւ այսպէս յետ մատնելոյ զայն պանծալի քաղաք և տէրութիւն՝ գնացին իւրաքանչիւր ՚ի տեղիս իւրեանց։ Այսպէս է ահա գործ տիրանենգութեան. այսպէս նախանձ և ատելութիւն. որ այնպէս կուրացուցանեն զմարդ, զի զտունն և զտէրութիւն իւր կամակար կորուսեալ ինքնամատն գերի լինի օտարաց, և ոչ իմանայ զկորուստ իւր։ Եղկելի արքայն ՚ի մէջ բանտին կաշկանդեալ ոչ ինչ վերջանայ մաքառել ընդ թշնամեաց գէթ բանիւք. որպէս զի ազգն մի՛ լիցի գերի Յունաց, և մի՛ կործանեսցի տէրութիւնն։ Իսկ անպիտան իշխանք գուն գործեն կործանել և զազգն և զաշխարհն յազատութեան իւրեանց։

58. Արդ՝ կայսրն Մոնոմախոս իբրև ետես զբանալիս Անւոյ, ուրախացաւ ուրախութիւն մեծ. զի բազում աշխատանաց պէտս ունէր առ ՚ի տիրել այնր մեծի մայրաքաղաքին։ Եւ առ ՚ի կործանել զտէրութիւն այնպիսի զօրեղ ազգի և քաջ թագաւորի՝ զբիւրաւոր զօրս և զբազում գանձս ունէր վատնել։ Եւ ահա ինքեանք առաքեն զբանալիս, և զիարդ ոչ ունէր նա և իւրքն իրաւունս խրախանալոյ ընդ անակնկալ դիպուածն ընդ այն։ Ուստի կայսրն ընդ առնուլն զբանալիս Անւոյ՝ ետ բերել առաջի իւր զարքայն Գագիկ, և ցուցեալ նմա զայնս՝ ասաց. Այժմ զի՞նչ ինչ ունիս ասել. ահա նախարարքն ետուն ինձ զԱնի ընդ բոլոր Հայաստանեայց։ Գագիկ իբրև ետես զայն, յոգւոց եհան ասելով. աստուածային ահեղ դատաստանին թողում զիմ մատնիչ դաւաճանօղս. թո՛ղ արդար դատաւորն տեսցէ զիմ դատաստան։

59. Ապա դարձեալ առ կայսրն ասաց, դիցուք թէ

նոցա տուեալ իցէ . մի թէ դու կարես արդարու-
թեամբ տիրել : Ասէ կայսրն . նոցա եսուն , հարկ է
զի և ես առից : Պատասխանի ետ Վահանիկ . նոցա ոչ
Յունաց տէր են , և ոչ Հայաստանեայց . ես միայն եմ
տէր հանդերձ իշխանօքս . երբ ես ոչ տամ հանդերձ
նոքօք , և ոչ տաց բնաւ , դուք ոչ կարէք իրաւամբք
առնուլ : Սուտ զայն , զի շատք 'ի նախարարաց չեն
միաբան ընդ նոսա , այլ ընդ իս են . ապա զիարդ կա-
րէք ժառանգել զտէրութիւնս և զքաղաքս այլոց . և
ճուր է ձեր արդարութիւն : Ասաց կայսրն . բաւական
է , զի այնչափ նախարարք միաբանեալ՝ եսուն հանդերձ
նամակաւ Յովհաննու արքային , որ տէր էր Յունաց , և
յօժարակամ ետ մեզ : Ետ պատասխանի Վահանիկ . այ-
դոքիկ նախարարք առանց հաւանութեան թագաւո-
րին չեն կարող տալ զթագաւորական քաղաքն , և ոչ
իսկ թագաւորն կարող է տալ առանց հաւանութեան
նախարարաց : Որանգի թէպէտ քաղաքն ասի թագա-
ւորին , այլ զճշմարիտն խօսելով՝ բոլորին է ազգին :
Եթէ Յովհաննէս թագաւորն ետ զայն , և եթէ նա-
խարարք , միշտ անիրաւ է՝ երբ չիք հաւանութիւն յեր-
կուց կողմանց . յայնժամ նախարարք չունէին հաւա-
նութիւն , և այժմ թէ և նոքա եսուն զամանալիս , այլ
թագաւորն չունի հաւանութիւն , որ ես եմ : Յայն-
ժամ սկսաւ կայսրն սաստիկ իմն նեղել և ստիպել զար-
քայն հաւանիլ . իսկ նա կրկնեաց քաջութեամբ : Ար-
դար իրաւամբք ես եմ ժառանգ թագաւորութեան
Հայոց . և մեք արեամբ մերով առեալ եմք զայն 'ի
թշնամեաց . ես չեմ իսկ մնասակար կայսերութեան
ձերում . նաև ամենևին չունիմ կամս և ոչ հաւանու-
թիւն՝ տալ ձեզ զայն : Ապա ուրեմն ընդդէմ հաւա-
նութեանս չէք կարող արդարութեամբ յափշտակել
զիմ թագաւորութիւն յինէն :

60 . Այլ քանզի կայսրն Ջանահնար լինէր առնուլ
զհաւանութիւն յարքայէն Հայոց , որպէս զի իրաւամբք
տիրող լիցի թագաւորութեանն , նմին իրի յերկարել
խօսակցութեանց՝ ասէ կայսրն . թէպէտ և դու էիր
ժառանգ թագաւորութեան Հայոց , սակայն հօրեղ-
բայր քո զրկեաց զքեզ 'ի ժառանգութենէ՝ տալով
մեզ զԱնի : Ետ պատասխանի Վահանիկ . հօրեղբայր
իմ չունէր բնաւ իրաւունս զրկելոյ զիս . ապա և ոչ

դու ունիս իրաւունս ժառանգելոյ զիմ թագաւորու-թիւն ։ Եթէ դու լինէիր 'ի տեղի իմ, և նախորդն քո Մ՝իխայէլ կայսր խոստանայր տալ այլում զկայսերա-նիստ քաղաքդ առանց հաւանութեան իշխանաց և ազ-գին, այժմ կարէ՞ր առանց հաւանութեան քո տիրել այսմ քաղաքի, և ժառանգել զայն արդարութե՞ ։ Ո՛չէ կայսրն, թէ ոչ երբէք կարէր առնուլ ։ Ո՛չէ Գ՝ագիկ, ապա դու ո՞րպէս կարես պահանջել և առնուլ զԱ՛նի առանց իմոյ հաւանութեան. որոյ իսկապէս ժառանգ և թագաւոր ես եմ ։ Իսկ եթէ կամիս բռնութեամբ յափշտակել, կարող ես. և ոչ ոք ունի ասել ինչ. ո-րովհետև իշխանք իմ նենգեցին ինձ, և դու խաբէա-կան երդմամբք կոչեցեր զիս աստ. սակայն եթէ քա-ջութեամբ կամիցիս առնուլ, ահա պատրաստ եմ ։

61. Գ՝ագիկ թագաւոր այսպիսի քաջութեամբ խօ-սելով ել արտաքս վշտալի և անհնարին բարկութեամբ ։ Բ՝այց զինչ շահ, զի 'ի նեղ անկեալ էր, և 'ի ձեռս ա-րանց անիրաւաց մատնեալ կայր. արդարութիւն խնդ-րէր ուր ոչ գոյր արդարութիւն, նորին աղագաւ և ոչ իսկ լսելի եղեն արդարացի բանք և բողոքք նորա. զի նոքա ոչ զարդարութիւն, այլ զթագաւորութիւն նո-րա խնդրէին ։ Յաղագս որոյ այլ ոչ կարաց տանել վշտատես արքայն. ել արտաքս յերեսաց անիրաւ կայ-սեր ։ Գ՝իտաց թէ այնուհետև չիք հնար, այլ միայն լսել և ապաւինել յարդարադատն Աստուած ։

Այո՛ բազում ինչ խորհեցաւ լայնախորհուրդ քաջն այն. այլ ոչ կարաց ելի հնարս գտանել՝ ոչ զանձն ա-զատելոյ և ոչ զթագաւորութիւնն 'ի ձեռաց թշնա-մեաց ։ Ապա այնուհետև սկսաւ յուսակտուր լինել, մանաւանդ երբ զմտաւ ածէր, թէ մատնութեամբ իշ-խանաց իւրոց յայն դառնութիւն անկեալ կայր ։ Ուս-տի կամայ ակամայ հաւանեցաւ տալ կայսեր զարքայա-նիստ քաղաքն Անի ։ Իսկ կայսրն թուղթ առեալ 'ի նմանէ՝ ետ փոխարէն քանի մի վայրս 'ի կողմն Կապա-դովկիոյ. նաև մեծ պալատ մի 'ի մէջ Կոստանդինու-պօլսոյ ։

62. Այլ քանզի ծանր և դժուարին է քաջ տանու-տերանց թողուլ զտէրութիւն իւրեանց՝ անկանիլ ընդ տէրութեամբ այլոց, և 'ի սահմանս թշնամեաց դան-դաղել ։ Արդարև ծանր եղև և դառն Գ՝ագկայ արքայ-

ին երբ եւս զինքն զրկեալ 'ի թագաւորութենէ, պանդուխտ տատանեալ 'ի մէջ Յունաց, ուր ոչ ուրեք կարէր լինել գոհ և հանգիստ: Նա կարի խիստ քաջ. քանզի որ յինքնարձակութեան աշխարհին Հայոց իբրև զառիւծ գոչէր և զաշխարհ դողացուցանէր, այժմ իբրև անզօր եղկելի աստանդական տատանի, որով և զիւր գեղածաղիկ հասակ քանևերկամեայ հաշէր և մաշէր ողբալով: Վասն զի քաջ գիտէր, թէ այլ ոչ ևս ունի յինքն դառնալ թագաւորութիւն իւր, և ոչ ազգն ազատանալ 'ի գերութենէ անտի: Մանաւանդ մեծապէս մորմոքէր 'ի վերայ սիրելւոյն իւրոյ գեղեցկաշէն Անւոյ, որ այնպէս չարաչար մատնեցաւ. բայց սակայն 'ի զուր վշտանայր. զի մատնիչք էին բուն իշխանք իւր, և յափշտակօղն էր կայսր:

## ԱՌԱՋԻՆ ԱՌՈՒՄՆ ԱՆԻՈՅ

63. Յամի Տեառն 1046. Մոնոմախոս յետ առնլոյ հաւանութիւն 'ի Գագկայ՝ առաքեաց զՄիկողայոս զօրապետ իւր 'ի Հայաստան բազում զօրօք և նամակաւ Գագկի արքային, որպէս զի տիրեսցէ Անւոյ. նաև մեծամեծ պարգևս առաքեաց Պետրոսի կաթուղիկոսի: Զայն իբրև լուաւ Ապիրատ իշխան, որ վերակացու էր քաղաքին, բնաւ ոչ հաւանեցաւ տալ. և ասէր ցՅոյնս, թող եկեսցէ տէր քաղաքին և տացէ ում և կամիցի. մեք մինչև ոչ տեսցուք զնա, ոչ տամք զքաղաք նորա: Զայս բան լուեալ Յունաց՝ չարաչար կատաղեցան, և պաշարեալ զքաղաքն՝ սկսան պատերազմիլ: Իսկ Հայոց տեսեալ զանիրաւ բռնութիւնս Յունաց, սկսան աղաղակել, և ձայն տուեալ միմեանց անհնարին բարկութեամբ ելին արտաքս 'ի քաղաքէն, հարին չարաչար և խորտակեցին զբանակս նոցա, և հալածեալ վանեցին 'ի սահմանաց իւրեանց:

64. Այսպէս է հաւատարիմ միաբանութիւն, և գովելի ջանք ազատութեան հայրենեաց. զի թէ և անձինք սակաւ իցեն, այլ միաբանութիւնն պաշտպան լինի և տանի զյաղթութիւն 'ի ձեռն աստուածային նախախնամութեան: Սակայն ուր չիք միաբանութիւն և հաւատարիմ ծառայութիւն, տեղի տայ աստուածայ-

էին յաջողութիւնն, և լքեալ խորտակի սիրտ քաջաց. որպէս դիպաւ հայրենասէր Անեցւոց։ Որք թէպէտ անպարտելի քաջութեամբ հալածեցին զթշնամիս, բայց իբրև տեսին, թէ իշխանք և նախարարք իւրեանց մատնիչ լինէին թագաւորութեան, և թագաւորն գերեալ կայ յանդառնալի օտարութեան, յայնժամ ապա ինքեանք ևս լքեալ լուծեալ՝ ողբս 'ի բերան երթային զունդ գունդ 'ի վերայ գերեզմանաց Բագրատունի թագաւորաց, և անկեալ գոչէին, լային, և ցաւագինս անիծանէին զնոսա, որք պատճառ եղեն այնչափ աղէտից, և մեծի կործանման ազգին, և թագաւորութեան Բագրատունեաց։

Ապա այնուհետև ուժաթափ եղեալ՝ գիտացին թէ հեռացեալ է 'ի նոցանէ ոգի միաբանութեան զոյգ ընդ աստուածային յաջողութեան. ուստի հոգային զի գէթ մի կործանեսցի մեծագործ մայրաքաղաքն Անի դառն պատերազմաւ. գրեցին առ Ասիտ յոյն իշխան, որ եկն էառ խաղաղութեամբ զԱնի, սէր բազում ցուցեալ Հայոց։

65. Սակայն աստուածային բարկութիւնն անդէն և անդ եհաս. որովհետև մարդիկ չկամեցան վրէժխնդիր լինել անիրաւաց և պաշտպանել զհայրենիս, տարերք եղեն վրէժխնդիր։ Ուստի 'ի նոյն աւուրս այնպիսի ահագին երկրաշարժութիւն եղև անդ, մինչև անկան կործանեցան մեծաշէն պալատք և եկեղեցիք. երկիրն եբաց զբերան և եկուլ զբազում մարդիկ, որք 'ի ներքուստ անտի ողորմելի աղաղակէին. իսկ այլք տատանեալ կային։ Արդ՝ Մոնոմախոս կայսր և տէրութիւն Յունաց հանգեան 'ի հոգոց. և խրախուսութեամբ զուարճանային 'ի վերայ անիրաւ յափշտակութեանն։ Իսկ այնուհետև տիրեցին բոլոր կողմանցն այնոցիկ, եւս և ողջոյն Հայաստանեայց. բայց և այնպէս թողին զեղկելի ազգն Հայոց անտէր և անօգնական։ Որոց պարտ էր զմտաւ ածել, թէ անիրաւ վաստակ գիտէ կորուսանել և զարդար վաստակս, և անիրաւ ուրախութիւն փութով փոխի 'ի տրտմութիւն. որպէս պատահեցաւ նոցա։ Քանզի յետ ոչ բազմաց Յոյնք կորուսին ոչ միայն զոր առին 'ի Հայոց, այլև զիւրեանց իսկ սեպհական քաղաքս։

66. Իբր զի՝ կայսրն զկնի տիրելոյ Անւոյ առաքեաց

զօրս 'ի վերայ Ապուսուար Պարսիկ իշխանին Դվնայ, որպէս զի ստիպեսցէ զնա դարձուցանել առ Յոյնս որչափ ինչ տեղիս առեալ էր 'ի Հայոց, իբր մասն յինք տէրութեան։ Բայց Յոյնք այնպէս չարաչար խորտակեցան յերեսաց Պարսից, զի սակաւ ոմանք զերծան։ Այլ նա անդէն առաքեաց զօրս, նոքա եւս խորտակեցան 'ի Պարսից։ Մինչ զի Այլազգիք միացեալք ընդ Պարսից դիմեցին 'ի սահմանս Յունաց, եւ անհնարին վիշտս հասուցին քրիստոնէից. քանդեցին զեկեղեցիս եւ զերեւելի պալատս. ուր եւ թաղումն նահատակեցան. յորոց մի էր եւ ծերունին Վահրամ Պահլաւունի. որ ութսնամեայ գոլով մեծաւ քաջութեամբ կատարեցաւ. զորմէ այսպէս գրէ Արիստակէս Վարդապետ * Վահրամ այր հզօր եւ անուանի. եւ բարեպաշ-
„ տութեամբ յոյժ վեհ, որպէս թէ ոչ ոք հաւասար
„ նմա, Պահլաւ ... մեծ սուրբ հաւատոյ Հայոց ‖։

67. Յորչափ կենդանի էր մեծն Վահրամ, Յոյնք ակնածեալ 'ի նմանէ՝ ոչ այնչափ հարստահարէին ըզՀայս. այլ զկնի մահուան նորա սկսան անարգանօք նեղել զնոսա։ Եւ որպէս ջանահնար եղեն բառնալ յԱնւոյ զԹագաւորութիւնն, նոյնպէս ջանային բառնալ զկաթուղիկոսութիւնն Հայոց. ուստի զկնի Սմբատայ իբրեւ նստաւ Կամենաս վերակացու յԱնի՝ սկսաւ նախատանօք վարել ընդ Պետրոսի կաթուղիկոսին, եւ ապա գրեաց ամբաստանութիւն զնմանէ առ կայսրն, որպէս թէ կամի ապստամբեցուցանել զՀայս։ Յետոյ հրամայեաց նմա երթալ նստիլ 'ի Կարին, անտի եւս վարեալ եդին 'ի բերդն Խաղտոյ իբրեւ բանտարգեալ։ Բայց կայսրն ետ տանել զնա 'ի Կոստանդնուպօլիս, եւ պատուիրեաց նստիլ պատուով յառանձնութեան. զի ըստ Լաստիվերտցւոյն * Կասկածէր, թէ գուցէ
„ երթեալ ապստամբեցուցանէ զԱնի ‖։ Ապա միջնորդութեամբ Գագիկ արքային հրաման եղեւ նմա նստիլ 'ի Սեբաստիա մինչեւ մեռաւ անդ։

68. Անդուլթ կայսրն հազիւ հրաման ետ Գագկայ ելանել 'ի Կոստանդնուպօլսոյ եւ նստիլ 'ի Պիզա քաղաք, զոր ետուն նմա փոխանակ Անւոյ։ Անդ կառոյց վանս եւ յաճախ երթայր եւ լայր 'ի վերայ ազգին Հայոց, որոյ եղեն եւ երկու որդիք Յովհաննէս եւ Դաւիթ։ Ահա այսչափ է ժանտ զօրութիւն անմիաբանութեան,

որ աներկայթ կապէ զառիւծանմանս քաջս, և խաղաղիկ առնէ անպիտան ազգաց ըստ նմանութեան Սամփսոնի. որոց ամբակուռ ոսկերք մաշեալք յընդունայնութեան՝ անկան 'ի քաղաքս Յունաց:

## ՄԱՀ ԳԱԳԻԿ ԹԱԳԱՒՈՐԻՆ

69. Մոնոմախոս կայսր և ամենայն իշխանք նորա յետ զրկելոյ զՀայս յամենայն իշխանութենէ՝ սկսան այնուհետև աւելի ևս չարանալ ընդդէմ Հայոց. մինչև ջանային ջնջել և զամենայն իշխանս նոցա: Ուր ուրեք տեսանէին զերևելի Հայ իշխան, զհետ պնդէին 'ի ձեռս բերել խաբէական երդմամբք և մեծամեծ խոստմամբք. զորս և զրաւէին 'ի կենաց: Տեսեալ Գագկայ զայսպիսի աղէտս՝ ջանայր թողուլ զՅունաստան և անցանել առ Պարսիկս, որպէս զի կարասցէ տիրել Հայաստանու: Բայց իշխանք Հայոց կուրացեալք նախանձու՝ ամենևին ոչ կամեցան ձեռնտու լինել նմա (84):

70. Մարկոս Մետրապօլիտ Կեսարիոյ այնչափ ատելութիւն ունէր ընդդէմ Հայոց, մինչև զիւր մեծ շուն անուանէր Տ̃րն, որում չհանդուրժեալ Գագկայ՝ չոքաւ 'ի Կեսարիա առ Մետրապօլիտն հանդերձ ծառայիւք, որ և պատուեալ զնոսա առ երեսս ընկալաւ. իբրև խրախացան 'ի խնջոյս, Գագիկ ետ բերել զշունն և եհարց թէ սա Տ̃րն կոչի. ասէ Մարկոս յանդգնութեամբ, թէ դեռ տղայ է վասն այնորիկ Տ̃րն կոչեմք: Յայնժամ բարկացեալ արքային հրամայեաց ծառայից իւրոց դնել զշունն և զՄարկոս 'ի պարկի, որ խեղդամահ եղև 'ի գազանէ անտի: Զայն լուեալ Յունաց՝ այնչափ կատաղեցան, մինչև յամենայն վայրս եդին դարանակալս սպանանել զԳագիկ:

71. Իսկ նա թէպէտ զգուշութեամբ շրջէր 'ի մէջ Յունաց, սակայն յաւուր միում եթող զարս իւր յայլ ուրեք, և ինքն երիւք ևեթ չոքաւ մերձ առ բերդն Կիզիստրայի: Տեարք բերդին երեք եղբարք որդիք Մանտալէի իբրև գիտացին թէ Գագիկ անդ է, եդին 50 արս 'ի դարանի. և ինքեանք յառաջ մատուցեալք երկիր պագին արքային, և խօսելով ընդ նմա՝ բերին

ուր էին թագուցեալ դարանակալք, որք յանկարծ ելեալ կալան զԳագիկ, և կապեալ եդին 'ի բերդի անդ։ Թէպէտ Հայ իշխանք ժողովեցան անդ և պատերազմեցան, զի կարասցեն առնուլ զԹագաւորն. սակայն անօրէնք սպանին զնա չարաչար տանջանօք, և կախեցին զմարմին նորա ընդ պարիսպն. և ապա Թաղեցին արտաքոյ բերդին. զոր ապա անեցի Հայ մի գողացեալ անտի թաղեաց 'ի Պիզու։

72. Նոյնպէս թշուառաբար վերջացաւ Թագաւորութիւն Բագրատունեաց յամի 1079. և յայնժամ Գագիկ էր 55 ամաց, որ զերիս ամս եւեթ թագաւորեալ էր, և 35 ամս թափառական կայր 'ի Յունաստան։ Նորդ՝ մեր դարձ արարեալ 'ի Հայաստան տեսցուք թէ յինչ վիճակ հասեալ կան անտէր և անգլուխ Հայք. քանզի Յոյնք կարծէին թէ բառնալով զքաջս Հայոց՝ ինքեանք զօրաւոր լինին, և ոչ գիտէին թէ այն անպարտելի քաջք էին եւեթ պատսպարան ընդդէմ թշնամեաց։ Իբրև նոքա տեղի ետուն, այլազգիք զօրացան, և յամենայն կողմանց դիմեալ 'ի Հայաստան՝ ոտնակոխ արարին, և հալածեալ զՅոյնս գերի վարեցին զբնակիչս. յորոց վերայ այսպէս ողբայ Արիստակէս վարդապետ։

* Այսպէս մնացեալ եղաք 'ի ձեռս արանց չարաց
„ և անօրինաց, և ոչ եղև մեզ այցելութիւն 'ի Տնէ...
„ Աշխարհ ամենայն 'ի խաղաղութեան բնակէ, և մեք՝
„ գերիք և կալանաւորք, սրակոտորք, տնաւերք և
„ յընչից կողոպտեալք... Մարգարէքն քանի՛ սպառ-
„ նական բանս մարգարէանային, որ յետ ժամանակաց
„ լինելոց էր. ժողովուրդն ընդ այս դժկամակ լինէին։
„ Իսկ ես ոչ թէ սպառնալեաց եմ քարոզ, այլ զե-
„ ղեալ և զ'ի գլուխ ելեալ իրս պատմեմ. որպէս զի
„ ամենեցուն՝ որք լսիցեն, շարժեսցի արտասուս, թէ
„ որքան դառն ժամանակի հանդիպեցաք"։

73. Յամի Տեառն 1046. երբ տիրեցին Յոյնք Անւոյ, գտին զայն լի ամենայն ճոխութեամբ և բարեշինութեամբ. որք թէպէտ ոչ կողոպտեցին զքաղաքն և ոչ քանդեցին զշինութիւնս, բայց հեռացուցեալ անտի զօրաւոր իշխանս Հայոց՝ տկարացուցին, և 'ի տեղի նոցա Յոյնք մտին. որպէս զի ապահով լիցին: Այլ զայն ոչ զմտաւ ածին, թէ 'ի պակասել զօրաւորաց՝ անզօր մնայ քաղաքն և զօրանան թշնամիք. որով և անիրաւութիւն իւրեանց պատուհասի յԱրարչէն. որպէս և եղեն իսկ:

74. Քանզի յամի Տեառն 1064. Թագաւորն Պարսից Ալփասլան, որ առ նոսա գրի Ըւղղարըղան, այսինքն Հզօր առիւծ, բազմութեամբ զօրաց դիմեալ յաշխարհ Արարատեան՝ներկեաց զերկիրն արեամբ բնակչաց. և նովին բռնութեամբ եկն եհաս 'ի Շիրակ գաւառ, և եդ զբանակն հանդէպ Անւոյ. որոյ իշխան 'ի կողմանէ Յունաց էր Բագրատ դուքս հայ ազգաւ, և երկրորդ նորա էր Գրիգոր վկայսէր: Ալփասլան տեսեալ զահեղ բարձրութիւն քաղաքին և զպարսպացն ամուր շինուածս և բուրգս, զոր կանգնեալ էր Սմբատ տիեզերակալն, շուարեցաւ 'ի միտս. զոր և պաշարեալ աւուրս ինչ՝ եսես թէ չիք հնար բռնութեամբ և պատերազմաւ առնուլ, յառաջ մատոյց զնախիչս զննել, թէ ընդ որ կողմն կարէին արդեօք պատերազմել: Տեսեալ նոցա թէ յամենայն կողմանց անառիկ էր, և միայն 'ի միոջէ կողմանէ կարէին մարտնչել, և այն յոյժ դժուարաւ, հրամայեաց, զի ընդ այն կողմն ուղղեսցեն զպատերազմական գործիս բազում, որ ահագինն էր մեծաւք: Իսկ քաղաքացիքն իբրև տեսին զայնչափ անթիւ բազմութիւն թշնամեաց շուրջ զքաղաքաւն՝ զահի հարան. զի չէր նոցա տեսեալ զայնպիսի ինչ, և ոչ իսկ ունէին պատրաստութիւն պատերազմի. և չէին 'ի միջի քաջ պատերազմականք: Թէպէտ քաղաքն էր անառիկ. բայց զինչ օգուտ անտի երբ չիք զօրութիւն: Նմին իրի յերկիւղ մահու ըմբռնեցան Անեցիք. մանաւանդ երբ տեսին զայն մեծ մեքենայ կանգնեալ հանդէպ քաղաքին: Առաւել ևս զարհուրեցան, երբ սկսան Պար-

տիկք այնու բաբանաւ ձգել զմեծամեծ քարինս 'ի պա-
րիսպն քաղաքին. և առ ահին առ Աստուած աղաղա-
կէին։ Իսկ Բագրատ դուքս ժողովեալ զզօրաւորս
քաղաքին՝ պատերազմէր քաջութեամբ 'ի ներքուստ
անտի սատակելով զբազումս 'ի թշնամեաց։ Սակայն
բաբան յաճախ ձգեալ զքարինս վտանգեաց զայն կողմն
պարսպին. և Բագրատ արձանացեալ անդ պատերազ-
մէր, և դիմադարձէր բռնութեանց նոցա։

75. Ընդ առաւօտն յառաջ քան զծագումն արեւու
դարձեալ սկսան Պարսիկք հարկանել բաբանաւ զնոյն
կողմն, մինչև անկաւ մասն պարսպին։ Պարսիկք աղա-
ղակէին առ հասարակ ցնծութեամբ. զի կարծէին դիւ-
րութեամբ մուտ ունել 'ի քաղաք անդր։ Իսկ քաղա-
քացիք երկնչէին, մի գուցէ և այլ կողմանք պարսպին
նոյն օրինակ անկցին։ Յայնժամ Ալփասլան սրտապըն-
դեաց զզօրս իւր. ամենեքեան անդ դիմեցին, և ջա-
նային 'ի ներքս անկանել՝ բայց պատառուածն գոլով
նեղ և դժուարակոխ՝ անկարանային։ Իսկ քաղաքա-
ցիք տեսեալ՝ թէ կարեն վանել զնոսա, ամենայն զօ-
րութեամբ մարտ եդեալ՝ զբազումս դիաթաւալ առ-
նէին։ Ալփասլան գիտաց, թէ անհնարին է առնուլ
զայն քաղաք ոչ 'ի պատառեալ կողմանէ, և ոչ յայ-
լում մարթ է պատերազմել բաբանաւ։ Ուստի հրա-
մայեաց զօրաց իւրոց դադարել 'ի պատերազմելոյ և
դառնալ յետս։ Այլ որպէս Պարսիկք, նոյնպէս և
տկարամիտ իշխանք Անւոյ յուսահատեալ երկնչէին
յառաջ մղել զպատերազմն, և անարի սրտիւ պաշա-
րեալ կային, կարծելով, թէ պարսիկք անդրէն ունին
պատերազմել։

76. Ուստի խորհեցան կամ մտանել 'ի ներքնաբերդն
ամրանալ, կամ փախչել, և կամ տալ խաղաղութեամբ
զքաղաքն 'ի ձեռս Պարսից. որոց տեսեալ զահեղ շի-
նուածս քաղաքին՝ կարծէին թէ գոյ անդ հոգի հսկա-
զուն քաջաց, և ազգասէր որդիք նախնեաց, որք ե-
լեալ արտաքս 'ի քաղաքէն կոտորեն զնոսա։ Այլ ոչ
գիտէին թէ չէր մնացեալ այնպիսի ոք. այլ քանի մի
անզօր Յոյնք, և յունացեալք ոմանք. որք չէին
կարօղ զայն անառիկ բերդաքաղաք պաշտպանել, որ
ինքնին պաշտպանեալ էր մեծագործութեամբ մեծին
Սմբատայ։ Թող զի քաջ և ամուր քաղաքն քաջ քա-

զքաղաքացի և քաջ պատերազմօղ խնդրէ. առաւել է իմաստնոց, թէ նետոք 'ի գիրկս կորովեաց խնդրեն 'ի դըրկացն զօրութիւն :

Բայց զարմանալին այն է, զի Յոյնք անչափ ջանահնար եղեն առնուլ զԱնի, ոչ յաստուածային արդար դատաստանացն երկուցեալ, և ոչ դառն գերութեամբ քրիստոնէից 'ի գութ շարժեալ : Իսկ այժմ այնպիսի դիւրութեամբ որոշեցին տալ զայն 'ի ձեռս թշնամեաց, որք արդէն սկսեալ էին դառնալ հեռու և փախչիլ : Այսպէս անիրաւ վաստակն փութով կորնչի. և անիրաւ շահօղն պարտական մնայ աստուածային արդարութեան յաւիտեան :

77. Արդ՝ այն տկարամիտ իշխանք Յունաց այնու վատ խորհրդով մտին 'ի ներքնաբերդն ամրացան հանդերձ զօրօք : Իսկ եղկելի քաղաքացիք, որք զայնպիսի անարի պատերազմօղս չէին տեսեալ, իբրև գիտացին զփախուստ իշխանաց 'ի ներքնաբերդն՝ խռովեալ առհասարակ աղաղակէին : Ապա իբրև տեսին, թէ պարսիկք հեռացան 'ի քաղաքէ անտի, ժամանակ է առեն փախչելոյ. և այսպէս սկսան 'ի միւս կողմանէ փախչիլ. և մինչև յիսուն հազար անձինք ելեալ արտաքս ցրուեցան : Իբրև լուան մնացորդք զօրաց Պարսից ըզշփոթ աղաղակի Անեցւոց և զփախուստն՝ զարմացան : Ապա ոմն 'ի նոցանէ մերձեցեալ 'ի քաղաք անդր և իմացեալ եհաս և պատմեաց այլոց. և ոմանք առաջարեալ ծանուցին Ալփասլանին. և այլք 'ի ներքս մտեալք ընդ պատառուածն, և յափշտակեալ զմանկիկ մի 'ի գրկաց մօրն տարեալ ցուցին Ալփասլանին ասելով՝ թէ քաղաքն մատնեցաւ 'ի ձեռս մեր :

78. Ալփասլան 'ի սկզբան անդ ոչ հաւատաց. այլ իբրև ետես զողջոյն հաւատաց և ասէ, թէ * Աստուածն նոցա մատնեաց զնոսա այսօր և զմեծ քաղաքս Անի 'ի ձեռս իմ || : Ապա փութացեալ դարձոյց զզօրս իւր, որք մտին անաշխատ յԱնի նման ահագին հեղեղաց, և սուր 'ի ձեռին սկսան չարաչար կոտորել զքաղաքացիս անհնարին կատաղութեամբք՝ ըստ որում հարուածեալ էին 'ի նոցանէ ինքեանք. և փողոցք քաղաքին լի եղեն արեամբ, և ներկեցաւ ջուր Ախուրեան գետոյ : Ապա այնուհետև սկսան Պարսիկք խորտակել զզարդս մեծամեծ պալատից, և մտեալ 'ի ներքս յափշտակէին

զամենայն ինչս. զաղջկունս և զմանկունս գերէին, և զայլս կոտորէին անխնայ. իսկ զիշխանս չարաչար տանջանօք չարչարէին և կտրատէին զանդամս, զի ցուցցեն զտեղի գանձուց իւրեանց: Այնպէս զի՝ ամենայն անկիւնք քաղաքին լցան դիակամբք:

79. Ապա սկսան կոտորել և զդրունս եկեղեցեաց, պղծեցին զսուրբ տաճարս, և զքահանայս զոմանս 'ի հուր այրէին, և զայլս անտանելի տանջանօք չարչարէին, զի ցուցցեն զտեղիս գանձուց եկեղեցեաց. զոմանս մորթեղերծ առնէին, և զայլս չարաչար խեղդէին: Մերկացուցեալ կողոպտեցին զամենայն եկեղեցիս և զամենայն պալատս: Ոմն 'ի Պարսից ելեալ ընդ ծածուկ ճանապարհ մեծի եկեղեցւոյն եհաս 'ի մեծ կաթուղիկէ գմբեթին, և բազում աշխատանօք կորզեաց և էարկ 'ի վայր զմեծագին մեծ խաչն արծաթի, որ եդեալ էր 'ի գագաթն. և անտի մտեալ 'ի գմբէթն, հատեալ էարկ 'ի վայր զմեծ ջահն ապակեղէն, զոր Սմբատ արքայ տուեալ էր բերել 'ի շինելն զեկեղեցին. ընդ որ տրտմեցաւ և Ալփասլան:

Եւ այսպէս ոչ միայն անդուլ կոտորէին զբնակիչս Անւոյ, այլև չարաչար քանդէին զգեղեցիկ գեղեցիկ շինուածս. մինչև երկինք եւս սկսաւ սուգ առնուլ, և յանկարծ մթագնեալ սարսափելի որոտմամբ այնպէս տարափեաց, մինչև լի եղև քաղաքն ջրով, և հեղեղեալ տարաւ զմարմինս անկելոց 'ի գետ անդր: Այս դիպուած թէպէտ դադարեցոյց զՊարսիկս 'ի կործանելոյ զքաղաքն, սակայն 'ի հեռանալ աւուրս անդրէն սկսան քանդել, և յամենայն վայրս մտեալ խուզել և յափշտակել զամենայն ինչս:

80. Այնուհետև սկսան պատերազմիլ ընդ ներքնաբերդին, ուր քաղաքապետ իշխանք ամրացեալ էին անարի ոգւով, և յանձնեալ զայն պահապանաց, որք ընդ ծածուկ ճանապարհ փախուցեալ էին. նմին իրի դիւրաւ մտին անդ Պարսիկք, և կալեալ զքաղաքապետս կապեցին, և զամենայն ինչս յափշտակեցին: Ապա հրամայեաց Ալփասլան, զի զմնացեալ հայ իշխանս ընդ այլ բազում գերեաց վարեսցեն 'ի Պարսկաստան, և զոմանս թողցեն անդ առ 'ի շինել զքաղաքն: Նաև յայլևայլ կողմանց ետ բերել զբնակիչս կործանեալ քաղաքին, և եդ զոմն Պարսիկ վերակա-

ցու 'ի վերայ նոցա հանդերձ զօրօք , և ինքն մեկնեցաւ անտի ։ Թողեալ էր յետ ոչ բազմաց անդէն լցաւ Անի բազմութեամբ բնակչաց , բայց զայն առաջին մեծութիւն և զփառս ոչ երբէք եգիտ . մանաւանդ թէ հեռաղհեալ է յաւելի իմն Թշուառ վիճակ անկաւ . մինչև բնակչաց լքեալ սկսան գունդ գունդ փախչիլ յայլ և այլ կողմանս աշխարհի ։

81 . Ահա 'ի սմին ժամանակի յամի տեառն 1062 . սկսան Անեցիք Թափառական գնալ դէպ 'ի Լեհաստան . որպէս ունիմք պատմել (162)։ Տէր Յովհաննէս յոյն պատմիչ ցաւելով 'ի վերայ Անւոյ ասէ . * Ահա
,, յայս վիճակ Թշուառութեան հասին սահմանք (հայ-
,, ոց ) , որք էին ընդ տէրութեամբ յունաց յասիա , և
,, յամենայն արևելս ։ Այնուհետև Յոյնք քաջ ծանեան զքաջութիւն և զխոհեմութիւն հայ Թագաւորաց , որք այնպիսի գազան Թշնամեաց յաղթել գիտէին ։ Իմացան ևս Թէ քանի դժուարին է արձանանալ 'ի բերան Թշնամեաց և վարել զԹագաւորութիւն ։ Բայց զինչ օգուտ , կորեաւ յափշտակեալն , և 'ի կորուստ մատնեցաւ ազգ Հայոց յետին Թշուառութբ ։ Փոխանակ զի ոչ գիտացին զյարգ իմաստուն և քաջ Թագաւորին . մատնեաց զնոսա Աստուած 'ի ձեռս անարի իշխանաց , որք յիմարութեամբ փախուցեալ 'ի ներքնաբերդն պատճառ եղեն կործանման քաղաքին , և այնչափ քրիստոնէից Հայոց և Յունաց ։ Սորին վասն դարձեալ ողբայ Արիստակէս վարդապետ ։

82 . * Դառն է ինձ պատմութիւնս , և բազում ող-
,, բոց արժանի . աշխարհ՝ որ երբեմն ժամանակաւ իբ-
,, րև զդրախտ տնկախիտ առաջի իւր կանաչազեղ տե-
,, րևալից պտղաբեր գեղեցկաշուք և երջանիկ անցա-
,, ւորացն ցուցանիւր ։ Քանզի իշխանք նստէին յիշ-
,, խանական գահու զուարթահայեաց դիմօք , և զօ-
,, րացն զգարնանաբեր ծաղկանոցաց բերեալ զնմա-
,, նութիւն վառ'իվառ գունովք առաջի կացեալ , ու-
,, րախական երգոց և բանից միայն լինէին հանդէսք ...
,, Արդ այժմ Թագաւորն անկեալ 'ի պատուոյ իբրև
,, զգերի կալանաւոր նստի 'ի հեռաբնակ տեղիս ։ Այս-
,, պէս և հայրապետական աթոռն ամայացեալ 'ի բնա-
,, կողէն , ցուցանէ տխուր դիմօք իբրև զկին նորահարսն
,, մնացեալ յայրութեան ։ Հեծելազօրն անտերունչ

„ շրջեալ. ոմն 'ի պարս, ոմն 'ի յայնս, և ոմն 'ի վիրս։
„ Սեպուհ գունդն ազատաց եղեալ 'ի հայրենեաց, ան-
„ կեալ 'ի ճոխութենէ մինչեւ ուր և են... Նայժմ
„ ողբս փոխեցաւ մեզ ամենայն, և ուրախութեան պատ-
„ մուճանն այն յարքունազգեստ խորգ. փոխադրեցաւ։
„ Ո՛ր լսելիք տանիցեն զԹշուառութեանս մերոյ զպատ-
„ մութիւն։ Նուաղեցան գաւառք, և գնացին յաւար
„ տանին Պարսից և Յունաց. եղեն շինանիստ աւանք
„ բնակութիւն գազանաց, և անդաստանք նոցա յա-
„ րօտս երէոց։ Տունք ցանկալիք բարձրաձեղունք և
„ մեծամեծք՝ եղեն բնակութիւնք համբարուաց և ուշ-
„ կապարկաց... Մտին հեթանոսք 'ի տաճարն սուրբ,
„ և յաւարի տարան զանդաստանս նորա... և համբա-
„ ձակեցան յանմոտանելին, և պղծեցին ախորժ զարշա-
„ պարօք զսրբութիւնս նորա... հեղին զարիւնս ծա-
„ ռայից ա̃յ, որպէս ջուր... յամենայն տեղիս ողբք
„ և հառաչանք։ Եւ մեք չարագանեալք և կործա-
„ նեալք և տեսարան աշխարհի եղեալ, և չար պատ-
„ մութիւն Թողեալ զկնի մեր ազգաց յազգս»։

## ԵՐՐՈՐԴ ԱՌՈՒՄՆ ԱՆԻՈՅ

83. Յամի Տեառն 1072. այլազգ իշխանն Փատ-
լուն Ամիրայ լուեալ զշինութիւն Անւոյ՝ փափաքէր
առնուլ և վերստին ծաղկեցուցանել։ Ուստի ետ զանձ
բազում Ալփասլանայ Պարսից արքային և գնեաց զայն.
և եդ վերակացու անդ զԹոռն իւր Մանուչէ անուն։
Սա իբրև եհաս յորբանս՝ նորոգեաց զքանդեալ տե-
ղիս և զպարիսպս, և սկսաւ այնուհետև անդ հաւա-
քել զիշխանաւոր Հայս ցրուեալս աստ և անդ։ Որք
իբրև ժողովեցան անդ, սկսան քաղաքական ոգւով շա-
հել զիւրեարս, և խաղաղանալ փոքր ինչ ընդ ձեռամբ
այսր իշխանի։ Այս առաւել Անւոյ բարի եղև Անե-
ցւոց. զի արդարակորով իշխանն թէ և այլազգի, քան
զՅոյնս առաւել գութ էարկ 'ի վերայ Հայոց կողոպ-
տելոց 'ի Պարսից, և փոյթ մեծ ունէր շինել զքաղաքն։
84. Արդ՝ 'ի սմին ժամանակի սպանաւ Ալփասլան,
և որդի նորա Մէլիք շահ նստաւ թագաւոր Պարսից,
որ գոլով այր խաղաղասէր և քաղցրաբարոյ՝ ողորմ-

ցաւ Հայոց և 'ի խաղաղութեան եթող զՀայաստան : Յայնժամ դեռ կենդանի էր Գագիկ Թագաւոր, որ լուեալ զայս ամենայն յաջողութիւնս՝ վառեցաւ սիրտ նորա գնալ առ Մելիք շահ, և օգնութեամբ նորա ազատել զազգն 'ի գերութենէ : Որոյ վասն խորհուրդ կալաւ ընդ ոմանց իշխանաց Հայոց, որք ոչ միայն չեղեն նմա ձեռնտու, այլև յորդոր մատուցին յետս կալ յայդպիսի խորհրդոց. զի մի՛ յայտնեսցի Յունաց և ոտնակոխ արասցեն զազգն Հայոց. ասելով թէ այնուհետև ոչ յաշխարհին Հայոց կարեմք անդորրանալ և ոչ յաշխարհին Յունաց : Այլ այսպիսի վատ խորհրդով նոքա խափանեցին զարքային 'ի փառաւոր գործոյ անտի սակս անձնասիրութեան, որք միայն զդիւրութիւն անձին խնդրէին. ապա թէ ոչ՝ անտարակոյս կանգնէին զթագաւորութիւնն քաջութեամբ և խոհեմութեամբ Գագիկ արքային : Որոյ տեսեալ զայնպիսի ցրտութիւն իշխանաց՝ բեկաւ լքաւ սիրտ նորա և մնաց 'ի Յունաստան երերեալ տատանեալ, մինչև մեռաւ 'ի ձեռն վատ արանց. մեռան և երկու որդիք նորա, և վերջ եղև բագրատունի թագաւորաց (71) :

85. Իսկ՝ յամի Տեառն 1080. յաւուրս Մանուչէ իշխանին քաջն Ռուբէն ազգական Գագկայ բռնացաւ 'ի Կիլիկիա. և քաջութեամբ նստաւ անդ ինքնագլուխ իշխան. յորմէ սկիզբն եղև թագաւորութեանն Ռուբինեանց 'ի Կիլիկիա : Անդ էր և Գրիգոր վկայասէրն որդի մեծի իշխանին Գրիգորի Մագիստրոսի, զոր 'ի հետևեալ ամի եդին կաթուղիկոս : Բայց արևելեան Հայք զրկեալ համարելով զինքեանս գրեցին առ նա թուղթ. զի կամ ինքն երթեալ հաստատեսցէ զաթոռ իւր յԱնի, և կամ հրաման տայցէ, զի քեռորդի իւր Բարսեղ եպիսկոպոս հաստատեսցի կաթուղիկոս յաթոռն Անւոյ : Ընդ որ հաւանեցաւ վկայասէրն, և ապա յամի Տեառն 1082. հրամանաւ Մանուչէ իշխանին ժողովեցան յԱնի բազում իշխանք և Տէր Ստեփաննոս Կաթուղիկոս Աղուանից եօծ զԲարսեղ կաթուղիկոս՝ նորոգելով զաթոռն կործանեալ :

86. Յամի Տեառն 1086. այնչափ զօրացաւ Մելիք շահ, մինչ զի էառ 'ի ձեռաց Յունաց զամենայն տեղիս Հայաստանու, և եհաս մինչև 'ի ծովն Միջերկրական : Ուստի Մանուչէ իշխան ստիպեցաւ տալ նմա

զԱնի, և նստաւ անդրէն իշխան 'ի կողմանէ նորա :
'Ի նմին ժամանակի Բարսեղ կաթուղիկոս չոգաւ 'ի
Պարսկաստան, և խնդրեաց 'ի Մելիք շահէ, զի խա-
փանեսցէ զբռնութիւն և զանիրաւութիւն Պարսից,
զոր առնէին Հայոց : Շահն կատարեաց զամենայն
խնդրուածս նորա . և հրաման ետ, զի յառաջոյ նորա
խաչ տարցեն վասն պատուոյ, և բազում մեծարանօք
առաքեաց զնա յԱնի . անդ էր և եղբայր նորին քաջն
Գրիգոր, որ ձեռնտու եղեալ Մանուչէի՝ յանդորրու-
պահէին զՀայաստան :

87 . Յամի Տեառն 1094 . Սկիւթացի Թաթարք
թուով 7000 . ելին 'ի վերայ Անւոյ, և բազմամբոխ պա-
տերազմաւ կամէին առնուլ . բայց Գրիգոր իշխան հան-
դերձ քաջ արամբք ել ընդդէմ նոցա, ցիրուցան ա-
րար, և սատակեաց զգլխաւոր նոցա այր զօրաւոր : 'Ի
նմին ժամանակի, յորժամ այլազգիք վնաս մեծ հասու-
ցին 'ի կողմանս Սանանդայ, երևելի ոմն 'ի Հայոց ա-
ռեալ անտի զխաչն Նունեայ եբեր յԱնի, որ ձեռամբ
Շուշանայ դստեր մեծին Վարդանայ փոխադրեալ էր
'ի Վրաստանէ 'ի Հայաստան : Նորին աղագաւ մեծ
ուրախութիւն եղև յայնժամ Անեցւոց, ուր եդին տօն
խաչի 'ի յաջորդ կիւրակէն Խաչվերացին, որ այժմ
խափանեալ է :

88 . Իսկ յամի Տեառն 1104 . իբրև Խաչակիր լա-
տինացիք եկեալք յարևմտից տիրեցին Երուսաղէմի
և Եդեսիոյ՝ Բարսեղ կաթուղիկոս չոգաւ և նստաւ
յԵդեսիա : Դուքս քաղաքին ետ նմա բազում կա-
լուածս և գիւղս՝ խնամելով զՀայս մարդասիրա-
թեամբ : Բայց կաթուղիկոսն երբեմն երբեմն երթայր
յԱնի և խնամէր զհօտ իւր . ուստի յամենայն վայրս
անպակաս էր շինութիւն և բարեկարգութիւն : Վասն
զի երբ հովիւն է արթուն, ոչխարք անվնաս մնան . իսկ
երբ հովիւն անկեալ կայ ընդ քնով, հօտն է 'ի վտանգի :

89. Յետ մահուան Մանուչէ Ամիրային Ապլսուար որդի նորին նստաւ 'ի տեղի նորա, այր տկար և անարի. նմին իրի անդէն զօրացան Թաթարք և բազում վիշտս հասուցին Անեցւոց. մինչ զի բոլոր Շիրակ գաւառ ամայակոյս եղև: Իսկ Ապլսուար փոխանակ զօրանալոյ և վանելոյ զԹշնամիս՝ որոշեաց 'ի միտս վաճառել զԱնի ումեմն այլազգի Ամիրայի: Զայն իբրև լուան Հայք, շփոթեցան յոյժ. և զայլ հնարս ոչ գտին, եթէ ոչ խնամս արարին Դաւթի արքային Վրաց, որ անդէն և անդ հասեալ պաշարեաց զԱնի: Այլ միաբանութեամբ քաղաքացւոց անաշխատ մտին անդ Վիրք յամի Տեառն 1124. յետ մնալոյ 'ի ձեռս Պարսից ամս 60: Դաւիթ արքայ չարար ինչ վնաս ումեք. այլ մանաւանդ զքաղաքն և զեկեղեցիս մաքրեաց 'ի հեթանոսական ապականութեանց, և նորոգեաց զմայր եկեղեցւոյն, զոր մզկիթ արարեալ էին. և մեծաւ հանդիսիւ ետ օրհնել զայն հայ եպիսկոպոսաց, և եդ 'ի վերայ գմբեթին զսուրբ խաչն: Ապա յանձն արարեալ զքաղաքն Ապլհեթ վրացի իշխանին, և որդւոյ նորա Իւանէին, ինքն չոգաւ 'ի Վրաստան. տարեալ ընդ իւր զԱպլսուար 'ի Տփխիս:

90. 'Ի նմին ամի մեռաւ Դաւիթ արքայ, և թագաւորեաց որդի նորա Դեմետր. որ 'ի կողմանէ մօր հայ էր: Յայնժամ բազում Հայք, որք ելեալ յԱնւոյ՝ յայլ և այլ կողմանս ցրուեալ էին, իբրև լուան թէ այժմ քրիստոնեայք տիրեն անդ, դարձան և բնակեցան յԱնի: Յառաջ քան զառումն Անւոյ՝ եղբայր Շնորհալւոյն Գրիգոր կաթուղիկոս՝ տեսեալ թէ Սելեկիա հեռի է 'ի Հայաստանէ, և ազգն անմխիթար մնացեալ, կամեցաւ երթալ անդրէն հաստատել զաթոռն յԱնի. ուստի գրեաց առ Ապլսուար և խնդրեաց հրաման նստելոյ անդ: Ամիրայն բազում խնդութեամբ հաւանեցաւ. այլ 'ի տիրել Վրացւոց՝ խափանեցաւ այն գործ:

91. Արդ՝ յորժամ առաւ Անի 'ի Վրաց՝ որդի Ապլսուարին Փադլուն գնացեալ էր 'ի Խորասան, որ ընդ լսելն զառումն Անւոյ վարձեաց 'ի Պարսից զբազում զօրս. և եկեալ եհաս 'ի Շիրակ գաւառ, և պա

շարեալ զԱնի՝ սկսաւ պատերազմել։ Թէպէտ Մանուչէ քաջութեամբ պաշտպանէր, սակայն պաշարումն տևեալ ամբողջ տարի մի՝ սկսաւ սով 'ի քաղաքի անդ, որով և քաղաքացիք առ սակաւ սակաւ փախչէին անտի. և անկեալ 'ի ձեռս Պարսից չարաչար կոտորէին, այն պէս զի * Արեամբ և ոսկերօք ծածկեցաւ երկիր »․ ասէ Սամուէլ Անեցի։

Իսկ Պարսիկք այնչափ սաստկացուցին զպատերազմն, մինչև համարձակեցան կատարելութեամբ 'ի վեր ընդ պարիսպն ելանել. ուր կայր կին մի քաջ Անձեալն անուն, որ քաջութեամբ պատերազմեալ 'ի վերուստ անտի հալածական արար զԹշնամիսն՝ քարակոծ առնելով զնոսա։ Թէպէտ արտաքուստ վիրաւորէին զնա նետիւք, բայց ոչ ինչ հոգայր, այլ հանեալ զնետս 'ի մարմնոյ իւրմէ ձգէր առ Թշնամիս։ Եւ այսպէս այնչափ վիշտս հասոյց նոցա, մինչև զարմանալ ամենեցուն, Թէ որպիսի՛ է սիրտ կնոջն։

22։ Այլ իբրև երկու կողմանքն ևս ձանձրացան յերկար պաշարմանէ, Փադլուն դեսպան առաքեաց առ իշխանս քաղաքին՝ տալ ինքեան զքաղաքն խաղաղութեամբ, և ոչ ինչ վնաս ասէ արարից ումեք. այլ միշտ 'ի խաղաղութեան պահեցից, որպէս հայրենի ժառանգութիւն իմ։ Իսկ քաղաքացիքն ժամանդիր եղէն, մինչև ծանուցեն զայն Դեմետր արքային, որ խորհեալ գիտաց, Թէ զայն քաղաք չկարէ այնուհետև պահել ապահով 'ի Թշնամեաց, հրաման ետ հաշտութիւն խօսիլ ընդ Փադլունին այսու պայմանաւ, զի ցորչափ ինքն կենդանի է՝ իւր անուամբ մնասցէ քաղաքն. նոյնպէս և խաչն 'ի գլուխ եկեղեցւոյն մնասցէ։

23. Փադլուն հաւանեցաւ ընդ այն, և երդուեալ եմուտ 'ի քաղաքն խաղաղութեամբ յամի Տն 1126. և ըստ պայմանին չարար ամենևին վնաս, այլ միշտ ջանահնար եղև պահել զայն 'ի խաղաղութեան. որ և քաջութեամբ զամենայն շրջակայ ազգս հնազանդեցոյց ինքեան։ Սակայն և այնպէս ազգ մեր միշտ մնայր 'ի դառն գերութեան, և օր ըստ օրէ աղքատացեալ անանկացաւ. ըստ որում պատմէ Սամուէլ Անեցի.

* 'Ի սորա իշխանութեան (ասէ) Թէպէտև խաղաղա-
» նայր երկիրս 'ի ասորական հինից, այլ յաղագս մե-
» ըդդրեալ նեղութեանց, և վասն նախնի հարկապա-

„ հանձ յափշտակութեանց՝ եկն եհաս 'ի վերայ մեր
„ աղքատութիւն, և տառապանք անհնարին, որ յա-
„ ռաջագոյն ժամանակօք ունէր զաշխարհս հայոց, և
„ տատանօր յաւելաւ յաճախապէս մի ըստ միոյ մինչև
„ յաւուրս յայսոսիկ, յորում եմք .. և պակասեցան
„ յունայնութեան աւուրք մեր ||:

94. Փառլուն Ամիրայ յետ պահելոյ 'ի խաղաղու-
թեան զԱնի առ ժամանակ մի, իբրև ետես զեկեղե-
ցական հանդէսս և զարդս ծանրագինս՝ սկսաւ նախան-
ձիլ, և կամեցաւ ագահութեամբ յափշտակել զսուրբ
սպասս: Յայնժամ մայր եկեղեցւոյ փակակալն էր ա-
ռաքինի երէցն Գրիգոր աշակերտ Սարկաւագ վար-
դապետին, որ կամեցաւ գնալ յուխտ 'ի Խոր վիրապն,
իբրև եհաս 'ի Գոռնին քաղաք, տեսեալ զբազմութիւն
այլազգեաց՝ երկեաւ. բայց սովոր էր ասել * Օրհնեալ
է Քրիստոս Աստուած որդին Աստուծոյ ||: Ընկեր իւր
ծաղր արարեալ ասէ. ահա ժամանակ օրհնելոյ զՔրիս-
տոս, որ սովոր էիր ասել. եթէ կարես, աստ ասա՛ հան-
դէպ Թշնամեաց. վառեցաւ յայնժամ հոգեւոր քա-
հանայն սիրով Քրիստոսի, և սկսաւ բարձրաձայն ա-
ղաղակել. Օրհնեալ է Քրիստոս Աստուած որդին
Աստուծոյ: Զայն իբրև լուան այլազգիքն, կալան զնա
և չարաչար հարին. ապա իբրև լուան, եթէ յԱնւոյ
է, կապեալ շղթայիւք առաքեցին առ Փառլուն զըր-
պարտելով, որպէս թէ հայհոյեալ իցէ զնոսա: Փառ-
լուն իբրև ետես, ուրախ եղև զի եդ 'ի մտի, թէ 'ի
պատճառս նորա կարէ կողոպտել զեկեղեցիս Անւոյ:
Սաստի եդ զքահանայն 'ի բանտ խաւարին, և ետ բե-
րել զբանալիս եկեղեցւոյն. և չարչարէր զերէցն, զի
տացէ նմա զամենայն ինչս եկեղեցւոյն. ապա թէ ոչ,
ասէր, դու ոչ երբէք ազատիս 'ի բանտէդ, և ես բռնի
առնում զայնս: Իսկ քահանայն առ ոչ ինչ համարեալ
զամենայն սպառնալիս նորա կայր հաստատուն. և դի-
մեալ առ փրկիչն անդադար աղօթէր: Եւ ահա 'ի նմին
գիշերի երևեցան յերազի Փառլունին հրեղէն մար-
դիկ և կամէին վիրաւորել զինքն. որ այնպէս սաստիկ
խռովեցաւ, մինչև անկաւ 'ի ծանր հիւանդութիւն.
և փութանակի ետ հանել զԳրիգոր երէց 'ի բանտէն,
և աղաչեաց զնա աղօթել վասն իւր, և այսպէս հա-
դիւ եգիտ զառողջութիւն:

95. Հանի Փատլունին գոլով 'ի Թագաւորական զարմէ Հայոց՝ էր քրիստոնեայ. որ ոչ միայն խրատէր զԹոռն իւր խնամ ունել 'ի վերայ քրիստոնէից, այլ և զկրտսեր եղբայր Փատլունին սնոյց յայնպիսի բարի վարս քրիստոնէութեան, զի 'ի պատանեկութեան լուսաւորեալ աստուածային լուսովն բորբոքեցաւ սիրտ նորա սիրովն Քրիստոսի, և Թողեալ զԱնի քաղաք՝ առանձնացաւ 'ի լեառն սեպուհ, ուր ամս 15. առաքինացաւ խստամբեր ճգնութեամբ. իբրև կայր յաղօթս՝ լոյս ծագէր 'ի վերայ ճգնարանին. և այնպիսի սրբութեամբ աստ վախճանեցաւ 'ի Կիլիկէ:

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՌՈՒՄՆ ԱՆԻՈՑ

96. Յամի Տեառն 1131. եղև սաստիկ գետնաշարժութիւն յԱնի՝ այնպէս ահագին, զի կործանեաց զմեծ հոյակապ եկեղեցին Ամենափրկիչ. այլ ոչ վնասեցաւ միւս մեծագործ եկեղեցին Սուրբ Փրկիչ: Ապա զկնի միոյ ամի մեռաւ Փատլուն յետ տիրելոյ ամս 7. պայազատեաց 'ի տեղի նորա Մահմուտ եղբայրն, ապա որդին Փատլուն: Իսկ զկնի մահուան Դեմետր արքային Վրաց՝ նստաւ որդի նորա Գորգի որ զօրացեալ քաջագործութեամբ՝ դիմեաց 'ի Հայաստան, և էառ զՇիրակ գաւառ և զԱնի: Զայն իբրև լուաւ Շահարմէն Ամիրայն զկնի 50 աւուրց եկ 'ի վերայ Անւոյ և պաշարեաց 80 հազար զօրօք: Գորգէ իմացեալ եհաս անդ արագապէս 7. հազար զօրօք, և մեծաւ քաջութեամբ 'ի նեղ էարկ զայլազգիս. զոմանս ետ 'ի բերան սրոյ, և զայլս վարեաց 'ի գերութիւն. իսկ մնացորդք փախստական ցրուեցան: * Եւ այսօրիկ ակա- ,,նատես մեք եղաք. քան և երեք հազար գրով այն ,,էր՝ զոր գերեաց. Թող զանկեալ դիակունսն՝ որ ,,ծածկէր զանդաստանս մեր‖: Սամուէլ Անեցի:

Գորգէ եդ վերակացու Անւոյ զիշխանն Սադուն, և ինքն դարձաւ 'ի տեղի իւր: Այս իշխան կամեցաւ նորոգել զանկեալ պարիսպս Անւոյ. բայց Գորգէ լուեալ զայն՝ 'ի կարծիս եղև թէ նա զապստամբութիւն խորհի, փոխեաց զնա, և եդ զոմն Հայ իշխան Սարգիս անուն երևելի յոյժ՝ իսկ Սադունն դառնա-

ցեալ ընդ այս գործ՝ չոգաւ առ Նշլանկուզ սպարապետն Պարսից, ուստի Գուրգէն խաբեաւ զնա՝ յետս դարձոյց և սպան:

97. Իսկ Նշլանկուզ ունելով սաստիկ թշնամութիւն ընդ վրացիս՝ չոգաւ գրգռեաց զարքայն Պարսից ելանել 'ի վերայ Անւոյ, ուստի հանդերձ բազմութեամբ նեկին և պաշարեցին զԱնի աւուրս 30. այլ ոչինչ կարացին առնել, մինչև խայտառակեալ յետս դարձան: Յորմէ առելի իմն կատաղեալ Պարսից՝ անդադար արշաւէին 'ի սահմանս Վրաց ամս կ, և կողոպտէին. նմին իրի յուսահատեալ Գուրգէն ետ Պարսից զԱնի քաղաք, և հաշտեցաւ ընդ նոսա: Նա այսպէս այս հռչակաւոր քաղաք անկեալ 'ի ձեռս օտարաց եղև խաղալիկ արքայից, որք յափշտակեալ զայն յիրերաց օր քան զօր եղծանէին զվայելչութիւն նորա: Իսկ զինչ ինչ կրեցին արդեօք բնակիչք, ո՛ կարէ պատմել. որպիսի գերութիւն, և որպիսի աղքատութիւն:

98. Յամի Տեառն 1174. Գուրգէն արքայն զօրացեալ եւ անդրէն բազում զօրօք 'ի վերայ Անւոյ, եառ քաջութեամբ զայն, և եդ վերակացու զսպարապետ իւր Իւանէ Օրբելեանց, իսկ զիշխանն Շամբշահ ձեռբակալ արարեալ՝ վարեաց 'ի Վրաստան. իբրև լուաւ Նշլանկուզ տրտմեալ արշաւեաց 'ի Շիրակ և պաշարեաց զԱնի. և այնչափ նեղեաց, զի Իւանէ որոշեաց տալ: Սակայն հայք զօրացեալք ընդդէմ կացին իշխանին, և վառեալ օգնով ազգասիրութեան, այնպէս դիմադրեցին թշնամեաց, մինչև Նշլանկուզ յուսահատեալ դարձաւ յետս:

99. 'Ի նմին ժամանակի երևելի իշխան Անւոյ Ապիրատ եղբայր Բարսեղ եպիսկոպոսին Անւոյ, գալով նիզակակից և սիրելի վրաց արքային, Բարսեղ ևս զօրացաւ յոյժ. մինչ զի իբրև ինքնիշխան կաթուղիկոս կառավարէր զազգն իմաստութեամբ: Սակայն բարձեալ էր յԱնւոյ անդորրութիւն, այլ անդադար պատերազմ և կռիւ յափշտակելով զայն յիրերաց, երբեմն անցանէր առ Պարսիկս, և երբեմն առ վրացիս: Ո՜հ այսպէս է անտէր տուն և քաղաք. մին 'ի միւսմէ յափշտակէ, և բնակիչք սովով և սրով սպառին և 'ի գերութեան մաշին: Իսկ չեն ինչ զարմանք, զի ծառն անմիաբանութեան զայսպիսի պտուղ բերէ

և խայտառակ կացուցանէ զանիրաւեաց ազգս բիւրակերպ Թշուառութեամբք. որպէս եղեն Անեցիք Թէ աշխարհականք և Թէ եկեղեցականք: Որք ցրուեալ յայլևայլ կողմանս՝ անկան 'ի բազում անկարգութիւնս, Թողեալ զկանոնս հայրապետաց՝ հետևեցան կամաց իւրեանց: Մինչ զի ոմանք 'ի քահանայից պատճառ առեալ զաղքատութիւնն, սկսան առանց քահանայական զգեստուց պատարագել միայն փիլոնիւ, և աբեղայք վեղարիւ ևեթ: Իսկ ժողովուրդն ոչ մտանէր յեկեղեցին. այլ արտաքոյ աղօթէին. և այլ բազում անկարգութեամբք լցեալ էր յայնժամ Հայաստան. քանզի ուր չիք ոգի միաբանութեան, անդ տիրէ ամենայն տեսակ անկարգութեան. նմին իրի բարւոք ասաց սուրբ Լուսաւորիչ, * Որ որոշին և մեկ-
„ նին 'ի միաբանութենէ, և զիւղ սիրոյն ոչ ունին, փա-
„ կի նոցա առագաստն յաղագս շիջանելոյ հարսանեկան
„ ջահիցն ||:

## ՎԵՑԵՐՈՐԴ ԱՌՈՒՄՆ ԱՆԻՈՅ

100. Յամի Տեառն 1185. իշխան ոմն այլազգի Շամիր Խարաչայ եկն 'ի Շիրակ գաւառ, և յափշտակեաց զԾառաքար բերդաքաղաքն. որ էր հայրենի ժառանգութիւն Բարսեղ եպիսկոպոսին Անւոյ: Այս իշխան մեծ ատելութիւն ունէր ընդդէմ Հայոց, և բազմապատիկ վիշտս հասոյց ամենեցուն. խորտակեաց զսուրբ խաչն, որ կոչէր Գորոզդ. որոյ վասն այնպէս չարաչար պատուհասեցաւ, մինչ զի մոլեգնեալ անկանէր աստ և անդ, ամենևին ոչ կարէր հանդարտիլ. մինչև անկաւ 'ի ձեռս Թշնամեաց իւրոց, և սատակեցաւ:

101. Այս Խըզլասլան որդի Ելտկուզին տիրեաց Ծառաքարին. ուր եդ վերակացու զանողորմ Պարսիկս, որք այնչափ չարիս անցուցին ընդ քրիստոնեայս, մինչև զամենայն ինչս նոցա կողոպտեցին. և որ չունէր ինչ տալ, փակէին 'ի մէջ գերեզմանաց, և անդ սովամահ կորուսանէին: Յայնժամ կալան զեօթն կրօնաւորս և անդէն դառնակսկիծ տանջանօք կատարեցին: Անեցի հայք իբրև լուան զայս ամենայն, միաբանեալ

ելին 'ի վերայ Ռառաքարին, և առեալ քաջութեամբ կոտորեցին զամենայն Պարսիկս ։ Իբրև լուաւ Խզըլ-ասլան կամեցաւ վրէժխնդիր լինել, բայց երկեաւ յիշխանացն Զաքարէէ և Իւանէէ որք օգնական եղեն Անեցւոց ։ Զոր և յիշէ Սամուէլ թէ Մեծն Սարգիս․ * Զ Ծառաքար վանքն բերդ արարեալ՝ պարսպեալ „ հաստահեղոյս բրգամբք ․ յորում և ընդ որբոյ խա-„ ռանարդ տաճարին կանգնելոյ սուրբ Գէորգայ՝ շի-„ նէ այլ երկու յարակիցս գմբէթաւորս զսուրբ Յով-„ հաննէս և զսուրբ Սեբեոս ։ Իսկ Սարգսան ասէ․ * 'Ի նոյն աւուրս առաւ Ռառաքար 'ի գողոց հրամա-„ նաւ Պարաշա ամիրային Սեբաստոյ՝ որ վաճառեաց „ զնա Խզըլ ասլանայ ընդ բազում ոսկւոյ ։ Եւ այ-լուր գրէ․ * 'Ի ոլէ (1186) Թուրքմանքն անեցին զՌա-„ ռաքար զհայրենիս տեառն Բաղսզի յանխնայ կո-„ տորելով զորս անդ․ բաց 'ի կանանց և 'ի մանկտւոյ ։

102․ Յամի Տեառն 1207․ Զաքարէ իշխանն ետ առնել ժողով յԱնի վասն բարեկարգութեան եկեղեցականաց․ որով բարձան վերոյգրեալ անկարգութիւնք (99)։ Յայնուհետև այս իշխան սկսաւ ելանել 'ի վերայ Պարսից պատերազմաւ և էառ 'ի նոցանէ զբազում տեղիս օգնականութեամբ Իւանէ եղբօր իւրոյ ։ Յամ յամի Տեառն 1211․ մեռաւ Զաքարէ և թաղեցաւ 'ի վանս Սանահնի․ բայց որդի նորա Շահնշահ գոլով փոքր՝ սնաւ ընդ ձեռամբ հօրեղբօր իւրոյ Իւանէի, մինչև եղև իշխան Անւոյ ։

103․ Յամի Տեառն 1239․ անբաւ բազմութիւն Թաթարաց արշաւեցին 'ի Հայաստան․ քանդեցին զբազում տեղիս, որոց գլխաւոր իշխան էր Չարմաղան, որ բազմութեամբ Մուղալ Թաթարաց եկ 'ի վերայ Անւոյ․ բայց յառաջ քան զհասանելն անդ դեսպան առաքեաց քաղաքացեաց տալ զքաղաքն ։ Նոքա ետուն պատասխանի, թէ այս քաղաք է Զաքարէի որդւոյ Շահնշահի, մեք առանց հրամանի նորա ոչ կարեմք տալ ։ Իբրև դարձան դեսպանքն՝ անխորհուրդ Անեցիք ելին 'ի վերայ ճանապարհին, հարին սպանին զնոսա․ զոր լուեալ Չարմաղան կատաղեցաւ յոյժ, և նոյնհետայն եկն և պաշարեաց զԱնի ։ Նա այնպէս չարաչար պատերազմէր, մինչև մեծապէս նեղեցաւ քաղաքն 'ի սովէ․ և չունէին ինչ ուտել ։ Աստի առ սա-

տիկ տուլու բազում իշխանք ելանէին 'ի քաղաքէն և զինքեանս մատնէին 'ի ձեռս Թաթարաց ։ Իսկ Զարմաղան նենգութեամբ հրամայէր կերակրել և պատուել զնոսա. զայն տեսեալ քաղաքացեաց սկսան ելանել 'ի քաղաքէն և դիմել առ Թաթարս ։ Բայց անօրէն Թաթարք բաժանեցին զնոսա 'ի մէջ իւրեանց իբր թէ առ 'ի հոգ տանել նոցա. և ապա զամենեսեան կոտորեցին անխնայ բաց 'ի կանանց և 'ի մանկանց և յարուեստաւորաց. զորս գերի վարեցին ։ Ապա առին զքաղաքն և մտեալ 'ի ներքս կողոպտեցին զամենայն տունս, զկրպակս և զեկեղեցիս, և այնպէս չարաչար տապալեցին և ապականեցին զԱնի, մինչև ոչ ոք կարէր ճանաչել ։ Ըստ սմին օրինակի չարաչար քանդեցին զամենայն տեղիս այնոցիկ կողմանց ուր և կոխեցին, և զամենայն իշխանս սպանին. միայն թողին զարս անպիտանս 'ի մէջ այնց աւերակաց, և ինքեանք ելին հեռացան ։

104. Յայնժամ ապա փախստական Հայք ելեալք 'ի ձորոց, և իջեալք 'ի լերանց եկին տեսին զՀայաստան այնպէս ապականեալ՝ սուգ առին և լացին. մանաւանդ 'ի վերայ Անւոյ, որ բոլորովին քանդեալ էր. ոչ բնակութիւն գոյր և ոչ բնակիչ. եկեղեցիք տապալեալք, պալատք և տունք յափշտակեալք, և բոլոր քաղաքն անկեալ յողբալի վիճակ ։ Ուստի ամենեքեան ողբային և ցաւագինս անիծանէին զանմիաբանութիւն ազգին, որ պատճառ եղև կործանման թագաւորութեան Անւոյ ։ Անիծանէին և զՅոյնս, որք նենգութեամբ առին զայն հրաշակերտ քաղաք. և ոչ պաշտպանեցին ։ Տեսանէին թէ չիք այլ յոյս շինութեան Անւոյ յուսահատեալ ողբային. ըստ որում պատմէ Կիրակոս պատմիչ ականատես ։ * Սուգ զգեցաւ եկե-
„ ղեցի և բարձաւ պայծառութիւն գեղեցկութեան
„ նորա . . . իբրև խաւարաւ մածեալ էր ամենայն աշ-
„ խարհս, և սիրէին մարդիկ առաւել զգիշեր քան
„ զտիւ. և երկիր թափուր մնաց 'ի բնակչաց իւրոց, և
„ շրջէին 'ի նմա օտարաց որդիք. յափշտակեցան ինչք
„ և ստացուածք նոցա և ժլատութիւն բարուց նոցա
„ ոչ երբէք յագեցաւ. յուզեցան խուզեցան տունք և
„ սենեակք ամենայն. ոչինչ մնաց զոր ոչ առին. շըր-
„ ջէին այսր և անդր անդադար արագութեամբ իբրև

„ զայծեմունս. և կեղեքէին պատառէին իբրև զգայլս. „ երիվարք նոցա ոչ վաստակէին յընթացս. և ոչ ին- „ քեանք ձանձրանային 'ի ժողովել զաւարս: Այս այս- „ պէս առհասարակ դառնութիւն հասուցին բազում „ ազգաց և լեզուաց. զի բաժակ բարկութեան տեառն „ էր հեղեալ յերկիր 'ի վրէժխնդրութիւն գործոց մե- „ րոց չարաց. զի մեղաք առաջի նորա, և զարդար ցա- „ սումն նորա շարժեցաք. վասն այն եղև դիւրամուտ „ աշխարհս մեր»:

105. Որովհետև այս լեռնաբնակ վայրենիք ազինք միանգամ կոխեալ 'ի Հայաստան, և տեսեալ զգեղեց- կութիւնս, և յափշտակեալ զմեծութիւնս, այնուհե- տև սովորեալ ոչ կացին յետս. այլ անդադար արշա- ւէին, և կողոպտէին զաշխարհն: Այն զի՝ չէր ոք, որ ընդդէմ դառնայր, և ոչ այն, որ պաշտպանէր զազգն. նմին իրի համարձակ առնէին զոր կամէին. և ամենայն ինչ 'ի ձեռս թշնամեաց էր, մինչև հասուցին զազգն Հայոց 'ի վերջին թշուառութիւն:

106. Սակաւ եղեն զերծեալքն որք փախեան 'ի հե- ռաւոր աշխարհս, և հազիւ ձողոպրեցան. որպէս էին Սափայեցիք, Տրապիզոնցիք. և այլք: Թող զի՝ 'ի ժամանակս երկրորդ առման Անւոյ բազումք 'ի նոցա- նէ զերծան 'ի Լեհաստան, և 'ի Թաթարստան. որ- պէս ունիմք պատմել: Այլ մեծ մասն յերեսաց Ջար- մաղանին փախեան դէպ 'ի յԱժտէրխան և յԱխսա- րայ ըստ որում պատմէ յիշատակարանն հին յայսմա- ւուրաց: Տես 'ի պատմութեան Սափայի (502):

107. Ջարմաղան խան Թաթարաց հիւանդացաւ. բերին առ նա զոմն Հրեայ բժիշկ, որ խրատ ետ տալ բերել զխարտեաշ մանկունս և ողջ ողջ բանալ զորո- վայն նոցա, և զոտս նորա դնել 'ի նոսին. որով միայն առողջանալ ասէր: Իբրև ծառայքն ժողովեալ զմա- տաղ մանկունս 'ի գրկաց մարց լցին զնոսա առաջի Խա- նին, եղկելի մարք աղաղակէին և յոգւոց հանէին զկնի նոցա. այլ անողորմ Թաթարք վարէին զնոսա. և զո- մանս նետահար սպանանէին: Ողբալի տեսարան եղև իբրև սկսան բանալ զաղիս մանկանց, աղիողորմ ձայնք լսելի լինէին. իսկ՝ անօրէն իշխանին քարացեալ սիրտ ոչ կակղանայր. մինչև 30 մանկունս ետ պատառել և զոտս իւր եդ 'ի փորս նոցա: Տեսեալ թէ չիք ինչ օ-

գուտ, և գիտացեալ թէ այն էր նենգութիւն Հրէին. ետ բերել զնա առաջի իւր և պատառել զփորն. և զմարմին նորա էարկ առաջի շանց. և ինքն նովին ցաւով զրաւեցաւ 'ի կենաց:

## ՎԵՐՋԻՆ ԿՈՐԾԱՆՈՒՄՆ ԱՆԻՈՅ

108. 'Ի պակասիլ քաջ և զօրաւոր իշխանաց Հայոց, պակասեցաւ և տէրութիւն Յունաց 'ի Հայաստան. մինչև կոր 'ի գլուխ հեռացան անտի: Յայնժամ Թաթարք մուտ գտեալ արշաւեցին յամենայն կողմանս Հայաստանու և կողոպտեալ զքաղաքս գերի վարեցին զբնակիչս: 'Ի սմին ժամանակի կանգնեալ էր թագաւորութիւն Հայոց 'ի Կիլիկիա. և Օշին նստէր թագաւոր. որ հազիւ կարէր պաշտպանել զիւր տէրութիւն յերեսաց թշնամեաց. որք օրըստօրէ զօրանային. և Յոյնք նանրանային: Եթէ յայնժամ ոչ լինէին իշխանք Հայոց և թագաւոր 'ի Կիլիկիա, սպառսպուռ ջնջէին նոքա զտէրութիւն Յունաց. որպէս եղև յետ բարձման Հայոց տէրութեան:

Արդ նախանձ և անմիաբանութիւն քրիստոնէից շարժեաց զաստուածային արդար բարկութիւնն, որ ոչ միայն չազգաւ զկծեցուցեալ պատուհասեաց զնոսա, այլ և 'ի նմին ժամանակի բազում տեղիք ահագին գետնաշարժութեամբ անդնդասոյզ կործանեցան և բիւրաւոր մարդիկ կորեան:

109. Յամի տեառն 1319. այնպիսի սոսկալի գետնաշարժութիւն եղև յաշխարհին Արարատայ, մինչև բազում քաղաքք գետնասոյզ եղեն. և բազում գիւղօրէք կործանեցան: Նոյն 'ի սմին ժամանակի և հռչակաւոր մայրաքաղաքն Անի դղրդեալ կործանեցաւ բոլորովին. որ ըստ պատմութեան Վահկեցւոյն՝ պատահեցաւ յաւէտ անիծիւք Յովհաննու քահանային երզնկայցւոյ. որպէս և Անեցիք աւանդութեամբ պատմեցին մեզ: Այլ օրովհետև մարդիկ ոչ միաբանեցան պահպանել զայն ականաւոր մայրաքաղաք աշխարհի, կիր և քարինք ելեալք 'ի միաբանութենէ անշինելի աւերմամբ կործան անկան այն ամենայն մեծագործութիւնք, որք վայել էին մեծագործ և միաբանասէր ժողովրդեան, և ոչ քայքայեալ բնակչաց անմիաբանու-

թեամբ։ Սուսափ ողբայ Շնորհալին 'ի խօսիլն ընդ Եդե-ւոյ այսպիսի իմն ցաւակցութեամբ.

* Քանզի և դու երբեմն էիր,
» Վայելչական հարսն 'ի քօղի,
» Մերձաւորաց յոյժ ցանկալի,
» Հեռաւորաց փափաքելի...
» Քանզի անցին ըստ երազի,
» Որպէս ծաղիկ ամարայնի.
» Եւ յորդութիւն յորդ վտակի,
» Գարնանաբեր հեղեղատի.
» Կամ զուռուցեալ պղպըջակի,
» Որ ընդ շինելըն պատառի.
» Սուրբն անողորմ անօրինի,
» Որ մեր արեանս է 'ի սովի.
» Որ չէ յագեալ և ոչ յագի,
» Մինչև 'ի գալ կատարածի...
» Եհեղ զարիւն սրբոց յերկրի,
» Հոսեաց նման ջրոյ գետի.
» Արար զդիակն անթուելի,
» Անթաղ մեռեալ դէշ գազանի.
» Քահանայիցըն Քրիստոսի,
» Արեամբ ներկեաց զեկեղեցի.
» Սարկաւագաց պաշտօնէից,
» Մարմինք անկեալ մէջ փողոցի.
» Եւ այլք բազումք, որ ոչ թուի,
» Եւ է ասելն անկարգելի...
» Բայց զի աղէտքըս ցաւելի,
» Ոչ փոքրագոյն գեղով բուժի...
» Այլ կարեկից այսոր աղէտի,
» Պարտ է կոչել աղերսալի.
» Ի չորեքծագեան կողմ աշխարհի,
» Ուր են հանուր մարդկան սեռի.
» Առ որս գոչեմ ձայնիւ գուժի,
» Լալով խօսիմ զայս ասելի.
» Ով է ազգ ամէն բանաւորի,
» Ժողովեցէք 'ի մի վայրի...
» Տղայ մանկունք և երիտասարդք,
» Ծերք և ամէն չափ հասակի ||. և այլն։

Ողբ. Եդե.։

## ՄՆԱՑՈՐԴՔ ԱՆԻՈՑ ԵՒ ՇԻՐԱԿ ԳԱՒԱՌԻՆ

110. Անի քաղաք մինչև ցայժմ կայ մնայ խաթարեալ. սակայն մնացորդք մեծահռչակ պարսպաց և հոյակապ շինուածոց, աւերակք երևելի երևելի եկեղեցեաց և պալատից ցարդ երևեցուցանեն զմեծութիւն քաղաքին։ Մեծ մասն պարսպին ամբողջ երևի մեծամեծ վիմօք բրգօք և աշտարակօք հանդերձ։ Իսկ 'ի քաղաքամիջի անդ վէմք և սիւնք մեծագործ շինուածոց լեռնացեալ կան. յորոց երբեմն տանին 'ի մօտաւոր տեղիս կառուցանել զշինուածս։ Բազում պալատք և եկեղեցիք կանգուն կան. որպէս և լայնաձև եկեղեցի ս̃ Գագիկ արքային շինեալ 'ի կճեայ կարմիր քարանց, որ գտանի առ Ախուրեան գետով։ Անուն այսր Թագաւորի գրեալ կայ 'ի վիմի անդ. որպէս գոյ աստ և անդ խաչ և մակագրութիւն. Պահողան Եւգոտորայ։

Ոմանք 'ի հետաքննինն ուղևորաց մտին յԱնի և որոշեցին քառասնիւ չափ զեկեղեցիս միայն զմբեթաշէնս և կճեայս, որք կանգուն կան. թող զմեծամեծ պալատս և զկիսաւեր եկեղեցիս։ Բազում դրունք պարսպաց կճեայ բարաւորօք և աշտարակօք երևին աստ և անդ. 'ի միում աշտարակի գոյ անցք, ընդ որ լինի անցանել ստորերկրեայ ճանապարհաւ 'ի ներքուստ Ախուրեան գետոյ յայնկոյս, որպէս պատմեցին։ (տես և 'ի ստորագր. Հին Հայաստանի երես. 422։)

111. Արտաքոյ պարսպին գոյ գեղեցկակերտ եկեղեցի, զոր ասեն շինեալ հովուի միոյ գաղտնի մեծատան. որ 'ի ցոյց մեծասրտութեան իւրոյ կանգնեալ է զայն եկեղեցի իւրով ծախիւք կարգելով զհասոյթս քահանայից։ Զայս ամենայն հաստատեն արձանագրութիւնք, զորս անձամբ շրջեալ օրինակեցին կրկին քահանայք բանիբունք Տէր Խաչատուր և Տէր Յովհան Էջմիածնեցիք. զորս դիցուք ստորև (114)։

Արդ՝ Թէպէտ 'ի մերձակայ վայրս Անւոյ չիք բնակութիւն և շէն, սակայն փոքր ինչ տարակաց գոն գիւղօրէք, և 'ի բազում տեղիս երևին եկեղեցիք վայելուչք, և վանորայք մեծաշէնք։

112. Ի նմին վիճակի է Խօշաւանք, զոր Թարգմա-
նեն զոյգ վանք. որ է ամրաշէն և մեծագործ. եկեղե-
ցին է յանուն Լուսաւորչի, զոր ըստ ոմանց շինեալ
է Յովհաննէս Շահնշահ արքայ Հայոց. որպէս և 'ի
վերայ սեան գրեալ կայ Թուականն յամի տեառն 1030:
Ուրանօր երևի զարմանագործ խորհրդարան մի մեծ
քարաշէն քանդակագործ. ունի զերիս կաթուղիկէս.
և շինուածն յերիս մասունս բաժանեալ է դէպ 'ի
ներքս: Միջին մասն էր երդման տեղի. զի անդ ժո-
ղովէին իշխանք 'ի ժամանակս Բագրատունեաց առ 'ի
խորհիլ: Սակաւ ինչ հեռի գոյ բարձր շինուած ինչ իբր
զանդակատուն. ուստի լուեալ զձայն զանգակին հա-
ւաքէին անդ խորհրդականք: Ուր երևին նաև օրօրա-
ցաձև գերեզմանք Թագաւորաց շինեալք 'ի կարմրա-
գոյն քարանց հանդերձ կամարօք:

113. Իսկ Յօհանավանքն է 'ի Կարբի՝ շինեալ առ
'ի Լուսաւորչէ և 'ի Տրդատայ. ուր և հանգուցին
զնշխարս ինչ սրբոյն Յովհաննու Մկրտչին. անդ յա-
մարայնի ապահովանայինն՝ ասեն:

Եկեղեցին ունի 4 դրունս. առ արևմտեան դրան
կանգնեալ կայ Խաչն Լուսաւորչի ձայնեալ՝ ըստ հա-
փու հաստակի իւրոյ՝ որպէս աւանդի: Յայս մենաստան
գոյր գրեալ „ գիրք Թագաւորութեան մնացորդաց „
յիշատակարանն գրեալ էր այսպէս „ Աստանօր յանկ
„ ելեալ աւարտեցաւ հրաշապատում տառս աստուա-
„ ծային մատենից, որ պատմէ զվէպս անցեալ ժամա-
„ նակաց՝ ընտրեալ յառաջագոյն ազգին Իսրայէլի,
„ զկարգ Թագաւորացն, և զյորովայնէ կոչումն սրբոց
„ մարգարէիցն, և կոչի Թագաւորութեան գիրք: Նո-
„ սմին եդեալ մնացորդսն և զմնացորդաց մնացորդսն „

Նոյն մենաստան յաւուրս Բագրատունեաց կարի
իմն վայելչացեալ էր. ուր յետոյ Շահանշահ և այլք
ապա յականաւոր իշխանաց և հայրապետաց բազում
շինութիւնս արարին և ճոխացուցին զայն եկամտիւք
որպէս տեսանին յիշատակարանք փորագրեալք յամե-
նայն որմունս:

’Ի գլուխ սանդղատան :

ՈԿԵ. ԹՈՒԻՆ

„ Շնորհօք բարերարին Աստուծոյ ես Աւհրամ որ-
„ դի Ինգլայրկան, և զուգակից իմ Թիայինէ ’ի սկիզբն
„ շինութեան եկեղեցւոյս տուաք զամենայն զստա-
„ ցուածս մեր ’ի ծախս սորա և զԴպրավանաց այգին :
„ Այլ առաջնորդք սուրբ ուխտիս սահմանեցին յամե-
„ նայն ամի շրջագայութեան Է օր ժամ, զնոր եկեղե-
„ ցիքս. զՃրագալոյցն, զԶատիկն, և զգալուստ Հոգ-
„ ւոյն սրբոյ, յանուն մեր պատարագել զՔրիստոս.
„ Ա օր ինձ. Ա օր Թիայինկանն. Ա օր բոլոր ազգին մե-
„ րոյ : Կատարիչք գրոյս օրհնին ’ի Քրիստոսէ, և որք
„ խափանեն, ընդ զինն յեկեղեցիսն դատին յԱստու-
„ ծոյ և յամենայն սրբոց նորա. ամէն „

’Ի պատին ’ի հիւսիսոյ կողմն.

ՈԿԶ

„ ’Ի ծագմանէ շնորհացն Աստուծոյ ’ի հիմնարկել և
„ ’ի լուսաւորել եկեղեցւոյս գաւառիս Արարադու, ’ի
„ ձեռն երկուց եղբարց հարազատաց Զաքարիայի և
„ Իւանէի, և արդարածնունդ զաւակաց նոցա Շա-
„ հանշահի և Աւագի : Ես Վաչէ իշխանաց իշխան...
„ կոչեցայ ’ի վերակացութիւն գաւառիս. միաբանե-
„ ցայ հանդերձ զուգակցաւ իմով Մամախաթունաւ
„ սուրբ ուխտիս վանացս Յովհաննու. բազում տրօք
„ և ընծայիւք օգնական եղաք ’ի շինութեան մեծափառ
„ նորակերտիս : Այլ առաջնորդք սուրբ ուխտիս հաս-
„ տատեցին յամենայն ամի պատարագել զՔրիստոս
„ յանուն իմ զտօն Ղազարու զամենայն եկեղեցիքս՝
„ զՀին և զնոր „ և այլն :

Արտաքոյ պատէն ’ի վերայ դրանն արևմտեան :

„ Շնորհօք բարերարին Աստուծոյ. Տէր Կոստան-
„ դին Կաթուղիկոս Հայոց ’ի թուին ՈՂԲ : Յիշխա-

„ Նութեան Շահանշահի որդւոյ Զաքարիայի . . .
„ միաբանեցայ սուրբ ուխտիս Յօհաննու և Եսու Ն.
„ բերդու երկիրս սեպհական վիճակ սուրբ Կարապե-
„ տիս , ՚ի յԱպարանաց՝ ընդ որ բաժանի գետն Քա-
„ սաղ , մինչև յԱշնակ ։ Եւ սպասաւորք սորա Մկրտիչ
„ եպիսկոպոս և եղբարքս խոստացան կատարել զյիշա-
„ տակս մեր՝ յետ ելից մեր ի քառասունք , զամենայն
„ ՚ի կարգին . և սուրբ կաթուղիկէն ընդ խորանաւ .
„ յամենայն ամի պատարագել զՔրիստոս ՚ի տօնի
„ Տեառն ընդ առաջին „ և այլն ։

Արտաքոյ գաւթին ՚ի գլուխ դրանն ։

'Ի ԹՈՒԻՆ․ ՉԷ

„ ՚Ի կամն Աստուծոյ հզօրին , այս իմ հրաման և
„ արձան սահմանի Շահանշահի , մանաւանդ որ Թադ-
„ խուցեսի , որդւոյ Զաքարիայի ամիր սպարսալարի
„ Հայոց մեծաց և Վրաց . զոր գրեցի իմ շինած ժա-
„ մատունն ։ Տուի զգեղն Շալուաշէն ՚ի սուրբ Կարա-
„ պետս յիշատակ հոգւոյ իմոյ , և Խոշաքին , և յա-
„ րևշատութիւն որդւոց մերոց ։ Եւ կրկին հաստատե-
„ ցի զիմ հօրն հրամանքն , գիրն որ գրած են „ և այլն ։

Սուրանօր բաց ՚ի բազում արձանագրութեանց այնց ժամանակաց փորագրեալ կան և այլևայլ յիշատակարանք բարերարաց առանց Թուականի . որպէս բերէ Զաքարիա պատմիչ . որ և կարգէ զանուանս առաջնորդաց ուխտիս սկսեալ ՚ի լուսաւորչէ մինչև ցՍարգիս վարդապետ յիւրում ժամանակի Թուով 40 ։

Սակաւ հեռի յարևելեան կողմն է Պէշ-քէլիսա . որ է հինգ եկեղեցի քարաշէն և մեծագործ շինեալ յանցս սեպացեալ լերին ամենևին անառիկ ։ Կաթուղիկէն հասանէ մինչև ցծայր լերին . ուր գոյ անյայտ Ճանապարհ առ ՚ի փախչիլ ՚ի լեառն անելանելի յամենայն կողմանց ։ Աստ էր մեծ վանքն շինեալ յաւերակաց Աշնւոյ ։ Իսկ այժմ երևին ցարդ յայսոսիկ կողմանս անԹիւ աւերակք մեծամեծ շինուածոց , յորոց վերայ երևին արձանագրութիւնք յիշատակարանաց , զորս վերծանեալ օրինակեցին վերոյ ասացեալ քահանայք ։ Եւ ահա ընծեմք կարգաւ զայնս ըստ տարւոյ և ըստ կետոյ ։

## ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՀԻՆ ՇԻՆՈՒԱԾՈՑ

114. Պատմեն նոյն քահանայք Տէր Խաչատուր և Տէր Յովհան, թէ 'ի Թուին հայոց ռմծգ. մայիսի ժէ. 27 ամօք յառաջ մինչ յԱնի քաղաք և շրջեալ տեսաք զեկեղեցի մի, որ յարտաքին կուսէ էր իբր մեծ կաթուղիկէ եդեալ 'ի վերայ երից սատիճանաց 'ի գետնի, որոյ յիւրաքանչիւր խորանսն կաթուղիկէին էին արձանագրութիւնք զանազան կերպիւ. յորոց զմին օրինակեալ դնեմք աստ: Իսկ 'ի ներքին կուսէ երկոտասան լուսանցիւք և նոյնաթիւ խորանօք շքեղակերպ էր յօրինեալ.

* Յամս աստուածապատիւ և հոգևոր տեառն Պետ-
„ րոսի Հայոց կաթուղիկոսի, և 'ի թագաւորութեան
„ Սմբատայ որդւոյ Գագկայ Շահնշահի 'ի ՆՁԵ թուա-
„ կանիս (1036), ես Ապլղարիպ մարզպան որդի Գրի-
„ գորոյ իշխանի և թոռն Ապուղամրի եղբայր Վահ-
„ րամայ և Վասակայ շինեցի զսուրբ Փրկիչս 'ի մայրա-
„ քաղաքիս յԱնի, շատ ջանիւ և մեծածախ գանձիւ,
„ և գնեցի 'ի հալալ ընչից իմոց կուղպականի դ. և ձի-
„ թահանք և այգի և հողեար և ետու սուրբ Փրկչիս.
„ և զարդարեցի ոսկով և արծաթով և ակամբք պա-
„ տուականօք. և ետու աւետարան և տօնական, և
„ նորոգեցի հին և նոր կտակարանօք ||:

115. Դարձեալ սակաւ ինչ հեռի 'ի թագաւորական պալատէն կառուցեալ կայ մեծ կաթուղիկէ եկեղեցի. որոյ յիշատակարան շինութեան 'ի հարաւային կողմն է, յոյժ բարձր. 'ի տեղիս տեղիս գոն յունական գրուածք, զոր չեղև հնար վերծանել 'ի բազմութենէ հողմոյն. սակայն յարևմտեան ահեակ կողմն դրան գրեալ կայ այս արձանագիր անթուական:

* Կամօք ողորմութեամբ բարերարին Աստուծոյ՝ ես
„ Առօն Մագիստրոս մեծարեալ 'ի մեծափառ թագաւո-
„ րութեանցն 'ի գեղ զարդու, և 'ի տիս մանկութեան
„ իմոյ եկի յարևելս 'ի գեղեցկաշէն բերդս յԱնի,
„ բարձրացուցի բովանդակ զպարիսպ սորին կարկառա-
„ կոյտ արձանօք և հաստահեղոյս ամրութք և 'ի յի-
„ մոց մեծածախ գանձուց ածի ջանիւ ջուր յորդաբուխ

„ 'ի մէջ ամրոցիս յուրախութիւն և 'ի զովացումն ծա-
„ ռաւեաց՝ եբեր ոսկի մատանեաւ գիր ազատութեան
„ զիքնակալ ծիրանածին Թագուհւոյն վասն պախտից
„ տանց քաղաքիս և Թատակին զոր տան ամ յամէ
„ չափ ութից լտերց. այլև 'ի խնդրոյ իշխանաւորացս
„ խափանեցի և զգիւտ երկուց լտերց զոր տայր Սու-
„ Թայիբն զայս ամէն ||:

116. Արձանագիր Մարմարշէն եկեղեցւոյն, որ դնե-
կայ 'ի Շիրակ գաւառի 'ի ձորամիջի առ ափն կարուց
դետոյ գրեալ արտաքուստ 'ի հարաւային կուսէ 'ի վեր
քան զդրանդ եկեղեցւոյն այսպէս.

* Շնորհիւն Աստուծոյ ես Վահրամ իշխանաց իշ-
„ խան և անԹիպատրիկ որդի Գրիգորի իշխանի Հայոց
„ մեծաց 'ի ցեղէն պահլաւունի և 'ի զարմից սրբոյն
„ Գրիգորի հայոց լուսաւորչի. որ յաղագս 'ի Քրիս-
„ տոս յուսոյն հիմնադրեցի զսուրբ և զտիեզերական
„ ուխտս Մարմարաշէն. սկսեալ 'ի ՆԼԷ Թուականին
„ Հայոց(988) յաւուրս Սմբատայ որդւոյ Աշոտոյ Հայոց
„ Թագաւորի մինչև 'ի ժամանակս Յովհաննիսի որդւոյ
„ Գագկայ Հայոց Շահնշահի առն իմաստնոյ շինողի
„ և խաղաղարարի. և 'ի Թուականս Հայոց ՆՀԸ. և կա-
„ տարեցաք մեծ ջանիւ և բազում ծախիւք ես և մայր
„ իմ Շուշիկ Հայոց տիկնաց տիկին. և եղբարք իմ Վա-
„ սակ իշխանաց իշխան, որ նահատակեցաւ 'ի Թուր-
„ քաց պատերազմի և Ապլղարիպ Հայոց մարզպան և
„ մանուկն Համզէ. որք էաք ամենայն տամբ և տոհմիւ
„ հաւատարիմք տերանց մերոց. և նահատակեալ 'ի վե-
„ րայ տանս Հայոց աշխատութեամբ և արեամբ մերով
„ և որդւոց մերոց և գանձուց առատութեամբ և ա-
„ մենայն հնարիւք խնդրեաք զխաղաղութիւն աշխար-
„ հիս և զհաստատութիւնն եկեղեցեաց. շինեցաք և
„ այլ բազում եկեղեցիս և վանորայս. բայց զտեղի
„ հանգստեանս մերոյ առաւել պատուով մեծացուցաք
„ և լիացուցաք ամենայն գոյիւք լերամբք և դաշտիւք.
„ աւանդեցաք 'ի սա գեօղս և ագարակս գանձագինս,
„ զԼադարանի գեղ և զագարակն իւր. զԴոդիոն և
„ զՊորտանկն, զԱրագէճ և ըզ Օ ազատայ, Օ ամա-
„ նէն և զ Օ եզնկայն, 'ի Յօշականի այգիք և երեք ջա-
„ ղաց՝ և երկու ջաղաց 'ի Դողսի, աշտարակի այգի՝ 'ի
„ Կարբայ դաշտի այգի, 'ի Մերկևլի այգի, 'ի Աժան այ-

» դի, 'ի Մրտենի այգիք, 'ի յԱնի տներ և կղպականի. և
» զարդարեցի զսա ամենայն կազմութեամբ 'ի յիշա-
» տակ յաւիտենից մեզ և որդւոց մերոց, և կարգեցաք
» 'ի ձեռն սուրբ հայր Երեմիայ և որ զկնի յաջորդեցաւ
» Սոսթենէս նորին որդիացեալ. և փոխարէն հատու-
» ցումն ընկալեալ մեր 'ի ժառանգաւորաց սուրբ ուխ-
» տիս տարին Է քառասունք անխափան մինչև 'ի գա-
» լուստն Քրիստոսի։ Արդ թէ ոք 'ի մերոց կամ յօտա-
» րաց աւագ որ զմեր տուրս պակասեցնէ. կամ հայր
» որ զմեր ժամն խափանէ, ինքն որոշեալ լիցի 'ի Քրիս-
» տոսէ և 'դատող նորա սատանայ լիցի և մի տեսցէ նա
» զփառս Աստուծոյ. իսկ որք հաստատուն պահեն զա-
» ւանդս մեր օրհնեալ եղիցին ||։

117. Իսկ 'ի վերայ Հարաւակողմեան որմոյ այսր ե-
կեղեցւոյ գոյ նոյնպէս անթուական արձանագիրս այս.

* Շնորհիւն Աստուծոյ ես Մարիամ Աբխազաց և
» Հայոց թագուհի դուստր մեծին Սենեքերիմայ՝ թոռն
» Գագկայ Հայոց արքայի, որ ետու զտուրս 'ի սուրբ և
» 'ի տիեզերական ուխտս Մարմարաշէն, առաջնորդու-
» թեամբ հօր Սօսթենէսի, վասն Գագկայ իմ պապոյն
» մեղաց թողութեան և կատային իմ հանկանն։ Եւ
» հատուցում բարի ընկալայ 'ի սրբոցս. զսեանն եկե-
» ղեցին զսուրբ Պետրոսի Քրիստոս պատարագաւ զտա-
» րին ողջոյն Կատային իմ հանգանն՝ մինչև 'ի գալուստն
» Քրիստոսի։ Արդ՝ եթէ ոք 'ի մեծամեծաց և 'ի փո-
» քունց 'ի Հայոց կամ 'ի Վրաց որ այս գրոյս հակա-
» ռակս և զիմ գեօղն զՏարուս 'ի յայս ուխտէս հա-
» նէ՝ ինքն ելցէ 'ի կենացն Աստուծոյ և պարտական լի-
» ցի արեանն Քրիստոսի, և մի տեսցէ զփառս Աստու-
» ծոյ։ Իսկ որ հաստատուն պահեն զաւանդս մեր օրհ-
» նեալ եղիցին ||։

118. Արձանագիր վերանորոգութեան նոյն մարմա-
րաշէն մեծաշուք եկեղեցւոյն, յարտաքին կուսէ 'ի հիւ-
սիսային որմն։

* 'Ի ժամանակս բարեպաշտից և աստուածասիրաց
» պարոնաց մերոց Աթապակ Իւանէի և Մանդատոր
» Զախուցէիս շահանշահի՝ հրամանաւ սոցին վերստին
» նորոգումն եղև հրաշափառ տաճարի Աստուծոյ մեր
» լուսոյ սրբոյ կաթուղիկէիս մարմարաշինայ՝ 'ի ձեռն
» որդւոց Ապուղամրի Մագիստրոսի՝ տր Գրիգորոյ առ-

» Հի եպիսկոպոսի և Հարազատի իմոյ Խաչատուրին Թոռանց
» Վահրամայ իշխանաց իշխանին զարմից և շառաւիղաց
» որքոյն Գրիգորի շինողի 'ի Հիմանց մեծաւ տենչմամբ
» և յուսով զսա վասն բազմագումար քահանայից, և
» պարգևեալ արդիւնս յոլովս գեօղորայս յայգեստանս
» կուղպականի և Ջաղացանի՝ որ և ցուցանէ իւր ար-
» ձանագիրն միրստամիջէ՝ և փարթամացուցեալ ամե-
» նայն գոյիւք առ 'ի լնուլ և առաւելուլ զպէտս կա-
» րևորս զիւրեանց և զեկաց, և ունէր ժամանակ իբ-
» րև ոչ սակաւս՝ զի աւերեալ էր յանօրինաց՝ և ըզ-
» վանքս գեղ արարեալ և զկաթուղիկէս բերդանման
» ամրացուցեալ, և կայր 'ի խաւարի և 'ի սգաւորու-
» թեան, զրկեալ ամենայն գոյից մինչև յաւուրս յայ-
» սոսիկ ։ ✠ Իսկ 'ի ՈՀԴ թուականիս Հայոց՝ (1225)
» քաջ և արի զօրականն Քրիստոսի սիրելի եղբայրն իմ
» Խաչիկն իմով կամակցութեամբ խորհուրդ բարի 'ի
» միտ արկեալ ազատել զսա 'ի տրտմութենէ և 'ի զա-
» զիր մթնազգածութենէ Հաստուցանել նախկին վա-
» ռաւորութեանն՝ Հանեալ արտաքս զչինականսն և ե-
» դև բնակարան սրբոց քահանայից և կրօնաւորաց Հա-
» ճոյացելոց Աստուծոյ ։ Զարդարեցաք զսա սպասիւք
» պայծառազգեստիւք՝ և սրբութեամբ ոսկեղէն և ար-
» ծաթեղէն և Հին և նոր կտակարանօք եկեղեցակա-
» նօք ։ և ընծայեցաք 'ի սմայ նուէր զմեր Հայրենի գեղն
» զԱջատայ, ✠ և որ 'ի վանիցս Հաղխս վերայ շինեցաք
» և անուանի Տիրաշէն, և 'ի յայսկոյս գետոյն Ջաղա-
» ցանի՝ որ կան 'ի կարմնջէն 'ի վայր և 'ի վեր, զխոտ
» զՀող և զոր ինչ 'ի սկզբանէն ունէին, և 'ի քաղաքիս
» զմեր պապենի Հայրենիքս եկեղեցին զսուրբ Ստեփան-
» նոս բոլոր ամենայն ժողովրդեամբն, և երկու այգի
» 'ի Մարմետի որ նախնեացն մերոց 'ի մեզ էր Հասեալ,
» և միաւորեցաք զվերի վանքն մեծ վանիցս իւր ամե-
» նաստացուածովք և լիցի Հրամանաւ միոյ առաջնոր-
» դի ։ մինչ այս առ այսչափ կատարեցաւ առ ժամայն գե-
» ղեցիկ եղբայրն իմ Խաչիփ Մագիստրոսն գովեալն
» ամենայն լեզուաց մարտիրոսացաւ 'ի պատերազմի ան-
» օրինաց և մի միայն մնացի ես Գրիգոր եղկելի՝ և
» զրկեալ 'ի նմանէ զմարմին նորա բերեալ թաղեցաք
» առ դրան սրբոյ կաթուղիկէիս մերձ առ նշխարհս
» Հաւոյն մերոյ Վահրամայ իշխանի և փոխարէն Հատու-

„ ցին սպասաւորք սուրբ ընդ մերոց արդեանցս զոր ա-
„ րարաք զկաթուղիկէիս զաւագ խորանին պատարագին
„ յանուն նահատակին Քրիստոսի Կիւրիկին կատա-
„ րել ամենայն աւուր 'ի սկզբանէ տարոյն մինչև ցկատա-
„ րումն տարոյն՝ յայսմհետէ մինչև 'ի ծագումն որդւոյն
„ Աստուծոյ . որ ոք խափանէ կամ շրջել ջանայ յմե-
„ չից եկեղեցւոյս՝ որոշեսցի 'ի փառացն Աստուծոյ և
„ զրկեսցի 'ի մշտնջենական կենացն , կատարիչք գրե-
„ լոցս յօրհնեսցին յԱստուծոյ և 'ի սրբոց նորա յօգի
„ և 'ի մարմին . ամէն ‖ ։

119. Համառօտ արձանագիր Հաղբատու սուրբ Նշան եկեղեցւոյն, որ փորագրեալ է 'ի հիւսիսային որմն մերձ 'ի տանիս ։

* 'Ի Թուին Հայոց ՆԽ (991)։ Սմբատ և Գուրգէն
„ հայոց Թագաւորք կանգնեն զՀաղբատու սուրբ Նշան
„ եկեղեցին ‖ ։

Նոյնպէս 'ի ձախակողմն մեծակառոյց գաւթի նորին եկեղեցւոյն Հաղբատու կանգնեալ կայ խաչքար . և 'ի վերայ փորագրեալ այսպիսի արձանագիր .

* ՆԾԳ. Խաչի (1004) 'ի հայրութեան Սիմէոնին ես
„ Ատոմ վերակացու եկեղեցւոյս կանգնեցի զսուրբ
„ խաչս . ինձ աղօթս արարէք ‖ ։

'Ի մէջ արևելեան գաւթին գոյ գերեզմանագիր այսպէս .

* Ես Հոնաւար որդի Սկանն իշխանաց իշխանի՝ ան-
„ ժամանակ ելի 'ի կենաց և սուգ մեծ թողի ծնողաց
„ իմոց . արդ որք կարդայք զիս յաղօթս յիշեսջիք .
„ Թուին ՆՀԲ ‖ . (1023)։

120. Նոյն Հաղբատու սուրբ Նշանի արևմտեան մեծակառոյց գաւթին շինութեան արձանագիրն գրեալ կայ արտաքուստ 'ի վերայ հիւսիսային որմոյ ։

* 'Ի Թուականիս Հայոց ՈԼԴ (1185) ✠ ես Մարիամ
„ դուստր Կորիկէի արքայի մեծ յուսով շինեցի զտունս
„ աղօթից 'ի վերայ հանգստարանացս մեր հօր , քուեր
„ իմոյ Ռուսուքանայ և Մարիամայ Թամարայ և ինձ
„ Մարիամու ։ Առաջնորդութեան տեառն Բարսղի
„ արհի եպիսկոպոսի . որ և աւարտեցաւ 'ի ձեռն նորա ։
„ Արդ՝ որք մտանէք ընդ դրունս սորա և երկրպագէք
„ սրբոյ նշանիս՝ յիշեսջիք աղօթս զմեզ և զնախնի
„ թագաւորս ազգօքս մեր որ հանգուցեալ են աս-

» դրունս որքոյ կաթուղիկէիս ՚ի Քրիստոս Յիսուս ‖ ։

Դարձեալ անդ յորմն արեւելեան գաւթին փորա-
գրեալ կայ * Քրիստոս որ ողորմի Վաչէի իւրում
» գալստեանն ։ Թուական ՈԾ ‖ (1201) ։

121. Նոյն Հաղբատու սուրբ Նշանի եօթնախորան
զանգակատան, որ յԱրեւելեան կողմն է եկեղեցւոյն,
արձանագիրն է այսպէս.

* Ի թուին ՈՂԴ (1245) շինեցաւ գեղեցկազարդ
» տաճարս Աստուծոյ՝ զարթուցանող փառաբանչաց
» տեառն եօթն խորանաւ ՚ի տէր Համազասպայ, որում
» ողորմեսցի Քրիստոս. և տացէ ՚ի լուսեղէն յարկաց
» իւրոց ոգւոյ նորա. և Յօհաննիսի քուեր որդւոյ իւ-
» րոյ և այլ աշխատողացն. զի բազում ջանիւ շինեաց
» զսա ՚ի յետին ժամանակս Թաթարաց ‖ ։

122. Ի Հիւսիսային կողմն նոյն Հաղբատու սուրբ
Նշանին կայ մեծ եկեղեցի հոյակապ Համազասպ ա-
նուամբ. ՚ի վերայ արեւմտեան վերին սեմոյ գրեալ կայ
այսպէս.

* Ի թուին Հայոց ՉԶ (1257) ՚ի տէրութեան մեծին
» Շահնշահի և Զաքարիային, շինեցաւ մեծափառ
» տաճարս Աստուծոյ՝ ՚ի տէր Համազասպայ. որում ո-
» ղորմեսցի Քրիստոս բարի հոգւոյ նորա ‖ ։

Առ երի հիւսիսային դրան նոյն սուրբ Նշանին գոյ
խաչքար փորագրեալ ՚ի վերայ պատկեր խաչելութեան.
և ՚ի միւս կողմն գրեալ կայ այսպէս.

* Թուին ՉԻԲ (1273). յիշխանութեան և տէրու-
» թեան սուրբ ուխտիս Աթապակ մեր սպասալար պա-
» րոն Սադունին ես տէր Յովանէս կանգնեցի զխաչս ա-
» մենափրկիչ օգնական պարոն Սադունին և յիշատակ
» հոգւոյ իմոյ ‖ ։

Իսկ յարեւմտեան կողմն Հաղբատու հասարակաց գե-
րեզմանատան կանգնեալ կայ խաչքար ՚ի վերայ եր-
կուց աստիճանաց, որ ունի զայսպիսի արձանագիր.

* Շնորհիւն Աստուծոյ ես Յակոբ և մարգարէս.
» յառաջնորդութեան տեառն Համազասպայ, կանգ-
» նեցաք զսուրբ Սարգիս բարեխօս մեզ և Մխիթար
» վարդապետին քոյրայրեցւոյ՝ և հօր Նարսղի՝ և ննջե-
» ցելոց մերոց. որք երկրպագէք քրիստոսընկալ սուրբ
» նշանիս զմեզ յաղօթս յիշեսջիք ՚ի տէր. յիշօղք-
» օրհնիք ՚ի տեառնէ. ՚ի թուի՝ ՉԴ ‖ (1255) ։

123. 'Ի հիւսիսակողմեան դաւթին յարևելեան որմն գրեալ կայ այս արձանագիր.

* 'Ի թուին՝ չիթ (1280), յիշխանութեան տեղւոյս
„ Սադունին. ես Պածած որդի Լիպարտի և ամուսին
„ իմ Գուգայ յազգէ Մամիկոնենից, միաբանեցաք սուրբ
„ Նշանիս Հաղբատայ, և զսուրբ Գրիգոր լուսաւորչին
„ որ վկայիւք սոցա նորա ձկոյթն առ մեզ էր նախ-
„ նեօք. զայն 'ի խնդրոյ եպիսկոպոսի և միաբանացս
„ ընծայեցաք 'ի սուրբ կաթուղիկէս՝ և այլ արդիւնս:
„ Տէր Յովհաննէս և միաբանքս սահմանեցին տօն սուրբ
„ Գրիգորի ծակամուտի շաբաթ օրն, և զշաբաթն և ըզ-
„ կիւրակէն զամէն եկեղեցիս պատարագն մեզ առնեն:
„ և ետուն մեզ տուն և այգի զինչ ել միաբանի: կա-
„ տարիչքն օրհնին յԱստուծոյ ||:

124. 'Ի հիւսիսակողմն նորին կայ փոքր եկեղեցի. որոյ յիշատակարանն է անթուական այսպէս.

* Կամաւն աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս առ-
„ դեամբք Խոսթունին, որ էր դուստր Հասանայ յազ-
„ գէ դեսմեանց՝ որ բերաւ 'ի Խաչէնւոյ, յամուսնու-
„ թի Զաքարիա, որ տէր Գագայ և Տաւշոյ՝ Գարդմա-
„ նայ և Տէրունականին և այլոց գաւառաց. ընդ ո-
„ րում եկեալ եղբարք իւր Սենեքերիմ և Սևադա՝ և
„ փոխեալ 'ի Քրիստոս եդան առ դրան կաթուղիկէիս.
„ իսկ Խոսթունն վասն յիշատակի նոցա և իւր՝ շինեաց
„ զսա, և ետ 'ի սա զսուրբ նշանն ոսկի, որ ունի մա-
„ սունս և զաւետարանն մեծածախ և սկիք արծաթիք,
„ և այգի մի 'ի Խոսթունաշէնի: Եւ ես տէր Յովհաննէս
„ և միաբանքս Հաղբատայ տուաք սոցա քառասունք մի
„ պատարագ 'ի տարոջն, ով խափանէ դատէ զնա Աս-
„ տուած և կատարիչքդ օրհնեսցէ քրիստոս Աստուած
„ ամէն ||:

125. 'Ի ձորն հաղբատու յարևելեան կողմն միով ժամու հեռի 'ի գետափն անկեալ կայ խաչքար մի, 'ի մի կողմն գրեալ կայ այս արձանագիր.

* ՇԼԵ թուին (1086). ես տէր Սարգիս առաջնորդ
„ սուրբ ուխտիս Հաղբատայ՝ շինեցի զջաղացս և արա-
„ րի աղատաղաց, արկի և զայգիս՝ տնկեցի և զդրախտս
„ զանազան մրգաբերօք 'ի փառս սուրբ նշանին և 'ի
„ վայելումն տանս Հաղբատայ: Արդ եթէ ոք զսա 'ի
„ Հաղբատայ հանէ կամ աւերման պատճառ լինի 'ի

„ սարսափ ժողովուրդք՝ վառեալք զինու պատերազմի-
„ լով ընդ Թաթարացն ձեռնքեալ գան 'ի Ղրիմ և
„ բնակեն 'ի Փէօդօսիայ Ա, և այլն. Տես 'ի Ռ.էֆէ
„ (502) :

132. Ապա 'ի վերջին կործանման Անւոյ մի մասն
բնակչաց չոգաւ 'ի Վասպուրական աշխարհ, մանաւ 'ի
Պարսկաստան, և անտի յԱժտէրխան. և մի մասն
գնաց 'ի Խաղտիս, 'ի Համշէն, և 'ի Տրապիզոն. ուր Յոյն
թագաւորն Կիր Ալէքսիոս ետ նոցա բնակութիւն և
տեղի եկեղեցեաց և վանաց : Տես 'ի Պատմութ. 127.
144 :

Սուրմեր փախուցեալ կային յառաջագոյն և բազ-
մութիւնք Հայոց, որոց բազմացեալ ունէին Եպիսկո-
պոս : Յամի տեառն 1342. Ստեփաննոս եպիսկոպոս
Տրապիզոնի չոգաւ 'ի ժողովն Սսոյ : Իսկ որք մնացին
'ի Համշէն կէս մի աղքատութեամբ տուայտեալ ան-
ցին 'ի Տրապիզոն առ առաջին Անեցիս եղեալս անդ.
և սփռեցան 'ի գիւղօրէս. կէս մի չոգան 'ի Սիւրմէնէ
և 'ի Խուրշունլի, և մնացեալքն դարձան յայլադաւանու-
թիւն : Տեսաք զանազան չնչուածս Անեցւոց յերկիրն
Պոնտոսի երբ Կայսերական իշխանութեամբ, և Եկե-
ղեցական պաշտօնիւ յայց եղեալ շրջեցաք յախտուրիկ
կողմանս յամի 1817. ընդ բարձր հրամանաց սրբազան
ժողովոյն :

133. Այլ մեծ մասն Անեցւոց հաւաքեցաւ 'ի Լե-
հաստան. զի անդադար յամենայն կողմանց անցանէին
ընդ ծով 'ի Մոլտավիա և 'ի Վլախիա, և անտի 'ի Կա-
մենիցա, 'ի Լոսոլաքի և յայլ Կամենիցս Լեհաց : Իսկ
զի ոչ միայն երկիրն էր խաղաղ և ընտ իւրոց բարերար
նման Հայաստանեայ. այլ և բարք բնակչացն չէ օտար 'ի
բարուց նոցա. զորս գտաք օտարասէրս, աստուածասէրս,
և բարեբարոյս :

134. Յամի տեառն 1060. Դեմետրիոս դուքս Կյաւ-
միր Սուասիոյ ինքնագլուխ տիրէր 'ի Վալաքիա. որդի
սորա Թէոդոր իբրև լուաւ զքաջութիւն Հայոց ընդ-
դէմ Յունաց և Պարսից, կամեցաւ ունել զնոսա իւ-
քեան նիզակակից, և տալ բերել զնոսա յերկիր իւր,
և օգնութեամբ նոցա պատերազմիլ ընդ թագաւորին
Լեհաց : Ուստի 'ի 1062. առաքեաց առ նոսա հրաւիր-
անս և հրաւիրեաց զնոսա երթալ ընդ նմա 'ի պատե-

րազմ խոստանալով նոցա բազում ազատութիւնս ։ Այս բանս Հռովմայեցւոցն թարգմանեալ 'ի նմին ժամանակի 'ի ռուսէ 'ի Հայ .

* Այս մեծի դպրի Թէոդորի որդւոյ Պետրոսեայ ա-
„ նաշխարհաչեան Հայոց . որք առաջ կամին զայլ ։ Ընկեցին
„ յազնուութիւն իմն ։ Այլ եւ տայց ձեզ ազատութիւն
„ ընդ ամն երիս ։ Այլ յորժամ լինիցիք ուխս , ուր եւ
„ հաճեսցի որ եղիցէ ազատօրէն ։ Յամի 1062 Ա ։

135. Օրս Հռովմայական հաստատեաց է . Մ լաախսլաւոս արքայն Լեհաց ընդարձակ Հռովմայականու թերով . զոր եւ Իսլամցի Հայոց յամի տեառն 1641 ։ Յորմէ յայտ է թէ Հայք անցին 'ի Լեհաստան նախ յամի տեառն 1062 յառաջնորդութեան գերմանն Պետրոսեայ եւ բնակեցան 'ի Կիով . զի անդ էր յայնժամ աթոռագաւին . ուրանօր գոյ եւ քարաշէն եկեղեցի Հայոց , այլ չէք անդ Հայ ։

Ապա այսուհետեւ որչափ առաւել թշուառացաւ Հայաստան եւ Իրակ գաւառ , այնչափ առաւել գիմեցին Հայք 'ի Լեհաստան . որք էին 40 հազար տունք ըստ Գահկեցւոյն ։ Սոր աւանդութեամբ պատմեցին մեզ , թէ Անեցիք այնչափ զօրացան 'ի Լեհաստան , մինչեւ Լեհցիք երկուցեալ 'ի նոցանէ կորուսին զբազումս խաբէութեամբ 'ի պատերազմի անդ , զի մի բռնացեալ տիրեսցեն քաղաքաց նոցա ։

136. Արդ՝ նախաժամն Անեցիք չոգան 'ի պատերազմ ընդ Պետեր դքսին . եւ մեծաւ քաջութեամբ կատարեալ զպատերազմն պսակեցան 'ի նմանէ . եւ ոչ իսկ այնուհետեւ դարձան 'ի Հայաստան . այլ բազումք մնացին 'ի զինուորութեան . եւ քաջութեամբ իւրեանց եղեն ազնուականք , եւ ստացան զմեծամեծ կալուածս . զորս մինչեւ ցայժմ ժառանգեն յաջորդք իւրեանց . մանաւանդ 'ի մէջ Լիդուանիոյ , որք այժմ Լեհացեալ են , միայն պահեն զանուն տոհմի իւրեանց . զօրօրինակ Պոիդորովիչ , Մախասովաքի , Լուբիձանք , եւ այլն ։ Իշխանն ոմն Մախասովաքի այնչափ փառաւորեցաւ , մինչեւ եղեւ երկրորդ՝ արքային Լեհաց ։

137. Իսկ մեծ մասն այսր ժողովրդեան անձնատուր եղեն վաճառականութեան , եւ ըստ յարմարութեան բնութեան իւրեանց 'ի յոլով քաղաքս ծաղկեցուցին զվաճառականութիւն , եւ յամենայն տեղիս եղեն պատ-

ճառ մեծի շինութեանն. որով և ճոխացումն քաղաքակա-նին մարդկանգրոյք Թագաւորաց, որպէս ասեմք: Նոյնս և առաւել զօրացեալ գրաւեցին զամենայն վաճառականութիւն Լեհաց. և այնչափ փարթամացան. զի երբ Դ. Վլատիսլաւն խնդրեաց փոխ հարիւր հազար գահեկան 'ի Նեռնարդոմնիչ հայ վաճառականէ. նա եհարց, թէ զի՞նչ տեսակ դրամոց խնդրես, ասկի, արծաթ, եթէ պղինձ: Թագաւորն առ 'ի փորձել զնա ասաց յերից տեսակաց ես: Եւ նա անդէն առաքեաց յերից տեսակաց ես: Ընդ որ զարմացեալ յոյժ արքայն այնուհետև 'ի մեծագոյն համարի ունէր զազգն մեր. որ այնչափ շահաբեր էր տէրութեանն.

Եւ Ինֆլանցիս, որպէս և առ Տրապիզոնցիս զառաազգաբանութիւն գրեալ յԱնի, որպէս պատմեցին ծերք: Սամխալացի ծեր մի պատմեաց թէ տեսեալ Խոտորովիչի ունէր Թուղթ գրեալ յԱնի. զոր էառ փեսայն իւր Ղաստուրովիչ. զայս Թուղթ 'ի բազում քաղաքս Լեհաստանի որոնեցաք, այլ ոչ կարացաք գտանել:

138. Յամի տեառն 1183. Անեցիք գաղթ տարեալք 'ի Լեհաստան շինեցին զայլևայլ եկեղեցիս յԼւով 'ի Լիդուանիա, 'ի Կամենից, 'ի Լուցկա, և յայլ տեղիս: Նաև առին հրովարտակօք զայլևայլ ազատութիւնս և արտօնութիւնս. կարգեցին դատարանս, եդին զանգապետ Մուն անուամբ. և 12 դատաւորս դատել ինքնագլուխ զազգն Հայոց. ես և 40 հոգաբարձու եղբարս. այսպէս ազատ կային յամենայն քաղաքս, որպէս ունիմք պատմել (189):

Այս իրաւունք հաստատեցաւ 'ի Կամենից յամի տեառն 1344. և յԼւով 'ի 1356. հրովարտակաւ Կազիմիրի արքային, որպէս տեսաք: Որք և 'ի բազում ժամանակս վարէին զօրէնս Յովհաննու Բագրատունի Թագաւորին, զոր յետոյ Թարգմանեցին 'ի լատին. և կայ մինչև ցայժմ:

139. Ահա Անեցիք այսպէս զօրացան 'ի Լեհաստան և փարթամացան յոյժ. որ և այնչափ մեծ պատիւ ունէին առաջի տէրութեան Լեհաց, մինչև համարէին ազնուական ազգ նախապատիւ: Նորին աղագաւ մնացորդք Հայոց 'ի Թաթարստան նեղեալք 'ի Թաթարաց՝ գունդ կազմեցին ելին բազմութեամբ անտի դի-

մեացին 'ի Լեհաստան և բնակեցան նախ՝ յընդարձակ դաշտին՝ որ մինչև ցայժմ կոչի Օրմանի։ Նայս փոխադրութիւն նոցա եղեալ է զկնի Թուականին 1500. տպէս տեսանի 'ի գրուածս նոցա. որոց լեզու յայնժամ գլխովին փոխեալ էր 'ի լեզու Թաթարաց։ Եւ որովհետև բազմութիւն 'ի միասին չորքան անդ, և զայլ լեզու ոչ գիտէին, նմին իրի և Հայք Լեհաստանու հետևելով նոցա սկսան խօսիլ և գրել Թաթարերէն։ Մինչ զի՝ այն եղև հասարակ լեզու Անեցւոց. զոր վարէին ոչ միայն 'ի դատաստանական գրուածս, այլ և յեկեղեցականս. քանզի բնական է ազգիս զիւրն արհամարհել և զօտարն ընդգրկել։ Որոց պարտ էր հետևիլ քաղաքավարութեան, իմաստութեան, ազգասիրութեան և բարեպաշտութեան այլոց ազգաց, և ոչ լեզուին և սովորութեան։

140. Գտաք զյիշատակագիրս դատարանաց՝ բոլորգրով գրեալս սկսեալ 'ի Թուականէն Հայոց ՋԺԲ (1463). Փետրվարի ԻԶ այսպէս.

* Մենք տանուտէրքն առաջ պն Մոյթ Խաչատուր.
„ պն Սիկոլ, երեսփոխան պն Յոհաննէս, Թադէին պն
„ Մուսէս. պն Գրիգոր շայ Մարդէքին որդի. պն Փոխ-
„ նոյ, պն Ստորոնիկն. պն Խաչիկն Ավանեսին. պն Օլու-
„ խօճայ, երէկ մեր առջև պն Մոյթ Ավանէս, դուստր
„ Նազինաբէթն, պն Յակոբին կողակիցն Ե որդով. մեծ որ-
„ դուն անուն Նուաշքօ. երկուս Ոստեցքօ. Գ ուՄն Թու-
„ ման. խրեր տվին իրենց յաւժար կամաւն ինչ որ մնա-
„ ցեալ էր մեր հաւրէն պն Յակոբէն, հետ մեր մօրն
„ Նազդ կամ Կումաշ... Ե տղյն ու մօրս Ա քարէտուն.
„ Ա քարէխանութ... Զ բաժին անէնք Ա բաժին տանք
„ մեր մօրն, ու Ա Ա բաժին մենք առնունք ||. և այլն։

141. Նայս յիշատակագիրք հայերէն ժամանէ մինչև 'ի Թուական ՋՀ Մարտի ԺԸ. այնուհետև սկսանի Թաթարերէն. զորօրինակ.

* 'Ի Թվին ՋՀ Օգոստի ԻԳ (1521)։
„ Ե Պոլուբէտի եոլտայ վինայտան քէլկանտայ քի
„ քոստայ Լազար [illegible]քոյկայ, եաման տզլարայ դիբետի
„ խաչան քելտիլար քերմանկայ եիդտի լազար քեդ-
„ քոյէայլարնի տայ կիլէյ էդի քոսդայնիյ ուսդունայ ||
և այլն։ Նոյնպէս վերջանայ այս գիրք Թաթարերէն մինչև ցԹուական ՌԺԳ (1564)։ Իսկ դատաստանագիրք

և հաշուեգիրք Կամենիցի յառաջ երթան թաթարե-րէն (247)։ Նշմարի յիշատակարանն սկսանի թաթա-րերէն յամի տեառն 1630, և հասանէ մինչև ցամն 1642. այնուհետև խառնին բազում բառք լատինացւոց և Լեհաց. զորօրինակ.

* Anno 1642 — Անայ 20 Novebri.

» Մէրմին օտըրասիլրդամ պօլկան բըրըօտանեու Պէտ-
» դամենդու հօ Սուրետկա ժօլքվատա ինն Ասեոմէ պէ
» էրէցփոխան Մէրնաթովնցնինէ ‖ և այլն։

142. Ահա այսպէս լեզու Անեցւոց առ սակաւ սա-կաւ փոփոխելով եղև այժմ հասարակ լեզու նոցա լե-հերէն. մինչ զի սակաւ ոմանք իմանան զազգային լեզու իւրեանց. թէպէտ եկեղեցականք հայերէն վերծանեն և կատարեն զխորհուրդս առանց քաջ իմանալոյ զմիտս բանին։

Տեսաք զթարգմանեալ ժամագիրս և զմաղմոս թա-թարերէն գրեալ 270 ամօք յառաջ. եւս և Նարեկ. Թուղթս Պօղոսի. որ ունի զայսպիսի իմն յիշատակարան.

*Պուռկալլանտի պօղոս առաքելնըրնկ պիդիտէ թարգ-
» մանել պօլկան էրմէնի դիլինտան խըբչախ դիլինայ.
» խօլուպլայ եազըխլը տայարսանեսիզ միքայել քահա-
» նայնընկ զօսդայ օղլունունկ խօլչխայինտան. բան
» իւաշքանունկ. բան միքլաշ օղլունունկ խայսիքի պա-
» նի եազդըըրտըը... Եազըլտըը իլով շահարինայ. գօլէ-
» կայանա սուրբ Աստուածածինինինկ. կթըլուխունայ
» տէր ստեփաննոսունկ ախբաշլըքընայ. տէր Գրիգոր ար-
» հիախբաշինինկ խանլը երեսփոխանինայ պէ Օհան. ա-
» դապէյ օղլու տայ պէ Խրիհոր բան աւհան օղլունուն.
» կ. թվ. ռժա ‖ (1562)։

143. Տեսաք նաև զաղօթագիրս և քրիստոնէական վարդապետութիւն թաթարերէն. ուր գրեալ կայր և թուղթ դաւանութեան Ներսիսի Շնորհալւոյն, տասնաբանեայ պատուիրանք, հաւատամք, և այլն։ Այսպէս սկսանի Հայրմերն * Աթամըզ պիզիմ քի գօգտա սէն. Արի
» պօլսուն ատընկ սէնինկ. քէլսին խանլըխընկ սէնինկ.
» պօլսուն էրքինկ սէնինկ ‖. և այլն։ Այսպէս և Հաւա-տամքն * Ինանըր պիզ պիր Թէնկրիկայ. Աթակայ
» պարչանը դուդուչիկայ. եառաթուչիսինայ գօգ-
» նունկ տա երնինկ, գօրունկանլարնէ, տա գօրունմա-
» կանլարնը ‖. և այլն։ Իսկ Նորաստեղծեալն. * Եան

„ կիմ եառադդի օղլու Թէնտինենի Հիչլիքեղան · առալ
„ զօզնու զօզնուննի · առ զօզդակին չերուվլլարինի Թէնա
„ սիզ անկլօվուչի Փրիշդալարնի · առ սէզիկելի էլէմին
„ դալարնի · անտօրդաուն խաղշելընզամ պօլկան ապր-
„ լադդը՝ խայսիլարի միլել տայեմ Հայպաթլանըըը՝
„ երրօրդութիւն այդօվուզ || ։

144. Ահա այսպէս էր վիճակ Անեցւոց յառաջ քան զերկու կամ զերիս դարս · որոց լեզու Թէ և փոխեալ էր, այլ ևս էին ճոխութեամբ · ունէին զայլևայլ պարգևագիրս սակս վաճառականաշահութեան · զոր ծաղկեցուցին յամենայն քաղաքս Լեհաց · որպէս տեսցի 'ի կարգիս ։ Յետ ժամանակաց բազումք 'ի մնացորդաց Անեցւոց 'ի Պարսկաստանէ և յայլ տեղեաց հեռահեռաց անցին 'ի Լեհաստան · և միացեալ ընդ համազգեաց անդրէն սկսան խօսիլ հայերէն · և մինչև ցայժմ 'ի բազում տեղիս պահեցին զիւրեանց լեզու · որպէս տեսանք 'ի Ստանիսլաւ, 'ի Կամենից, 'ի Սնեադին, 'ի Կուտեր, 'ի Հօրոդենքա, 'ի Սուչով, 'ի Մոհլով, և այլն ։

145. Նոյնպէս Կեռլացի, Պաշպալովցի, և Ճոռ-ճովցի Անեցիք մաքուր խօսին հայերէն · և 'ի մէջ Մաճառաստանու ունին առանձին դատարան և դատաւորս հանդերձ պարգևագրով · ուրանօր 'ի համարի են առաջի ամենայն ազգաց, և անպակաս իշխանաւոր անձինք, և վաճառականք ։ Արտաբերութիւն ոսցա և եղանակ խօսից ոչ շատ տարբերին յարտաբերութենէ Տրապիզոնեցւոց, որք են մնացորդք նոցա (324)։ Բայց սաստիկ է հնչումն՝ և Թանձր լեզու Մաճառաստանցւոց ։

146. Գրեթէ յամենայն երևելի քաղաքս Լեհաց դատաւորին արքունի խորհրդականք յԱնեցւոց անտի · նոյնպէս և եկեղեցականք մեծամեծն են և նախանձելի · սակայն բազումք փոխեալ զծէսս լեհացեալ են ։ Եթէ ոչ լինէր աթոռ Հայոց Արքեպիսկոպոսութեան Լվովայ, ցարդ բոլորովին փոխեալ էին Անեցիք · իսկ զի՝ ուր ուրեք նստի հայ ժողովրդապետ, անդ պահի ծէս և յաջորդութիւն Հայոց · և Լեհ քահանայք չեն կարող հովուել զՀայս ։

147. Արքեպիսկոպոսութիւն Հայոց յԼվով յառաջագոյն ընդարձակ էր յոյժ, և հասանէր մինչև ցՄաճառաստան, ցՄոլտավիա, և մինչև ցԹաթարստան ·

որպէս յայտնի է 'ի մնագաղութեայ կանոնակէ Յովհաննու Արքեպիսկոպոսին ։ Նա այժմ միայն հովուէ զժողովուրդ Լեհաստանու 'ի բաժնին գերմանացւոց . և բաժանի 'ի 16 ժողովրդապետութիւնս ։ Իւր ամենայն ժողովրդապետք ընտրին յԼւովլ յԱրքեպիսկոպոսէն , և ըստ կարգադրութեան նորա կառավարեն զվիճակս իւրեանց ։

148. Յամի տեառն 1606 . յորժամ Շահաբաս արքայն Պարսից վարեաց 'ի Պարսկաստան զժողովուրդ Հայաստանեայց , բազմութիւնք Հայոց փախեան 'ի Թաթարստան և 'ի Լեհաստան , և միացեալ ընդ առաջնոյ զօրացան . շինեցին զերևելի եկեղեցիս և զականաւոր շինուածս . որպէս տեսցի 'ի մօտոյ ։

149. Բայց որովհետև 'ի սկզբան անդ անմիաբանութեամբ զրկեցան 'ի գեղեցիկ հայրենեաց իւրեանց . թէպէտ ջան եդին զօրանալ յօտար աշխարհս և յազգս հեռաւորս . սակայն անհնար էր նոցա հաստատ մնալ և վայելել յազատութեան իւրեանց , զոր ընկալեալ էին յարքայից Լեհաց ։

Ի սոյն յամի տեառն 1795 . երբ անկաւ թագաւորութիւն Լեհաց , Նեմեցիք ևս կորուսին զազատութիւնս իւրեանց յամենայն տեղիս . այնուհետև սկսան նուաղիլ , և շատք աղքատացան ։ Սմին իրի գրէ Ռուաքել պատմագիր ողբալով . * Անդէն փառաւորեալք և
„ տարամերժեալք յերկիր օտար և յազգ այլասեռ և
„ այլալեզու . . . և անդէն օր աւուր առ սակաւ սակաւ
„ նուազին մահուամբ և կորստեամբ ։ ։

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՈՐ Է

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### ՈՒՂԵԳՆԱՑՈՒԹԵԱՆ ՄԵՐՈՅ

150. Սան բոլորելոյ զպատմութիւն ուղեգնացութեան մերոյ հարկաւորեցաք դնել նախ զհարկաւոր գիտելիս 'ի վերայ Անւոյ և անեցւոց. այսուհետև ժամ է մեզ բուռն հարկանել զստորագրութենէ երևելի քաղաքաց՝ ընդ որս դէպ եղև մեզ անցանել: Այլ մանաւորապէս գիտէ պատմութիւնս ստորագրել զայն քաղաքս, յորս բնակին ազգայինք մեր՝ ծագմամբ անեցիք. որոց ցրուեալ գոլով յայլևայլ աշխարհս՝ 'ի Ջահ դիպաւ մեզ կրկին անգամ յայց ելանել. նախ՝ անցանելով 'ի 1808. ընդ Մաճառստան, ընդ Մոլտավիա, և ընդ Պուլղարիա. երկրորդ՝ 'ի 1820. ընդ Գերմանիա; ընդ Լեհաստան, և ընդ փոքր Թաթարստան, կամ ընդ Նոր Ռուսիա. զայս կրկին ուղեգնացութիւնս 'ի մի լծակցեալ վիպագրեմք ըստ կարգի: Սակայն ուր ուրեք ոչ գտանեմք զհաստատուն բնակութիւնս Հայոց, հարևանցի անցանեմք. և ուր տեսանեմք զՀայս զորս համարիմք սերունդս անեցւոց. զկայ առեալ մատչիմք 'ի քննութիւն պատմութեանց և հին շինուածոց: Այլ քանզի Անեցիք փախուցեալք ոչ միայն 'ի Լեհաստան, այլ և 'ի Նոր Ռուսիա, կամ 'ի Խրիմ բազում շինութիւնս արարին. սորին վասն անձամբ խուզեալ զամենայն տեղիս այսր Թերակղզւոյ՝ ստորագրեմք աշխարհագրական տեղեկութեամբք (384)

151. Յամի տեառն 1820. Ապրիլի 13. ելեալ 'ի ճոխաշխարհիկ մայրաքաղաքէն Վենետկոյ, 'ի մեծահռչակ

վանաց սրբոյն Ղազարու ուղղեցաք զընթացս մեր 'ի Մեստրէ ուստի բարեշէջն և գեղազուարճ: Յետոյ անցեալ ընդ գաւառն Գորիցիոյ տեսաք զանուանի Հին մայրաքաղաքն Գորիցիա բազմամարդ և լի երևելի շինուածովք եկեղեցեաց մենաստանից և դպրոցաց: Անտի անցեալ ընդ զանազան քաղաքս և աւանս բարեշէնս նահանգին Փռիուլի հասաք 'ի Լուպլիանայ մայրաքաղաք Կառնիօլայ նահանգին, որ և կոչի Լայպախ. քաղաք գեղեցիկ յոյժ և շինանիստ: Ուղևորեալ անտի հասաք 'ի Կրաց մայրաքաղաք Շտիրիոյ նահանգին Գերմանիոյ, բազմամարդ, մեծ և բազմավաճառ առ Մուր գետով, յորոյ վերայ է մեծ կամուրջն կրպակաւոր վաճառատեղի: Աւրանօր տեսաք բերդ հզօր 'ի վերայ բարձրաւանդակ սարի. բազում են 'ի նմա երևելի եկեղեցիք, մենաստանք, պալատք մեծամեծաց, և գործարանք զանազան արուեստից: Ելեալ անտի յառաջին ուղեգնացութեան մերում չուեցաք 'ի Մաճառաստան ընդ գետս Մուր, Դրավա, Սավա, և Դունա, և շրջեալ ընդ զանազան նահանգս Մաճառաստանու, Սլաւոնիոյ, և Վալախիոյ դարձեալ 'ի Կոստանդնուպօլիս: Այս 'ի 1820. ապրիլի 26. անդրէն հանդիպեալ 'ի նոյն քաղաք Կրաց, ուղղեցաք զընթացս մեր 'ի Վիեննա, և հեռացեալ 'ի Կրացէ 104 մղոնաւ հասաք 'ի նոյն մեծ և ճոխ մայրաքաղաք բոլոր Գերմանիոյ:

152. Կայսերանիստ քաղաքն Վիեննա բաժանի 'ի 4 թաղս, որք են Շօտթէն Ֆիէրթէլ. Վիտմէր Ֆիէրթէլ. Շթուպէն Ֆիէրթէլ. Կէրնթնէր Ֆիէրթէլ. և ունի դրունս 10. այլ գլխաւորքն են՝ Կառնթնէր Թօռ. Պուրկթօռ. Ռօթէնթուռ. Շտուպէնթօռ. Շօտէնթօռ. Նայթօռ. ունի նաև փողոցս 80, և հրապարակս 20. գլխաւորքն են՝ Գրօպէն. Հօֆ. ուր գան երկու վիմատաշ շատրուանք և 'ի միջի պղնձի սիւն. 'ի գլուխն արձան Աստուածածնին պղնձաձոյլ. Պուրկ Բլաց. ուր են արքունիք. Նայմարկ, ուր գոյ շատրուան. Կրաւղէն, ուր կայ սիւն և մահարձան Երրորդութեան. Հոհէն մարք. ուր գան կրկին շատրուանք և արձան Աստուածածնի և սրբոյն Յովսեփայ. Ֆրայունկ. Իւդէնբլաց: Գրեթէ յամենայն հրապարակս անպակաս են երևելի շինուածք, եկեղեցիք, արձանք, և շատրուանք: Մեծապարծ և ականաւոր է և:

եկեղեցին սրբոյն Ստեփաննոսի արքեպիսկոպոսանիստ արքայաշէն և հոյակապ. բովանդակ 'ի կոփածոյ վէ-մաց, և զարդարեալ պէսպէս դրուագօք նկարուց և ար-ձանաց. ունի խորանս 37 մարմարիոնեայս. բազում են 'ի նմա երևելի դամբարանք կայսերաշէնք. զան-գակատունն է 'ի կոփածոյ քարանց՝ վերուստ 'ի վայր գեղեցիկ դրուագեալ ստեղծք և բրգօք. բարձր 460 ոտնաչափ:

Երևելի է և մեծամեծն ժողովրդապետական եկե-ղեցի սրբոյն Պետրոսի. յորում են մեծագործ դամ-բարանք կայսերաց և դքսից: Փառաւոր են և արքու-նիք ուր գոյ մեծ գրատուն բազմահատորեան, և հանդի-սարանք բնական պատմութեան, և բնաբանութեան: Անուանի են համալսարանք քաղաքիս ուսումնականու-թեան փիլիսոփայութեան և այլ գիտութեանց. Ճեմա-րանք աստուածական արուեստից, դպրոցք 'ի ծնել խլից և համրից, մեծաշէն պանդոկք, անկելանոցք, և պալատք մեծամեծաց, այլովքն հանդերձ:

153. Շուրջանակի ունի մեծամեծ արուարձանս 33. Թուով. գլխաւորքն կոչին Լէօբօլշդադ. մեծ քան զբուն քաղաքն, յորմէ անջրպետի 'ի ձեռն Դանուբայ գետոյ. յորոյ վերայ է փառաւոր կամուրջն, զոր նորոգ կառու-ցին յաւուրս մեր: Անդ է մեծ պարտէզն արքունի Աւ-կարդէն կոչեցեալ գեղեցկատեսիլ և զուարճալի. Ռօսաու, ուր է գործարան յախճապակեայ անօթոց. Վէօրինկէր-ճասսէն. Լանդշդրասէ. Յօզէֆշդադ. Մարիահիլֆ. Վիէ-դէն, ուր է փառաւոր եկեղեցի սրբոյն Կարոլոսի. Ռէն-նըվէկ. ուր է պարտէզն Պէլվէտէրէ. Մարգարէթ. Էրդպէրկ:

Անուանի է գեղեցկաշէն եկեղեցին և վանք ուխտին միաբանից Լէօպօլդշդատ արուարձանի, զոր շնորհեաց Կայսր ն Ֆռանչիսկոս միաբանից Հայոց Մխիթա-րեանց 'ի Մարտէ յամին 1810. ուր գոյ դպրոց հայ վանականաց, գրատուն, և տպարան այլովքն հանդերձ: Արտաքոյ քաղաքին են գեղազուարճ ամարանոց և ա-պարանք Կայսեր կառուցեալք 'ի Շէօնպրուն անուանի պարտիզին. ուր տեսանի գեղեցիկ ջրազարդ, մայրին ծառաստանս, լաբիւրինթոս, շատրուանս, ծառս շրջապատեալս 'ի կոփածոյ քարանց; զանազան տեսակս կենդանեաց Ափրիկոյ և Ամերիկոյ այլովքն հանդերձ:

ունէին զերիս եկեղեցիս, և վանատունս, որպէս յիշատակի 'ի կոնդակին Փիլիպպոսի կաթուղիկոսին. այժմ մի միայն մնացեալ է, և հազիւ գտանին անդ 100 տունք Հայոց, յորոց մեծամեծք 'ի գիւղօրէս իւրեանց բնակին:

### Վանք Հայոց:

164. Մեծահռչակ և բարեշէն է վանատուն Հայոց ընդ բոլոր Լեհաստան սակս բարեկարգութեան և ուսումնական անձանց. որ յառաջ կոչէր Հոճկոպար Անծածին, կառուցեալ 'ի քաղաքամիջի անդ մերձ 'ի մեծ հրապարակն. և թաղն կոչի Օրմէնսքէ ուլիցա, այսինքն Հայոց փողոց: Այժմեան բնակիչք վանատանս են քահանայք և կանոնիկոսք Արքեպիսկոպոսին, որք անուանի են յոյժ և 'ի պատուի սակս գիտնականութեան իւրեանց. մինչ զի լատին Արքեպիսկոպոսք մեծամեծ պարգևօք առնուն զոմանս 'ի նոցանէ, և կացուցանեն ժողովրդապետս 'ի վերայ Լեհաց. որպէս եղեն յաւուրս մեր իմաստուն կանոնիկոսք Զախարևիչ, Մարամօրուշ և այլք (201). որք էին դասատուք համալսարանին:

Այս վանք շինեալ 'ի միջոցի երկուց մեծամեծ փողոցաց, ունի առանձին դուռն և փողոց հասարակաց. ընդ որ ժողովուրդք քաղաքին անցանեն փողոցէ 'ի փողոց. որ և բաժանի 'ի չորս մասունս. ա. Եպիսկոպոսարան. բ. Կանոնիկոսարան. գ. Կուսաստան. դ. Եկեղեցի:

### Եպիսկոպոսարան.

165. Արդ՝ եպիսկոպոսարանն կառուցեալ է յարևելեան կողմն 'ի վերայ վերին փողոցի, բարձր և գեղեցիկ 'ի զանազան սենեակս բաժանեալ. ունի զառանձին մատուռն և փոքրիկ դրատուն հանդերձ գեղեցիկ և զարդարուն սրահիւն՝ ուր տեսաք գեղեցիկ նկարս և զկենդանագիրս Արքեպիսկոպոսաց Հայոց: Առաջի եպիսկոպոսարանին 'ի սալայատակ բակի անդ կանգնեալ կայ քարեայ սիւն ըստ բարձրութեան շինուածոյն, և 'ի վերայ սեանն կանգնեալ մեծ քարեայ արձան

Քրիստափորի վկայէին բարձեալ զմանուկն։ Յոյլուս ելեր. Ի վերայ ներքնախարսխին գոյ արձանագիր լատիներէն.
» * Ի փառս սրբոյ Երրորդութեան զայս եկեղեցի և
» վանս նորոգեաց պատուելի Պարոն Խաչիկն Ակուլ
» տօնօվլիչ կառավար և մեծաւոր հայաստանցի 'ի 1716.
» յաւուր սրբոյ Խաչին ։ 'Ի յատակ տեղւոյս երևին մեծամեծ վէմք գերեզմանաց փորագրեալք լատին և հայ գրով. բայց ոչ գտաք հնութիւն ։

166. Առ երի այսր սեան գոյր 'ի հնումն Լուսաղբիւր շինեալ ընդ եկեղեցւոյն, որպէս սովորութիւն է աշխարհիս (Պ[illegible] 127). այլ զկնի ժամանակաց կործանեցաւ. և զսեւագոյն վէմս գտաք եդեալ 'ի մէջ որմոյ զանգակատան. բազում դժուարութեամբ ընթերցաք զյիշատակարան երկաթագիր այսպէս. * Ի Փրկութե
» Պատրիմեր Պռուլը շինեցին հայ աղբարքն զաղբիւր
» մի թվ. ՉԺԳ (1264) ։

Ի ներքոյ եպիսկոպոսարանին դէպ 'ի վերին փողոցն էր դատարան Հայոց, որ յառաջ էր յառանձին թաղի և կոչէր Սադրուղէ. այլ 'ի վերջին ժամանակս աստ վճարէին զամենայն դատս ։ Իսկ 'ի բառնալ տէրութեան Լեհաց բարձաւ և դատաւորութիւն Հայոց. նոյն տակաւին իշխանք աստ 'ի խորհուրդ մտանէին կարգելով զայն ինքեանց խորհրդարան, և այժմ է տպարան գրոց Լեհաց և գերմանացւոց ։

167. Իսկ Հայոց տպարանն հաստատեցաւ յԻլվով 'ի վաղուց վասն տպագրելոյ զգրեանս Հայոց ։ Յամի Տեառն 1616. շինեցին 'ի մի կողմն վանից տպարան, և տպագրեցին զբժշկական և զաղօթարական գիրս. յառաջ քան զայնս տպագրեցին զՍաղմոս, որոյ յիշատակարան այսպէս պատմէ.

* Ամենակարող զօրութն Այ կազմեցաւ նոր տպա-
» գիրս երկիրն Իլախաց քաղաքս Լէվ կոչեցեալ, ընդ
» հովանեաւ Ննջման սուրբ Ածածնին ձեռամբ յոգնա-
» մեղ քարմատանեէնց Յովանէս Երիցուս, զոր հոգս
» արեալ մեծաւ աշխատութք և բազում ծախիւք տա-
» րի մի բոլոր արուեստաւորաց հետ դատեցայ մինչև
» գիրն 'ի գլուխ հանի և նոր կազմարան սահմանեցի.
» և վասն փորձի նախ զերգսն Դաւթի մարգարէին
» տպագրեցի 'ի յօգուտ և 'ի շահ նծաւէր աղօթողաց
» մերասեռ ազանց . . . Արդ՝ եղև զրաւ սորին թվա-

„ կանոնութեան Հայոց ՌԿԵ ամին. յամսեանն Դեկտեմ-
„ բերի ԺԸ և 'ի Տեառն 1616 ամի . . . 'ի Թագաւորու-
„ թեանն Քրիստոնէից Լէհ ազգին բարեպաշտ ար-
„ քայի երրորդ Զիկմունտին ||. և այլն : Իսկ 'ի 1705
տպագրեցին Սաղմոս մի Թաթարերէն :

### Սանտնիկոմարան.

168. Սանտնիկոմարանն է բնակարան Նախապատիւ քահանայից, պարսպապատ բարձր և քարաշէն, բաժանեալ յերկուս շինուածս. ստորին մասն եռայարկ կառուցեալ է 'ի վերայ ստորին փողոցի :

Աստ է գրատունն բազում գրչագիր և տպագրեալ մատենից Հայոց և այլոց ազգաց. ուրանօր յանձնեցաւ մեզ ամսօրեայ ժամանակաւ խուզել զգրչագիր մատեանս, յորս գտաք զերիս անգիւտ մատեանս, և ընկալաք 'ի պարգևի մասին 'ի յաւերժական յիշատակ ուխտիս սրբոյն Ղազարու 'ի Վենետիկ. ա՛ Ճառք Փիլոնի իմաստասիրի գրեալ 'ի վերայ մագաղաթի սակս ա՛ Հեթմոյ Թագաւորին Հայոց. զայս գործ Թարգմանեալ 'ի լատին ըստ մասնեայ տպագրեցաք Հյ. Լտ. յամի 1822. և զառաւելագոյն մասն 'ի 1826 : բ՛ Հին Թարգմանութիւն Դիոնեսիոսի արիսպագացւոյն ընտիր և անթերի : գ՛ Մեկնութիւն Կաթուղիկեայց Սարգսի Շնորհալւոյն մեծագիր և անսխալ. Թող զայլս : Աստ է և գանձատունն քարաշէն ամրափակեալ կրկին դրամբք, որոյ վերակացու է մի 'ի Նախապատիւ կանոնիկոսաց, ուր գոյր յառաջին գլուխ դրամոց 30 հազար ոսկի, այլ այժմ հազիւ լինի 3 հազար՝ որ բերէ զշահ սակս ողորմութեան պատարագի : Աստ ըստ օրինաց տեղւոյս ամ ըստ ամէ լինի աճուրդ. իբր զի՝ երբ փոխառուք 'ի պայմանեալ ժամանակին չկարեն վճարել, հրապարակեն 'ի քաղաքի, և ամենեքեան անդ հաւաքեալ գնեն զաւանդս պարտապանաց և վճարին պարտք. իսկ եթէ առաւելուցու քան զփոխն, դարձուցանեն առ տէրն :

## Կուսաստան.

169. Կուսաստանն է առանձին մենաստան Հայ կուսանաց որոշեալ պարսպօք, քարաշէն և կրկնայարկ, այլ ոչ այնչափ ընդարձակ, թէպէտ ունի բաւական սենեակս. մի կողմն մենաստանիս է 'ի վերայ միւս փողոցի, և միւս կողմն հայի դէպ յեկեղեցին: Ունի և առանձին մատուռն կամ վերնատուն, ուր հաւաքեալ կուսանք ընդ մայրապետին իւրեանց կատարեն ժամերգութիւնս հայերէն, երգելով զերգս շարականաց և ժամագրոց: Վերին մասն հասանէ ցվերնատուն եկեղեցւոյն. ուստի կուսանք տեսանեն զպատարագ, և 'ի հանդիսաւոր տօնս երգեն:

Մտեալ մեր յայս մենաստան տեսաք զսենեակս կուսանաց զարդարեալս պատկերօք սրբոց և հոգևոր զարդուք. ամենեքեան պարտին լինել Հայ, և գիտեն քաջ ընթեռնուլ հայերէն. այլ ոմանք ոչ իմանան զլեզուն Հայոց: Սոքա են միանձնուհիք 'ի կարգէ սրբոյն Բենեդիկտոսի. զգուշաւոր են յոյժ 'ի պահպանութիւն կանոնաց, զգենուն մազեղէնս ըստ տարազու նոցա: Կրթութիւն նոցա այնչափ անուանի է ընդ բոլոր Լէհաստան, մանաւանդ առաջի տէրութեան. մինչ զի սոքա տան կանոն այլոց միանձնուհեաց: Ամենեքեան հպատակեալ կան ընդ միով Աբբասուհեաւ, որ ունի խորհրդականս և պաշտօնեաւոր միանձնուհիս, որոց խնամակալու է Արքեպիսկոպոսն Հայոց, որ պաշտպանէ և զկալուածս կուսաստանին:

170. Անուանի է դպրատուն սոցա, և գլուխ համարի այլոց դպրոցաց. ուր վարժին 400 աղջկունք, և երբեմն աւելի, որք ուսանին զգրագրութիւն, զթուաբանութիւն և զայլ պատշաճ ուսմունս. Եւս և զձեռագործս ինչ պիտանիս ինքեանց:

Այլ 'ի վեր քան զամենայն կրթին 'ի բարի վարս պարկեշտութեան ընդ վերակացութեամբ կուսանաց, որք սքանչելի արթնութեամբ մարզեն զնոսա. որով ձգեն 'ի հեռաւոր վայրաց զաղջկունս յուսումն իւրեանց. մինչ զի Կայսրն անձամբ չոգաւ առ նոսա, և բազում խնամս եցոյց: Ունին չափաւոր ապրուստ,

զոր բերէ երկիր ուրեանց մնացեալ 'ի նախնի Անեցւոց անտի ։

Այս մենաստան այրեցաւ 'ի 1781. զոր յետոյ նորոգ կանգնեցին. բաց աստի 'ի հնումն գոյր այլ վանք, զոր շինեցին յանուն սրբոյ Խաչին հանդէպ քաղաքին. և կոչէին Հաճկատար, ուր կային աբեղայք և էր ուխտատեղի հաւատացելոց ։ Սա ձեռնադրեցաւ Նիկօղ եպիսկոպոս 'ի Մելքիսեդիկ կաթուղիկոսէ. ուր և ժողով եղև յաւուրս Խաչատուր Արքեպիսկոպոսին, ըստ որում յիշէ 'ի կոնդակին (180) ։ Այս հին վանք այժմ է զինուորանոց, ուր երևին հին գերեզմանք Հայոց ։

## Եկեղեցի Հայոց

171. Եկեղեցի Հայոց է արքեպիսկոպոսանիստ և հռչակաւոր ուխտատեղի ամենայն Քրիստոնէից. կառուցեալ յանուն Ննջման Ածամօրն, չափաւոր մեծ քարաշէն և գմբէթաւոր 'ի ձև քառակուսի, և ունէր գաւիթ ըստ սովորութեան ազգիս, այլ զկնի ժամանակաց միացուցին ընդ բուն տաճարին, որով փոքր ինչ երկայնաձև եղև և բազմախորշ. ունի 13. խորանս և 3. դրունս ։ Բարձր է բեմն. յերկոսին կողմունս դասին են նստարանք քահանայից, և աթոռ եպիսկոպոսին. ուր անխափան յամենայն օր անթերի կատարի ժամերգութիւն ըստ արարողութեան Հայոց ։ Հին պատկեր վերափոխման Տիրամօրն եդեալ կայ յաւագ խորանի. տեսաք յորմն 'ի վերայ մարմարիոնի արձանագիր անվերծանելի ։

172. Իսկ Լուսաւորչի հրաշագործ պատկերն է յաւանձին խորանի առ երի մեծի գրան 'ի կողմն հարաւոյ. ուր յաճախեն յոլով ուխտաւորք յամենայն ազգաց յամենայն աւուր հինգշաբաթի, զոր բանան 'ի ջերմ պաշտօնասիրութիւն ժողովրդեան ։ Այս պատկեր է ըստ մեծութեան խորանին բոլորովին արծաթապատ ոսկեզօծ. 'ի վերայ դաստառակին գրեալ կայ յիշատակագիր սքանչելեացն, որ եղև 'ի հնումն 'ի տան այրի կնոջ օրինակ զայս.

* Ած՝ որ էնն յաւիտենից շնորհեաց անբաւ զօրու-
ո թեամբ դարձեալ լոյս աշխարհի. այսինքն. պատկեր

„ մեծին Լուսաւորչի սրբոյն Գրիգորի ամենազօր ա-
„ ջով. ոչ՚ն կիր եառ թաքչել ընդ գրուանաւ. այլ եդ
„ ՚ի վերայ աշտանակի զի լուսաւորեսցէ զամենեսեան.
„ մանաւանդ զազգն Հայոց ։ Սակայն յայտնուԹիւն
„ սրբոյ պատկերի եղև յոյժ սքանչելի և ՚ի վեր քան
„ զհրաշս ։ Աւուր աւագ երկուշաբԹի, որ է սկիզբն
„ չարչարանաց Տ՟ն մերոյ Յ՟սի Ք՟սի, սրբուԹբ սկիզբն
„ եառ հոգալ և տխրել ընդ նոյն տ՟ն. և քրտունք հո-
„ սէին ՚ի նմանէ ոլոռնաձև երկոտասան ժամ անդա-
„ դար ամենեցուն աչներև ՚ի տան միում բարեպաշտ
„ այրի կնոջ Կատարինէի, որ կոչի բանի Սրեպքովա
„ տէր Մաշքոենց ՚ի Թվ. ՌԾԷ (1608). Ապրիլ ամսոյ
„ Է. ՚ի հայրապետուԹեան տ՟ն Յակովբայ, և արհի եպ՟կո
„ մերոյ տ՟ն Միկողայի. զոր նոյն սրբանեալ այր վկայ-
„ ուԹբ հաստատեաց. որք ընդունին տ՟մ փարատումն ։
„ Իսկ ՚ի տօնի աւետեաց Ա՟ծածնի մեծաւ հանդիսուԹբ
„ օրհնեաց և ետ աւագ եղբարց. զոր նոքա ընկալան
„ յօժարուԹբ և մեծաւ պատուով զարդարեցին ար-
„ դեամբք իւրեանց ։ Նա է բարեխօս վասն տ՟մ հօտի
„ իւրոյ, զոր գնեաց արեամբ իւրով սրբով‖ ։

՚Ի յատակ այսր եկեղեցւոյ շարեալ կան մեծամեծ վիմք գերեզմանաց հայ և լատին գրով ։ Առաջի խորանի սուրբ Լուսաւորչին եդեալ կայ վէմ մի այսպիսի արձանագրով. * Այս է տապան պ՟ր (Ա)վանեսին
„ որդոյ տօլվադաւոր խօջա Նաւասարդին ՚ի Աստապատ
„ քաղաքէ հանգեաւ ՚ի Տէր. Թվ. ՌՃԼԵ (1686). և
„ Փետրվարի ամսի հինգերորդի ‖ ։ Նոյնպէս առաջի հանգիպակաց խորանի Ածածնին գոյ հնագոյն գերեզման. Թվ. ՋԼԲ (1483) ։

173. Ընդ հիւսիսային դուռն եկեղեցւոյն մտեալ լինի ՚ի սալայատակ աւանդատունն ընդարձակ, որ ունի առանձին մատուռն քարաշէն շինեալ ընդ վերնատան ըստ որում դնի ՚ի յիշատակարանի եկեղեցւոյն ։ ՚Ի վերայ մատրան է պահարանն եկեղեցւոյ, ուր տեսաք գեղեցկագիր հին աւետարան զարդարուն և արծաԹապատ. զոր հանեն ՚ի հանդիսաւոր աւուրս տօնից, նաև զհին ծանր զգեստս պատարագի այլովքն հանդերձ ։ Արտաքոյ աւանդատանս է բակ և պարտէզ կուսանաց ։

Իսկ ընդ հարաւային դուռն եկեղեցւոյն մտեալ լինի ՚ի Սաչքակն՝ որ է քառանկիւն գերեզմանատուն.

և ունի մեծ դուռն, որ հանէ 'ի վերին փողոց, և է բուն արտաքին դուռն եկեղեցւոյն ։ Յարևմտեան կողմն է մեծ արձանն խաչելութեան կանգնեալ իբր 'ի մատրան, ուրանօր փառաւոր հանդէս լինի 'ի տօնախմբութեան մարմնոյ և արեան Տն ։ Աստ հաւաքին ամենայն մեծամեծք և արուեստապետք քաղաքին, որք զարդարեալք գոյնզգոյն զգեստուք հանդերձ դրօշակօք իւրեանց հետևին Թափօրի սրբազնութեան ։ 'Ի չորս կողմանս տեղւոյն շինեալ կան չորս փառաւոր խորանք, ուր տայ օրհնութիւն Եպիսկոպոսն ։ 'Ի յատակ տեղւոյս շարեալ կան մեծամեծ վէմք գերեզմանաց հայ և լատին գրով, այլ ոչ տեսաք հնագիր վէմս. դուցէ եդեալ եղեն 'ի հիմունս շինուածոց ։

174. Յիշատակարան այսր եկեղեցւոյ այսպէս գրեալ կայ. * Աթոռանիստ եկեղեցին Հայոց Լւովայ շինե-
„ ցաւ յամի Տն 1183 փայտաշէն. իսկ 'ի 1363 շինեցին
„ քարաշէն. հիմնադիրն էր պր̃ Յակոբ Շահնշահ կա-
„ ֆացի. և պր̃ Ստեփան Փանոսեան Աբրահամենց 'ի
„ Սայսուրի քաղաքէ ։ 'Ի 1509 նորոգեաց զգմբէթն
„ յարգելի Ասվատուր Ռօփուլէն ։ 'Ի 1562 կանգնեաց
„ զանգակատունն պր̃ Անդրէասն կաֆացի. 'ի 1723
„ շինեաց զվերնատունն կուսանաց և բարձրացոյց զգա-
„ ւիթն պր̃ Խաչիկ Աւկուստօնօվիչ ազնուական իշխանն
„ և դատաւորն դատաստանին. յորոյ յիշատակ կանգ-
„ նեցին զսիւնն արտաքին ‖ ։

Այս փառաւոր իշխանք հիմնադիրք եկեղեցւոյս գրեցին հաստատ կտակ, զի մի ազգականք իւրեանց ունիցին զիրաւունս 'ի վերայ եկեղեցւոյն. զոր տեսաք 'ի վերայ մագաղաթի այսպէս ։

* Յն Ռն ։

„ Այս մեր կամաց և հաւատոյ գիր է Յակոբիս որ-
„ դոյ Շահընշահին բնական կաֆացի, և Փանոսի որդոյ
„ Աւրամի՝ բնական ղաղալցի, որ տուաք զայս հաւատոյ
„ գիրս՝ որ ուխտեցաք վասն Տր̃ Ածածնին. և շինեցաք
„ 'ի Լւով քաղաքս. հայադաւանն Տր̃ Լուսաւորչին աւրի-
„ նաւքն. հնազանդ կաթուղիկէին, և հայ եպիսկոպոսի, և
„ հայ տանուտրանցն. որ յայամ հետէ ոչ մեր որդի,

» ոչ դուստր, ոչ եղբայր, ոչ ազգ, ոչ թոռն, զարդ զո-
» ղորմութիւն որ առնեն, այլ իշխանութիւն չառնեն 'ի
» վերա եկեղեցւոյն կամ քա՟հի կամ տանուտրաց կամ
» 'ի վերա եկեղեցոյ ընչից, ով որ յանդգնի կամ լըր-
» բութիւն առնէ, նա սուտ է յա՟մ դատաստան, և պատ-
» ժի յա՟յ և 'ի ն՟ր եկեղեցոյ և 'ի ն՟ր ա՟ծածնէն և 'ի ն՟ր
» առաքելոցն վկութիւն ա՟յ և տանուտրաց։ Գրեցաւ
» դիրս 'ի թվ՟ Հայոց ՊԺԲ (1363). յաւգուստոսի
» Է աւրն։ * Եւս Աբրահամ ավագերեցս վկ՟։ Եւս
» Բարսղադէս կրանաւորս վկ՟։ Եւս Յոհաննէս աբե-
» ղաս վկ՟։ Եւս Ա՟ծատուր քահանայս վկ՟։ Եւս տ՟ր Իգնա-
» տենի որդի Սարայս վկ՟։ Եւս տ՟ր Խաչատուրի որդի
» Յովանէս վկ՟։ Եւս տ՟ր Թօլաքդէմուրի որդի Տայ-
» չուս վկ՟։ Եւս տ՟ր Զօպանի որդի Մելիքշաս. վկ՟։ Եւս
» տ՟ր Աւագի որդի Խոսրովս վկ՟։ Եւս տ՟ր Անդրէասի
» որդի Նուրատինս վկ՟։ Եւս տ՟ր Ա՟ծատուրի որդի
» Մսերս վկ՟։ Եւս տ՟ր Յովանեսի որդի ամիր Սարգիս
» վկ՟։ Եւս տ՟ր Յովանեսի որդի Ամիր պեկս վկ՟։ Եւս
» տ՟ր Սահակի որդի Յակոբս վկ՟։ Եւս տ՟ր Յակոբի որ-
» դի Նասրադինս վկ՟։ Եւս տ՟ր Թադվորի որդի Ա՟ծա-
» տուրս վկ՟։ Եւս տ՟ր. Թադվորի որդի Ռուզպէկս վկ՟ ‖։

175. Զանգակատուն եկեղեցւոյս մեծ է և բարձր կառուցեալ յարևելեան կողմն 'ի վերայ դրան եպիսկոպոսարանին։ Յիշատակարանն եդեալ կայ 'ի վերայ դրան դատարանին, որ անկանի ընդ զանգակատամբ, գրեալ 'ի վերայ սեաւ մարմարիոնի ոսկեգիր այսպէս.

* ՌԻ Հ՟Յ՟Ց թվին եւ յամսեանն յենվռն, խն՟ Անդ-
» րէասն կա՟ֆցն շինել ետուր զդուռն զանկակին վ՟ն իւր
» հ՟գո եւ իւր ծնողն Խաչերեսն եւ Սառային եւ եղբօրն
» Աւետքն եւ ա՟մ զ՟րմիցն Յին ‖ (1571)։

Անկելանոցն Հայոց չէ հեռի աստի շինեալ 'ի վերայ միւս փողոցին, ուր բնակին հայ աղքատք. յառաջագոյն ունէր հոգաբարձու և եկամուտ, որպէս ցուցանէ օրագրութիւնն գրեալ թաթարերէն, որ սկսանի

* Թվ՟ ՌՀԳ (1624) մարտ՟ընկ իր՟։ Պու դեֆտար է
» դիլտի. վանք շաիդալընամնէսաքօլ վէ քալայ քէլլրնէ
» չիք վըռտադօք մուննա եադըլըր. հէսէպ քօյմախու-
» չուն ‖։

» Թվ՟. ՌՀԳ. միր՟ 30. շաիդալընկ քանդանաքդան
» չըխտը ախչա պայրամաան սօնկրա նօկարիքուն ֆ ։ ձօ

» Հրշ 13 ։ Աղբիւ․ 6․ Պուկաւնքի քանոն ուչմանկը
» ճանըը իմայքօ եհզուիդա աքսէնդօվիչ բօղըեպնա
» պերտիկար ։ Հրշ 16․ 11 ։

## Արքեպիսկոպոսութիւն Լվովի․

176․ Հայոց արքեպիսկոպոսութիւն յԼվով հաստատեցաւ յամի տն 1364․ որպէս ցուցանէ յիշատակարանն։ Իսկ առաջին եղև Գրիգոր արքեպիսկոպոս, որ ձեռնադրեցաւ 'ի Մեսրոպ կաթուղիկոսէ․ որպէս յայտ է 'ի կոնդակէ նորին, զոր գրեաց առ Լվովցիս վասն հաստատութեան։ Սա հաստատեաց և յաջորդ նորա Կոստանդին կաթուղիկոս․ որ ապա մերժեալ զԳրիգոր ձեռնադրեաց արքեպիսկոպոս Լվովի զՅովհաննէս որդի Նասրատինի։ Այսորիկ աղագաւ 'ի յիշատակարանին Լվովի ա եպիսկոպոս դնի Յովհաննէս։ Յետ Յովհաննու նստաւ յԼվով Աւետիք արքեպիսկոպոս, ապա Խաչատուր․ ապա Ստեփաննոս․ ապա Գալուստ, ապա բ Խաչատուր․ ապա Գրիգոր․ ապա Պարսամ․ ապա Նիկողայոս կամ Նիկոլ․ ապա բ Յովհաննէս Կարմատանենց․ ապա Վարդան Յունանեան․ ապա գ Յովհաննէս Տօպիա Աւգուստոնովիչ․ ապա Յակոբ Աւգուստոնովիչ․ ապա բ Յակոբ Թումանովիչ․ ապա դ Յովհաննէս Սիմոնովիչ․ և ապա Գայէթան Վարդերեսեւիչ, որ ընտրեցաւ յաւուրս մեր արժանաժառանգ յայն աթոռ արքեպիսկոպոսական․ և ցարդ կառավարէ զվիճակ իւր խոհեմութեամբ և յաջողութեամբ, որ և բազում մարդասիրութեամբ պատուասիրեաց զմեզ ։

177․ Փոքր ինչ տարբերութիւն գտաք 'ի յիշատակարանի անդ Լվովի, որ դնէ այսու կարգաւ և այսու բանիւ ։

ա․ Յովհաննէս արքեպիսկոպոս Լվովի և Վալաքիայի, որ էր 'ի Թագաւորական զարմէ Հայոց՝ նստաւ յամի տն 1365․ առ Վլատիսլաւոս արքայիւ Լեհաց, բայց փութով վախճանեցաւ ։

բ․ Գրիգոր մեծ նստաւ արքեպիսկոպոս յԼվով առ Գաղիմիր արքայիւ ։

գ․ Գաբրիէլ (կամ Աւետիք) նստաւ արքեպիսկոպոս յԼվով։

Դ. Քրիստափոր (Խաչատուր) նստաւ յամի տն 1467 առ Ջղերթ արքայիւ:

Ե. Քիլիմանոս (Գալուստ) նստաւ յամի տն 1516 առ Ա Սիկիսմունդոս արքայիւ, զորմէ գրէ և Անդ-րէաս Լուսինեցի:

Զ. Ստեփաննոս նստաւ արքեպիսկոպոս, որոյ նա-մակ գոյ յարքունի դիւանին, որով ծանուցանէ ար-քային զորպիսութիւն Հայոց: Գոյ նաև իւր կտակ, յորում յիշէ թէ Աբրաղամ հայրապետն Հռոմայ առաքեալ է զինքն առ Ֆերտինանտոս կայսր գերմա-նացւոց, առ որում եկաց ամիսս 4: Իսկ վասն այսո-րիկ Պապն ընծայեալ է նմա իբրև օրհնելոյ՝ ծանրա-գին խաչ, մուշկէդ, և հանդերձս սպիտակ և կարմիր, շապիկ, և թագ եպիսկոպոսական. որ և յերկար ապ-րեցաւ:

Է. Գրիգոր նստաւ առ Սիկիսմունդոս Օգոստոս արքայիւ, այլ չհանդուրժեալ անկարգութեանց ժո-ղովրդեան փախեաւ յԼվովէ:

Ը. Պարսամ նստաւ արքեպիսկոպոս, այլ չժու-ժեալ անիրաւութեանց նոյնպէս փախեաւ. առաւել կամք եղեն նմա հրաժարիլ յաթոռոյ, քան հեծեծիլ անիրաւութեանց:

Թ. Վարդապետ անուանեցաւ արքեպիսկոպոս Լվո-վի. որ 'ի Կամենիցէ գրեալ թուղթ առ Լվովցիս ա-նուանէ զինքն եպիսկոպոս Լվովի և Վալաքիայի:

Ժ. Մեսրոպ նստաւ արքեպիսկոպոս, որ այսպէս սկսանի զԿտակ իւր. * Մեսրոպ ողորմութեամբ այ „ արքեպս Լվովցւոց ||: Յետ մահուան սորա յերկար ժամանակ աթոռն մնաց առանց եպիսկոպոսի, մինչև եկն յԼվով Մելքիսեդէկ կաթուղիկոս և ձեռնադ-րեաց արքեպիսկոպոս զՆիկոլ կամ Նիկողայոս ա-բեղայն:

ԺԱ. Նիկոլ Թորոսեւիչ նստաւ արքեպիսկոպոս յա-մի տն 1630. առ թագաւորութեամբ Գ Սիկիսմունդոսի. և եղև առաջին, որ միացոյց զեկեղեցի իւր ընդ-սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ, յամի տն 1666 յաւուրս Ուրբանոսի Ը. հայրապետին և Վլադիսլաւոսի ար-քային:

ԺԲ. Վարդան Յունանեան կեսարացի աշակերտ Փրոփագանտայի նախ եղև օգնիչ կամ յաջորդ Նիկ-

կոլ արքեպիսկոպոսին․ որ և չոքաւ յԷջմիածին առ 'ի միաբանել զնոսա ընդ Հռովմայ։ Սակայն միաբանք եդին զնա 'ի բանտի, մինչև արքայն Լեհաց նամակ գրեալ վասն նորա առ արքայն Պարսից ազատեաց զնա։ Ապա եկն յԻլվով և նստաւ արքեպիսկոպոս յամի տն 1686 հոկ․ 29․ և հաստատեցաւ 'ի Հռովմայ։

Այս եպիսկոպոս 'ի ծերութեան իւրում արար ինքեան օգնիչ զԾատուր Ներսեսեվիչ տրայիանուպօլսեցին, որ վախճանեցաւ յառաջ քան զՎարդան։ 'Ի նմին ժամանակի Վարդան եպիսկոպոս գոլով 'ի Կամենից՝ Տօպիա Աւգուստինովիչ աւագերէց ամփոփեաց զմարմին նորա առ ոտս բեմին։

Իսկ Վարդան խնդրեաց օգնիչ զՍտեփաննոս Ստեփանովիչ աւագերէցն Կամենիցի․ բայց քահանայք և ժողովուրդք ոչ ընկալան․ զի կամէր հաստատել զնա առանց ընտրութեան նոցա գրելով միայն 'ի Հռովմ․ ուստի ընտրեցին միաբան զՏօպիա Աւգուստինովիչն։

ժգ․ Յովհաննէս Տօպիա Աւգուստինովիչ նստաւ յետ Վարդանայ յամի տն 1715․ որ իբրև ծերացաւ ընտրեաց օգնիչ զՏէր Յակոբ Աւգուստինովիչ։

ժդ․ Յակոբ Աւգուստինովիչ նստաւ յամի տն 1737․ որ 'ի ծերութեան իւրում ընտրեաց օգնիչ զՅակոբ Թումանովիչ։

ժե․ Յակոբ Թումանովիչ նստաւ յամի տն 1782․ որ յանկարծ վախճանեալ ոչ կարաց ընտրել յաջորդ։

ժզ․ Յովհաննէս Սիմոնովիչ նստաւ յամի տն 1799․ որ գոլով այր զօրաւոր և գիտնական գրեաց Թուղթ առ կայսրն վասն կանոնիկոսաց իւրոց և ետ բերել ակի նշան կայսերական հանդերձ Թոշակաւ, զոր արկանէին նոքա զպարանոցաւ ըստ նմանութեան Լեհ կանոնիկոսաց․ սա եկաց յաթոռ իւր ամս 17․ և չունէր յաջորդ։

ժէ․ Կայեթան Վարդերեսեվիչ բարեբարոյ կանոնիկոս ընտրեցաւ արքեպիսկոպոս յամի տն 1816․ այլ յերկարեալ հաստատութեան՝ ձեռնադրեցաւ զկնի չորից ամաց 'ի 1820․ յուլիսի 16, այր արժանաւոր այնմ բարձր աստիճանի։

178․ Արքեպիսկոպոսութիւն Իլվովի մեծայարգ է ընդ բոլոր Եւրոպիա, և մեծ պատիւ ունի առաջի Տէրութեանց։ Այս աթոռ բաց 'ի պաշտօնատար կա-

նոնիկոսաց ունի զընդհանուր փոխանորդ Օֆիչիալ ա-նուամբ. և ս և ժողովրդապետս ամենայն եկեղեցեաց իւրոց, յորոց ընտրելին ստորաքար խոստովանահայրք մեծամեծաց:

Իսկ ընտրութիւն եպիսկոպոսին նախ և յառաջ լի-նի 'ի կանոնիկոսաց հանդերձ հաւանութեամբ ժողո-վրդեան, որում հաւանեալ կայսեր հաստատէ. այս հաստատէ և Սրբազան Հայրապետն Հռովմայ առա-քելով առ նա Սքեբրէն կամ Պալլիոմ Մետրապօլտի գործեալ 'ի սպիտակ ասուոյ խաչազարդ, զոր կրեն 'ի վերայ ուսոց հանդերձից 'ի նշան կատարեալ իրաւա-սութեան:

179. Ոչ միայն վերոյ գրեալ եպիսկոպոսունք, այլ և բազումք 'ի բնակչաց Լեհաց դաւանէին զսուրբ ժո-ղովն Քաղկեդոնի. որպէս յայտ է 'ի գործոց Պետրոսի կաթուղիկոսին, Յովհաննու արքային, Գրիգորի Մա-գիստրոսին, և որդւոյ նորա Գրիգորի վկայասիրին, Ներսէսի եպիսկոպոսին, և այլոց երևելի անձանց: Սա-կայն ատելութիւն Յունաց այնպէս խոտեցոյց զԼեհացիս, որք 'ի պատճառս նոցա այնչափ դժբաղդութեանց պատա-հեցան, ուստի օտար երևէին և հեռի 'ի նոցանէ: այլ բազումք ծանօթ էին Սրբազան Հայրապետացն Հռով-մայ, որպէս Ստեփաննոս արքեպիսկոպոս և այլք: Նոյն և այնպէս 'ի կաթուղիկոսէն ձեռնադրէին և հեղինա-կութեամբ նորին իշխէին յԼւով 'ի Վալաքիա և այլուր: Նոյն իբրև միաբանեցան ընդ Ռոմ աթոռոյն իշխանութիւն ե-պիսկոպոսաց ձգէր մինչև ցՂրիմ, և ցԱժոտէրխան. իսկ իբրև բաժանեցաւ տէրութիւն Լեհաց ամփոփեցաւ այս իշխանութիւն միայն 'ի Լեհաստան գերմանաց-ւոց. զի մասն Ռուսաց անկաւ ընդ իշխանութեամբ Լատին Արքեպիսկոպոսին Ռուսաստանու, մինչև ձեռ-նադրեցաւ եպիսկոպոս վասն Լեհեցւոց Յովսէփ Քրիս-տափորովիչ, որ նստէր 'ի Մոգլով (250):

180. Նախնի եպիսկոպոսունք իբրև զայլն յԼեհ. միամտէ գիր դաշնադրութեան տայլն Իւլովկյոյ, որ սկսաւ 'ի Խաչատուր եպիսկոպոսէ, որպէս ցուցանէ նամակ իւր գրեալ բոլորգիր 'ի վերայ մագաղաթի այսպէս.

* ՕՐԷ ՎՐՋ ծառայ Խոջապար Սուրբեպիսկոպոսս ։
» Ի Թուականութեանս ՋԺԶ (1467).

» Ի ժամանակս երիցս երանեալ հայրապետի հա-
» նուրց հայաստանեայց Տն Յովհաննէս կթղկսի . և
» պատրիարքի Սղարշապատու Նր. յաթոռն Էջ-
» միածնի նստաւ 'ի բանաւորիրաց Խաչատուր եպիս
» ձեռնադրեցայ եպիս Ուլվի աթոռոյն և իւր փոխա-
» կացն , և ողորմութեամբ Այ եկեալ հասաք 'ի մեր հաւատս
» որ Այ և 'ի մեր հայրապետէն անձնեցաւ մեզ . Եւ 'ի
» այն աւուրս շնորհաւք փրկչին եկեալ հասեալ կային
» Նր. և պարծանաց պարծանք Նուիրակքն Տր Մնանիա
» արքի եպիսկոս և Տր Թուման եպիսկոս 'ի Նծաշէն և ուխ-
» րախնամ քաղաքս Ուռհա . և հանդէսիւ ժողովեցան
» միայգումար ամենայն աւրհնութեց արժանաւոր երէց-
» նիկ և ուղղափառ ժողովուրդ քաղաքիս 'ի գաւիթս
» Նծային լուսոյ մաւրս 'ի մենաստանիս . որ է ընդ-
» դէմ քաղաքիս , խնդիրք արարին զայսքան բանքս .
» Եւ ես նուաստ եպիսս Խաչէր խոստացայ կատարել
» առաջի Այ . Նախ եկեղեցեաց և ընչիցն հրաման չայ-
» նենք . առանց տանուտէրաց հրամանին : Ա որ քհնից
» մոոցն ձեռնամուխ չի լինիք . և ոչ նոքա իմ մուտքց .
» ոմն առաջի հայրապետըն ժամն էր : Բ որ զայս ան-
» ղացս իրիցանուն զդատն ու զդատաստանին 'ի տեղս
» այնենք հետ տանուտրացն և այլ տեղ չի ձեննենք : Գ
» որ զքահանայ կամ զտարկաւարդ առանց տանուտրաց
» հրամանին չի այնենք : Եւ որ անհաստւկ խնամութե
» կամ այլ անհաս բան կաշառաւք չի այնենք : Նաև
» թէ մահու թէ կենաց ինչ որ իւրեանց կտարեացն հա-
» գոյ բաժին հանեն , կամ տան զայն առնունք . և այլ
» աւելի չի պահանձենք : Նաև եկեղեցապան և հայր-
» պետ զնելոյ հրամանք չանենք առանց տանուտրացն
» հրամանին . Եւ այլ ինչ բան որ լինայ կամ դատաս-
» տան հոգևոր կամ մարմնաւոր առանց տանուտրացն
» չայնենք : Եւ այլ թէ կաթէկան Տր Սախտագեան
» վերստին հրաման այնէ և զ[illegible]ուլ քաղաքս Տրնունի այ-
» նէ գրով ես պատասխան տամ կաթողիկոսին Ս[illegible] :
Յայսմանէ յայտ է թէ Սնեցիք սեղմեալ էին զիշ-

խանութիւն եպիսկոպոսաց Իլվովի, և ամենայն ինչ հրամանաւ դատաւորաց լինէր: Նմին իրի յաջորդ սորա Գալուստ եպիսկոպոս դժուարացաւ յոյժ ընդ այս. և 'ի նամակի իւրում, զոր գրեաց առ Իլվովցիս յամի 1516. մեղադիր լինի Խաչատուր եպիսկոպոսին, որ տուեալ էր զայն գիր:

## Անհնազանդութիւն Իլվովցւոց:

181. Յամի տն 1624. Մելքիսեդ կաթուղիկոս փախուցեալ 'ի ձեռաց Շահաբաս արքային Պարսից զերծաւ յԻլվով. ժողովուրդն մեծաւ պատուով ընկալաւ զնա, որք էին յայնժամ հազար տունք: Եւ որովհետև եպիսկոպոս նոցա վախճանեալ էր 'ի նմին ժամանակի, խորհեցան տալ ձեռնադրել զոմն յարժանաւոր աբեղայից: Բայց Նիկոլ աբեղայն բազում ընծայիւք հաւանեցոյց զկաթուղիկոսն կոչել զինքն յեպիսկոպոսութիւն. այլ ոչ ոք 'ի քահանայից և 'ի ժողովրդոց հաւանեցաւ ընդ այս. և ամենեքեան ընդդիմացան և ջանացին խափանել, բայց չեղև հնար. քանզի կաթուղիկոսն տարեալ զՆիկոլ 'ի Հաճկատար վանս սրբոյ Խաչին ձեռնադրեաց զնա գաղտ: Զայն լուեալ ժողովրդեան ոչ ընկալան զնա. ուստի Նիկոլ կամեցաւ գնալ ընդ կաթուղիկոսին 'ի Կամենից. այլ նա յետս դարձոյց զնա 'ի ճանապարհէն, գրելով կոնդակ առ Իլվովցիս, թէ որ ոք ոչ ընկալցի զՆիկոլ նզովեալ եղիցի, որով լռեաց ժողովուրդն ակամայ կամօք: Սակայն և այնպէս սիրտ նոցա ոչ երբէք միացաւ ընդ նմա, յորմէ ծագեցան անհնարին խռովութիւնք:

182. Իբր զի ժողովուրդն միանայր ընդ վարդապետաց, որք գային յարտաքուստ. իսկ Նիկոլ գոլով քաղաքացի վարէր զնոսա 'ի ձեռն քաղաքապետաց: Մինչ զի չհանդուրժեալ հայ դատաւորաց փակեցին զդրունս մայր եկեղեցւոյն և առին զբանալիս. ապա կամեցան դատել զՆիկոլ. այլ նա ճարտարմտութեամբ իւրով շրջեաց զդատն 'ի վերայ նոցա և պարտաւորեաց զժողովուրդն: Ի վերայ այսր ամենայնի ջանահնար եղև Նիկոլ հաշտիլ ընդ ժողովրդեան. բայց իբրև ետես, թէ նոքա յամառեալ կան, դիմեաց ապա առ Յեզուեան

կրօնաւորս, և միացեալ ընդ նոսա եւս գիր երդման մնալ հնազանդ սրբոյ աթոռոյն Հռովմայ հանդերձ ժողովրդեամբ:

Յայնժամ Լատին եպիսկոպոսն առաքեաց զՆիկոլ առ քաղաքապետն. որ անդէն և անդ պարտաւորեաց զժողովուրդն կամ գնալ յատեան նորա և խօսիլ, և կամ բանալ զեկեղեցին: Այլ նոքա անխոհեմութեամբ իմն ոչ չոքան առ նա, և ոչ բացին զեկեղեցին. ուստի Յոհաննէս և Նիկոլ առեալ զօրս 'ի քաղաքապետէ չոքան 'ի դուռն եկեղեցւոյն, և կոչեցին զհայ իշխանս զի կամ իւրեանք եկեալ բասցեն, և կամ առաքեսցեն զբանալիս: Այլ նոքա խստիւ ետուն պատասխանի ասելով, թէ մեք եմք շինօղք եկեղեցւոյն և ամենայն ինչ մեր է, և ոչ իսկ ճանաչեմք զՆիկոլ. ապա որո՞վ իրաւամբք պահանջէք զբանալիս: Նոքա առեալ զայսպիսի պատասխանի իսկոյն խորտակեցին զդրունս եկեղեցւոյն, և յանձնեցին զամենայն 'ի ձեռս Նիկոլ եպիսկոպոսին:

183. Այնուհետև զօրացաւ և փարթամացաւ Նիկոլ եպիսկոպոս, զի տիրեաց և այլոց եկեղեցեաց Հայոց. եւառ զամենայն գանձս, զոսկեղէն և արծաթեղէն անօթս՝ որք անբաւ էին, թող զծանրագին զգեստս և բազմաթիւ գրչագիր մատեանս: Իսկ ժողովուրդն մնաց առանց եկեղեցւոյ. և յանհնարս մտեալ միաբան ամենեքեան բողոքեցին առ Մովսէս կաթուղիկոս յամի տեառն 1631. և նա գրեաց խոնարհական նամակս առ Ուրբանոս Պապն և առ Թագաւոր Լեհաց, և առ Լատին եպիսկոպոսն Լվովի աղաչելով ողորմիլ անմխիթար ժողովրդեան Հայոց, և չթողուլ զնոսա առանց եկեղեցւոյ: Յօժարեցան նոքա, և Վլատիսլաւ արքայն հանդիպեալ յԼվով կամեցաւ առնուլ զեկեղեցին և տալ նոցա, բայց Նիկոլ զգեցեալ զգեստ պատարագի և առեալ 'ի ձեռին զսրբութիւնն եկ ընդ առաջ արքային ահագինս սպառնալով նմա. իսկ նորա զարհուրեալ յետս դարձաւ:

184. Լվովցիք ապա դիմեցին առ Փիլիպպոս կաթուղիկոս, որպէս զի 'ի ձեռն արքային Պարսից օգնեսցէ նոցա, որ և պատասխանի տայ նոցա այսպէս:

* Յն Տն ծառայ Փիլիպպոս կաթուղիկոս ամենայն
„ Հայոց 'ի վիճակէ սրբազան առաքելոյն Բարդուղիմէո-

» սի, աՀօրդ սրբոյ առաքելոյն Թադէոսի . . . Յորմէ
» ժամանեալ հասցէ գիր աւրհնութ . . . քնալմնամ քա-
» ղաքացդ Լւօվա, Կամենիցու, Լադլովցաւոց, Զա-
» մօսցեայու, և Լուցկաւոս . . . : Յայտ լիցի Միրհ-
» լեացդ . . . զի յորժամ նամակն ձեր եկն եհաս առ
» մեզ . . . այնքան առաւելաւ տրտմութիս . . . յարու-
» ցեալ գնացաք 'ի դուռն արքայի . . . սպասեաք վասն
» համբաւոյ բարւոյ այդր իրաց, եթէ թերևս անդոր-
» րութիւն ինչ եղեալ իցէ . լուաք երեք անգամ թէ տու-
» եալ են զեկեղեցիան . . . և յետոյ լուաք թէ զայլ ե-
» կեղեցիս տուեալ են, բայց զաւագ եկեղեցին ոչ են
» տուեալ . և վասն այնորիկ մարդ են առաքեալ առ
» Պապն, և մինչ յայսմ տարակուսի էաք, որպէս ար-
» դեօք եղեալ իցէ, լուաք զգալուստ դեսպանին, և
» մնացաք գալստեան նորա . և յորժամ եկն, նա ևս
» զայն ասաց : . . Նա և ոչ սակաւ յուսադրութիւն ետ
» մեզ ասելով, եթէ յորժամ հասանիցեմ առ թագա-
» ւորն, դիւրին է այդ . և մեք այնմ դեսպանին, որ 'ի
» պարսից արքայէն առ ձեր արքայն առաքիւր, թուխտ
» տուաք մի առ թագաւորն և մի առ ձեզ . . և դուք
» պատրաստ կացջիք, որ զկնի առնլոյ զձեր նամակն ը
» դեսպանին 'ի միասին մատուցանիցէք զթուղթ թա-
» գաւորին առ թագաւորն : . . Նշանեցաք զձեզ յայդմ
» դառնագոյն վշտաց և փոխանակ այդմ նեղութ մին
» թարեսցէ զձեզ հոգւոմն սրբով աստ և 'ի հանդեր-
» ձեալն . և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեանս յաւի-
» տենից Ամէն ։

Զօրինակ այսր կոնդակի գտաք 'ի դատաստանագիրս Լւովոյ, ուր այսպէս դնի . * 1639 . Յունիս 25 ինա .
» եանկի քն . կաթողիկոսական քէլկան մՀնէնք պիդի-
» քի տն տր Փիլիպոսդան Լւով աղալարընա . բոտա-
» նըս պօլտու պու սէնոդա . Հէմ պարչան Րոսբօլիդոյ-
» կա : Հասցէ թուխտս 'ի Շտապահ քաղաքն Լւով 'ի
» ձեռն երկոտասան դատաւորացն անմիաս հասուցօղն
» աւրհնեալ լիցի : Գրեցաւ թվին հայոց ՌՁԷ (1638) .
» Հոկտեմբերի ժը . և յաւելեալ իդ . կարի ըշտապով
» գրեցաւ նամակս, զի երեք օր էր, յորմէ եկեալ էաք
» 'ի արքայանիստ քաղաքէն յԱսպահանայ ։

185 . Այն այս Փիլիպպոս կաթուղիկոս երկրորդ կոնդակ գրէ առ Լւովցիս առաւել ընդարձակ 'ի թվ.

ՌՂԹ, և ծանուցանէ, թէ նոյն դեսպանն սպանաւ ՚ի Ճանապարհի, և մեր նաւմակք յետս դարձան. ուստի խորհուրդ տայ նոցա առաքել առ ինքն քանի մի բանիբուն անձինս խորհրդակցել ընդ նմա: Սակայն բուռն զօրութիւն Յոնեանց ունայնացոյց զամենայն խորհուրդս և զջանս ամենեցուն. մինչև յուսահատեալ ժողովուրդն դիմեաց առ նոյն Միկօլ եպիսկոպոս, զի գթացեալ ՚ի նոսա դէթ տացէ մկրտել զմանկունս: Իսկ նորա խստացուցեալ զքանս պնդէր, զի կատարեսցեն զամենայն կամս նորա. ուստի բազումք սրտաբեկեալ ժողովեցին զկարասիս իւրեանց ելին անտի և ցրուեցան յայլևայլ տեղիս: Յայնժամ նուազեցաւ ժողովուրդն կիսով չափ, տկարացաւ ոյժ նոցա, և խանգարեցան ամենայն բարեկարգութիւնք:

186. Յայսու ժամանակաւ ՚ի Կոստանդինուպօլիս յեկեղեցւոջ սրբոյ Լուսաւորչին քարոզէր Պօղոս անուամբ Լատին կրօնաւոր դոմինիկեան, գիտակ լեզուին Հայոց: Հրաման արար սմա Ուրբանոս Ը. Պապն՝ զի գնացեալ յԻզմիր խաղաղացուսցէ զժողովուրդն. որոյ հասեալ յԻզմիր հաւաքեաց զժողովուրդն յեկեղեցին Հայոց և բազմապատիկ յորդորանօք հանդարտեցոյց զնոսա. այլ չեղև կատարեալ հաշտութիւն: Պօղոս կրօնաւոր խօսեցաւ վասն այսր ընդ արքային Լեհաց, և ապա գրեալ զդաւանութիւն ժողովրդեան՝ առաքեաց. զորմէ այսպէս գրեալ տեսաք թաթարերէն յօրագրութեան Իզմիրի:

* 1639 Յուլիս 2 եանկի լքն:

„ Բադր Բաւէլ Տօմինիքեան մխիթարիլա դաւանութիւն
„ վէչհինտան քէնտինա բօքաղադ էդդիիս. խայսի դա-
„ ւանութն ումուզուտա. Պէյ անըր. սա բօզբխտաց-
„ ցա տա պօլտու չէզնադէդիբ քի եախշի քաթօլիքլար-
„ տըր. սա եաղտի փատշահկա սա. Ս. Պ. իմա.
„ Հէմէն ադքատա անկլադըր. քի պիզիմ անիծաց
„ Միկօլ ախքաշ պիզնի եամանտա նէյցնօղլըմիկէյ անկ-
„ լադըլ էտի. քի պիզ հէռէդիքըլար պօլկայ պիզ. օլ
„ վէչդան քի պիզնի քօղտան չխարկայ ||. Եւն:

187. Ապա նոյն քահանայ չոքաւ ՚ի Հռոմ և միջնորդ եղև վասն ժողովրդեան առ Ուրբանոս Հայրապետն. սակայն Միկօլ հասեալ անդ ՚ի դերև եհան զամենայն՝ զօրութեամբ Յոնեանց: Իսկ իբրև դարձաւ

՛Նիկոլ յԻլվով, տեսեալ զի մեծ մասն ժողովրդեանն ցրուեալ էր, սկսաւ խոնարհել: Նա լուեալ թէ Փիլիպպոս կաթուղիկոս չոքաւ 'ի Կոստանդինուպօլիս դիմեաց առ նա. բայց իշխանք յառաջագոյն հասուցեալ էին անդ զԽաչիկ դատաւորն ծանուցանել նմա զամենայն: Իսկ նա բազում խոհեմութեամբ և քաղցրութեամբ շահեցաւ զերկոսին կողմանս. և առաքեաց առ նոսա զիւր խոհեմ աշակերտն Յովհաննէս Վարդապետ Մրզընցի, որոյ հասեալ յԻլվով յամի տն 1652. էած յորդորանօք զժողովուրդն 'ի դուռն եկեղեցւոյն. և անդ աղօթելով օրհնեաց զժողովուրդն 'ի կողմանէ կաթուղիկոսին. ապա համբուրեաց զձեռս ՛Նիկոլ եպիսկոպոսին տալով նմա զդուռն առաջին բանալիս եկեղեցւոյն, զոր պահեալ էին դատաւորքն. և նորա բացեալ զդուռն ընկալաւ զամենեսեան 'ի ներքս: Իսկ ժողովուրդն' որ կարօտ կրէր եկեղեցւոյն ամս 23. իբրև մտին 'ի ներքս սկսան լալ առ հառաչանս 'ի սոսկս այնչափ սոսկալի խռովութեանց: Յետ յերկար լալոյ հազիւ դադարեցան. յայնժամ Յովհաննէս վարդապետ ել 'ի բեմն, և սկսաւ քաղցր բանիւ մխիթարել զժողովուրդն. և յետ օրհնելոյ զնոսա, խնդրեաց' զի և ՛Նիկոլ օրհնեսցէ. և նա օրհնեաց զամենեսեան խաչիւ և աւետարանաւ:

188. Այսպէս մեծ եղև ուրախութիւն ամենեցուն. մինչ զի բոլոր քաղաքացիքն ես և Հրէայք յուրախակցութիւն երթային նոցա: Ի նմին ժամանակի Կազիմիր արքայն գալով յԻլվով, իբրև լուաւ զայս բան' հիացաւ ընդ խոհականութիւն Յովհաննու վարդապետին. զոր և կոչեալ 'ի սենեակ իւր շնորհակալ եղև նմա, և մեծամեծ պարգևօք մեծարեաց զնա:

՛Նիկոլ արքեպիսկոպոս այսուհետև այնպէս հանդարտութեամբ վարէր զիշխանութիւն իւր, մինչև ամենեցուն սիրելի լինել. ապա զկնի քանի մի ամաց գրեաց 'ի Հռոմ և խնդրեաց յԱղեքսանդրէ Հայրապետէն հրաման յԻլվով դպրոց մի վասն հայ մանկանց: Հաճեցաւ ընդ այն Հայրապետն և ետ շինել դպրոց մի սակս 12 ուսանողաց ծախիւք առաքելական գահին յամի 1662. և առաքեաց զԿղեմէս Գալանոս Թէատին կրօնաւոր դասատու լինել մանկանց: Իսկ ՛Նիկոլ զկնի վարելոյ զիշխանութիւն իւր ամս 55. վախճանեցաւ յամի 1681:

189. Թագաւորք Լեհաց տեսեալ զհաւատարմութիւն և զճարտարութիւն Անեցւոց ետուն նոցա զանազան արտօնութիւնս, որպէս զի մնասցեն անդ և ծաղկեցուսցեն զքաղաքս նոցա շինութեամբ և վաճառականութեամբ։ Ուստի մեծն Կազիմիր ետ պարգևագիր Հայոց Կամենիցի յամի 1344. և ապա Լըվովցոց յամի 1356. տալով նոցա զիշխանութիւն և զիրաւունս վարելոյ առանձին դատաստան. որք ընտրեցին իշխանապետ Վոյթ անուամբ, և 12 դատաւորս առ 'ի վճռել զամենայն դատս ազգին անկախ ամենևին։ Զայս իշխանութիւն վերջին Թագաւորք հետզհետէ հաստատեցին։ Իսկ 'ի 1516. ամ Սիկիսմունտոս հրամամբ եհան Լըվովցոց, զի 'ի նախապատիւ Թաղի կառուսցեն Ատեան կամ Դատարան, ուր հաստատեցին բազում պիտանի կանոնս, զորս առին 'ի Լեհաց։

190. Այսքիկ դատաւորք կոչէին Տանուտեարք, և ամենայն ինչ թէ աշխարհական, և թէ եկեղեցական՝ նոցին վճռաւ որոշեալ լինէր։ Տեսաք զհետևեալ կտակագիրս 'ի վերայ մագաղաթի գրեալ այսպէս։

* Այս իմ կամաց և հաւատոյ գիր է Դաւթիս, որ
„ եհաս ինձ տկարութիւն. և ես յեշեցի զբանն առա-
„ քելոյն, թէ կտակ յետ մահուն հաստատ է. և մինչ-
„ դեռ իմաստութիւնս կատարեալ էր, կոչեցի ինձ քա-
„ հանայք, և այլ տանուտէրայք, և արարի ինձ տխա-
„ թիք, որ է կտակ. և զոր ունիմ այս է. Դ կամեն ջիր-
„ վից. Ծ կամեն պղպեղ. և Ի սոմի քթան. այս ինչպէս
„ ամ ձի ամ Փուֆերի Տր Ածածնիս. ամ ձի հաձկատա-
„ րին. ամ սոմ իմկին. ամ սոմ խոստովանայհաւրս. կէս
„ սոմ աւագերիցուն. ամ ամ չարեկ քհից և վանաւ-
„ րեացն... և այլ պաղ ունիմ հոգոյս Հոգէբարձ իմ
„ տանս իմ խաթունիս իմ կողակիցս Խաչայ խա-
„ թունն և այլ մարդ յետ նարայ հայուչէ չունենայ ոչ
„ հեռաւոր, ոչ մերձաւոր... եթէ ոք յանդգնի սուտ
„ լինայ ամ դատաստանի հոգևոր և մարմնաւոր. և
„ առնու անէծքն Տր հայրապետաց. և տայ տուգանք
„ դատաւորաց։ 'Ի թվին Հայոց պղթ (1450) աւգոս-
„ տոսի Դ։ վկ. Տր Միկաւլ. են։

191. Այս կտակագիր կնքեալ էր մեծ կնքով դա-
տաստանին և հաստատեալ 'ի դատաւորաց։ Իսկ գիրս
հարսանեաց Գորգէնոյ կոչեցեալ՝ հաստատեին այսպէս ։
* 'Ի Թվին ՋԽ և 'ի մին (1492).
„ Կամաւն ամենակալին . . . եղև այս շնորհաւոր
„ հարսանիքս 'ի յաճապահ քաղաքս Իրով Է հովա-
„ նեաւ որ Ածածնին. 'ի հայրապետութեան տն տր Սարգ-
„ սին. և 'ի արքեպիսկոպոսութե. տր Խաչատուրին, և
„ 'ի Թագաւորութե Պաղիմիրին։ Արդ զոր եկն առաջի
„ օրինացն տյ քհնցն, և տնտրցն . . . Այլ ես Իվաշ-
„ քաս կուտամ իմ զաւակին Նախ զտյ աւրհնութի,
„ և զքհնյից, և զտնտրցն։ Այլ իմ մարմնոյ ար-
„ դեանցս, զոր տր Ած պատրաստեաց ոսկեղէն և մար-
„ գարտեղէն այս է. Չինպտ Թ մթխլ. մղկպ Թ մթխլ
„ ու կէս. եկտանա ԺԲ մթխլ. ձագեր Ի մթխլ. ոսկի
„ ծածկոց Ժ մթխլ. աւղեր Ե մթխլ. վզնոց Ժ մթխլ.
„ Փէրվ. խաթափնաւխողանին Գ մթխ. Ժա մթխլ տ
„ ապրձան. Բ մարգարտէ փողպատ. Ժ մթխլ ոսկի
„ ծաղիկներով դեղերերանք. Բ մատանի. Գ մթխլ,
„ ու Բ սոմք արծթէ գօտի . . . Այլ տվօ տր փեսին Նշա-
„ նի մատանի. Ե մթխլ. և այլ տվօ պարգևք տ սոմ-
„ քար արծաթէ գօտա ու տ դգալմ. և իր անծին լաըխ
„ տ ջօխօլմ մերէժով . . . վկ այսմ պատահեալ արժանա-
„ հօատ ծառայք Աստուծոյ և քհասեր տնտրքս ։. և ն։

192. Այլ մին միշտ Նախագահ էր և ընդ դատաւո-
րացն որոշէր զդատն համառօտիւ, ըստ որում քննե-
ցաք զօրագիրս նոցա, յորում դնի այսպէս ։
* Թվին ՋԺԳ աւգոստոսի Է (1464).
„ Այս Սիմոն առի Խ սմ. ոտ իմ անսերձագերուն թա-
„ ժինէն որ սորկին շահ չի լինայ, ոչ տանն վարձ լի-
„ նայ, ոչ խանութին վարձ լինայ ու զմն Բ տղան պա-
„ հեմ հանցանց որ հիմիկ կուպահեմ. Նուցայ հալաւ
„ շինեմ, ու զնաքայ կերակրեմ. ինչ ատեն տղայք յա-
„ ուաջ գան, ու իրենց խելքն ժողվեն ու զան Խ սմ ոտ
„ իսմէ թնտրեն. ես կուզեմ զան Խ սմ ոտ Նացայ տամ.
„ այս թամսիս վկ տր Սյոթ Խաչատուր . . . Այս տր
„ տանուտրաց առջև ունեցայ. վկայուԲ առի ։. և ն։

Այս օրագիր ժամանէ հայերէն մինչև 'ի ՋՀ. մար-
տի ԺԲ. այնուհետև սկսանի թաթարերէն այսպէս ։
* 'Ի Թվին ՋՀ. հոկտեմբր ԺԲ (1521)։

„Ի Վրէլոփ բան Ամուրեան քեդխուդայեանլարկայ. առ յ „ կիւլերդէ պէրնադնիս ուսդաւնայ ||. են:

* „ Պօլսոս Լըվովտա տուխումէր Թորոսոս Լըվով „ Ջէրինգ Նորմշէնիւրաքընդիկ նէմիչ քալէնտարընտա քը- „ րա. 18. յունվ. 1631 ||.

Տեսաք գրօրէնս կամ գիրս հարսանեաց կնքեալ կնքով Նիկոլ արքեպիսկոպոսին, և հաստատեալ յե- կեղեցականաց և 'ի դատաւորաց, յորում յիշին օծեալք հարսին և ընծայք փեսային. որ է սովորութիւն հայոց եղեալ անդ, և 'ի Իսրէլ այսու բանիւ:

* Նրօրինքու բանինա Համանմանընկ ուշմախըր Ջանըր „ Տէրն Յիւլիքովից վարքօ խըղընընկ տա Տէրն Լըվաշքօվից „ բան կրէպքծնունկ. Պօլսոս Լըվովտա. 22. sep. (սեպտ) „ 1629. ունատ նէմիչ քալէնտարընտա քօրա բատաշահըր- „ խընտա ուշունչի Զ եկմունդնունկ պիրզիմ միլատըխըր „ պիլյիմըզկա. աւադէրէցլիատա տըր Զ աքարիանընկ. „ Երեսփոխանլըտա. Տէրն Զ ատիկ օղլու Պէրնաթովից „ բան Թոռոսունկ. տա Տէրն Ս ափնովից բան Նըպգուպ- „ նունկ ||. են:

Ազատութիւնք Լեհաց.

193. Հայկազունք Լեհաստանու, մանաւանդ Լը- վովցիք բազում ազատութիւնս առին 'ի տէրութենէն Լեհաց հանդերձ պարգեւագրովք, որով այնչափ հա- զարաւորք յազգէս Հայոց ինքնայօժար դիմեցին 'ի Լե- հաստան և ծաղկեցուցին այնչափ քաղաքս: Առաջին պարգեւագիրն շնորհեցաւ 'ի մեծէ դքսէն Թէոդորէ, որով կոչեաց զՀայս յօգնութիւն իւր յամի տեառն 1062: Զայս հրովարտակ բառ առ բառ օրինակեալ յիւր ընդարձակ հրովարտակին հաստատեաց Դ Վլա- տիսլաւոս Թագաւոր Լեհաց. հանդերձ այլ և այլ ազատութեամբք և պարգեւեաց Լըվովցոց յամի 1641 (157): Կրեթէ ամենայն Թագաւորք հետզհետէ այս- պիսի պարգեւագրովք բազմապատիկ ազատութիւնս ետուն հայկազանց, որպէս տեսաք յԼըվով զբազումս հին գրով գրեալս 'ի վերայ մագաղաթի հանդերձ Թա- գաւորական կնքով: Որով զամենայն վաճառականու- թիւնս գրաւեալ էին Հայք:

Տեսաք զընդարձակ հրովարտակ Սուլէյմանոսի ար-
քային գրեալ 'ի վերայ մագաղաթի լատիներէն հան-
դերձ մեծ կնքով, յորոյ վերայ հայերէն բոլորգիր
գրեալ է այսպէս.

* Ի Վւէռնէ յունիս իր. Պաթոռի Ստեփան Թգր.
» Ես զիւր Թագրուհի մ͞հէ և զինքն ընդ Երկայն աւուրս
» պահէ անտաստան կենաւք Ամէն: Ի յայս ամի եկաւ
» 'ի քաղաքս Լւով, և կրկին հաստատեց առաջին Թա-
» գաւորաց զտուեալ հրաման. զի ազատք լինիցին սպա-
» սաւորք եկեղեցւոյ մ͞ե հարկապահանջութէ, եթէ
» Թագրական, և եթէ քաղաքական իցէ, և թէ այլ
» նոր սահմանած զինչ և իցէ ||: (1578):

194. Տեսաք նաև զպարգևագիր Կազիմիրի ար-
քային գրեալ 'ի վերայ մագաղաթի հին գրով. յո-
րոյ վերայ այսպէս գրեալ կայ հայերէն. * Կազիմիր
» Թագաւորին չաղաչքի է Թ͞ւ Ք͞ի ծննդենէ ա͞դձխթ
» ամն է ||: (1449): Աւրանօր գոյ այլ պարգևագիր
այսր Թագաւորի, որով տայ ազատութիւն հայ իշխա-
նապետին: Այսպէս յամենայն քաղաքս Լեհաստանու
տոհմօրինակ ազատութեամբք և պարգևագրովք փա-
ռաւորեալ էին հայկազունք ցորչափ կանգուն կայր
այն տէրութիւն: Այլ յետ իբրև անկաւ տէրութիւն Լե-
հաց, բարձան և այս ամենայն ազատութիւնք, ուստի
զարդիս զայն ոսկեզօծ հրովարտակս տեսաք 'ի փոշի
համակեալ և 'ի բոյն որդանց կարգեալ:

Ահա այսու ճշմարտի բանն՝ չկարծել մարդոյ ժա-
ռանգել զօտարին և վայելել զօգուտ նորա, երբ ան-
ձանաչողութեամբ կորուսանէ զիւրն: Այսոն զի Նաղ-
մավկիշտ Նոեցիք յետ կորուսանելոյ զհնաշխարհիկ հայ-
րենիս իւրեանց, ապաստանեալ 'ի Լեհաստան, սկսան
անդ մեծաւ եռանդեամբ զարդարել և ծաղկեցուցա-
նել զօտար քաղաքս՝ կարծելով լինել ինքեանց սեպհա-
կան ժառանգութիւն:

## ՍՏԱՆԻՍԼԱՒ

195. Պատմութիւն ուղեգնացութեանս հարկեցոյց
զմեզ շրջել անձամբ յայլևայլ քաղաքս Հայոց 'ի Լե-
հաստան, և քննել զգործս և զշինութիւնս հայկազանց

Հրամանաւ Արքեպիսկոպոսին։ Ուստի յամի տն 1820. յունիսի 4, ելեալ մեր յԻլվովէ ուղղեցաք զընթացս մեր 'ի Ստանիսլաւ քաղաք. և հանդիպեցաք Տնեսդեր գետոյ, որ ելանէ 'ի մերձակայ լեռնէ անտի առերի Լեոփր գեղջ 13. մղոնաւ հեռի աստի. ուր ջուրն է նուազ, ընդ որ առանց դժուարութեան անցաք 'ի միւս կողմն 'ի Հալիչ գլխաւոր քաղաք լեհաց, որ յառաջագոյն էր աթոռանիստ և անուանի վաճառատեղի. այլ այժմ նուազեալ է և ըստ մեծի մասին բնակութիւն եղեալ Հրէից։ Որդ՝ յետ անցանելոյ ընդ այլ և այլ շէնս Լեհաց հասաք ապա 'ի Ստանիսլաւ գեղեցիկ և բարեկարգ մայրաքաղաք Պօքուցիա գաւառին շինեալ յընդարձակ դաշտի անդ, հեռի յԻլվովէ իբր 15. մղոնաւ։ Ուրանօր բնակեցան Անեցիք յորժամ Անդրէաս Փօթոցքի լեհ իշխան հիմնեաց զայս քաղաք յամի տեառն 1670։ Ի նմին ժամանակի հրաւիրեաց զՀայս անեցիս 'ի Մոլտավիոյ և 'ի Մաճառըստանէ երթալ անդ և ծաղկեցուցանել զքաղաքն վաճառականութեամբ. ուստի կառոյց վասն նոցա զեկեղեցի փայտաշէն ծախիւք իւրովք. և նոքա լցին զքաղաքն բազում շինուածովք և պանծալի արարին վաճառաշահութեամբ։ Այս քաղաք շինեցաւ յանուն որդւոյ Ստանիսլաւոսին, այնր իշխանի որ մեռաւ 'ի պատերազմին ընդդէմ Ալապգեաց։ Ի սկզբան անդ պարսպապատ էր քաղաքս և զարդարեալ մարմարիոնաշէն մահարձանօք և գեղեցիկ դրամբք, զորս բարձին 'ի ժամանակս մեր առ ահի Գաղղիացւոց և միացուցին ընդ արուարձանեայս։ Լի է քաղաքս գեղեցիկ և քարաշէն շինուածովք, ունի 5. եկեղեցիս քարաշէնս, զորս կառուցեալ է Յովսէփ Փօթոցքի երկրորդ որդի մեծի իշխանին. նմին իրի յերկոսին ծայրս քաղաքին կանգնեալ են կրկին սիւնք և 'ի վերայ արձանագիր անուան Յովսեփայ դքսին։ Ի վերայ արևմտեան սեան տեսաք կանգնեալ մեծ արձան անարատ յղութեան Աստուածածնին. իսկ 'ի վերայ արևելեան սեան արձան սրբոյն Յովսեփայ։ Գեղեցիկ է հրապարակ քաղաքիս զարդարեալ քարաշէն կրպակօք։ Նրբեւլի է խորհրդարանն և դիտարանն, ևս և պալատք մեծամեծաց և բարձր տունք, որք են քարաշէն և կրկնայարկ առ հասարակ։

196. Հայկազունք այսր քաղաքի են 70. տունք որ բնակին յառանձին արուարձանի Հայոց Բաղ կոչեցելոյ. ունին ընդարձակ պարտէզս. բազումք են վաճառականք. են և արքունի պաշտօնատարք, Թող զմեծամեծս՝ որ բնակին 'ի գիւղօրէս: Եկեղեցին Հայոց է գեղեցկաշէն և մեծագործ կառուցեալ 'ի վայելուչ տեղւոջ 'ի քաղաքամիջի անդ համեմատ ըստ ճարտարապետական արուեստի. համակ քարաշէն օրինազարդ և պայծառ. ոչինչ ընդհատ 'ի մեծաշէն եկեղեցեաց Եւդոկիոյ, հիմնեալ յամի տեառն 1741. 'ի պատիւ անարատ յղութեան Աստուածածնին, ունի կրկին Գեղեցկաշէն զանգակատունս դէմընդդէմ միմեանց կանգնեալք 'ի վերայ դրան եկեղեցւոյն: 'Ի մի կողմն աւագ խորանին է աւանդատուն, և 'ի միւս կողմն փոքրիկ դպրատուն լատին, հայ և լեհ գրոց, ուր տեսաք և Թաթարերէն գրեանս: Յետկոյս խորանին է գանձատունն քարաշէն, յորոյ վերայ գոն քարուկիր սենեակք, ուր յառաջագոյն գոյր գլուխ դրամոց սակս ողորմութեան պատարագաց:

Այս եկեղեցի ունի զանազան խորանս քարաշէնս և համեմատս. արտաքոյ ունի ընդարձակ բակս շուրջանակի, և բնակարանս քարաշէնս վասն աւագերիցուն՝ և այլ քահանայից: Ժողովրդապետ տեղւոյս է փոխանորդ արքեպիսկոպոսին Լվովի, և քահանայքն են անուանի, ընդ որս երէց և մեզ կենակցիլ աւուրս ինչ: Հուշակեալ էր այս եկեղեցի սակս բազում հանդիսից որք լինէին, ուր գոյր եղբայրութիւն Անարատ յղութեան, և մեծահանդէս կատարէին զտօնախմբութիւնս Աստուածածնին՝ որպէս ցուցանէ յիշատակարանն եղբայրութեան, ուր տեսաք զբազում անուանս եղբարց: Բայց այժմ նուազեալ են և բազումք մոռացեալ զհայ լեզու: Յիշատակարան եկեղեցւոյն ցուցանէ Թէառաջին ժողովրդապետ եղև աստ Պալսամովիչ. երկրորդն Զախնովիչ. ապա Խաչատուր. Տէր Զլախպան. Նիկոլ Սանկըրնակ. Տէր Գրիգոր. Յոհան աճամ, ևն:

197. 'Ի մէջ եկեղեցւոյն Թաղեալ կայ Ստանիսլաւցի սրբակրօն քահանայ տէր Յակոբ վարդերեսևիչ, որ բազումս աշխատեցաւ 'ի շինել զայս եկեղեցի, և վախճանեցաւ յամի տեառն 1751: Սքանչելի է վարք սո-

րա գրեալ յականատեսից, ուր պատմի անտանելի ճգնութիւն սորա. զարհուրելի են մազեղէն շապիկն և երկաթի գօտին, զոր զգենոյր 'ի վերայ մերկ մարմնոյն, որովք շարաչար վիրաւորեալ էր մարմինն: Այլ սակայն առողջ էր մարմնով և պայծառ դիմօք՝ որպէս ցուցանէ կենդանագիրն, որ և կարգեալ էր 'ի Հռովմայ ընդհանուր խոստովանահայր, և 'ի հոգևոր հարկաւորութեան հասանէր յօգնութիւն ամենեցուն: 'Ի ցուցակի ննջեցելոց Վրութերի այսպէս դնէ (204):

* Յամի տն 1717. օգոս. ժա թուն Նովատուր Մ՚օլ-
„ պէյենց նախ սեչովլցի, այժմ գութեցի 'ի հաղորդու-
„ թեան որ մօր եկեղեցւոյ զհոգին առ տէր աւանդեաց.
„ որոյ մարմինն ժբ. ամսոյս թաղեցաւ 'ի գերեզմանա-
„ տուն ըստ ուզման գութերու. զի գեա ոչ գոյր եկեղե-
„ ցին հայոց: Ընկալեալ զամ խորհուրդս խոստովանութե,
„ հաղորդութե, և վերջին օծման 'ի ձեռն պատ. տր
„ Յակոբայ Մարգերեսեանց խոստովանահօր Մայանիս-
„ նալաւովցաւ ||:

Յերկոսին կողմանս դրան եկեղեցւոյն 'ի ներքոյ եդեալ կան յորմն կրկին մարմարիոնեայ վէմք մին. յաջակողմն, և միւս 'ի ձախակողմն գրեալք լատինարէն տառեգրով 'ի յիշատակ շինութեան եկեղեցւոյն օրինակ զայս:

ԱՋԱԿՈՂՄԵԱՆՆ

D. T. O. M.

Templum hoc sub titulo immaculatae
Conceptionis Deiparae Virginis Mariae.
Sola providentia Divina erectum.
Rectoratu Jacobi Manugievicz
Praepositi ejusdem Templi
Protonotarii Apostolici et Officialis
Armenorum S. Theol. Licent.
Illus.mae e Excellentissimae D.nae
Catharinae Deauro Polok.
Kossakowska Castellanae. Kaminskae.
Ope et inpensis consecravit.

## ԶԱԽԱԿՈՂՄԵԱՆՆ

Ill.mus Excel.mus et Rev.mus
D.nus Jacobus Augustinovicz.
Dei et Ap.licae Sedis Gratia
Archip.pus Leopoliensis Armenorum
Cum uno Altari majori
Cui imposuit Reliquias S. Martiris felicissim.
Anno D.ni MDCCXXIII Die 22 Mensis Augusti
Anniversarium quoque Diem Dominicam
Ante 22.dum ejusdem, totis
Indulgentiis designavit stante etc. etc.

## ԼԻՍԿԱ կամ ԼԸՇԿՕ

198. Ի գիւղաքաղաք շինեալ 'ի գաւառավայրի միով ժամու հեռի 'ի Սամբորայ է, ուր ամենայն շինուածք են փայտակերտ. իսկ բնակիչք ընդ ամենայն երկու հազար, յորս 60. տունք են Հայոց, որք ունին եկեղեցի փայտաշէն ընդարձակ 7. խորանօք կառուցեալ յանուն վերափոխման Աստուածածնին: Տեսաք յաւագ խորանի վերին պատկեր Տիրամօրն հրաշագործ և բարերուլին արծաթապատ, որում երթան յուխտ ամենայն քրիստոնեայք ջերմ եռանդեամբք սակս հրաշագործութեանցն զոր առնէ, և զոր արար կանխաւ. երբ ժանտախտն ճարակեալ էր յայն ամենայն կողմանս՝ միայն Լիսկա քաղաքն ազատ գտաւ անտի բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին: Ուստի ուրուրեք հարկանէին 'ի ժանտախտէ՝ անդր դիմէին յուխտ և անդէն ազատէին. նմին իրի հռչակաւոր է յոյժ այս պատկեր հրաշագործութեամբ:

Յամի տեառն 1782. այրեցաւ այս քաղաք. ևս և եկեղեցիք Հայոց և Լեհաց: Հայք վերստին շինեցին, այլ ոչ և Լեհք. ուստի նոքա ևս կատարեն յեկեղեցին Հայոց զպաշտամունս: Ժողովրդապետ Հայոց է մի 'ի կանոնիկոսաց Լվովի, որ բնակի 'ի տունս եկեղեցւոյն և ունի ընդարձակ պարտէզ յետկոյս եկեղեցւոյն. 'ի քաղաքի աստ ոչ տեսաք զերևելի ինչ:

## ԳԻՐԷԺԱՆ

199. Այս փոքրիկ և բարեշէն քաղաք ոչինչ կարի հեռի 'ի Ստանիսլաւէ, ունի զօրաւոր Դղեակ և չափաւոր բնակիչս Լէհս, Ռուսս, Հայս, և Հրէայս: Յառաջագոյն բազում էին անդ Հայք իբր 200. տունք, բայց այժմ 60. տունք մնացեալ են, զորս հովուէ ժողովրդապետն առաքեալ յԼվովէ: Եկեղեցին Հայոց է յանուն սրբոյ Աստուածածնին:

## ԴԻՍՄԻՆԻՑ

200. Այս քաղաք երեք ժամու հեռի է 'ի Ստանիսլաւէ 'ի հարաւակողմն. շինուածք նորա անշուք գետնայարկ և փայտակերտ: Բնակիչքն են երեք հազար և աւելի, յորս բազումք Հրէայ են, իսկ Հայք են 50. տունք, որք վաճառականք են անասնոց. գոն և երեւելի վաճառականք: Այս երեւելի ինչ ոչ տեսաք բաց 'ի քարաշէն և վայելուչ եկեղեցւոյն Հայոց, բարձրաշէն՝ կառուցեալ 'ի վերայ հրապարակին յանուն սուրբ Աստուածածնի, հինգ խորանօք. որ յառաջ փայտակերտ էր. այլ զկնի հրդեհին շինեցաւ փառաւոր յամի տեառն 1750: Յաւագ խորանին եդեալ կայ հրաշագործ պատկեր սուրբ Գայետանոսի, յորոյ անուն կոչի սովորաբար եկեղեցի Գայետանոսի:

Տեսաք անդ Յայսմաւուր սրբագրեալ. 'ի յիշատակարանի դնի. * Ստացողի գրոյս Եղվարթեցի խօջայ » Լուսայունն և կողակցուն նորա Մարիամին, և հօրն » նորա տէր Առաքելին . . . ողորմիս ասացէք »:

Իսկ 'ի մկրտատետրին այսպէս դնի. * Յամի տն 1713. » յունիսի ամսուն ժգ ես տէր Գրիգոր ամիրեան հո» գաբարձու եկեղեցւոյս Աստուածածնի Դիսմինիցու քա» ղաքիս մկրտեցի և դրոշմեցի յաւուր Յունիսի ինուն » ծնեալն . . . որում անուն եդաւ յոհաննէս ». եւն: 'Ի մի կողմն եկեղեցւոյն է բնակարան աւագերիցուն, որ գայ յԼվովէ: Ժողովուրդ տեղւոյս առաւել յըստակ խօսին հայերէն. զի սոքա 'ի յետին ժամանակս եկին աստ, որպէս պատմեցին մեզ, թէ 170. ամօք յա-

ռաջ 42 . տունք Հայոց եկին 'ի Կամենիցէ և բնակեցան աստ ։

ՍՆԵԱԴԻՆ

201 . Ի՛ ընդարձակ գիւղաքաղաք միով աւուրբ հեռի 'ի Պիւմենիցէ շինեալ 'ի վերայ դարի դեղեցկադիր, այլ անշուք և փայտակերտ են տունք և բնակարանք, իսկ բնակիչք ըստ մեծի մասին են Հրէայք ։ Արկին եկեղեցիք գոն աստ Հայոց և Լեհաց, Լեհաց եկեղեցին է փայտաշէն, ունի ընդարձակ բակ և վայելչադիր ժամատուն, ուր բնակեցաք ընդ նախապատիւ հայ կանոնիկոսին տէր Անտոնի Մարամօրուշ (164,) որ նորոգ շինեաց դեղեցիկ զայս վանատուն, առ որով անցանէ ընդ արևելս Պրութ գետ, յոր անկանի Օնէրէմուշ գետ և կորուսանէ զանուն իւր ։

Հայկազունք 'ի քաղաքիս են 70 . տունք, յորոց բազումք վաճառականք են, և մեծամեծք 'ի գիւղօրէս բնակին . բնակքն յստակ խօսին հայերէն, և՛ շատ ծերք զայլ լեզու ոչ գիտեն ։ Եկեղեցին Հայոց է քարաշէն և վայելուչ կառուցեալ յանուն վերափոխման Աստուածածնին . յաւագ խորանի եդեալ կայ հին հրաշագործ պատկեր նորա տախտականկար բերեալ 'ի Հայաստանէ, որպէս ասեն ։ Պատմեցին ծերք, թէ 'ի ժամանակս ժանտախտին իբրև զայս պատկեր թափօրիւ հանին արտաքս, և առհասարակ աղօթեցին՝ խափեցին? խակոյն բարձաւ հիւանդութիւնն ։

Եկեղեցին ունի վանատուն բնակարան ժողովրդապետին, ընդարձակ պարտէզ և բակ, ուր տեսաք դամբարանս հայ դրով ։ Ծերք պատմեցին մեզ թէ 300 . ամօք յառաջ կային աստ Հայք և ունէին փայտակերտ եկեղեցի ։ Տեսաք յայսմ եկեղեցւոջ հին աւետարան բոլորգիր գրեալ 'ի Խաշ, ուր 'ի վերջին գնի . * Աւարտեցաւ այս Նբ մատեանս 'ի լաւ և յընտիր „ աւրինակէ 'ի թվականութեանս հայոց ռՂԲ (1643) . 'ի „ թագաւորութեան Լեհաց աշխարհին չՄդ Վլատիս„ լաւին և իշխանաց մերոց ... և վօյթունին բան Աչաւնին և երկաաստան դատաւորացն ‖ . ևն ։

Իսկ 'ի մկրտատետրին Կուրթերու եկեղեցւոյս գնի, * 1720 . մարտի Ժ̅Ա̅ . Պատուելի Տ̅Ր̅ Յակոբն Բաղ-

ճառականք, որք ունէին պարգևագիրս յարքայէն Լե-
հաց և զազատութիւնս սակս վաճառաց. որպէս բերէ
ժդ. երորդ գլուխն պարգևագրին Մոսքովայ զայս օրի-
նակ. * Ինչպէս Զամօսցեայ քաղաքին հայերն ունին
„ բրաւլան, որ բովանդակ Լեհաց Փոլին վրա գնալով
„ ապրանքով զՖրայական և զործէչքօստօլիդային մի-
„ թան հէչ չտան, այսպէս Ս. ևն:

Սակայն այժմ չիք անդ Հայ. նախնի իրի տէրութիւնն
գրաւեաց զեկեղեցին Հայոց, և զձեռագիր մատեանս
նոցա փոխադրեաց 'ի Վիեննա և եդ 'ի կայսերական
գրատան:

Նոյնպէս յառաջ կային Հայք 'ի Լուպլին քաղաք,
և ունէին եկեղեցի, զոր այժմ ժառանգեցին Լեհք,
առ 'ի չգոյէ անդ Հայոց:

## ԳՈՒԹԵՐ

204. Անցեալ մեր կառօք ընդ սահմանաջուր գետն
Պրուտ և ընդ գեղազուարճ դաշտս և հովիտս հասաք
'ի Գութեր փոքրիկ քաղաք վայելչադիր և զուարճա-
լի կառուցեալ 'ի վերջին ծայր Գալիցիոյ: Առ որով
անցանէ Զերէմուշ գետ, որ բաժանէ զԼեհաստան 'ի
Պուքովինայէ. իսկ լեռնակողմն քաղաքին ժամանէ մին-
չև ցսահմանս Մաճառաց: Ուստի այս տեղի իբրև ան-
կիւն ձևացեալ՝ կոչի 'ի լեզու Լեհաց Գութի. յն. անկիւն:

Այս երկիր յառաջագոյն անտառամօլ էր. արդ
20. տունք Հայոց եկին անդ հրաւիրմամբ Բ. Օգոստոսի
թագաւորին Լեհաց, որ ետ նոցա պարգևագիր ար-
տօնութեանց 'ի 1715. յուլ. 18. զոր և տեսաք:
Որով սկսան Հայք շինել զայս քաղաք. և առաջին
հիմնարկողն եղև Ռաապէկ հայ վաճառական, որ եկն
'ի Մոլտաւիոյ: Բայց նախ ետ հատանել զմեծ զան-
տառն զայն և ապա այլք հետզհետէ բազմանալով շի-
նեցին զայն քաղաք և ծաղկեցուցին վաճառականու-
թեամբ: Այժմեան բնակիչք են 3000. 'ի զանազան
ազգաց. բայց Հայք անուանի են, մանաւանդ մեծա-
մեծք որք 'ի Գիւղօրէս բնակին, և շատք են խաղա-
խորդք. ուր ընտիր լինի կաշին: Տունք Հայոց են 175.
որք առ տէրութեամբ Լեհաց ունէին բազում ազա-

տուԹիւնս առանձին դատարան, և դատաւորս ։ Չեն
եկեղեցին էր փայտակերտ, ապա շինեցին քարաշէն և
գեղեցիկ յանուն անարատ յղուԹեան Աստուածածնին.
բայց որովհետև Լեհք և Գերմանացիք չունին առան-
ձին եկեղեցի, նմին իրի այն անքաւական է անչափ
բազմուԹեան. և հայ ժողովրդապետն հովուէ զնոսա,
որ է Կանոնիկս Լախադահ կամ փոխանորդ արքե-
պիսկոպոսին Լվովի ։

Ոչ միայն շինուած այսր եկեղեցւոյ է վայելուչ,
այլև դիրքն է գեղագուարճ և բարձր. զի 'ի մի կողմն
է մեծ փողոց քաղաքին, և 'ի միւս կողմն են պարտէզք
գեղեցիկք մինչև ցգետն ։ Անդ է քարաշէն և պայծառ
վանատունն, զոր նորոգ կառոյց Նախապատիւ Կանո-
նիկոսն տէր Սամուէլ Մոշորով. ընդ որում մեծա-
հանդէս կատարեցաք զտօնախմբուԹիւն սրբոյն Ան-
տոնի Պատուացւոյն հանդերձ բազմախուռն Թափօ-
րիւ ։ Տեսաք 'ի սկիզբն մկրտատետրին գրեալ. *Յամի
„ Տն 1717. և հայոց ռճկզ. դեկ. ԺԲ. Ես տէր Գրիգոր
„ Վարդանենց ՌուԹերու եկեղեցւոյն Հոգաբարձու
„ մկրտեցի և դրոշմեցի զէգ տղայն ծնեալն 'ի դեկ. Ի.
„ 'ի բան Խաչումէն Շատպէյենց և Մարենայէն օրի-
„ նաւոր ամուսնեայց այսր բարօխունէ. որում անունն
„ եդաւ Կուլ խաԹուն ։ Կնքահայրն եղաւ. Բ. Պա-
„ րիպ Վարդանն ։ Յամի Տն 1738. յամսոյն մարտի
„ ԻԷ. ես տէր Ստեփաննոս Նիկողայանց 'ի զարմէ Խոս-
„ րովի Թագաւորին Հ. եղբայր վերոյգրեալ տն տէր
„ Աքսէնտի ՌուԹերու եկե. անցեալ հոգաբարձի
„ մկրտեցի և դրոշմեցի զարու տղայն ||. ևն ։

Այս քաղաք շրջապատեալ է 'ի զուարճալի բլրոց,
և 'ի դաշտօրէից, որք զարդարեալ են զանազան ծա-
ռովք. կայ աստ Դնչէնա ծառն, որոյ փայտ արկեալ
'ի ջուր՝ լինի դեղԹափ վասն վիրաւորելոց 'ի կատաղի
շանց. որք իբրև ըմպեն զայն ջուր՝ փուԹով ազատին ։

205. Յետ շրջելոյ մեր յայսոսիկ կողմանս ըստ բա-
ւականին, ապա անցեալ լաստիւ ընդ ահաւոր գետն
Չէրէմուշ գնացաք 'ի Միժնիցա գիւղաքաղաք հան-
դէպ ԳուԹերու, ուր Թէպէտ չիք եկեղեցի Հայոց,
բայց գոն հայ գիւղապետ իշխանք ։ Աստի սկսանի ծայր
աշխարհին Պուքօվենայի, զոր ստորագրեսցուք զկնի
անցանելոյ ընդ միւս մասն Լեհաստանու ։ Քամ է

մեզ արդ անցանել դարձեալ ընդ գետն Տնեստեր և գնալ յՍուչավա, անտի 'ի ծայր Կալիցիայի յՕգօբ գիւղաքաղաք. ուր գոյ արգելանոց կառուցեալ 'ի ժամանակին, երբ առին այլազգիք զՕսմանչա (209)։

# ՀԱՅԿԱԶՈՒՆՔ ԼԵՀԱՍՏԱՆԻ

## 'Ի ԲԱԺՆԻՆ ՌՈՒՍԱՑ

206. 'Ի բաժանել Թագաւորութեանն Լեհաց՝ մեծ մասն անկաւ ընդ հզօր տէրութեամբ Ռուսաց. որով մի մասն հայկազանց և քաղաքաց նոցա մնաց 'ի Կալիցիա կամ 'ի Գերմանական Լեհաստան, և միւս մասն բաժանեալ 'ի նոցանէ եանց առ Ռուսս։ Աստ որոյ անցեալ մեր ընդ մի մասնն Լեհաստանու, սկսանիմք այսուհետև շրջիլ ընդ միւս մասն և գրել զանցս և զպատմութիւնս հայկազանց այնր մասին՝ սերելոց յՄ-նեցոց և ապա անդրէն դառնալ յաշխարհն Պուքովինայի՝ որ ընդ տէրութեամբ Գերմանացւոց հանդէպ Կալիցիոյ։ Որովհետև այն չէ Լեհաստան, այլ երկիր Մոլտավիոյ՝ սահմանակից Մաճառաց աշխարհին, նմին իրի 'ի դէպ է անտի անցանել 'ի պատմութիւն Հայոց Մաճառստանու, Մոլտավիոյ և Վալաքիոյ այլովքն հանդերձ։

## ԽԱԶԼՈՎՑԱ

207. Ի հին քաղաք Վոլինիայ գաւառին Լեհաց. երբեմն հռչակեալ յոյժ սակս բնակելոյ 'ի նմա բազում ազգաց, ուրանօր Հայք այնչափ զօրացան՝ մինչև առնուլ նոցա բազում ազատութիւնս յարքայէն Լեհաց, ունելով առանձին դատարան, Վոյթ, և դատաւորս, նաև եպիսկոպոս։ 'Ի ժամանակին յայնմիկ նախապատիւքն 'ի քաղաքին էին Հայք, որք և շինեցին բերդ, կառուցին յոլով շինուածս հրաշակերտս և աղբիւրս՝ հայ արձանագրութեամբ։

Եկեղեցին Հայոց մեծագործ է և գեղեցիկ՝ կառու-

ցեալ 'ի վերայ վայելչագիր բլրոյ քարաշէն յանուն Աստուածածնին . առ որով անցանէ ջուր ։ Այժմ չիք անդ Հայ . զի կէս մի 'ի նոցանէ անցին յԼւով, և կէս մի 'ի Կամենից. և 'ի Սնեատին ։ Ծերք պատմեցին մեզ աւանդութեամբ, թէ Րէֆեցի Հայք յՕսմանի դաշտէն (510) ամ եկեալ բնակեցան . յետոյ Յովհաննէս վարդապետն անէծ զքաղաքն և զԼւախ պարոնն, որ անդէն և անդ մեռաւ հանդերձ որդւով իւրով, և քաղաքն ոչ մնաց յառաջին բարեկարգութեան. յորմէ ցրուեցան Հայք ։

Հայ ժողովրդապետն յառաջագոյն երթայր յԼւովէ, և ապա 'ի Մողլովէ (250) ։ 'Ի յիշատակարանի սաղմոսարանին այսպէս գնի . * Գրեցաւ սա 'ի մայրա-
„ քաղաքն Եազլովցա, ընդ հովանեաւ հաճկատար Սբ.
„ Աստուածածնին, 'ի թուականութեանս Հայոց ռղդ.
„ (1645) 'ի հայրապետութեան տն տր Փիլիպոսի . . . Եւ
„ յառաջնորդութեան տր Անդրէաս արքեպիսին 'ի Եազ-
„ լովցա քաղաքին . և թագաւորութեան լեհաց Յին չորդ
„ Վլատիսլաւին . . ընդ հովանեաւ նորաշէն հաճկատար
„ Սբ. Ծածնին և Սբ. Լուսաւորչին . . և փոյթութեան
„ բան Պղտասարին և Երկոտասան դատաւորացն ։ ։

Իսկ 'ի յիշատակարանի Ճաշոցին Անեադինի այսպէս գնի . * Ատացան զսա անջինջ յիշատակ հալալ յընչից
„ և վաստակոց իւրեանց, և եդին 'ի դուռն Սբ. Ծա-
„ ծնայ . . . ով ոք չունի իշխանութի հանել զսա 'ի Սբ. Ծա-
„ ծնայ գրանէս 'ի մայրաքաղաքն Եազլովցայու, նորա-
„ շէն հաճկատար Սբ. Ծածնայ . ։ ամէն ։

## ԼՈՒՑԿԱ

208 . Ի գլխաւոր քաղաք Վոլինիայ գաւառին՝ բարեշէն և բազմամարդ մերձ 'ի գետն Ստեր ։ Ունի բերդ և երկու եպիսկոպոսարանս Լեհաց և Ռուսաց ։ Յամի տեառն 1429 . մեծ ժողով եղև աստ իշխանաց և թագաւորաց . անդ էր և Սիկիսմունտոս կայսր ։

Յառաջագոյն բազում էին անդ յազգէս Հայոց, և ունէին եպիսկոպոս . որպէս յայտ է 'ի հրովարտակէն Սուխորիկալդքսին Լիդվանիոյ, որ ետ եպիսկոպոսին 'ի մշտնջենաւոր պարգև զգիւղն Զէփէռով . զոր և հաւ

տատեաց վերջին Թագաւորն Լեհաց Ստանիսլաւոս Օգոստոս յամի տեառն 1785. որով և հայ ժողովրդապետն մինչև ցայժմ ժառանգէ զայն գիւղ. Թէպէտ չունի հայազգի ժողովուրդ, այլ հովուէ զԼեհս: Ուրանօր ժողովրդապետ եղև Սիմոնովիչ գիտնական Կամանիկոս, որ ապա ընտրեցաւ Արքեպիսկոպոս Լւովի: Եկեղեցին Հայոց է քարաշէն, բայց հնացեալ. ուր այժմ երթայ ժողովրդապետ յաթոռոյն Մօհիլեւայ (250):

Յամի տեառն 1639. Փիլիպպոս կաթուղիկոս գրեաց կոնդակ առ հայկազունս Լուցկայի՝ յորդորելով զնոսա միաբան մնալ ընդ Լւովոյ: Բազում էին 'ի հնումն երևելի վաճառականք ոչ միայն 'ի Լուցկա, այլև 'ի Վարսաւիա մայրաքաղաքն Լեհաց, և 'ի Լիտվանիա. այլ այժմ յայսմիկ կողմանս միայն անուն Հայոց մնացեալ է:

## ԶՈՒԱՆՉԱ

209. Ըստ բերման կարգի ուղևորութեանս՝ երբ պէտք եղեն անցանել 'ի Բոտոլիա նահանգ Լեհաստանու, հասաք 'ի ծայր Կալիցիոյ Օգոբ (205): Աստ իբրև 'ի լեզու վերջանայ այս աշխարհ. քանզի յաջակողմանէ անցեալ Տնեստեր գետ՝ բաժանէ զԿալիցիա 'ի Պեսարաբիոյ (309), և 'ի ձախմէ անցեալ վտակն Զպրուչ՝ բաժանէ զայն 'ի Բոտոլիոյ. ուստի և է սահմանագլուխ: Նորին աղագաւ զկամուրջ այսր վտակի ըստ կիսոյն ներկեալ տեսաք գունով Գերմանական տէրութեան, և ըստ միւս կիսոյն գունով Ռուս տէրութեան: Ընդ որ անցեալ մեր 'ի կողմն Ռուսիոյ՝ ոչ սակաւ ընդունելութիւնս տեսաք յիշխանաց տեղւոյն, որ կոչի Սաքովից՝ վայելչագեղ գիւղաքաղաք, սահմանագլուխ տէրութեան Ռուսաց. ստորև յետ միոյ ժամու հասաք 'ի Զուանչա:

210. Այս քաղաք յառաջագոյն բարեշէն էր և բազմավաճառ. ուր կային բազում երևելի վաճառականք յազգէս մերմէ, որք ունէին գեղեցիկ տունս, պարտէզս և վաճառանոցս: Դիրք քաղաքիս բարձրահայեաց է և զուարճալի. առ որով անցեալ Տնեստրայ, բաժանէ զայն 'ի հանդիպակաց բերդէն Խօթունի:

Բերդ Օսմանչայի փոքր է, այլ վայելչագիր. առ որով անցանէ գետակն Օսմանչիա. որ պար առեալ զմիւս կողմամբ քաղաքին՝ երթայ Թափի 'ի Տնեստր: Չտեսաք ինչ յիշատակաց արժանի 'ի բերդիս և ոչ ամրութիւն մնացեալ 'ի նախնեաց անտի. ուր պատուասիրեաց զմեզ բերդակալ իշխանն լեհ: Հրապարակ քաղաքիս ընդարձակ է, այլ անշուք՝ յետ անցանելոյ վաճառականացին 'ի ձեռս Հրէից, որք գրաւեալ զտունս և զտեղիս Հայոց լցեալ են զքաղաքն. քանզի չիք անդ այժմ Հայ: Իսկ լեհ ժողովրդապետն նստեալ յեկեղեցին և 'ի վանատան Հայոց հովուէ զազգ իւր: Յառաջին կային 'ի քաղաքիս 100. տունք Հայոց, որք յայլ և այլ կողմանց հաւաքեալ անդ ձևացան հասարակութիւն գեղեցիկ, և վառեալ միաբանական սիրով ձեռն արկին շինել նախ զփայտաշէն եկեղեցին, և ապա զայժմեան քարաշէն եկեղեցին, առաջնորդութեամբ տէր Գրիգորին Հանգեվլիչ, որոյ գերեզման կայ 'ի մէջ եկեղեցւոյն: Նայս գեղեցիկ ժողով Հայոց 'ի չնչին պատճառէ իմնքէ հարաչար խանգարեցաւ զոյգ ընդ բարեկարգութեան քաղաքին. քանզի յամի տեառն 1766. խօթունցի այլազգիք եկեալ յեզերս Տնեստրի՝ սկսան հակառակիլ ընդ լեհ զօրականին, որ իբրև վանեաց զնոսա անտի, նոքա բազմացեալ գունդ կազմեցին, և կատաղաբար արշաւեցին 'ի Օսմանչա, սկսան այրել և կողոպտել զքաղաքն. հազիւ ճողոպրեցան քաղաքացիք և զերծան 'ի բերդն և յեկեղեցին Հայոց, որք այնուհետև սկսան ցրուիլ աստ և անդ, մանաւանդ զկնի պատերազմին 'ի 1768. և մեծ մասն ժողովրդեան բնակեցաւ 'ի Կամենից:

211. Եկեղեցին Հայոց է գեղեցիկ և չափաւոր մեծ և բարձր՝ կառուցեալ 'ի ձև յոնիական, ունի 6 խորանս. աւագ խորանն, որպէս և եկեղեցին նուիրեալ է անարատ յղութեան Աստուածածնին. 'ի մի կողմն է խորան սուրբ Լուսաւորչին և Խաչելութեան. և 'ի միւս կողմն է պատկեր Գայեթանոսի, որում երևի Տիրամայրն. զոր զարդարեալ են ոսկի զարդուք և պատուական ակամբք: Յորմն տեսաք հին պատկեր Պետրոսի առաքելոյն՝ հանդերձ այսպիսի գրուածով.

* Ամ̃ պէտ. ռ̃ու. Յիշատակ է աղքատիս մահտեսի Սար-
» գիսի որդի ծառա Սահակին ‖:

Ի նոյն կողմն է խորան սրբոյն Անանիի, և առաքելոյն Թադէոսի և Բարթուղիմէոսի. յորում Թադէոս զդաստառակ Քրիստոսի ցուցանէ Բարթուղիմէոսի։ Իսկ 'ի միւս կողմն է դաշանց պատկեր, իբր զի՝ սուրբ Լուսաւորիչն կալեալ զձեռանէ սրբոյն Սեղբեստրոսի՝ գնէ ուխտ, և 'ի թիկանց նորա կացեալ երկուց տարկաւագաց՝ մին ունի զսկիհն, և միւսն թաթախէ զգրիչն յարիւն փրկչին և տայ Լուսաւորչին 'ի գրել զթուղթն դաշանց։ Ներքի խորանի Լուսաւորչին գոյ տապան այսու տառանաւորաւ.

* Այս շիրիմս հանգստարանին,
„ Սարիպ Շահեայ ազգատոհմին.
„ Վրստացի պարոն Յակոբին,
„ Որդուն անուանեալ Նազարին,
„ Որ փոխեցաւ 'ի կեանս թվին.
„ Հազար երկու հարիւր հինկին.
„ Աւելի քան ւերեգին.
„ Հանդիպօղք յիշէք սորա հոգին Ա։

Այսպէս 'ի բոլոր յատակ եկեղեցւոյն կան մեծամեծ տապանք, այլ շատք անվերծանելի են։ Յայսմ եկեղեցւոջ բազում հանդիսաւոր տօնախմբութիւնք կատարէին 'ի պատիւ անարատ յղութեան Աստուածածնին. գոյր և եղբայրութիւն։ Տեսաք 'ի տարեգրի ննջեցեալ եղբարց 32 անուանս։

212. Ի վերայ դրան եկեղեցւոյն գոյ վէմ, փորագրեալ 'ի վերայ Գառն աստուծոյ. և 'ի վեր անդր զարդ ինչ. 'ի միջոցին գլուխ առիւծու քանդակեալ, և 'ի բերանոյ նորա հուր ելանէ։ Ի ճակատի անդ յերկոսին կողմանս կառուցեալ կան երկու քարուկիր զանգակատունք. և 'ի միջի անդ քարաշէն մեծ պատուանդան շինեալ վասն մեծի արձանին, զոր ետուն ձուլել 'ի Տանձքա 'ի պատիւ Անարատ յղութեան Տիրամօրն։ Այս մեծագործ արձան պղնձաձոյլ և ոսկեզօծ՝ գեղեցիկ է յոյժ՝ կացեալ 'ի վերայ պղնձաձոյլ աշխարհի, և ընդ ոտիւք օձ 'ի բերանի խնձոր. երկայն է 10 թզաչափ, համեմատ չափակցեալ և ճարտարագործ. զոր տեսաք 'ի Կամենից 'ի տաճարան սրբոյն Ստեփաննոսի յարկեղ անդ. թուի թէ փոխադրեալ իցեն անդ 'ի ժամանակս պատերազմին։ Տեսաք յաւանդատան զանազան զգեստս և անօթս մնացեալս

'ի Հայոց անտի. միայն արծաթի սկիհք են 12. գտնին նաև քանի մի գրչագիր մատեանք, և ճաշոց մի գրեալ 'ի Ս. Էնէտիկ 'ի Թուին Հայոց ռճկբ. իսկ զայլ գրեանս տարեալ են 'ի Կամենից, որպէս տեսաք (218)։

Շուրջ զեկեղեցեաւ է ընդարձակ բակ պարսպապատ. 'ի մի կողմն է ժամատունն՝ հանդերձ քանի մի սենեկօք և պարտիզաւ, ուր բնակի լեհ ժողովրդապետ. յաւուրս մեր նորոգեցաւ այս ժամատուն։ Սուրանօք պատուասիրեաց զմեզ ժողովրդապետն այն բազում մարդասիրութեամբ։

## ԿԱՄԵՆԻՑ

213. Ի գլխաւոր և գեղեցիկ քաղաքաց Պոդոլիա նահանգին կառուցեալ 'ի վերայ բոլորանիստ ապառաժ բլրի. որպէս և անունն լեհերէն նշանակէ Քարոտ։ Այս քաղաք յամենայն կողմանց ամրացեալ է գրամբք և աշտարակօք. զորով պատի Սմոտրիչ գետակ, որ ունի ամրաշէն կամուրջս առ 'ի մտանել 'ի քաղաքն։ Շինուածք քաղաքիս ըստ մեծի մասին են կրկնայարկ և քարաշէն. վայելուչ է հրապարակն և վաճառատեղին. մեծագործ և փառաւոր են եկեղեցիք, մանաւանդ՝ Փառա մայր եկեղեցին աթոռանիստ չքնաղ և ընդարձակ, լի գեղեցիկ քանդակօք, ազնիւ մարմարիոնեայ արձանօք և բազում խորանօք. զոր յառման քաղաքին 'ի մզկիթ փոխեալ էին այլազգիք, կառուցեալ արտաքոյ մեծի դրան բարձր քարաշէն Մինարէ ամրակուռ. յորոյ վերայ այժմ կանգնեալ կայ գեղեցիկ և փառաւոր մեծ արձան պղնձաձոյլ ոսկեզօծ անարատ յղութեան Աստուածածնին։ Երևելի և փառաւոր շինուածք քաղաքիս են՝ եպիսկոպոսարանն և պալատք իշխանաւորաց 'ի վերայ հրապարակին։ Գեղեցիկ է եկեղեցի Դոմինիկեանց, զոր այլազգիք 'ի մզկիթ փոխեալ էին. յորում տեսաք զտեղի Սայիզի կամ զբեմ ընթերցման Ղուրանին, հանդերձ քարաշէն վանդակաւ և սանդխովք. ուր ընթերցաք և զգրուածս ինչ Արաբացւոց։ Թողում յիշել զայլ եկեղեցիս և զվանօրայս միանձանց գեղեցկաշէնս, որոց ոմանք փոխեալ են այժմ յեկեղեցի Ռուսաց։

Այս գեղեցկատեսիլ բերդաքաղաք շրջապատեալ է 'ի զուարճալի բլրոց, յորոց և բաժանի 'ի ձեռն գետակին և խրամոց. Ունի զերիս դրունս. Ա կոչի Ռուսքի դրան, այսինքն դուռն Ռուսաց. զի աստի մտին Ռուսք: 'Ի պատերազմին՝ որ ընդ այլազգիս, զայս դուռն Հայք պահպանէին, որում ոչ կարացին տիրել թշնամիք՝ մինչև առաւ քաղաքն: Բ Օտֆոնլի դրան. այսինքն դուռն բերդի: Գ Պոլսքի դրան. այսինքն դուռն Լեհաց. զի աստի ելին Լեհք: Առ երի ամուր դրան 'ի ներքուստ են հին աշտարակք 'ի պաշտպանութիւն այսր դրան: Յամի տեառն 1651. Խազախք պաշարեցին զայս քաղաք, բայց ոչ կարացին առնուլ. ապա 'ի 1672 պաշարեցին Օսմանեանք. մինչև բռնադատեալ քաղաքացւոց ետուն, և մնաց 'ի ձեռս նոցա ամս 27. ապա 'ի 1699. անդրէն առին Լեհք, և այժմ է 'ի ձեռս Ռուսաց: Ուր այժմ բնակին զանազան ազգք. այլ Հրեայք առաւել են. որոց բնակարան 'ի հնումն էր արտաքոյ բերդին մերձ 'ի գետակն. և չունէին հրաման գիշերել 'ի քաղաքին. եթէ 'ի ցերեկի հարկ լինէր նոցա երթալ 'ի քաղաք, տային 15, տուակ 'ի դրան անդ, և այնպէս մտեալ և փութով կատարեալ զգործս՝ ելանէին. այլ այժմ զգեղեցիկ վաճառանոցն և զերևելի տունս Հայոց նոքա գրաւեալ են:

## ԱՆԵՑԻՔ ԿԱՄԵՆԻՑԻ

214. Յամի տեառն 1062. Թէոդոր դուքս հրաւիրեաց զԱնեցիս բնակիլ յաշխարհ Պոտոլիոյ 'ի մայրաքաղաքն Կամենից. ուրանօր զօրացեալ և բազմացեալ՝ եղեն գլխաւոր ժողովուրդ քաղաքին: Ունէին առանձին եպիսկոպոս, եպիսկոպոսարան, դատարան, դպրոց և քանի մի եկեղեցիս, զորոց զկնի: Տեսաք զհրովարտակս այլ և այլ թագաւորութեանց, զոր ընկալան յարքայից Լեհաց: Տեղի դատարանին կայ մինչև ցայժմ մերձ 'ի հրապարակն: Այնչափ էին 'ի նմա երևելի վաճառականք և փառաւոր իշխանք, զի գրեթէ բոլոր քաղաքն էր 'ի ձեռս Հայոց. և որպէս ծերք պատմեն, կային առ 900. տունք Հայոց. այժմ հազիւ գտանին 70 տունք. ոմանք վաճառականք են, և

ոմանք ունին կալուածս, և 'ի գիւղօրէս բնակին ։ Հայոց թաղն է 'ի հարաւակողմն քաղաքին, ուր են եկեղեցիք, վանատուն և հիւանդանոց ։

## Սուրբ Նիկողայոս ։

215. Եկեղեցի սրբոյն Նիկողայոսի է մի յերևելի շինուածոց քաղաքիս. և միանգամայն է հռչակաւոր ուխտատեղի քրիստոնէից 'ի պատճառս հրաշագործ պատկերի Աստուածածնին ։ Այս եկեղեցի է քառաշէն, սիւնազարդ, մեծադիր, բարձր և վայելուչ. ունի 6 խորանս. յաւագ խորանն մեծաշէն և փառաւոր՝ գոյ պատկեր սրբոյն Նիկողայոսի 'ի վեր անդր. իսկ հրաշագործ պատկեր Տիրամօրն է 'ի միջավայրի նոյն խորանին ամրափակեալ 'ի պղնձի պատուհանի, զոր բանան յամենայն շաբաթ աւուրս ։ Ուր յաճախեն եռանդեամբք պաշտօնասէր ուխտաւորք և ախտաժէտք. տեսաք զբազումս՝ որ առաջի խորանին անկեալ յորդայսեալ 'ի վերայ երեսաց իւրեանց բազկատարած աղօթէին հարուստ մի ժամանակ, յորոց ոմանք թեթևացեալ 'ի ցաւոց՝ դառնային խնդութեամբ ։

Ձև հրաշագործ պատկերիս է քառակուսի, իբր կանգնաչափ բարձր, պայծառ և գեղեցկատիպ. զոր ասեն յաւետարանչէն Ղուկայ նկարեալ 'ի վերայ տախտակի հանդերձ աստուածորդւովն ըստ ձևոյ պատկերին Տրապիզոնի (Պտկ. 129) զոր բերեալ են Հայք յԱնւոյ կամ 'ի Հայաստանէ ։ Բոլորովին արծաթապատ է, բաց 'ի փառահեղ ճառագայթարձակ դիմացն. և 'ի ճառագայթի անդ գլխոյն շուրջանակի ոսկեգիր տառք գրեալ կան, զոր մինչև ցայժմ ոչ ոք կարողացաւ ընթեռնուլ. ոմանք նմանեցուցանեն զայն եբրայական գրոյ, և կէսք այլոց ։ Սակայն մեր անձամբ ելեալ 'ի վեր անդր օրինակեցաք ըստ ձևոցն, զոր գտաք յաւէտ մերձաւոր հին գրոցն Հայոց, բայց ձև նոցա ցուցանեն թէ այլ խմն արուեստիւ են գրեալ ։ Ոմանք հաստատեն թէ 'ի Հայաստան 'ի վաղեմի գրչագիր մատեանս տեսանին այսու ձևով գրուածք. որպէս և այն՝ որ գրեալ էր և 'ի վերայ դրան եկեղեցւոյն Ռէֆէի, զոր բերեալ ասեն յԱնւոյ (412) ։ Նոյն որովհետև 'ի վերայ ճառագայթի պատկերին եդեալ կայ ոսկեզօծ

պատկ՝ նմին իրի միայն զվերին տողն մարթացաք ընդօրինակել, որ է այս.

[illegible]

216. Յորժամ այլազգիք առին զԿամենից, բազումք 'ի Հայոց գերի վարեցան մինչև ցՄէքիրման՝ տարեալ ընդ իւրեանս և զայս պատկեր ։ Բայց զկնի հաշտութեան իբրև դառնային նաւու ընդ գետն Դանուբ, պատահեցան անհնարին ալեկոծութեան. ամենեքեան անկեալ առաջի պատկերին լային. և ահա յայտնի տեսին զսքանչելիսն, և անվնաս զերծեալք հասին 'ի Կամենից, և եդին զպատկերն յեկեղեցին Աւետմանն ։

Պատմեցին մեզ թէ 'ի տեղի այսր եկեղեցւոյ յառաջագոյն դոյր փոքրիկ եկեղեցի Աստուածածնի, սակայն դատաք 'ի հին յիշատակարանի յայսմաւուրաց զանուանս երից եկեղեցեաց ես այսպէս. * Ընդ հովանեաւ սրբուհւոյ ամենաւրհնեալ Աստուածածնին, և Սբ. Նիկողայոս սքանչելագործ հայրապետին, և Սբ. Աւետման Ածածնին ‖ ։ Այս եկեղեցի նորոգեցաւ յամի տեառն 1756. յունիսի 28. այլ հազիւ աւարտեցաւ 'ի 1767. յուլիսի 26 ։ Իսկ 'ի 1767. օգոս. 22. զպատկեր Աստուածածնին հանեալ յԱւետման եկեղեցւոյն հանդիսաւոր թափօրիւ եդին յայս եկեղեցի ։ 'Ի վերայ պատկերին ոսկեգիր փորագրեալ է * Ապաւէն մեղաւորաց ‖ ։

217. Աւանդատունն է յետկոյս աւագ խորանին, յորոյ վերայ է բարձր պահարան կամ զգեստատուն. և 'ի ներքս անդ փոքրիկ գրատուն, ուր տեսաք զգրչագիր եկեղեցական մատեանս Հայոց, և զայլ և այլ մատեանս այլոց ազգաց ։ Տեսաք անդանօր ծանրագին զգեստս և անօթս եկեղեցւոյ ։ Պատմի 'ի հին յիշատակարանի, թէ որ Մովսէս եռ նկարել վասն հինգ խաբանաց 'ի վերայ սեաւ կտաւոյ զչարչարանս Յիսուսի սակս մեծի պահոց ։ Եկեղեցին ունի երիս դրունս, և իւրաքանչիւրն ունի առաջի գաւիթս քարայատակս. Ճակատ մեծի դրանն է սիւնազարդ և փառաւոր, բայց վերնախարիսխք սեանց դեռ անկատար կան, որպէս և պատուանդանք են առանց արձանաց. ուստ կամէին դնել զօսկեզօծ մեծ արձանն Անարատ յղութեան, զոր բերին 'ի Օսմանչայէ (212), Աւերի հարաւային

դրան յորմէ տեսաք մարմարիոնեայ տապան, ծաղկազարդ քանդակեալ, այսու արձանագրութեամբ.

* Շիրիմս այս էր պահարան,
„ Մարմնոյս . . . մահվան .
„ Որ սա էր մեծ վաճառական .
„ Ովանէս այս ազնուական .
„ Սա էր երկրէն Փարսիական ,
„ Երևանու մերձ գիւղական .
„ Քանաքեռու անուանական ,
„ Տանէ որդի Նարաղամեան .
„ Սա էր եղեալ երեսնամեան ,
„ Յորժամ եհաս կենին վախճան .
„ Հայոց մեծաց էր թվ. ռՃկզ ին || Եւն :

218. Իսկ զանգակատունն է հանդէպ հիւսիսային դրանն՝ բարձր և ստուար. առ որով է մատուռն սրբոյն Ստեփաննոսի, որ է քարաշէն հին և հաստատ յոյժ: Պատմեն թէ ոմն ծեր մեծատուն՝ ետ շինել զայս հանդէպ տան իւրոյ 'ի կողմանէ փողոցին առ 'ի լսել անտի զժամասացութիւն և զպատարագ: Աստ տեսաք զոսկեզօծ արձանն Ոուանչայի և քանի մի գրչագիր մատեանս. այլ ոչ տեսաք անդ խորան կամ սեղան, թուի թէ կործանեալ իցէ առ հնութեանն: Ի հանդիպակաց որմն 'ի ներքուստ տեսաք ոսկեգիր յիշատակարան 'ի վերայ մեծի սեաւ մարմարիոնի: Ի ճակատ գրուածոյն փորագրեալ կայ պատկեր խաչելութեան. և յերկոսին կողմանս երկու արք արևելեան զգեստուք 'ի ծունր իջեալ աղօթեն՝ եդեալ զգլխարկս առաջի իւրեանց. թուի թէ են պատկերք հիմնադրաց եկեղեցւոյն: Յառաջագոյն այս վէմ եդեալ կայր 'ի վերայ դրանն. այլ յառման քաղաքին նկատմամբ ինն հանեալ անտի և 'ի տեղիս տեղիս խանդարեալ զգիրն եդին յորմն, որպէս տեսանի.

* Յս Որդի Հօր միածին,
„ Որ բարձրացար վերայ խաչին.
„ Սն Ադամայ նախաստեղծին,
„ Եւ ամենայն զարմից նորին.
„ Մարմնովդ եդար գերեզմանին,
„ Հոգւովդ իջեր դժոխք ներքին,
„ Ո աւարն առեր ըզգերողին.
„ Եւ դարձուցեր առ հայրենին.

» Մշատեցեր զՄշամբըն հին ,
» Եւ ընդ նմին ըղձնունդ նորին ,
» Որ էր մեռեալ համանգամայն ,
» Զգեցուցեր զփառս առաջին .
» Նոյնպէս շնորհեալ և տէր սոցին ,
» Զտաճարս այս շինել տուողին .
» . . . . . . . խոսու փիրզատայլին .
» . . . . . . . . . . . . . . . . . .
» Որ հարազատ գոլ անուանին ,
» Ողորմեսցի . . . . . բու երկր .
» Այլև կանանց հոգւո սորին ,
» Մարուխնայլին Թուրվանտայլին .
» Եւ ամենայն ծննդոց . . .
» Զի 'ի հալալ արդեանց գանձին ,
» Նստուն իւրեանց յղձմամբ սրտին .
» . . . . . . . . . . . . . . . . .
» Այ . . . . . . . . . . . . .
» . . . . . . . յս աշտարակըն .
» 'Ի յօգնութեն այս մեծ ծախին ,
» Ընծայեցին զամ . . . . իլին .
» Մն հոգւոյ իւրոց ծնողին .
» Զոր տէրն դասէ լուսանա վերին .
» Ավոք . . . . . . . . . . . . .
» Ասացէ զտէր ողորմին .
» Նորա յանցանքն միշտ քաւեսցին ,
» 'Ի թվլին ՌՆ Հայոց մեծին .
» Չէ թիւ աւելին ,
» Յորժամ զսա կանեց . . . . . .
» . . . . . . . . . . . . . . . .
, Պետութեն տէր Մովսիսին .
» Աթոռապահնոր Գրիգորին .
» Եւ բարեպաշ . . . . ուղղորդին .
» Յինէն նորոգ բանս այս լցին ,
» Պատճառ ընաւի . . . . . . .
» . . . . . . . . . . . . . . . .
» . . . լուկ անուամբ երէց կոչիմ ։

219 . Ընդարձակ է գաւիթ եկեղեցւոյն և յերից կողմանց հասանէ մինչև ցփողոցս . ունի կրկին տունս տակս բնակութեան քահանայից , այլ այժմ է տեղի պահապանաց եկեղեցւոյն ։ Յառաջագոյն սատ ընա

կէր ժողովրդապետն. բայց այժմ ամենայն հայ կանոնիկոսք բնակեն 'ի մեծի վանատանն, որ է քարաշէն բարձր և կրկնայարկ մենարան՝ բաժանեալ 'ի զանազան սենեակս, ուր եղև և մեր բնակութիւն։ Աստ նստէր 'ի հնումն առանձին եպիսկոպոս. ապա միացաւ ընդ իշխանութեան Լվովի, մինչև էանց Կամենից 'ի Ռուսս։ Ապա Յովսէփ Քրիստոփորավիչ կանոնիկոս Մոյլովի երբ ձեռնադրեցաւ եպիսկոպոս 'ի վերայ հայոց եղելոց 'ի բաժնին Ռուսաց, յայնժամ և Կամենից անկաւ ընդ իշխանութեամբ աթոռոյն Մոյլովի։ Իսկ յետ Յովսէփ եպիսկոպոսի աստ փոխադրեցաւ ընդհանուր կառավարութիւն աթոռոյն ընդ իշխանութեամբ տեղապահ կանոնիկոսին Անտոն Վարդերեսևիչի, որ և բազում մեծարանօք պատուաւորեաց զմեզ մինչև ցմահ իւր։

'Ի մկրտատետրի անդ այսպէս գրեալ կայ. * Յամի
„ տն 1713. յունիս ամսոյ Ժ. Ես տէր Յակոբ Վար-
„ դերեսենց Ռուապոշչ Կամենիցցւ բարոխական եկե-
„ ղեցւոյս Ս. Նիկողայոսի հայրապետին՝ մկրտեցի և
„ դրոշմեցի զտղայն յաւուր Է ներկայիս ծնեալ 'ի Յա-
„ կոբայ որդւոյ Զախարիաշին Մաքսիւդին և 'ի Ռո-
„ զալիայէն ... որոյ անունն եդաւ Անգնսէնդ ‖։

Իսկ 'ի յիշատակարանի հին յայսմաւուրաց այսպէս գրի. * Արդ գրեցաւ սուրբ գիրքս հայոց թվին ՌԿԹ
„ (1620) 'ի հայրապետութե տն տր Մելքիսեդեկ
„ կթղկսին։ Եւ 'ի թագաւորութեն այսր Լեհաց աշխար-
„ հին երրորդումն Զիկմունդին, 'ի քաղաքս որ կոչի
„ Կամենից, Է հովանեաւ սրբուհւոյ ամենաւրհնեալ
„ Ածածնին և Սբ. Նիկողայոս սքանչելագործ հայրա-
„ պետին, և Սբ. աւետման Ածածնին, և այլ սրբոցս.
„ ձեռամբ ... Յակոբ քահանայի որդւոյ տր Գրիգոր
„ աւագերիցու. 'ի խնդրոյ պատուական և պայազատ
„ բան Նուրքոյին ‖. ևն։ Գնի ապա թաթարերէն.
* Մէն եազըխըը ‖. ևն։

Յիշատակարան սուրբ Նիկողայոսի։

220. Գտաք բոլորգիր հին յիշատակարան եկեղեցւոյ սրբոյն Նիկողայոսի, որ սկսանի այսպէս. * Այս
„ է սկիզբն յիշատակարանիս Սբ. Նիկաւղա եկեղեցւոյ։

„ Ըստ չափոյ կարողութե իւրեց. 'ի պայծառութի այս սբ տա-
„ ճարիս, սոտ կամ կարգաւ գրեալ: Այլ ոչ Թէ միայն
„ սոսա է գրեալ. այլ անուանք նց գրեալ են 'ի դպրութի
„ կենաց. մնանուանող որք առնեն ողորմութի յաւժար
„ սրտիւ և առատ կամաւք. Նունն ոյ 'ի սբ Միկաւղայ
„ տաճարիս:

„ Աւրհնեալ է ամենասբ Երրորդութիւն... Որան-
„ զի շնորհքն ածային հանապազ... խորհել տայ, զի
„ առնիցեն ողորմութի 'ի այս սբ եկեղեցիս... Յանկա-
„ ցօղք եղեալ ածային յիշատակիս. այր ածասէր և
„ բարեպաշտ որ կոչի Պարոն Սինան... սկսաւ շինել
„ այս սբ տաճարս 'ի յանուն սրբոյն Միկողայոսի սքան-
„ չելագործ սբ հայրապետին... Որ և յիշատակն
„ անհնեալ եղիցի, ասա և 'ի հանդերձեալն աշխարհին
„ իւրայովքն., ամէն:

„ Ած ողորմի նն Պ. բրմ պէյին, հոգոյն որ զգուշ
„ պէտղն բարձրացոյց, և ոսկեզարդ խաչն կանկնեցոյց
„ 'ի գլուխն սբ եկեղեցոյ: Քս լուսաւորէ պըն Խաչիկին
„ զհոգին, զծամատուններն մեծացոյց և կամարակապ
„ արար. զոր Ած հատուցէ նմ ամէն: Նախ և առա-
„ ջին այս է տուրք հաւատացեալ քրիստոնէից... Ած
„ ողորմի Ած Խաչատուր եպիսկոպոսին հոգոյն. եւտուր
„ յշկ սբ տաճարիս ա արծԹէ բուրվառ: Քս լուսա-
„ ւորէ Տր Տիրատուր աւագ իրիցուն, և մօրն իւրոյ
„ զհոգին. եւտուն յիշատակ ա խաչվարմ և բ խաչն:
„ Ած ողորմի հոգոցն՝ Տանային, Լոռիլ մելիքին, և
„ Մամնպէյին, եւտուն յիշատակ այս սբ տաճարիս ա
„ շուրջառ և ա մեծ խաչմ արծԹէ: Քս լուսաւորէ
„ զհոգին Միկօլ աղային և իւր կողակցին. ավին ա
„ կարմիր խատուֆայ շրջան, ոսկի մարգելլխաչով...
„ Ած ողորմի հոգւոյն Թաւթուլին և ծնողաց իւրոց.
„ եդիր յշկ ա կարմիր գամխա շուրջառ, և 'ի վեր
„ խաչ. ըԹ ոսկեծաղիկ վարդ մարգրտով շարած, և
„ ա մեծ խաչմ արծԹէ՝ ակներով, և ոսկեխաչուն...
„ Քրիստոս լուսաւորէ հոգւոյն նն Սօլպէյին...
„ ունի յիշատակ.... մէկ արծԹէ սկիհ մաղզմանով.
„ և բ խաչ.... Պարձեալ մն հոգւոյ իւրոյ. շինել ե-
„ տուր ա մեծ խուցմ փայտաշէն.... Աստուած ամ
„ արարածոց իւր ամենակարող շնորհիւն անհնէ զնր
„ Տօնական երեսփոխանն, եւտուր յշկ սբ Միկօլա

» Որչափ կամ թէ ժմ զինչ իշխեցաւ է իւրաքանչիւր.
» տաճարիս աւագ խորանին ա՛ մեծ և հրաշալի գեղեց-
» կանկար տիրամայր մեր ամենայնին պատկերքն. և
» գլուխն մեր Ամենափրկչին, նոյնպէս և Փրկչին գլուխն,
» արծթէ գեղեցկաշէն թագերն ոսկեզօծ, ակներով,
» և մարգարտով զարդարած... Ո՛ ողորմի հոգւոյն մեր
» Ր մեքին կղզին ունի յիշատակ՝ ի վերա խաչին է ոսկի
» տղայ ‖:

221. Նոյս յիշատակարան 40 ամաւանս յիշելով բերէ բազում ոսկեղէն, արծաթեղէն և հանդերձե-ղէն յիշատակս. յետոյ սկսանի պատմել զշինութիւն զանգակատանն. *Ի ծայրին օրհնութեան և յաջողութեան ա-
» մենակալ այն: Այրթութեան մեր Տօնաւշին. և երէց-
» փոխանութեան մեր Բոմանոսին ժողովեցան միաբան մեր,
» տանուտերք և խորհուրդ արարին զի այս մեր տաճարիս
» ա՛ քարուկիր զանգակատան կանգնեցուսեն: Եւ ժողո-
» վեցան միատեղ՝ համօրէն ժողովուրդ մեծ և փոքր, և
» սկսան շինել յուսալով այս օգնութեան, որ էր սպկով.
» որ իւր անձամբ, որն ձիաներով, որն եզներով, որ
» իւր յուժով. և կատարեցին...

» Ըստ լուսաւորել զհոգին մեր Խաչատուր եպիսկո-
» պոսին. եռուր յշտիկ այս մեր տաճարիս ա՛ մեծ և փա-
» ռաւոր զանգակն... Ըստ լուսաւորել զհոգին Սա-
» տաստ խաթունին. եռուր յշտիկ ա՛ արծթէ խաչն ոս-
» կեզօծ. ա՛ սաղքար. և ա՛ գոգնոց սիրմակար. որ է
» գին բ֊ու սպկ... Ու ողորմի հոգւոյն մեր. Միքաւլգայ
» վոյթին. և զիւր նշանցեալն ընդ արդարոյն համբա-
» ցէ. կանգնեցաւ իւր անձամբն, և աւանդատունն
» կամարակապ շինել երետ մեր Սիկաւլայ տաճարիս ‖:

222. Նյոււ կարգաւ յիշէ 22 ամաւանս, և բազում արծաթի և կերպասեղէն զարդս. յետոյ սկսանի այս-պէս. *Հայոց թվին պհզ (1427). Ամենանն Ուգոստոսի
» Ժը. Պարոնութեան Լանգթորենգբէյին, և Գրատա-
» ւորութեան մեր Աերսէսին. ժողովեցան միաբան տա-
» նուտերքն մեր Սիկօլայ եկեղեցւոյ, և նայեցին ըղ-
» գեստն: Եւ գտան իւ շուրջառ. և ժը մեծ խաչ և
» է փոքր, և ը օկինհս. և է մաղզման...

» Ըստ լուսաւորել զհոգին մեր Հրինոցին զնշեցեալն
» շինել եռուր եկեղեցւոյ վերա ա՛ երևելի զէնք, և ոս-
» կէզարդ խաչ կանգնեց վրան: Եւ այլ ունի յիշա-

„ տակ մ̃ հրաշալի արծթէ վարշամակ ոսկեջրած . . . .
„ Վ̃ս լուսաւորէ զհոգին Հարպխոին դոսդային, ունի
„ յշտ̃կ մ̃ ձուփդ բազմաց քուփդ կարած, ոսկի վար-
„ դերով հ̃ս . և մարգրտով շարած . . . Ս̃ծ ողորմի հո-
„ գոյն պոլթչանցի հայր Յովսեփին . եւտուր յշտ̃կ նը
„ Նիկօլայ եկեղեցւոյ մ̃ հրաշալի խաչ պատուանդա-
„ նով արծթէ ոսկեջրած . . . Ս̃ծ ողորմի հոգւոյն տ̃ր
„ Հրիհորին և իւր ննջեցելոցն ըստ արդարոյն հան-
„ դուցէ . եդիր յշտ̃կ նը Նիկօղա տաճարիս մ̃ մեծ
„ փառաւոր և հրաշալի և քաղցրաձայն զանգակ, զոր
„ տ̃ր հատուցէ նմա : Պարծեալ մ̃ծ ողորմի տ̃ր Հրի-
„ հորին հոգուն զզանկակատունն բարձրացոյց և վ̃ր
„ խարձեց իւր հալալ արդեանց կ̃ ֆլի . . . Ս̃ծ ողորմի
„ հոգւոյն սէչովցի տ̃ր Լուսին . ունի յիշտ̃կ այս նը
„ տաճարիս մ̃ սքանչելի և փառաւոր նը աւետարան,
„ որ է պատկերանկար և է մագաղաթ || : Ի սմին յի-
շատակարանի դնին 28 անուանք՝ հանդերձ մեծագին
յիշատակօք . և ապա պատմէ այսպէս .

223 . * Հայոց թվին, աքեթական տօմարին ռ̃ ամին
„ և ժե̃ աւելին (1566) : Սմեանն սեպտեմբերի օրն
„ առաջին . Թագաւորութե̃ Օ եկմունդ Սէկոստոսին .
„ Իշխանութե̃ քաղաքիս բան Մ լօռքօ մացէյին . Կա-
„ թողիկոսութե̃ տ̃ն տ̃ր Մանփաննոսի . Եպիսկոպո-
„ սութե̃ Հայոց նահանգիս տ̃ր Գրիգոր վարագեցոյ :
„ Սյր ոմն ազնուական տ̃ր Հրիհոր անուն որդի
„ Օսակի՝ յոյժ քծասէր և բարեմիտ, և յ̃ոյ օրինացն
„ սիրող, մեծաւ յուսով փափաքեցաւ, և 'ի նախանձ
„ բարութե̃ բորբոքեցաւ . . . սկիզբն արարեալ զորբոյ
„ կթղկէ եկեղեցոյս, զոր անուն սրբոյն Նիկօլայոսի
„ սքանչելագործ հրշտի շինեալ է 'ի քաջ և հաւատա-
„ րիմ արանցն, զոր վերագոյն գրեալ է 'ի այս գիրս
„ զանուանս նց̃ . այսինքն է տ̃ր Սինան և Խութլու
„ պէյն : Նւ վ̃ս զի փոքրագոյն է եկեղեցիս այս . քան-
„ զի միշտ տեսանելով եթէ ոչ գոյր տեղի բաւական
„ ժողովրդեանս 'ի միջի սորա, եդ հիմունս սորա, այլ
„ մեծագոյն . մանաւանդ խրատեալ 'ի քաջ և իմաստուն
„ արանց . . . յորդորեցին զնա . . . Սրդ զայս ամե-
„ նայն և որ 'ի կարգին է 'ի միտ առնելով ինքն տ̃ր
„ Հրիհորն, և տիկինն իւր Խանի Սչիգքօ իւ̃ց սեպ-
„ հական ընչիւք և արդեամբք և քրտնաջան վաստա-

» կոչ առաջնորդութեն տյ, հրաշափառազոյն մեծացու-
» ցին և պայծառացուցին և գեղեցկապէս զարդարե-
» ցին և յանգ ելևալ կատարեցին 'ի փառս և 'ի գովեստ
» անհաս տծութե, և 'ի պայծառութի մանկանցն
» Նոր սիոնի, և ստացան իւրեանց անջնջելի յիշատակ
» և արժան յաւիտենական ։ . .

» Ի ծ ողորմի հոգոյն Օգսէնդ յիրեցկնոջն. ունի
» յշտկ աւագ խորանի պատկերքի վր 'ի տիրամօրն
» գլուխ, իւր դստերն Լուստիկինին զգանիցան ոսկե-
» վարդերովն և մարգրտովն շարած ։ Նոյնպէս և մեա-
» ծնին գլուխն, որ է փրկիչ ։.. Որդ լուսաւորէ զհոգին,
» կաֆացոյ տրն Խոտրէասին, իւր բարեկամաւն, և
» յօժար սրտէ ետուր ՚ի եկեղեցւոյ ստե փլի ։ Զոր
» տանուտէրքն այն մտկով գնեցին զՍարիկին տունն,
» և գրեցին յշտկ ՚ի եկեղեցոյ ։ ։

'Ի կարգիս դնէ յիշատակարանն 23 անուանս հան-
դերձ մարգարտաշար և ոսկեզարդ զգեստուք և զար-
դուք, ապա պատմէ զերրորդ շինութիւն տաճարին
օրինակ զայս ։

224. * Հայոց թվին ՌԻԶ ամին և իջ աւելին (1577)։
» կաթողիկոսութեան տն տր Գեաթէոսին, թագաւո-
» րութեան Ստեփաննոսին, իշխանութեան քաղա-
» քիս Միքօլայ պրիպքեյին. անուամբ տյ շինեցաւ տա-
» ճարս երրորդումն նրւագին համդերձ սրահիւքն որ-
» տաքին. և ժամատնովն 'ի միասին. թելադրութբն
» տր Միխնոյ երեսփոխանին, որ է որդի Տօնուշին. և
» սեպհական արդեամբք նորին. նոյնպէս և կաֆա-
» ցոյ խոջա Խոտրէասին՝ 'ի փառս տծային ։ . . Նու
» զաշխատօղսն և զերախտաւորսն հանգուսցէ 'ի յար-
» դարոց դասին . . . Համդերձ արեան մերձաւորօք
» նոցին. ընդ նոսին լիցի և մեզ մասն բարի. 'ի յարարչէն
» համայնին ամէն. այսքան առ այս ։ Որդ լուսաւորէ
» զհոգին վարագեցոյ տր Գրիգոր վարդապետին. ե-
» տուր ՌԺ դէր այս որ եկեղեցւոյ շինուածոյս օգնու-
» թե ։ . . Որդ լուսաւորէ զհոգին տր Թորոսին, որ է
» թոռն Միքուլքայ վոյթին. ունի յշտկ ՚ի եկեղեցոյս՝
» քարուկիր տ խանութմ ։ . . .

225. Յիշին 'ի կարգի յիշատակարանիս 19 անուանք
նպաստաւորաց, և զանազան ծանրագին յիշատակք,
ապա գրի ։ * Թւ. ՌԼա (1582)։ Ի ծ տհնէ զտր Միխ-

» Նոյ երեսփոխանն. և զիւր տիկինն զբանի Կուլաֆն...
» եդին յիշատակ եպիսի միթրն, որ է թագ, ոսկով կազ-
» մած և մարգրտով շարած, և ակամբ զարդարած։
» Դարձեալ նոյն տէր Միխնոյ երեսփոխանն ընդան-
» կակատունն յեկեղեցւոյս սպիտեցոյց և զկապանս նո-
» րոյ կապել ետուր, և զվերևն ծածկեց, և 'ի վերայ ոս-
» կեջրած խաչ եդիր. զորս փոխարէն հատուցումն
» առնուցու 'ի յարարչէն ամենեցուն ... Քս լուսա-
» ւորէ զհոգին Սօրինին. եդիր յիշատակ աւագ խորանին
» պատկերքին վերայ ա. ոսկի ապրշան. ժը. կարմիր ֆլի
» է ... Քս լուսաւորէ զհոգին կաֆացի տէր Անտրէա-
» սին, Տիրատուրին որդոյ, ետուր յիշատակ այս սբ տա-
» ճարիս ա. հրաշալի ոսկեգործ շուրջառ և 'ի վերայ խաչ
» ծէ կտոր արծաթ ոսկեջրած. դարձեալ ուրար և
» բազպաններ ոսկով և մարգրտով շարած, և ա. փոքր
» գօգնոց ոսկեգործ ... Ած ողորմի հոգոյն Իլեաշին և
» իւր կողակցին Օլուխնային վասն նորա հոգոյ համար տէրն
» Միխնոյ երեսփոխանն շինել ետուր և եդիր յիշատակ
» սբ տաճարիս ա. մեծ և երևելի արծաթէ խաչմ պա-
» տուանդանով ոսկեջրած ‖ ...

226. 'Ի կարգի յիշատակարանիս գնին 38. անուանք և զանազան ոսկեղէն, արծաթեղէն և զգեստեղէն յիշատակք. ապա սկսանի. * Հայոց թվին ՌԽԷ (1598)։
» Անունն այ ամենակալի. տէրն Միխնոյ երեսփոխան,
» որ է եկեղեցւոյս շինօղն, միախոհ եղեն և միաբան
» ընդ կողակցոյ իւրոյ Կուլաֆ խաթունին. և իւրեանց
» բարի կամաւ և յաւժար սրտիւ շնորհեցին և գրե-
» ցին զիւրեանց տունն քարուկիր. բոլորովին գեղեցիկ և
» վայելուչ և ամրագոյն շինուածովք. ի. եկեղեցւոյ:
» զի լիցի իւրեանց յիշատակ ... ուստի զայս բարի և ընդու-
» նելի խորհուրդ խորհեցան. վասն զի անորդի էին ...
» Եւ է տունս այս հանդէպ սբ Նիկօլայ եկեղեցւոյ ...
» Եւ այլ ետուն զիւրեանց սեպհական քարուկիր զխանութ.
» յիշատակ ի. եկեղեցւոյ։ Դարձեալ տէր Միխնոյ երես-
» փոխանն ետուր յիշատակ այս սբ տաճարիս դ. աշտանակ.
» այսինքն է ճրագկալք զոյգ և մաքուր արծաթէ գոր-
» ծած ... Քս լուսաւորէ սբ Նիկաւլայ եկեղեցւոյ
» զտէր տանուտէրացն հոգոց. ետուն շինել շուրջանա-
» կի բոլոր տաճարիս զդասեր. Եւ ոչ թէ վասն հանգիստ
» կանգնելոյ, և կամ նստելոյ, այլ վասն առաւել պայծա-
» ռութեան սբ տաճարիս ‖ ...

Գնեին 'ի կարգիս 20, անուանք անդերձ զանազան յիշատակօք. տես յարի.

227. * Հայոց Թվին ՌԾ. Ի Թագաւորութեան երրորդ
„ Օփկմնդին: Ժողովեցան նոր տանուտէրքն և խոր-
„ հուրդ արարին. մի զի միշտ անուանելով եթէ որ Նի-
„ կօղայ եկեղեցոյ յարութի յոյժ նեղ և փոքրագոյն
„ էր; զոր և այս պատճառի նոր տանուտէրքն գնեցին
„ զՍ արգանին տունն Ռ փլի, և փոխեցին եկեղեցո
„ յարուն: Դարձեալ այլ ևս նոր տանուտէրքն գնե-
„ ցին յաջ գինհէն. երկրորդում տունն որ Մ՝ իքայելին
„ ՆՃ փլի. և զնա փոխեցին եկեղեցւոյ յարուն: Նոյն-
„ պէս նոր տանուտէրքն գնեցին երրորդումն քարուկիր
„ տունն աքլէքով. զոր ծախեցին հոգաբարձք . . . զոր
„ ածէր զայն տներն աւելի քան զՆՃ փլի. զոր և Խյաչ-
„ քո որդ ետուր զՃԾ փլի. և զմնացեալն իւր բարի
„ կամաւ շնորհեաց . . . Նա զայն տունն փոխեցին եկե-
„ ղեցոյ յարուն: Նրդ այժմ որ Նիկաւղայ եկեղեցոյ
„ յարութի եղև մեծ, լայն, և ընդարձակ. զորև նոր
„ տանուտէրքն զայն տներս գնեցին համօրէն ժողովր-
„ դեան ավկէն. զոր որ հատուցէ նոց փոխարէն 'ի յա-
„ րութեան արդարոց, ամէն ‖:

228. * Թվին ՌԾԱ (1602): Պարոն Մ՝ իխնոյ երես-
„ փոխանն որդի նոր Տօնուշի շարժեալ 'ի սէրն ածային
„ ապաւինելով անուանն այ. Մե Նիկաւղայ եկեղեցւոյ
„ յարութի շինել ետուր շուրջանակի քարուկիր պա-
„ տուար, բարձր և գեղեցիկ, և վերևս ծածկել ե-
„ տուր խեցով և շուրջ զբոլոր պատուարս սպիտակա-
„ ցոյց, և վայելչապէս պայծառացոյց զյարութի որ
„ տաճարիս: Օր այսչափ շինուածոյս ետ խարճեց
„ իւր հալալ և արդար վաստակոց ՌՃԾ փլի. զոր որ
„ Տէր վարձս հատուսցէ նմ‖ ԱՆ:

229. * Հայոց Թվին ՌԾԲ. Մնեանն փետրուարի.
„ Ը. Թագաւորութեան Դ Օփկմուն . . . Մղախին ոմն . . .
„ բանի Պաթրուշայ յոյժ ածասէր . . . յետ այրման
„ քաղաքին ետես զի եկեղեցիք մեր առանց զանկակի
„ մնացին. Նա ժողովուրդն ժամի ատենն ոչ գիտէին
„ ոչ սաղմոսին և ոչ առաւօտուն ոչ պատարագին, և
„ ոչ երեկոյին ժամուն . . . Նախանձեցաւ նոյ սէրն, և
„ ետուր ՃԻԵ փլի. և ուղարկեց Իլով զի անդ գնես-
„ ցեն. այն մեկի ա զանկակ, և եղև սոյնպէս, զոր և

» գնեցին և աւղարկեցին 'ի Կամենից քաղաք մեծ և
» հռչակեալ զանգակն 'ի փառս Անհեղոյն...» 'Ի կարգիս
յիշին 4. ամսուանք, և պատմի շինութիւն մեծի զան-
գակին, որ այրեցաւ 'ի հրդեհի անդ (248):

230. * Թվ̃ ՌԾԲ. Ա̃ծային աւրհնութ̃ն և ողորմութ̃ն
» հանապազ եղիցի վ̃ր սր̃ Սիմնոյ երեսփոխանին...
» Ս̃ Նիկօլա եկեղեցւոյ վ̃ր զՃակատն շինել ետուր
» ա̃ փառաւոր երևելի և գեղեցկաշէն դըռն, և 'ի վ̃ր
» ոսկեզարդ խաչ կանգնեց... Դարձեալ սմ̃ Նիկօղա
» տաճարի վ̃ր կայր մի մեծ և բարձրադիտակ քումպէթ,
» և առաւել ծանր էր եկեղեցւոյ կամարի վ̃ր, զոր տե-
» սեալ զայն սր̃ Սի̃մնոյ երեցփոխանին հրամայեաց
» իջուցանել զայն քումպէթն. Եւ դարձեալ երրոր-
» դումն շինել ետուր այլ փոքրագոյն և գեղեցիկ շի-
» նուածով, և բոլորովին պատուհանէր և կամարակապ
» արար. և վերևս ծածկեց անագով և նկարել ետ ոսկով
» և 'ի վ̃ր ոսկեզարդ խաչ կանգնեց:... Նոյնպէս սմ̃
» եկեղեցին, և զքօշքն ալ բոլոր վեր եւս ծածկել ե-
» տուր. զոր հրակիզ ժամանակին այրեալ էր: Օ̃ այս
» չափ շինուածոյս վ̃ր խարճեց... ժողովրդեան սպ̃կէն
» զճ̃ղ Փլ̃ր»:

231. Դնին 'ի կարգի անդ 4 ամսուանք զանազան յի-
շատակօք. այսպէս պատմէ՝ Թէ յամի ՌԾՉ. ապր. իե.
միաբան մանկունք ետուն շինել մեծ և քաղցրահնչիւն
զանգակ մի: Ապա յիշէ 25 ամսուանս հանդերձ փառա-
ւոր յիշատակօք. և այսպ յարէ. * Հայոց Թվ̃ ՌԿԵ
» (1616). Որ̃ լուսաւորէ Միոլի Խըտըրին հոգոյ. ունի
» յշ̃կ այս Տէր տաճարիս ա̃ կանանչ ատլաս շուրջառ
» և բազպաններ ոսկով և մարգարտով շարած. զոր ա-
» ղաներ ետուն խազինայէն. Եւ վարդ ոսկի և մարգա-
» րիտ... Որ̃ լուսաւորէ զհոգին տր̃ Խաչատուր ա-
» ւագերիցուն... ունի յշ̃կ այս Տէր Նիկօլա տաճա-
» րիս ա̃ծաբան գրեանք ժա̃ հատ... ա̃. Ա̃ծաշունչ
» մագաղաթի մէջ կարած: բ̃. Նեմիչի ա̃ծաշունչ, որ
» կոչի Պիպլիա: գ̃. Աստղաբաշխութն գիրք մագա-
» ղաթի մէջ կարած: դ̃. Տօմար գիրք. մագաղաթի
» մէջ: ե̃. Ժամ գիրք. մագա": զ̃. Որ̃աղուածոյ գիրք
» մագա": է̃. Տօնացոյց գիրք մագ": ը̃. Սաղմոսարան
» կազմած. պասմա: թ̃. Ձ̃ն որդի գիրք: ժ̃. Հարց-
» մանց գիրք հին: ժա̃. ա̃ փոքրիկ տըլըմ գիրք. մագ"ն

Այս դնին 'ի կարգիս 11. անուանք հանդերձ զանազան յիշատակօք, ապա դնին ծանրագին յիշատակք Փառոս կրօնաւորին և Տէր Գրիգորշային, և այլոց։ Նաև ժամատան արծաթ կանթեղն, զոր ետուն ծնաւէր կանայք. յետ այնորիկ դնին բազում յիշատակք։ Պատմէ յիշատակարանն թէ յամի ՌՀԲ (1623). Իւվալցի Տէր Մէհքին ետ շինել զանջակողմեան փոքր խորանն և զարդարեաց ոսկւով. իսկ բան Մխիթքան նորոգեաց զձախակողմեան փոքր խորանն սր. Ածածնին և զարդարեաց ոսկւով։ Աստանօր պակասին թերթք ինչ յիշատակարանիս։

## Սինեցի Աստուածածնին։

232. Երկին եկեղեցիք կային 'ի Վանենից յանուն սր. Ածածնին, մին Աւետման, և միւսն ըստ ոմանց շինեալ էր 'ի տեղւոջ սր. Նիկողայոսի. այլ քննեալ մեր անձամբ տեսաք զընդարձակ տեղի աւերակաց 'ի կողմն եկեղեցւոյն Լուսաւորչի, ուր էր եպիսկոպոսարանն։ Գտաք և զհին յիշատակարան բոլորգիր, որ որոշակի բերէ զանուանս երկին տաճարաց Ածածնի, ունելով այսպէս. * Այս է յիշատակարան. զոր յետոյ այրման „ քաղաքին տվել են։ Օ յիշատակօղս և զշինօղս եր-„ կու եկեղեցին. մին սր. Ածածնին. նոյնպէս սր. Աւե-„ տման Ածածնին. սկսաք մի տեղ յիշատակել. քանզի „ եկեղեցիք մեր ոչ են հակառակ միմեանց ||։

Այս յիշատակարան 5 ամօք յառաջ սկսեալ է քան զշինութիւն սր. Նիկողայոսի ուր ընդարձակ դնի պատմութիւն շինութեան, և անուանք բարերարաց հանդերձ ծանրագին յիշատակօք այսպէս.

233. * Այս է սկիզբն յիշատակարանիս սր. Ածածնայ „ եկեղեցւոյ։ Որչափ կամ թէ ով զինչ յիշատակ դրել „ է իւրաքանչիւր ըստ չափոյ կարողութեան իւրոյ 'ի „ պայծառութիւն այս սր. տաճարիս՝ աստ կայ կարգա-„ գրեալ... Աւրհնեալ է ամենայն Երրորդութիւն... „ Օ որ սկսաք շինել զտաճարս մեր, որ յանուն սր. Ածա-„ ծնին շինեցաւ ... Վասնզի մտախորհ եղեալ բորբո-„ քեցան 'ի սէրն սր. Ածածնին. զի ոմանք զինչս ե-„ տուն. և ոմանք աշխատեցին, և ոմանք զօրդորեցին...

„ Թվ. ՋՀԱ. Ք՟ի 1522. Նախ և առաջին ք՟նասէր...
„ Պ՟րն Նաւլպէյն որ է որդի պ՟ն Մ՟իրզքօյին, որ կանգ-
„ նեցաւ իւր անձամբն, և իւր ընչիւք՝ շինեաց այս ս՟բ
„ զեկեղեցի՝ անուն ս՟բ Ա՟ծածնին և սկիզբն եղև բա-
„ րեաց. զոր ա՟ծային ա՟հութ՟ն կատարեաց ՚ի փառս
„ ա՟հելոյն... Ա՟ծ ողորմի պ՟րն Խ՟անուսին հօգին. և
„ նա ետուր այս ս՟բ տաճարիս շինուածոյս աւգնութ՟ե
„ ե՟ճ փլ՟ր... Ա՟ծ ողորմի Մ՟եծքօյին հօգին, երետ ա՟
„ ոսկի ապրձան... Ա՟ծ ողորմի Պ՟ետրոսի հօգին զ՟ք
„ ապիկկի դարաձայներ շինել երետ եկեղեցոյս և գոշկն
„ աւ... Ա՟ծ ողորմի Խ՟ ընկերտաց հօգուն ժողովեցին
„ իւրենց մէջքն Խ՟ սոմ և տվին այս ս՟բ տաճարիս շի-
„ նուածոյս... Ա՟ծ ողորմի Իւսուփին հօգուն ունի
„ յշտ՟կ այս ս՟բ եկեղեցիս ս՟բ մարտիրոսաց մասներ...
„ Ա՟ծ ողորմի պ՟ն Սարգիսին. ետուր յշտ՟կ ա՟ ոսկով շուր-
„ ջառ... Դարձեալ ա՟ծ ողորմի պ՟րն Խ՟անուսին...
„ եդիր յշտ՟կ ս՟բ Ա՟ծածնայ եկեղեցւոյ ա՟ մեծ պատ-
„ կերքն և պատկերացն գլխոյն մայրն յիշատակ եդիր
„ արծթէ ոսկէջրած դագ ակներով և մարգարտով շա-
„ րած... Ա՟ծ ողորմի բանի Օլուխնային հօգուն,
„ ունի յշտ՟կ ա՟ պատուական թագմ եպ՟կսին ոսկով և
„ մարգրտով շարած... Ք՟ն ա՟հէ զմիաբան կորիճ-
„ ներն. նկարել ետուն զկ՟մ եկեղեցին հանդերձ բոլո-
„ րովքն պատկերքներով... Ք՟ն լուսաւորէ պ՟ն Պօղ-
„ րիկին կ՟ղցն զննջեցեալսն. ա՟ խորան շինեց ժամատուն
„ և ա՟ պատկերքմ եդիր ս՟բ Ա՟ծածնին և ա՟ արծթէ
„ ոսկէջրած թագ ակներով... Ա՟ծ ողորմի Օլուխ-
„ նային հօգուն, էառ զիւր գլխէն զմեծ ձիրամպիտն.
„ և եպ՟կսի թագին վերայ կարեց զոր ինքն էր կազմել,
„ ոսկով և մարգրտով զարդարեց... Ք՟ն լուսաւորէ
„ զպ՟րն Խ՟օլուփքօ երեսփոխանին հօգուն եկեղեցւոյ շի-
„ նողին եդին յշտ՟կ վասն հօգւոյ նորա ա՟ մեծ խաչմ
„ ոսկէջրած: Դարձեալ վասն նոյն... հօգուն եկե-
„ ղեցւոյ յարութ՟ի քարուկիր սքլէփ շինեցին վերնա-
„ տնով... Ա՟ծ ողորմի Խոյաչքօ չաքլիչին հօգուն, և իւր
„ կնոջն Մ՟ամուշին... շինել ետուն ժամատանն աջա-
„ կողմն խորան մի: Նա այլ ունի բազմաններ. ՚ի վե-
„ րանն ժթ ական ոսկի վարդեր մարգրտով շարած...
„ Ք՟ն լուսաւորէ քաֆացի Ա՟նտրէասին զննջեցեալսն.
„ ունի յշտ՟կ ե՟ եկեղեցին ռ՟ճ փլ՟ր: Օ՟որ այսչափ

» սենկով տանուտէրըքն 'գնեցին զՊօղըկին տունն և
» գրեցին 'ի եկեղեցւոյ ||:

234. Յիշատակարանս Թուէ աւելի քան զհարիւր ա-
նուանս հանդերձ մեծագին յիշատակօք, և այս յարէ.
* Հայոց Թվ. ՌԺԹ (1570). Ի Թագաւորութեան Օրհ-
» մանոյ Սկաւասոսին. Պյռնութեան քան Ս լոռքօ Մա-
» ցէյին: Պէրն Միխնոյ երեսփոխանին որդի Պէրն Տօ-
» նուշի մեծաւ սիրով և փափագանաւք և ողորմութեամբ
» Ս. Յ շինել ետուր 'ի նոր Ս. Ծածնկին եկեղեցւոյ. քօշք
» մի քարուկիր, և կամարակապ գեղեցիկ և վայելուչ
» շինուածով, և նկարեալ պատկերովք, և խորան մի
» 'ի մէջ քօշքին եւ շինել... Նոյ այլ շինել ետուր ե-
» կեղեցւոյ յարութեն պատուար մի ամրագոյն փայտե-
» ղէն շուրջանակի... Ս. Ծ ողորմի Պարոն խիկոյ հա-
» գուն ունի յշտկ ու կարմիր խատուֆայ գոգնոց և ու
» ձուֆդ բազմաձև մարգարտով շարած... Ս. Ծ ողորմի
» Խանքայիհն հոգուն, ունի յշտկ ու լուսնին... Ն. Ս.
» լուսաւորէ կաֆացո՝ Տէր Ս. Նգրէոսին հոգին... ու-
» նի յշտկ նոր Ս. Ծածնայ եկեղեցւոյ ու ալխիւ շուրջանամ
» ոսկով գործած ||:

235. 'Ի կարգիս գնին 30 անուանք, որք տուեալ են
եկեղեցւոյս մեծագին յիշատակս, և այս գրի. * Հայոց
» Թվ. ՌԼԴ (1585). Ի Թագաւորութեն Մահմետանոսին.
» Տէր Միխնոյ երեսփոխանն, նոր Ս. Ծածնկին եկեղեցւոյ
» զզանկակատունն բարձրացոյց և զկապանան նորա շի-
» նեաց, և զվերևն ծածկեց: Նոյ յեկեղեցւոյ յարուն
» շինել ետուր շուրջանակի քարուկիր պատուար. և 'ի
» վերայ այսչափ շինուածոյն խարձեց 'ի իւր սեպհական
» և հալալ վաստակոցն եձ, Լէ Մաձրի Փլի յշտկ իւր
» հոգոյ և ծնողացն... Ս. Ծ ողորմի կրաւնաւոր Պ ա-
» զարին հոգուն. ետուր Է. Մաձրի Փլի զանկակատնիս
» օգնութեն ||. ևն: Ստանօր յիշին 10 անուանք նպաս-
տաւորաց շինութեն զանգակատան. և այս յարէ յի-
շատակարանն այսպէս.

236. * Հայոց Թվ. ՌԽ (1591). 'Ի Թագաւորութե
» Օրհմանդին երրորդումն: Նոյ 'ի կաթղիկոսութե տն
» տէր Պետրոսին: Փառաց տանձարս այս՝ զոր շինեալ
» կայ, 'ի յանուննն ամէնսրհեալ սրբուհւոյ Ս. Ծածնին 'ի
» քաղ և հաւատարիմ գլուխ տանուտեանձէն, որ կո-
» չի Տէր Հօլուփքս երեսփոխան: Ասորի յայս սաղձա-

» տացեալ եկեղեցւոյս ժամատանն կամարն պատուեալ
» էր. ՟Բ կողման որմն հանդերձ: Օ այն տեսեալ Տէր
» Մինոյ երեսփոխանն 'ի նախանձ բարի շարժեալ. և
» 'ի սէր ՟Ածային բորբոքեցաւ. և զկիրսն և զաշխա-
» տանսն 'ի յանձն էառ, և իջոյց զՀին կամարն, զոր
» էր պատուեալ. և կրկին նորոյ կամար եա կապել.
» Նոյնպէս և զերկու որմն եա շինել, ընդ նմին և զեր-
» կու դրունսն: Այլ 'ի վերայ այսչափ շինուածոյս ե-
» տուր իւր սեպհականն յընչիցն զձի մանրիկ Փլ...
» Դարձեալ ետուր յշտկ Տէր Մինոյ երեսփոխանն և
» իւր կողակից բանին Կուլափին այս նը. տաճարիս ՟Ա
» Հրաշալի և փառաւոր միթրն, որ կոչի Թագ, և է
» կազմած ոսկով և մարգարտով և վայելուչ ակամբ զար-
» դարած... Նծ ողորմի Տէր Մինոյ երեսփոխանին
» հոգւոյն... այս նը. եկեղեցւոյս յատակն սալարակայ
» արար. և զեղեցկացոյց, և զաստիճանսն նորոգեց...
» Դարձեալ նոյն Տէր Մինոյ երեսփոխանն կրկին ան-
» դամ շինել երետ զեպիսկոպոսարանն, որ առաջա-
» դոյն շինեալ է 'ի Տէր Յոլուփքանէն, որ իւր քվէր որ-
» դիքն Տէր Օսանիկ, և Տէր Գրիգոր շինել էին: Օ որ
» այժմ... նորոգեց և մեծացոյց և զորահն որ էր
» փայտաշէն. զնա քարուկիր շինել երետ 'ի ներքոյ և
» արտաքոյ զարդարեց և գեղեցկացոյց իւր հալալ ար-
» դեանցն... Նծ ողորմի Խլվացի Խաչատրին և իւր
» կենյն Մարենէին հոգւոյն. եկին այս Կամենից քա-
» ղաք, և դրին յշտկ նը. տաճարիս ՟Ա ձուփա ոսկի
» տարձան, որ կոչի մանեկլա ||:

'Ի կարգիս յիշատակին 18 անուանք հանդերձ ծան-
րագին յիշատակօք. այլ պարզին յիշատակք Տէրն
Մինոյին և այլոց, արծաթեղէն և ոսկեղէն զարդք.
նաև շինութիւն դասուց եկեղեցւոյ Նծածնին 'ի Թվ.
ՌԽԳ: Այլ այսպէս այս յիշատակարան եղեալ 'ի Թվ.
ՌԽԸ. և ապա դնի յիշատակարան Նշանման եկե-
ղեցւոյն:

### Սրբոյ Նշանին:

237. Այս եկեղեցի կառուցեալ է յարեւելեան
կողմն որմոյն Ակեղայոսի. և է փոքրիկ, այլ վայե-
լուչ և քարաշէն. ունի զերիս խորանս և վերնատուն

մի ։ Նա երի աջակողմեան խորանին յորմն փորագրեալ կայ պատկեր Մելքիսեդեկ կաթուղիկոսի եպիսկոպոսական զգեստուք, ուր է և գերեզման նորա (181) ։ Շուրջ զեկեղեցեաւ կայ պարտէզ գեղեցիկ, առ որով տեսաք զաւերակս և զտեղիս սենեկաց, ուր 'ի հնումն բնակէին կուսանք բենեդիկտեան կարգին. որպէս գոյ յԻլով (169). որք ցրուեցան 'ի ժամանակս առման քաղաքին ։ 'Ի մէջ պարտիզին կան մեծամեծ տապանք գերեզմանաց հայ գրով, մին գրեալ էր կարի խոշոր գրով 'ի թվ. ՌԱ (1552) ։ Թուի թէ 'ի դիմել աստ Հայոց նախ շինեցին զայս եկեղեցի փայտակերտ. ապա 'ի 1597. քարաշէն կանգնեցին, ըստ որում պատմէ բալորգիր յիշատակարանն հին.

238. * Այս է յիշատակարանն Սբ աւետման Ածածնին ։ Ուրհնեալ է ամենայն Երրորդութիւն, Հայր և » Որդի և Սբ Հոգին ։ Եւ օրհնեալ է Սբ Ածածինն... » այժմ ժողովեցան միաբան ժողովուրդ քաղաքիս, դա» տաւորք և առ հասարակ ժողովուրդք, 'ի փոքուէ մին» չև ցմեծամեծս վասն սրբոյ եկեղեցոյս ։ Որ շինեալ » էր յանուն աւետման սրբուհոյ Ածածնին ։ Եւ էր » եկեղեցիս այս փայտաշէն, վաղուց և հին ժամանա» կօք. և էր յոյժ բլբլակ. մինչ զի մերձ էր բլել ։ Սուր » և ընտրեցան 'ի մէջ ժողովրդեան այս Գ արքս. որ կո» չին անուամբ Սւլու խոճայ որդի Տօնուշի, և Մար» դերեան որդի Յովհաննէս աւագ իրիցու, և Նա» զուպն որդի Պասբարին Սւլու խոճային որդւոյ ։ » Մտախոհ եղեն, բարի և լաւ խհդ խորհեցան 'ի միա» սին, և աշխատեցան 'ի յապենիայն Այ ։ Մանա» ւանդ յուսացան 'ի բարեխաւսութիւն սրբուհոյ Ածած» նին. զի փոխանակ փայտաշէն եկեղեցոյս այս. քա» րուկիր շինեցին, ուր և շինեցին Այ կարող զաւ» րութբ ։ Եւ բարեխօսութբ Սբ Ածածնին 'ի նոյն հի» ման վերայ. և նոյն չափով, որպէս էր հինն, ոչ յա» ւելի և ոչ նուազ ։

» Եւ 'ի վերայ այս բանիցս զաշխատանք, և զկիրք » 'ի յանձն առին վասն սիրոյ Սբ եկեղեցոյս, և շրջե» ցան 'ի դրունս հաւատացեալ քրիստոնէից, և խընդ» րեցին զտուրս ողորմութե 'ի մեծամեծաց և 'ի փո» քունց 'ի յանուն Սբ Ածածնին. և եկեղեցւոյ իւրոյ » սրբոյ ։ Եւ ամենեքեան ետուն զիւրեանց ողորմութիւն

„ յաւժար կամօք և առատ սրտիւ ։ Ամն շատ և ամն սա-
„ կաւ ըստ չափու կարողութե իւրեանց . այլև ոմանք աշ-
„ խատեցան անձամբ իւրեանց, և ոմանք ձիաներով և
„ սայլիւ քարինս , և կիրս , և աւազս կրելով . զոր անկ
„ ելեալ կատարեցին 'ի փառս անհաս մծութե , և 'ի
„ վայելումն մանկանց Նոր Սիոնի ‖ . . .

239. * Հայոց Թվ. ՌԽԶ (1597) . Ամենանն տպրելի ,
„ աւուրն առաջին ։ Թագաւորութե երրորդ Օրհ-
„ մունդին . կթղկոսութե տր Դաւթին , իշխանութե
„ քաղաքիս Սան Բոթոցքելյին . Երեսփոխանութե
„ տր Միխնոյին և տն Սարգիսին . Դատաւորութե
„ Հօլուպին ։ Շնորհօք և ողորմութեքն այ . այս է
„ տուրք և երախտիք . զոր ետուն հաւատացեալք
„ քրիստոնեայք այս Սբ եկեղեցոյ ։ Նախ և առաջին
„ Ած ողորմի տէր Յովհաննէս փաւագերիցոյ ննջեցե-
„ լոց . . . ու ոսկեզարդ խաչ կանգնեցոյց 'ի վերայ Սբ
„ եկեղեցոյս . . . Ած ողորմի տր Խոջատուրին . ետուր Ե
„ մթխալ ոսկի ։ Տէր լուսաւորէ ստամպօլցի տր Ածատ-
„ րին հոգոյն , ետուր Ժ կարմիր Փլր ‖ . . .

240. Յիշատակարանս թուէ 150 անուանս հանդերձ
առատ տրովք , որք կանգնեցին զեկեղեցին ։ Ապա
սկսանի պատմել զհրդեհն , որ եղև յամի 1602 . յետոյ
յարէ զնորոգութիւն եկեղեցեաց այսպէս . * Հայոց
„ Թվին ՌԾԱ . Թագա"... (1602) ։ Այս է տուրք զոր
„ ետուն հաւատացեալք . . . այս սուրբ եկեղեցեացս .
„ Նախ և առաջին տրն Միրինոյ երեսփոխանին . . . ե-
„ տես . . . Թէ որպիսի այրումն և աւերումն եղև յոյժ
„ տրտմեցաւ ։ Բայց շարժեալ 'ի սէրն ածային . . .
„ յանձն էառ զաշխատանքն և զկիրսն 'ի յանուն սբ
„ Ածածնին , և ետուր ծածկել վեր եւս սբ Ածածնայ ե-
„ կեղեցոյ . և այսպէս վեր եւս ծածկել ետուր սբ աւետ-
„ ման Ածածնայ եկեղեցոյ ։ Նոյնպէս և քարուկիր ե-
„ պիսկոպոսարանին վեր եւս ծածկել ետուր . . . Այս
„ է զոր յառաջագոյն շինել էր յեկեղեցոյ յարութին
„ շուրջանակի քարուկիր պատուար ։ Այսմ ամի երկ-
„ րորդումն բարձրացոյց շուրջանակի և սպիտակացոյց ։
„ Նա վեր եւս ծածկեց խեցով ‖ . Լա ։

Աստանօր պատմէ թէ յայրիլն եկեղեցեաց հալեցան
ամենայն զանգակք . և 'ի հալեալ նիւթոյ անտի ետուն
անդրէն ձուլել 'ի Թվին ՌԾԳ ։ Ապա յիշէ թէ 'ի Թվ.

ՌԾՁ թըր Աստուածն կառոյց զխորհրդանոց եկեղեցւոյն և զարդարեաց ։ Իսկ 'ի ՌԿԴ թըրն Աւուրքան Հիւսն եղ խորանին Հրեշտակապետաց, ուր պատարագ մատչէր վասն նորա յամենայն երկուշաբաթի ։ Հուսկ յետոյ թուէ զառուեալ յիշատակս բարերարաց, որով զամե- նայն ինչ նորոգ կազմեցին զինի հրդեհին ։ Այլ 'ի թուա- կանին 1627. եղերի այս յիշատակարան ։

## Սներգէ առըթ Լուսաւորչին ։

241. Սոյս եկեղեցի անկանի 'ի հարաւակողմն սբ. Միքայելոսի եկեղեցւոյն, և էր քարաշէն. թէպէտ ան- կեալ կան որմունք. միայն կանգուն կայ որմն խորանին, առ որով է ներքնատուն քարաշէն ։ 'Ի վերջին ժամա- նակս զայս եկեղեցի արարին շտեմարան զինուորաց. որով առ սակաւ սակաւ քանդեալ աւերեցաւ ։ Ոչ գտաք զյիշատակարան նորա. թուի թէ մերձ էր առ եպիսկոպոսարանն, զի տեղին է ընդարձակ ։ Աստ զամս երիս քարոզեաց Սուգոէնտ վարդապետ 'ի թվ. ՌՀԱ. որպէս պատմէ նա ինքն (252) ։ Մանատուն տաճարին էր յարևմտեան կողմն. տեսաք զդուռն ամբողջ, զար- դարեալ շրջանակն մարմարիոն քարամբք և դրուագօք ։ 'Ի միջոցի անդ փորագրեալ կայ փակագիր. զոր ըն- թերցաք այսպէս. * Օրհնութիւն իմ եւ օգնութիւն „ իմ Տէր. եւ եղեւ ինձ 'ի փրկութիւն . . . Տէր Յովհան- „ նէս շինել ետուր զի կեր . . . թվ. ՌԿԹ (1620) ։
'Ի ստորև անդ տեսաք և զտուն քահանային քարա- շէն. 'ի ճակատ անդ 'ի վիմի քանդակեալ կայ անուն շի- նողին Մծատուր որդի Տէր Պետրոսի. թվ. ՌԼ (1581) ։
242. Աստ էր բուն թաղն Հայոց, ուր 'ի մերձակայ տան տեսաք յառաստաղի անդ մեծ գերան փորագ- րեալ 'ի վերայ երկաթագիր տառք 'ի թվ. ՌՀԴ ։ Տե- սաք և զայլ տուն վաղեմի. պատմեցին մեզ թէ շինեալ է յամի Տն 1310. և 'ի ժամանակի նորոգման գրեալ են յիշատակարան 'ի վերայ մեծի գերանին առաստա- ղի երկաթագիր այսպէս. * Օգնականութեամբ Հօր ա- „ մենակալի. եւ թելադրութեամբ Որդոյն միածնին ատա- „ ցաւ զտունս զայս Տր. Մառուկն որդի Խաչերեսին 'ի „ վայելումն անձին իւրոյ և զաւակաց իւրոց Տծ քա-

» բամ վայելել տացէ ամէն. Թվ. Հայոց ՌՀԴ. մարտի
» ամսո ԺԵ‖ (1625)։

Անդանօր 'ի վերայ դրան միոյ գրեալ կայ այսպէս. * Անուաւանք ամենայն 'ի վայելումն տէր Մելքոնին‖։ Այս ընդարձակ տուն էր երեւելի հայ իշխանին Մելքոնի. որ տուեալ էր բազում յիշատակս եկեղեցեաց Լվովի ընդ բարեպաշտ տիկնոջ իւրոյ բանի Ճուհարայ։ Անդ 'ի վերայ մեծի գերանին առաստաղի առաջին սենեկի տեսաք երկաթագիր փորագրեալ այսպիսի իմն օրհնա-կան. * Երանեալ է այր որ երկնչի 'ի տեառնէ եւ գնայ 'ի
» ճանապարհս նորա. զվաստակս ձեռաց քոց կերիցես.
» երանի է քեզ եւ բարի եղիցի. կին քո որպէս այգի
» վայելուչ յանկիւնս տան քո որդիք քո
» Անուէն այս շինեցաւ տունս
» 'Ի վայելումն տէր Կիւրեղին.
» որպէս նորատունկ ձիթենեաց շուրջ զսեղանով քով.
» այսպէս աւրհնեսցի ամենայն մարդ որ երկնչի 'ի տեառնէ
» տեսցես դու զորդիս որդւոց քոց խաղաղութիւն 'ի վե-
» րայ Իէլի‖։

243. Իսկ հիւանդանոցն Հայոց էր 'ի նոյն հարաւային կողմն քաղաքին, բայց այժմ է 'ի ձեռս Ռուս-աց։ Անդ էր նաեւ դպրատունն, որ այրեցաւ 'ի հրդե-հին. զոր անդրէն շինեցին, որպէս պատմէ յիշատա-կարանն. * Այր տէր ազնուական, որ կոչի տէր Միխ-
» նայ երեցփոխանն. որդւոյ տէր Յօհաննէսի յոյժ քննասէր,
» եւ այլ օրինացն սիրող։ Եւ սկսաւ ասել. Ով եղբարք
» իմ տեսանել եւս սքանչանամ եւ հիանամ վասն այս
» բանի. զի անուանիմք քրիստոնեայ, եւ ոչ կատարիմք
» զկարգ քրիստոնէից. եւ ոչ ողորմեցարուք դուք ձե-
» զի... զի ահա Ե ամ է քանի այրեցաւ քաղաքն մեր.
» եւ դուք ոչ խորհիք. զի այս դպրատուն շինել տայք որ
» զձեր տղայքն ժողովեալ 'ի մի տեղ եւ ուսանին 'ի գիրս
» սրբ. այլ թողել էք իւրոց կամացն երթալ... զիտա-
» ճիք եղբայրք զի ոչ վայելէ քրիստոնէից այսպէս մնա-
» ցանել զտղայքն։ Այլ պարտ է հայրն զի որդին իւր
» ուսուցանէ ահիւ եւ երկիւղիւ այ, եւ 'ի սրբ ուսմունս.
» որ չդատապարտի առաջի այ անաչառ դատաւորին։
» Ես անորդի եմ ինձ չէ պիտոյ. բայց զձեզ խնայելով
» տամ, դուք ինքնին գիտէք։ Բայց յորժամ իմացան
» տէր տանուտէրք եւ ժողովուրդն ասացեալն տէր Միխ-

« նայ երէցփոխանին, յոյժ հաճոյ թուեցաւ իւրեանց ։
« Այլ սկսան աղաչել զիւր տանուտէրք և ամ ժողովուրդ
« զնր Մ՝ինոյ երէցփոխանն, զի ինքն կացցէ այս բա-
« նի վերակացու ։ Ո որ տեսեալ զիր Մ՝ինոյ . . . զխնդ-
« րուածս . . . ոչ եղև նոցա դիմադարձ . այլ իւր անձն
« էառ աշխատանքն վասն ուստոյ մի արքայութե . . . ա-
« պաւինելով Այ արկ զձեռն իւր 'ի գործ ։ Այլ եւ տուր
« շինել զ տունս հանդէպ միմեանց փայտաշէն, մեծա-
« մեծ վայելուչ և գեղեցիկ շինուածով . այսինքն է
« զպատուհաններն ազնիւ ապիկի . որ կոչի Վենետիկի,
« նկարած ծածկայթներով . նոյնպէս չինի բուռն կրրկ-
« նեց ։ Այլ ատակս ազիւսով շարեց . և գեղեցիկ դուռ-
« ներ շինել ետ . յոյժ գեղեցկազարդ շինուածով վայելու-
« չացոյց, և ամրացոյց 'ի ներքոյ և արտաքոյ ։ Կատա-
« րեցաւ 'ի փառս ամենայն զ դպրատունս և սրահինս
« նոյեմ . Է . ՌԾԳ (1604) . զոր այսչափ շինուածոյս վե-
« րայ խարճել է զիր Մ՝ինոյ երէցփոխանն համօրէն
« ժողովրդեան ապկէն զՃ . Ն . ՓլՆ Թ ։

Դատարան.

244. Դատարանն Հայոց էր 'ի վերայ մեծի փողո-ցին մերձ 'ի հրապարակն՝ քարաշէն և գեղեցկադիր, ուր վճարէին դատաւորք զամենայն դատս ազգին՝ ան-կախ ամենևին՝ նախագահութեամբ Վոյթին ։ Որք և ունէին 40 . խորհրդականս, յորոց ընտրէին դատա-ւորք . որքա կոչէին Քռաւասուն եղբարք ։ Տեսաք եր-դարան մի . 'ի յիշատակարանին դնի . * Յիշատակ է « զիրն Թաթուլին որդւոյ զիրն Գրիգորին Կամենիցոյ « տօլվաթաւոր Քռաւասուն եղբարցն մէկ . Թվ . ՌՂԳ (1644) ։

Այս դատաւորութի տուեալ եղև Հայոց 'ի հնումն պարգևագրով . և հաստատեցաւ զանազան հրովարտա-կօք լեհ թագաւորաց, որով ունէին մեծ ազատութի . որպէս տեսաք գրեալ 'ի վերայ մագաղաթի հին գրով հանդերձ թագաւորական կնքով ։

245. Հրովարտակ Վլատիսլաւոս արքային տայ զա-զատութիւն ամենայն տուրևառութեանց՝ գրեալ յամի Տն 1408 ։ Նոյնպէս և Գազիմիր ետ մեծամեծ արտօ-

նութիւնս վաճառականաց յամի Տն 1448. առանձին հրովարտակաւ:

Հրովարտակ Սիկիսմունտոսի տուեալ եղեւ սակս վաճառականութեան յամի 1468: Տեսաք զառաջին հրովարտակ Սիկիսմունտոսի Օգոստոսի. յորոյ վերայ գրեալ կայ հայերէն յամի Տն 1550. * Այս է թուղթ
„Սիկմունտակուստոս թագաւորին. զոր տուեալ է
„Հայոց ազգին իշխանութիւն դատաստանին. զի թէ
„այնպէս բան հանդիպի մարդ կորմնելնա ուղիղ դա-
„տաստանն իշխանութի չունիցէ խօսք խօսիլ։

Սոյն այս թագաւոր շնորհեաց դարձեալ ազատութի Հայոց յամի 1559: Իսկ 'ի վերայ հրովարտակին, զոր ետ Քազիմիր արքայ յամի Տն 1460. գրեալ կայ թաթարերէն. * Քազիմիր վասն վտվտարչունէ համար:
„Պու բրիվիլիա Սոյթ դանկլամախ ուչուն տաքի պիր
„ուրեայ անիքի փատշահնըմնկ պիզնի սուսիդ էդմադըր-
„քօ վօթումուզ պիզիմ 1460։

Դարձեալ ետ հրովարտակ զանազան արտօնութեց սակս վաճառաց Ստեփաննոս արքայ յամի Տն 1577:

Այս փառաւոր դատարան անցեալ է այժմ 'ի ձեռս Ռուսաց, որ թէպէտ յայրել քաղաքին այրեցաւ. այլ անդրէն նորոգ շինեցաւ, որպէս պատմէ յիշատակարան եկեղեցւոյն. * Հայոց թվին ՌԾԳ ամսեանն մայի-
„սի ժԷ. թագաւորութէ երրորդ Սիկմունդին, կա-
„թողիկոսութէ Տն տէր... Քաղաքապետութէ բան
„Լյան Ռոթոցքիին. երէցփոխանութէ տէրն Մինոյին.
„եւ դատաւորութէ տն Նիկաւլին: Ժողովեցան միա-
„բան տէր տանուտէրք. նոյնպէս եւ Ի ընկերտայք ժո-
„ղովեալ էին յաղագս դատաստանի. քանզի յետ այր-
„ման քաղաքին բազում եւ ազգի ազգի դատաստան
„կայր 'ի միջի ժողովրդեան, եւ աւարտեցաւ բան դա-
„տաստանին։

'Ի սմին ժողովի իշխանն տէրն Մինոյ խօսեցաւ սակս շինութէ դպրատան. զոր եւ հաստատեաց (243):

246. Տեսաք 'ի հին դատարանի մեծ պատուհան մի մեծահասակ մատեանիւք հայ դատաւորաց. գրեալ էին ընաւք թաթարերէն հայ գրով, որ սկսանի այսպէս.
* Անուն Ա. Ձ. Պաշլանտը պու տիֆտար Նորմէնի թվ.
„ՌԻԸ ընա. Յուլիս այընըմնկ իմ ընա. Հաւլուփ Գրի-
„զոր օղլունունկ վոյթլուխունտա օլ զամանպօլկան,

» Էրմէնի Թօրաչիլարընըն . նաա իմէէ . ե երեսփոխանա-
» նըընըն , Մ՝իխնոյնընըն , տա Մէրհիյնընըն ։ Տէմուշնընըն ։
» Թորոսնընըն ։ Օ՛անուննընըն . Մ՝ելքոնընըն ։ Աշագուպ
» գուկաղապէյնընըն . Խաչքոնընըն ։ Խաչերեանընըն ։ Սար-
» գսննընըն , Նավասուրընընըն , Օհաննընըն ։ տա նաթէն-
» չաա պօլկան հաւլուփ եաղուչինընըն . Տէր Յոհան-
» նէս օղլուննընըն ։ Հօլուպտան ոօնկրա . մէն Գրիգոր
» Տէր Յովանէս օղլու պաշլատըմ եազուչիլըխ էդմա-
» կա . Թվ. ՌԻԸ . Նոյեմբերընըն Ժ՟ այնապուն" ։ (1579)

---

» Լեմիտայէա 4էլիր Բորակա .

» Պօլտու Թվ ՌԻԸ . Յուլիս ի՟ը խանդուն ։ Հօլուպ
» Մոյթ՝ անդիչքան Թօրաչիլար պիլմ . Պու գունկա
» բրիբատադ էդքան սբրաւալարնըյ . պարըն խայսիքի
» վըլսժօնըյ Թօրակա . քօտլէհնուդ էդիպ էտիր . օտ-
» լըժիդ էդդիլար գէլիր Թօրակա ։

Numero 260 ։ 1578 ։

---

247 . Մեցերորդ դատաստանագիրքն այսպէս սկսա-
» նի . * Ընուն ա՛յ . Պաշլանտըյ պու տիֆդար էրմէնի
» Թվ ՌԼԴ սունայ յուլիոնինըն ԺԷ սինայ . այնաքուն .
» Մ ջյթլուխունտայ Հօլուպնունըն Գրիգոր . . . Տայ
» տըլայժէ՛ օլ զամանի պօլկան՝ Գրիգոր եազուչընէնըն .
» Տէր Յովանէս . Տէր Ղազարեց օղլունունըն ։ Տայ
» տըլայժէ Սարկաւագընըն . . .

---

» Ի Հնարներին օէօլլիտանեա Աշտոսուպ .

» Պօլտու Թվ. ՌԼԴ Յուլիոնինըն ԺԷ այնաքուն . Հօ-
» լուպ վոյթանընըայ պէլտի Իհնաթ ստարօ ձինցատան
» քօտտանյէ . քանի Խօցիրմեստանընըն տայ քեռնօ-
» վադ էստիյ աօքուն ե հաֆտանընըն իչքիյ Թորա ըդ-
» քաղատ էտիք էտէր . Աշագուպկայ Թորոսունըն պօր-
» չուն տօպրօսունտան Թօլամակայ իչքի՝ պուկուն ե
» հաֆտասըյ չըխտըյ տա քէնտինա Թօլօվ պօլմատըյ .
» անընկուչուն օքօվլիտադայ պօլտու զախվադ էտիք
» քարասըն . ըվմօցըյ քէլիր խանքունկայ եազուպ պի-
» լա էդմակայ աղալար անըյնայ ։ Նէտան ուդըրու խօյ-
» տու Թօրակայ քամէնդնիյ ։ Տայ պէրիք եազտըրտըյ
» օքօվլիտանեաին ։ Նեմիտի Թօրա բըինեադ էդդիյ ‖ ։

Յայս ոճ գրեալ կան ամենայն դատաստանական
գրեանք ։ Բնակքն պատմեցին, թէ կային առ 500 ա-
մաց գրեանք, բայց մեք ոչ տեսաք . Թուի թէ 'ի Հրդե-

հի անդ այրեցան և անհետ եղեն բազում հնութիւնք Հայոց. որովհետև բոլոր քաղաքն 'ի մոխիր լուծաւ, որպէս բերէ յիշատակարան եկեղեցւոյն սբ Աստուածածնին օրինակ զայս.

248. * Հայոց թվին ՌԾԱ ամին. Ամսեանն օգոս-
„ տոսի ԺԶ. Ննջման սբ Աստուածածնին. բշբ: փառք
„ քեզ անճառելի Աստուած. փառք քեզ... Հրա-
„ մանն ամենազօր թագաւորին, որ եղև 'ի վերայ մեր
„ և քաղաքիս մերոյ, արժան է մեզ զայսպիսի եղեալն
„ իրս գրով պատմել... զի յառաջա եկեալքն ըն-
„ թեռնելով զայս՝ երկիւղն Աստուծոյ 'ի միտ առցեն և
„ զոհութիւք տայցեն Աստուծոյ: Ահ թէ հրամանաւն
„ Աստուծոյ մեծ պատուհաս եկն 'ի վերայ մեր... և-
„ ղև այսմ ամի 'ի Նամենից ողորմելի քաղաքիս, մեծ
„ և անողորմ ցասումն և պատուհաս 'ի հրոյ, զոր բո-
„ վանդակ ամ քաղաքն հրակէզ այրեցաւ, 'ի փոքր և
„ սակաւ ժամանակի: Ամենայն բարութիւն զոր ունէին
„ քաղաքացիք հրակէզ եղև, եթէ տաներ, եթէ խա-
„ նութներ. ոչ թէ միայն փայտեղէն շէնք, այլև քա-
„ րուկիր շինուածք, թէ տներ մեծագոյնք, և թէ
„ սքլերներ ոչ կարացին դէմս ունել՝ այնպիսի սաստիկ
„ բարկութեան Աստուծոյ. որչափ ինչ ոք ունէր՝ բովան-
„ դակ այրեցաւ: Օ՜ որ այնչափ մեծ և ահագին էր
„ ցասումն, զի բնաւ ոչ կարացին մարդիկ դէմ կալով
„ շիջուցանել զհուրն, քանզի իբրև կայծակունս հրոյ
„ բորբոքելով այրէր և տոչորէր զքարինս և զփայտս.
„ ուր և հասանէր. զոր և մարդիկք փոքր 'ի շատէ այ-
„ րեցան: Բայց որն ամի... եցոյց մեզ՝ իւր առատ
„ մարդասիրութիւն, որ գիշերով ոչ եղև այսպիսի պա-
„ տուհասն. այլ եղև երեկոյին ժամուն, մինչև նսեմա-
„ ցաւ. ամ քաղաքն փոշի և մոխիր դարձաւ, զի 'ի
„ միասում աւուր մարդիկ ոչ կարէին ճանաչել զիւր-
„ եանց տանուտեղն: Բայց այլ ևս էր մեծ պատու-
„ հաս, այս է. զի վասն առաւել չար գործոց և անօ-
„ րէնութեանց մերոց ոչ խնայեաց Տր, իւր սբ զեկեղե-
„ ցիս, և միապէս խորատեաց: Օ՜ի եկեղեցիք մեր
„ Հայոց վեր ևս այրեցան, նոյնպէս և զանկակատներն
„ և զանկակներ հալեցան 'ի մէջ զանկակատանին...
„ Նոյնպէս Ուլախ, և Ուռուզ ազգի եկեղեցիք զանկակ-
„ ներով: Այլև Ը դրունքն քաղաքին այրեցան, որ կա-

» չի Խստապախմներ ։ Նոյնպէս և 'ի դաշտս Խլաթի Ղամ-
» բարանոց այրեցաւ թէ աներ, թէ ցանկ, թէ ծառք
» պտղաբերք . ամէնն հրակեզ եղև ։ Ո՜ որ և այս ա՟մ
» եղև վասն չարաչար և ազգի ազգի անօրէնութեանս մե-
» րում . . . զի ոչ գտանէ 'ի միջի մերում սէր և միա-
» բանութի՟ն և ոչ հնազանդութի՟ն ։ Ո՜ որ այսպիսի ա՟մ
» եղեալ իրս պահեսցուք 'ի միտս մերում . այսպիսի
» սաստիկ բարկութի՟ն Աստուծոյ ։ Այլ դարձցուք առ
» Աստուած ա՟մ սրտիւք մերովք, և արասցուք զկամս
» պատուիրանի նորա . որպէս և գրեալ է . դարձարուք
» առ իս, և ես դարձայց առ ձեզ ║ Զա՟ ։

Այս հրդեհ թէպէտ սոսկալի էր, սակայն յաջողութիւնք ժամանակին և ջանք բնակչաց անդէն և անդ կանգնեցին զքաղաքն և մեծագործ շինուածովք զարդարեցին, որպէս տեսաք և ստորագրեցաք զայն գեղեցիկ քաղաք . այնուհետև մնայ մեզ անցանել յայլ քաղաքս Հայոց ։

## ՄՈՂԼՈՎ

249. Այս քաղաք բարեդիր շինեալ ընդ երկայն 'ի վերայ Տնեստեր գետոյ՝ 15 . ժամու հեռի 'ի Կամենիցէ ։ Յառաջագոյն էր երևելի վաճառատեղի՝ երբ Օսմանեանք տիրէին 'ի Պեսարապիա . այլ յետ այնորիկ նուազեցաւ յոյժ ։ 'Ի հանդիպակաց կողմն գետոյն գոյ գիւղաքաղաք նոյնանուն, որ այժմ է 'ի ձեռս Ռուսաց ։ Այս քաղաք չէ այնչափ հին, և ոչ տեսաք 'ի սմա վաղեմի ինչ նշանաւոր . զի յառաջագոյն էր պատսպարան Խազախ աւազակաց՝ որոց գլխաւոր կոչէր Մողլ, յորմէ եղեալ է անունս Մողլով ։ Այս աւազակապետ վաճառեաց զայս քաղաք Փօլթոցքի լեհ իշխանին, որ հրաւիրեալ զՀայս բնակեցոյց աստ բազում ազատութեամբք, որք անդէն և անդ սկսան ծաղկեցուցանել զքաղաքն վաճառականութեամբ՝ զարդարելով զայն բազում շինուածովք, որք այժմ անցեալ են 'ի ձեռս Հրէից ։

250. Թաղն Հայոց և եկեղեցին է առ երի Տնեստերայ մերձ 'ի շուկայն . ուր են իբր 60 . տունք Հայոց կաթոլիկաց . յորոց բզմ՟ք աղքատ են ։ Եկեղեցին է-

քարաշէն և պայծառ, չափաւոր մեծ՝ կառուցեալ՚ի մէ-
ջավայրի անդ ժամատան յանուն անարատ յղու-
թեան Ածածնին. ունի 5 խորանս. յաջակողմն աւագ
խորանին եդեալ կայ հրաշագործ պատկեր Տիրամօրն,
որ յառաջագոյն էր 'ի տան Ռուս ունեաթ կնոջ, և
բազում սքանչելիս յայտնէր, մինչ զի յայտնի տեսին
զքիրտն պատկերին կայլակեալ: Յետ ժամանակաց
Հայք ճարտարմտութեամբ իմն բարձեալ անտի զայս
պատկեր եդին յայս եկեղեցի, որոյ վասն բազում
վէճք եղեն 'ի մէջ նոցա, մինչև գրեցին առ Թագա-
ւորն Լեհաց և 'ի Հռովմ: Հուսկ յետոյ որոշեցաւ,
թէ պատկերն մնասցէ յեկեղեցին Հայոց, և Ռուս
քահանայ մի պատարագեսցէ անդ. որովհետև միայն
Հայք ունին զեկեղեցի 'ի Մողլով, և անդ երթան
Լեհք և Ունեաթք:
Այս եկեղեցի յառաջագոյն էր փայտաշէն՝ կա-
ռուցեալ'ի ծայր ընդարձակ բակին 'ի նոյն փօթոցքի
իշխանէ: Այլ իբր 48. ամօք յառաջ շինեցաւ քարա-
շէն յիշխանէ նոյն ցեղին՝ միջնորդութեամբ Յովսեփայ
Քրիստափօրովիչ նախապատիւ կանոնիկոսին. ունի
կրկին զանգակատունս և կրկին աւանդատունս, բայց
աւագ խորանն անձև մնացեալ է: Վերոյասացեալ ա-
նուանի կանոնիկոսն բազում ճարտարութեամբ միջ-
նորդ ունելով զիշխանն փօթոցքի՝ ձեռնադրեցաւ յԼւ-
վով պարզ եպիսկոպոս և հաստատեաց զաթոռն Մող-
լովի յամի տեառն 1809. իշխելով 'ի վերայ Հայոց
հռովմէական կաթուղիկեայց եղելոց 'ի մասին Ռու-
սիոյ՝ սկսեալ 'ի Կամենիցէ մինչև ցԱժտէրխան, և
ցԹիֆլիզ. և ունի 12 ժողովրդապետութիւնս, այլ
ժողովուրդ սակաւաթիւ:
251. Երևելի է նորաշէն եկեղեցին Յունաց քարու-
կիր բարձր՝ կառուցեալ 'ի ծայր քաղաքին. նոյնպէս
երևելի է եպիսկոպոսարանն Հայոց քարաշէն և սիւ-
նազարդ՝ բարձր և գեղեցկադիր շինեալ'ի նոյն Յովսէփ
եպիսկոպոսէ յամի տեառն 1814. յարևմտեան կողմն
վանատան 'ի վերայ Տնեսդէր գետոյ, առ որով են և
երկու բնակարանք ժողովրդապետաց յերկոսին կող-
մանս եկեղեցւոյն: Եթէ չէր ժամանեալ տարաժամ
մահ լայնախորհուրդ եպիսկոպոսին, ոչ միայն զարդա-
րելոց էր զեկեղեցի և զհայրապետանոց իւր, այլ և

զբոլոր վիճակն և զժողովուրդն, ըստ որում տենչայր ազգասէրն այն՝ և յետ սակաւուց ունէր բարձրանալ 'ի վիճակ արքեպիսկոպոսութեան՝ այլ յամի 1816. Թողեալ զանցաւորս՝ էանց յանանց վիճակ. զորոյ դամբարան գեղեցիկ մարմարիոնեայ տեսաք յասս աջակողմեան խորանին:

Յառաջագոյն ունէին Հայք առանձին դատարան հանդերձ բազում արտօնութեամբ, այլ այժմ բարձեալ է ամենայն. միայն յետ մահուան Տէր Անտոն Վարդերեսեւիչ Աթոռակալին (219) աստ վերադարձաւ փոխանորդութիւն եպիսկոպոսական կառավարութեան: Եկեղեցին ունի փոքրիկ գիւղ յեկամուտ քահանայից, որպէս պատմէ և Աւգուստին վարդապետ 'ի յիշատակարանի իւրում, զոր գտաք 'ի Ռաշքօվ քաղաքի: Ուր գիտելի է՝ զի զ100. թիւն թողու առ չափու ոտից տաղանաւորին. ուստի պիտի իմանալ 'ի 1148. թուականին ծնեալ. և ոչ 'ի 1048. որ ոչ յարմարի ժամանակին:

Ն

„ Ի թվին հազար քառասուն ութին,
„ Լեօպօլիս մայրաքաղաքին,
„ Ծնեալ եմ յաւուր ոչ զատկին,
„ Որ եղև ապրիլի իններին.
„ Ի ծննդեան լուսաւորչածննեանց,
„ Գրիգորէն Նիկոլեայոսեանց.
„ Որ է զարմէն մեծ խոսրովեանց,
„ Եւ Մայրամէն ասվատուրեանց.
„ Յարութին անունս մկրտութե,
„ Եւ Աւգուստինոս 'ի դրոշմեան.
„ Ի Կամենից քաղաքում եմ սնեալ,
„ Ուսմանց դրոց աշակերտեալ.
„ Վարդան արքեպիսկոպոսին
„ Լեօպօլսոյ առաջնորդին.
„ Անդ 'ի դպրատանն ոչ փափին
„ Իմաստութեանց ուսայ ամս ինն.
„ Ի թվին հազար եօթանասուն մին
„ Դասացայ քահանայ կարգին.
„ Ի Յոհաննէ առաջնորդէն
„ Աւկուսդինովիչեանց զարմէն.
„ Եւ յաւուրն պենտեկոստէի

„ Նորընծայ պատարագեցի ·
„ Նախ զամս երիս քարոզեցի
„ Կամեցում դուանն Լուսաւորչի ·
„ Նպա Վավանչում ժողովրդեան
„ Նմ մի 'ի Հոգաբարձութե
„ Դուլթերում Նորաշէն քաղքի ,
„ Ուլթսուն տանուտէր ժողվեցի ·
„ Նմն տասվերկու անդ հովուեցի ,
„ Զնոր եկեղեցին հիմնեցի ·
„ Նաև զերիս եղբայրութիս
„ Նաւ զամէն բարեկարգութիւնս
„ Մայրաքաղաքում Լեօպօլս
„ Նմն չորս վիքարութիւն արի ։
„ Նատի Թվին հազար նսուն մէկի ,
„ Մօհիլօվայ քաղաքն եկի ·
„ Զեկեղեցին նոր տէնկեցի ,
„ Զկելուրն երկու քահանայի ·
„ Նաւ զերավան հայոց ազգի
„ Նմն հինգ հոգետես տըքնեցի ։
„ Հետոյ Մաշքօվս քաղաք գնացի ,
„ Ըզփուեալ հայազգն ժողովեցի ·
„ Ծ բրավան պէկից նշ բերի ,
„ Սահմանս բարեկարգութեց դրի ·
„ Զ քարաշէն նոր եկեղեցի ,
„ Զ քահանախուցն զկելուրն տնկեցի ,
„ Նյդմ աշխատիւքս մինչ տկարացայ ,
„ Շնորհաց տն չնահկալ գոհացայ ։
„ Տէր , ղայդքան ես յայգուջդ տնկեցի ·
„ Դու օրհնեա ջրեա , քեզ պտուղն լիցի
„ Փառք մշտակայ փառաբանութի ,
„ Նաւ ժողովրդեանս հոգու փրկութի ։
„ Արձս տուր անարժան քում մշակին ,
„ Զներումն և զշնորհսդ հոգուս ելքին ·
„ Հանդիպօղք այսմ Յիշատակի
„ Յիշէք Նւգսէնտ վարդապետի ‖ ։

ՌԱՇՔՕՎ

252. Ի փոքրիկ քաղաք շինեալ 'ի վերայ Տնես-
դէր գետոյ 'ի վայելուչ դիրս · որ երբեմն ծաղկեալ

էր վաճառականութեամբ , այլ այժմ գլխովին նսեմա-
ցեալ : Գործեթէ բոլոր շուկայն է 'ի ձեռս Հրէից , որք
բազում են անդ , և ունին դպրոց և սինակոկայ : Յա-
ռաջագոյն կային աստ ոչ սակաւ Հայք , որոց Թաղ է
'ի վերայ գեղեցկադիր բլրոյ , ուստի վայելուչ իմն երևի
բոլոր քաղաքն և գեղազուարճ բազմապտոյտ ընթացք
գետոյն , յորում տեսաք զանազան կանաչազգեղ կղզիս
գործեալս 'ի տղմոյ անտի : Ոչ տեսաք երևելի ինչ 'ի
քաղաքիս , բաց յեկեղեցւոյն Հայոց , որ է քարաշէն
վայելչադիր կառուցեալ 'ի վերայ բլրոյ՝ յանուն անա-
րատ յղութեան Ածածնին : Գրեալ տեսաք յորմն ,
թէ շինեցաւ յամի տեառն 1786 . և օծաւ յամի 1791 .
'ի Թումանովիչ Արքեպիսկոպոսէն Լվովի . կան եր-
կու գեղեցիկ զանգակատունք 'ի ճակատ եկեղեցւոյն ,
որք 'ի հեռուստ վայելուչ երևին . իսկ 'ի վերայ աւան-
դատան կառուցեալ կայ բարձր քարակերտ պահարան ,
ուր ելաք ընդ քարեայ սանդուխս : Սա որով է բնա-
կարան ժողովրդապետին՝ որ հովուէ զսակաւաթիւ
Լեհ ժողովուրդս , որք չունին եկեղեցի . և ոչ իսկ գոյ
աստ հայ ժողովուրդ , այլ միայն փոքրիկ կալուած յե-
կամուտ ժողովրդապետին մնացեալ յառաջնոց անտի :
Այս եկեղեցի նորոգեցաւ յաւուրս մեր ձեռամբ Տէր
Անդրէի Մինասեան պատուաւոր կանոնիկոսին՝ որ
բազում մարդասիրութեամբ պատուեաց զմեզ : Ուր-
անօր եղև յերկար ժամանակ ժողովրդապետ Տէր Ան-
տոն Վարդերեսևիչ մեծապատիւ կանոնիկոս :

Տեսաք զմկրտատետր այսր եկեղեցւոյ՝ որ սկսանի
այսպէս . * Գիրք մկրտելոց 'ի Նորատունկ եկեղեցւոջ
» Սաչքովայ Հայաժողովրդեան : Յամի Տն 1749 . և
» 'ի Թվկ ռՃղը . սեպ . ԺԷ . Ես Տր Օգսէնտիոս... մկրտե-
» ցի և դրոշմեցի զէգ տղայն անուամբ Մարիամ
» ծնեալն 'ի յօրինաւոր ծնողացն Լազարէն և Լվառ-
» քեայէն . կնքահայր գոլով բան Անանիայն և կնքա-
» մայրն Մերխուցէն իւր ամուսին ‖ : Այս գրէ , թէ
մկրտեցի այլազգի կին մի , որոյ անուն եդաւ Աննա :

253 . Յառաջագոյն Հայք Սաչքովայ ունէին առ-
անձին դատարան , դատաւորս , և վոյթ , հանդերձ
պարգևագրով զոր ետ նոցա Յովսէփ Լիւպոմիրսքի
Լեհ իշխան յամի տեառն 1571 . մարտի ԺԹ . յոյր
սակս ժողովեցան աստ Հայք յայլ և այլ կողմանց ,

և ծաղկեցուցին զքաղաքն ։ Հրովարտակ այսր իշխանի թարգմանեցաւ ՚ի հայ լեզու ՚ի նմին ժամանակի. զոր տեսաք գրեալ բոլորագիր, որ գրեթէ փակէ յինքեան զարտօնութիւնս և զսահմանս զանազան հրովարտակաց այլ և այլ քաղաքաց ։ Նորին աղագաւ պատշաճ դատեցաք դնել ՚ի կարգիս զայն ըստ բնագրին համդերձ ամենայն սահմանօքն, որպէս զի՝ այնու խելամուտ արասցուք զբանասէրս բարեկարգութեանց և ազատութեանց Հայոց եղելոց ՚ի Լեհաստան ։

### * ՅՈՎՍԷՓ ԼԻՒՊՕՄԻՐՍՔԻ ՌԱՇՔՈՎԱՑ ԺԱՌԱՆԳԱՊԷԿ ԵՒ ԱՅԼ։

254. Յանուն Աստուծոյ ամէն. և վ̃ն ապագայ յաւիտենական յիշատակի ։ Ամենեցունց առ հասարակ և առանձին գիտութիւն լիցի ներկայ Պրիվիլեկի իմոյ նամակաւն ։

Որովհետև ամ քաղաքացն պայծառաշինութիւն լինի, աւելցընելով զբնակիչս նորին, և զժողովս, եւս առ փափաքելով զշինութիւն և զպայծառութիւն իմ ժառանգաւոր քաղաքիս Ռաշքօվայ, աւելնալով ամէն ցեղ ժողովրդովն, և մանաւանդ ազգաւն Հայոց Պազիրկանաց, որ այնորիկ այս հայազգ ժողովրդեան կուտամ զիմ Պրավան, որնոր իմ Պրավայովն սիրտ և միտքն իւրենց հաստատվի գալ ՚ի Ռաշքօվն, տան շինութիւն և Պազիրկանութիւն անեն, տունն և համարձակ բնակելով ։ Եւ պարնական իմ խօսքով խոստանամ վերոյիշեալ Հայոց ազգիս, թէ զամ արդիքուլներն և բունթաներն ներքոյգրեալ բրավայիս բռնել և պահել՝ պարտական եմ յամ ժամ, և յութս ։ Նմանապէս և իմ Հետևողքն Ռաշքօվայ ժառանգապէկք պարտական պիլան խօսքս բռնել, և պահել Հայազգիս և իւրեանց հետևողայն յութս ։ Պրավանուն կապվածքին զօրա ։ և

Պրավայլին արդիկուլներն և բունտեաներն են այսոքիկ ։

255. ա. Տամ Ռաշքօվայ Հայ ազգին իշխանութի որ ունենան զկատարեալ իւրեանց ուրէնան. բ. Սջյթ տասվերկու աղայովն, և քարոզն աղքարանցմովն, և այլ ամ քաղաքաց երկայովն ։ Եւ այս Հայազգիս ամցնց միաբան հաւանութեամբն ամէն նոր տարի էլէք-

ցիայի ընտրած և երդվընցած վօյթին ձեռն կուտամ զօրութին իւրխտկցիային, զի ժէ Ա.ջանոտն. ու երդվընցած դատաւորացն հետ միատեղ նստելով, զամ իւրեանց ազգի մէջ բօղօջնիյ և քըիմինալնի շարիաթնուն դատաստանն կըտրէ, և վճռէ տէքրէթօվն, և զայսպիսի տէքրէթներն պիգրէ Ռուսարն իւրեանց Ա.քթանուն քրօթօքուլի մէջ:

256. Զ. Սալդ մէկ Ա.պէլլացիան իւրեանց Տէքրէդէն պատկանի առ իմ, կամ իմոյ վէգիլին դատաստան: և զայսպիսի Ա.պէլլացիանուն տէքրէթներն իմ կամ իմոյ վէգիլին ձեռօքն ստորագրեալս, պարտի Հայոց Ռուսարն գրէլ իւրեանց Ա.քթանու մէջ, աքթօրին և բօզվանին հաստատութե համար:

257. Է. Նոյն այս Սուրէնտին համար նշանեմ պաշխայ դատաստանատուն Սահթուշին մէջ, ուրուխ զիւրեանց դատաստան, և զամ երկայն պանին:

258. Ը. Ա.յս Հայ ազգս լիցի մասնակից ամ կեղուրից քաղաքին, պարապար Լէհ ազգին հետ. այնու համար պիտի ընտրէն իւրեանց միջէն խելօք վերակացու ամէն նոր տարի երդվընցած, որ զայնպիսի կեղուրն ժողվէ և խարճէ իւ կամաց իւրեանց Սուրէնտին:

259. Թ. Ինչպէս յայլում քաղաքաց կեցօղ ազգս այս ունի պաշխիշ 'ի թագաւորաց և 'ի ժառանգապէկից իւրեանց, այսպէս ես ալ Սաշքօվայ Հայ ազգին համար վօյթին և ազանուն խոստանամ 'ի վայելումն նց տալ բաժին մի իմ Գուշտուց գետնին:

260. Ժ. Զամ առուտուրն և զպազրկանութին և ըստ հունարից նց վաստակն անել, մն իւրեանց հարկեւոր ապրելոց ամցնց, և իւրաքանչիւրում իբրև Հայոց ազգին վօլնօստ կուտամ:

261. ԺԱ. Ա.մէն ցեղ իջգուի ծախսն վօլնի է Հայոց ազգի. բայց իջգուից հախն պիտան արէնտայիս այնպէս ինչպէս կուտայ Լէհ ազգն:

262. ԺԲ. Զինչն Պառնական պիտայ Հայազգս ամէն տարի. Պազրի միջին տանգլօխ մէկ մանձառ ոսկի, և միւս սօխախնուն տանգլօխ կէս մանձառ ոսկի: Բայց Սլօպօտիայ առաջ թամամլէլուն ետև:

263. ԺԳ. Ա.զգս այս հայոց զայնպիսի Զինչն տալուն հետև տարին մէմը, հէչ ուրիշ տալիք ժառանգապէկին չի պիտան յունս: և ամ տասանորդաց տալիքէն ա-

զատ կանխիմ զնա, ուխտերից, խօվանմուն, խողերից, ձիաննուն մեզիլից, և տավրի կոտոշից, քօփուրնիէն, բավօլօսչիզնայէն, և ամ քոնթրիպուցիայէն. և ինչ-պէս ամ խարճէն զայս Հայկազն ես ազատ կանեմ ներ-կայ Բրավայոմն, այնպէս և իմ հետևողքն խօսքս պահել պարտին յաւէտ:

264. Ժ. Բանեհերնուն ժամանակն այլուստ եկեալ Հայանց մէջ հանդիպեալ շարիաթնուն դատաստանն պանէ իմ գրած վէքիլն: Բայց և հայոց վօյթն պարտ է միատեղ վէքիլիս հետ վճռեն զՏէքըրէթն. և երկու-սին ալ ձեռօքն ստորագրելին. որ իմանան թէ հաս-տատապէս իրենց տուած բրավային խօսքս կու պա-հեմ, և սիրտ ունենան գալ՝ի բանեհերս և անաշխնու-թն Աւաշքօվուն աւելնայ. վն այնորիկ որ ժամանա-կաւոր իմ վէքիլն դիժարանք մի կամ զուլում չանէ Հայազգի պազիրկանաց:

265. ԺԱ. Երբ հանդիպի ժիմէկն, որ յայլուստ ե-կած Հայ ազգն յանկարծակի հիւընդնայ, և առանց կտակի՝ ամ պահէ՝ մեռանի Աւաշքօվում Փողին, յայն-ժամ պարտին իմ վէգիլն դիմաց ՚ի դատաստանատան Աւաշքօվայ ուրէնտն հայոց, զամ մեռածին ստակն և մալն գրել, սընտկի մէջ դնել, և ՚ի մոհրով վէքիլիս և ուրէնտին Հայոց փճաթելով պահել ՚ի դատաստանա-տանք մինչև մէկ տարի և վեց շաբաթն: Ապա եթէ չի գտվի ազգն կմ վասին, վէքիլլեամայոմն այն մե-ռելուն մալին մօտ, անժում իմ վէքիլն և Հայոց ու-րէնտն զմալն սընդկից կու հանեն, և ՚ի փայ կանեն. մէկ փայն պիտան իմ խազինային, և զմիւս փայն պի խարճին Աւաշքօվայ պէտք բանի վն. ինչպէս Հայոց ուրէնտն պի հասկընայ եկեղեցու վն:

266. ԺԲ. Եթէ Աւաշքօվայ երլու Հայն կտակ անե-լով անզաւակ մեռանի, յայնժամ առաջ պարտ է կտակին զօրայ թաղման, ժամին և այլ թամամել. և իռաւսուրն Աւաշքօվայ քաղքին ալ պէտք բանի վն պի խարճեն, իմ վէքիլն գիտութբ, վն եկեղեցւոյ:

267. ԺԳ. Ինչպէս Լէհ ազգն ամէն ցեղ Սանխաթ-նու մէջ ունի պաշխայ երդուընցած Ցեխմիստրն, այն-պէս և Հայ ազգիս մէջ ամէն ցեղ Սանխաթն պիտի ընտրեն իւրեանց գլուխ Ցեխմիստրն, և զկելուրն նց, եկեղեցւոյ պիտոր տան:

268. ՄԿԸ. Ինչպէս Օամօնցեայ քաղաքին Հայերն ունին Իրավան, որ բովանդակ լեհաց՝ Փողին վճ զնալով ապրանքով զՓրայական և զոմէչքօսքօլիդայէն միթան հէչ չիտան, այնպէս եւ ալ զնոյն Իրավան 'ի Թագաւորէն և Իմէչքօսքօլիթայէն հանել խոստանամ Մաշքօվայ Հայ ազգին համար ։

269. ՄԿԹ. Մաշքօվայ հայերն ամենեքեան հէչ միթայ չիպի տան այս քաղքի մէջ. և իմ այլ քաղքնուն, կմ գեղրանքնուն, ուրեւիցէ փողի վճ զնալէն ապրանքով ։

270. ՄՀ. Սուանդեմ իմ հեռաւորղացն, որ իմ մահուան եառ. թէ զՄաշքօվն 'ի բաժին հանտիպի բաժնելու 'ի Պաւնին ։ անժուամ զհայազգն որ չի բաժնին 'ի Պաւնին կէմն ։ այլ ամ Հայազգն մէկ Պաւնի ձեռն մնան ։

271. ՄՀԱ. Գունքի որ մարդուն կամքն գալանկան է 'ի վճ աշխարհիս. ուր կամի բնակի, և ուր կամի երթայ ։ Սուրեմն թէ Հայազգ Մաշքօվցին չի հաւանի բնակիլ Մաշքօվում, վօլնի պիլայ իրեն զամ իւր ստացուածն այլ մարդու ծախել, և ուր կամի երթալ ։ և չիպի արգիլէ զնա վօյթն կամ իմ վէքիլն ։ Նայց ստաթին գօրայ պիտայ պաշխիշ Հայոց Սուրէնտին ։

272. ՄՀԲ. Մեր այլ քաղաքաց Հայազգն զիւրեանց Իրավան ամրացուցած ունի թղթուրց և Իմէչքօսքօլիթանին մօհրովն. այնպէս և ես խոստանամ Մաշքօվայ Հայոց խնծանէ ներկայիւքս տուեալ Իրավան ամրացուցանել ։

273. ՄՀԳ. Այս և իմ հեռաւօղքս. Պաւնական և յունական խօսքովն կու կապվիմք զներկայ Իրավան ; և վերոգրեալ բոլիվիլէյն թամամ բռնել, և յունն պահել խօսքս. և մն հաստատուն բանիս խոստանամ և կամիմ զներկայ Իրավան կրօտիս Նըքթանուն մէջ ամփրացուցանել ։

274. ՄՀԴ. Նաև զի այս Իրավան Յշմարտապէս հաստատուն և յունական զօրութի ունենայ, իմ յատուկ ձեռօքս ստորագրիմ, և իմ մօհրովն կնքեցի ։

Նդև 'ի Լապուն քնքիս. յամի տն 1751. Մարտ ամսոյն ԺԹ աւուր ։

Յուսէփ Լիւպօմիրսքի ։

Իոստոցօլի Լիթէվաքի, Հէնէրալ Մայօր ։ 

Թարգմանիչ պարգեւագրիս սկսանի այսուհետեւ մեկնել և բացատրել զզօրութիւն բառից. յետոյ գնել զդատաստանական սահմանս և զայլ ամենայն կանոնս այսպէս.

* Այս տարագրին կարճ խրատն մի վայելման և օրինաւոր վարժման վերայ Թարգմանեալ Երաւայէն.

Նոր Գիւղն է։

275. Ջունքի որ Նորավայրին մէջ հրամայեցաւ, թէ Մուրէնոս Մաշքովայ Հայոց այնպէս պիտի կառավարուի, ինչպէս կառավարվի մեր Հայազգն յալում Լէհաստանի քաղաքում։ Այնու համար պարտ է՝ և Մաշքովայ ժողովրդեան գիտել զամ սովորական քաղաքավարութեանց տառն։

Ինչ է Մորէնոսն։

276. Իշխանութիւն է և զօրութիւն Պէկից Նորավայրոյն (այս պարգեւագրոյն) տուեալ վօյթին և ժիւ դատաւորաց նորա՝ զամ դատաստանն և կառավարութիւն անել Հայազգի մէջ բնակելոցն 'ի Մաշքովում։

Ինչ է Լնմէոյեան։

277. Ամէն տարի կաղընտէն օրովմ առաջ Վօյթն հրատապ կուտայ ժողովրդեան. և այս յաւուրն նոր տարոյն վօյթն, աղանները, և քառասուն աղբարքն ժողովին յեկեղեցին, կուտան ժամուց իւրեանց քհնու տէր Նրօպօշկին, և տմքն լսեն զՊտորգն վօթիվայն. և յարձակման տէր Պատարագին առնելով զօրհնէնք երթան 'ի դատաստանատունն, պիտի թղթի վրէ նոր վօյթին գրած անընոյն. և զայնպիսի թղթի վրէ վօղուտներն կու դնին սեղանի վրէ. և որին աւ շատ անընոյն գտվին վօղուտներն, նայ տէյ կամօքն Վօյթ կընտրվի ժիւ աղանուն միջէն. և նոր ընտրած վօյթն պարտ է երդուում տալ այսպիսի Րօթայի վրէ.

278. Այս տէ տէ անուն՝ երդուենամ Աստ ամենակարողին Հօր և Որդւոյ, և Հոգւոյն սրբոյ, Ածամօրն Մարիամայ միշտ կուսին, հօրն իմ տէր Գրիգոր լուսաւորչին, և տէմ ոգոցն տէյ. հնազանդիլ իմ ժողովրդոյն

Գերապայծառ Իլօվայ Առաջնորդին, և հրամայե-լուն պէս վերապատուելի մեր Տէր Պրօպօշչին ։ Եր-դուենամ Ուաշքօվայ Պէկկին հաւատարիմ լինել, և զժողովուրդն քաղաքիս շահել և աւելցնել ։ Երդուե-նամ զքաղաքին Պրաւեան պահել, և զնմ շարիաթ-նուն սոյգ ինքվիզիցիայոմն, շիտակ և արդար Տէք-րէդոմն վճռել հոգուս վր, և ոչ համար քրիստոնէից օրինաց իրաւամբ, չէ կաշառօք, երեսպաշտութ․, կմ նախանձու ։ Իսկ թէ այս իմ երդումս խօսքերս թա-մամ չի բռնիմ, պատուհասեսցէ զիս Այ արդար դա-տաստանն, և անմեղ վրէժխնդիր քն չարչարանք, առ-դէնի և անտէնի կեանքիս ․ եղիցի եղիցի, ամէն ։ Այս-պէս կերդուենան և նորընտրեալ ազաներն ։ Որոնք չեն փոխվիլ, քանի որ զայս երդումս բռնեն թամամ ։

279․ Ապայ ելէքցիային մէջ կընտրեն ազանու մէ-ջէն մէկ Ուպրէլեկաթն, որն որ վօյթին տեղն կու-նըստի, երբ վօյթն տանը չի գտվի կմ հիւանդ լինի, կմ ուրիշ մարդու հետ շարիաթն մտանէ ։

Ընդ ևս կընտրեն իրեք Ածասէր և ժամասէր Տօղ-վաթաւոր Պրօվիզօրս ։ Աւագ գանձապետն, եկեղեց-նոյ գանձապետն, և Աղքատաց Տնտեսն ։ չորսում խելօք Պէյենդն ։ երկու Ածավախ Ուալիայգրօղն, դրադէտ Պիսարն․ և Ուրէնտի Խնտրիկաթօրն, և մէկ Մէյսքի Սլուկան խըսմէթ անօղն դատաստանատանն ։

Աւագ գանձապետն պարտ է հոգալ զնմ կէլուրն թէ յեկեղեցու մէջ, և թէ 'ի չարշուվու մէջ․ տան և տուկեան գլօխ փարայ ժողովելով ամէն կիրակմուտ-քին․ և այլ հայոց աւանդութեն պէս և զայն տալ իւ-րեանց վրպտուլի Տր Պրօպօշչին ձեռն ։

280․ Եկեղեցնոյ գանձապետն պարտ է հոգալ զժա-մին շինուն, պայծառուն, և զնմ պէտսն, և զկէլուրն․ նմ ժողովելով զհայոց Ուրէնտի Տէքրէթնուն Ճուրում-ներն․ Գրօրհնեաց խաչհանելիս, ծաղկազարդին դռնաբացանքից․ Օսակին լուսաբերից․ Պսակնուն, Թաղմանից, Նանահէրից, Ուալեամըթից, և այլ չար-շուվում, և ժամու մէջ գանձանակ մանն ածելով, և զայս-պիսի կէլուրն գանձապետն Աւագ գանձապետին հետ միատեղ կի դէնին ժամին գանձանակի սնտուկի մէջ տուաջի վրպտուլի Տր Պրօպօշչին․ որ զնմ կու դրէ Պէյենդի մէջ․ և առանց Ս․ Տր Պրօպօշչին գիտուն,

ոչ կու բանան զայն մնոտուկն, ոչ մէջէն այն խարձին հէչ:

281. Դղբատաց տընտեսն այն հոգայ զպէտսն փախիրնուն, անճարակնուն, հիւանդաց և հիւրից խարիպ խօնախնեկից, և սա պիտի ունենայ զանձանակ մի ժամին դուանը, և խուց մի սըխթալ ժամին աղագ. ուր ժողովին և բնակեն անճարակ և հիւանդ, և հիւր եկած հայազգն. Սա կու ժողվէ զողորմութ կամաւոր ժամին դրանը, և 'ի չարշուվում բանեհերնուն, թաղմանը, մատղընուն, և այլ տեղն, ըստ ատաթին Հայոց: Իսկ թէ անճարակն հիւընդանայ, կոչէ զքահանայն որ խոստովանցնու, հաղորդէ, և թաղէ:

282. Քէյխնդն: Նաւսուն աղքարանց վր̃ Սդարեադայ է. պարտ է զքաղաքին քաղաքավարութ̃ն, և զն̃մ երկայն վարժել. զչինչերն և զսալիան ժողովել, և վըյթին հացնել: Թաւփուըընուն պայրախոմն կառավարել. զքաղքին կելուրն և զխարջն իմանալ. վըյթին հրամայելունն:

Սալիպայ գրօղքն երդուենան, որ ազ̃յ. համար Քէյէնթին դիմաց գրեն Սալիպայ տալեց. թէ պէտք ըցէ և զտէֆթէրն կուտանին վըյթին մօտ:

283. Իխսարն պարտ է գիտնալ զՕրէնս ազ̃յ, զկանոնս եկեղեցւոյ, և զիրաւունս քրիստոնեայ դատաստանին. և կերդուենայ թէ շիտակ և ճշմարտապէս այն գրէ զՇարիաթնուն Ինքվիզիցիան, և զՏէքրէթն, Նքթանուն Իրօդօքուլի մէջ. և զդատաստանին Սէքրէթն դուս չի հանէ:

284. Ինդիկաթօրն պարտ է դատաստանին դիմաց լաւ հասկըցնել զտավլին և զճուջեայն Սդրօնանուն, կմ օրքովարնուն, որքերուն և աղքատնուն համար զուրուցելու որ չի զըրկվին. կմ երբ անպատեհ բանի վր̃ չի գայ տավիճի, ինքն պիտի զայնպիսին չաւրագործն բոլըվաթ անէ, տավլին քշէ և 'ի վերջն ածէ, որ անպատեհ բանն Հայազգի մէջ չի մնայ:

Մեսքի Սլուկան պիտի վըյթից բօղօճն տանէ բօզվանին մօտ, որ ֆալան սահթենը կաննի 'ի դատաստանատանը ճուջեապ տալու Նքթօրին. և շարիաթին առեն զՍդրօնաներ դատաստանի մօտ բերել. կմ նայ ուսդօմք դուրս հանել. կմ Տէքրէթին զօրայ զուսնչլուն փակել, թակել, զճուրումներն պահանջել, զդատա-

տանատունն պահել. և զնմ խնամքն ուրէնտին ա-նել վըյթին հրամայելունն:

### Ինչպէս լինի Պատարագն:

285. ա. Պիտելի է թէ հէչ չէն անել դատաստան հոգևոր պատճարին վր, քահանայի կմ եկեղեցականի, կմ եկեղեցու բանի վր. կմ ժամի բակին և քահանաու բակին մէջ եղեալ բանի վր. կմ երբ շարիաթն է դէմ մյ օրինաց, և ոչց խորհրդոց, կմ դէմ եկեղեցւոյ կանոնաց. վր հաւատ ուրացողաց, պատակերաց, հայհոյիչներուն, և տօն չիբէրնողաց, վր հարմնախօսուն, նշանտուքնուն, փսակաց, և 'ի մէջ ամուսնեայց հարամութն կմ տնավերուն, և այլ: զայսպիսի շարիաթն պիտի խրկեն վրպոլ Տր Պրօպօշչին մօտ, որոյ խրատին խապուլ չի կեցողաց դատաստանն Լւովայ հայ Առաջնորդին ձեռն է, 'ի կապելն և 'ի արձակելն: Այլ քահանայի զարնօղն և հոգևոր դատաստանի խառնվօղն ան սահմէն բանադրեալ լինի:

286. բ. Հէչ չիլալ շարիաթ կիրակի, և տօն օրն. ոչ մէթանը, ոչ մէհանուամ, ոչ իչգուին աղագն, ոչ երբ դատաւորն կմ Մդրօնան հարբած, խելագար, և թերահաս խելաց կմ տարեց չլինի, և ոչ առանց վըյթին կամ սուպոէլէկաթին, և ոչ առանց մէկ քանի աղանուն:

287. գ. Մօյթն և Աջան չի պիտի մարդ անարգէ, զարնէ, փակէ, կմ ճուրումէ, առանց տեսած շարիաթին և տէքրէթին:

288. դ. Պատէնցիան և ժամադրուն դատաստան անելոյ, միայն երեք օրն նշանեն, երկուշաբթի, չորեքշաբթի, և շաբաթ օրն:

289. ե. Այս հայոց Ուրէնտն զօրուն ունի ամ դատաստան տեսնել սալդ Հաշքօվայ հայ բնակչաց մէջն, կմ երբ այլազգն զՀաշքօվցի հայն տավի կանէ: այլ երբ Հաշքօվցի հայն տավի կանէ զայլազգն, կմ զայլուստ եկած հայն, անժուամ դատաստան կանէ Կուպէրնաթօրն: Իսկ թէ Կուպէրնաթօրն խրկէ նշանովմը իրեն ձեռագրով Հայ ուրէնտին մօտ դատաստան կտրել անպէմնուն. անժուամ զտէքրէթն իւրեանց պիտի բերեն կուպէրնաթօրին մօտ, և թէ խապուլ

Իլայ պիտի ստորագրվի կուպերնաթօրն այն տէքրէթին ներքեւն, և բիսարն գրէ հայոց աքթանու մէջ ։

290. Է. Երբ բանէհէրնուն ժամանակ այլուստ Հայն շարիաթ ունի թէ հային հետ, և թէ այլազգին հետ, վըլթն պիտի անէ ինչպէս Պաանին Իրավայի մէջ կու հրամայէ ։

291. Ը. Որդ 'ի Վրատէնցիային դատաստանին լընելոյ ժամադիր աւուրն, Մ ջյլթն կմ Մուպտելէկաթն Օղանուն և Իիսարին հետ նստին 'ի դատաստանատանը ։ Ուռաջ չօգման կոչեն զոք Մգին, զի տացէ նդ զխմանալն պշարիաթին պատճարներն, և զարդար տէքրէթն ։ ապա հնչեցնուն պիղտի զանկըրկին ձայնովն որ լսեն շարիաթ մոնօղքն և մտանեն 'ի ներսն ։ և Յանուն ոյ դէնեն սեղանի վր քի խաչելութին, և զՄքթանուն Իրօթօքուլն կազմած գիրքն ։

Իսկ յատեան դատաստանին առջեւն սուսա և ամ հարկիքովն կայնէ Մքթօրն և Իօզմանին ։ Առաջ կուլսեն զամ տավան Մքթօրին, և ապա զճույեապն Իօզմանին ։ Նյլ բիսարն կու գրէ խօսքէ խօսք զերկսին ալ պատճարքն Մքթանու մէջ և հնչելով զանկակին, սդրօնաներն դուս ելանեն նա Մուսդօմք, և առաջ աղաներն ալպահի ճօթէն կասեն զիւրեանց հասդըցածին պէս Տէքրէթին սէնդէնցիան ։ այլ Մ ջյլթն լավ քննելով պշարիաթին պատճառներն, և զաղանուն դատած սէնդէնցիաներն, կու վէճռէ զարդար տէքրէթն, և գրել հրամայէ Իիսարին ։ ապա հնչելովն զանկըրկին, և մտանելով 'ի ներս Սդրօնանուն ։ Իիսարն կու խօսեցնու զտէքրէթն ։ Իսկ սունչլուն անկից դուրս չելել, մինչև տէքրէթին գօրայ բաւական անէ, զնախըլատն, և զճուրումն վըճարէ ։ կամ փակ նստի, մինչև քէֆիլ չիտայ, և այլ ։ Նյլ դատաւորք չօգման գօհանան զայ, և գնան ։

292. Թ. Երբ Սդրօնանուն պատճառնուն շիտակ ճշմարտութի չի իմանվալ, անժուամ առաջ ինքվիզիցիա լինի քննութ վկայութ կմ երդմամբ ։ բայց երդումն չի հանիլ ծուռ, սուտ, և ոչինչ բանի վր, կմ անպէտք տեղ ։ այլ միայն երդուենալ կուտան շիտակ, ճշմարիտ, և մեծ բանի վր ։ և այնպէս 'ի հարկէ պէտք տեղ որ առանց երդումի հէչ չի իմանվալ ուրիշ արտաքրեալ պատճառովն ։

293. Թ. Մէքթանբերն կու գրեն այսպէս Օրինակայումս:
Մէքթում եղև 'ի Աստաբօլայ քաղա-
քում. Յամի տն 1751. մարտի ամսոյն
Թ աւուրն: Մառաջի ազնուոյ տ. տ. Ու-
բօժիվիլօվանի Հայոց Լուսավայի դտուրին
և Սօյթին. և առաջի մեծարելի տ. տ.
տ. տ. տ. տ. տ. տ. նոյնոյ իւրիսդիկ-
ցիայիս դտուրաց և աղայից:

Ի մէջ տ տ. Մէքթօրին միոյն, և բօղվանին տ տ. միւս կողմանէ. Մէքթօրն յառաջան ժամադիր դատաստանիս առաջադրեաց զտավան բօղվանին վերայ այդէս և այդէս. և բօղվանին պատասխանեաց այսպէ՛ս և այսպէ՛ս: Իսկ ներկայ դատաստանն իմացեալ զառաջադրեալ յերկոցունց կողմանէ քօնդրօվէրսիան: Արովհետև այսպէս և այսպէս. կամ 'ի լիակատար ինքվիզիցիայէն ստուգեցաւ այսպէս և այլ. կամ կոչելով զնոյ անուն երդուաւ այսպէ՛ս և այլ այսօրվան Տէցիզիայումն զայսպիսի Տէքրէթն վէճռեաց. զի սունչլուն տ տ. այսպէս. Ճուրում տացէ Պառանին այսչափ. և եկեղեցւոյ այսչափ. կամ նստի փակ զնտանի մէջ այսչափ. կամ զհալալ ապրօնան հաշտեցնու, այսպէս և այլ, զօրութ ներկայ Տէքրէթիս:

294. Ժ. Երբ համդիպի որ մէկ Սպրօնան խաղուլ չի կենայ Հայոց տէքրէթին, անժուժ կու բողոքէ բերթին դատաստանին մօտ ասելով դատաստանի մէջ աբբէլլիւյէ. և խնդրէ որ տան իրեն ձեռն զօրինակ տէքրէթին, բէր էքսդրաքթում. և այն տէքրէթին էքսդրաքթօվն կերթայ կուպէրնաթօրին մօտ կամ Պէկլին մօտ, կամ Թօմիսարին մօտ. և խորդած տէքրէթն կենէ կու բերէ Սօյթին ձեռն, որ տայ բիսարին ինտուքօվայ անել, գրելով Հայոց ալքթանու մէջ:

295. ԺԱ. Այս դատաստանին ճուրումներն և նախլաան եկեղեցու գանձապետին կուտան. որ ժամի գանձանակին մէջ դնէ քահանուն առջևն: Այլ երբ ճուրումն բերթին լինի, վօյթն կուտայ կուպէրնաթօրին և քվիթ կառնու:

296. ԺԲ. Դատաստանին դիմաց զավղայ անօղն, կամ դատաւորաց անարգօղն 'ի հոն կու փակվի, և ժամի ճուրում տայ, և աղաչէ զդատաստանն:

297. ԺԳ. Մէքթում շարիաթին գրելէք, կամ էքս-

դրաքթում հանդչէք մինչև շըռատակ քիսարին հախն է ։ Մոզօվատայէք ա շըռատակ . և ուէքրէթից բ շըռատակ դատաւորացն է . և ա փշյ խըռմութ անուղին է . զայս խարձն սունչլուն տայ ։ ||

* Ըստ հնոյն հրովարտակին ատենձանոյ . որ բարեպաշտութե . և քաղաքավարութե Սուչքօվայ նորաստանին Հայոց ազգիս ։

298 . Յն ՎՌՀ ծՌյ Օքսէնտիոս Խոսրովայնիկոււեանց Հայոց վրդպտ ։ Յանձնարարական ինձ տուեալ իշխանութբ 'ի Գերապայծառ Տէր Յակովբայ Աւգուստինօվիչէն մայրաքաղաքի Լեօպօլի , և ընդհանուր Լէհաստանեայց դիմի Հայոց Արթեշխ Արքեպիսկոպոսի , և իմոյ Առաջնորդին , յամի տն 1747 մինչ առաքեցայ 'ի տես Սուչքօվայ ժողովրդեան , գտեալ զնա սոտ իբրև առանց հովուի ցրուեալ ոչխարս , կարի ազտասուեցայ 'ի վրն խեղճութե նոցին , և իսկոյն զպաղատանացս արդուհալն մատուցի բարեպաշտի Հռովմայ իշխանին , Սուչքօվայ ժառանգ Պէկին , Յովսեփայ Լուպօմիրսքեյին . զի յիշեալ 'ի դաշինս Հռովմայեցւոց նախնեաց սէր միաբանութե ը լուսաւորչայ Ազգիս ուղղափառացն , խնամեսցէ նոյնում ազգին 'ի Սուչքօվայ բնակելոյն , հիմնելով զեկեղեցին , հոգետեսուչ իւրեանց քհնայոււ . և զՊրիվիլլեյական Իրաւանս նց շնորհելով . որ Ածափառաբանութե , և քաղաքավարութե նոցունց . 'ի պահպանութի և 'ի պայծառութի Սուչքօվայ քաղաքիս . որպ և իսկ հաւանեալ բազում պաղատանացս շնորհեաց զնմ խնդրուածս իմ . ետ զբրաւան 'ի ձեռն իմ , և հրամայեաց իւր խազինային դրամօքն շինել սոտ զքարաշէն եկեղեցին հանդերձ տմ ներսի և դրսի պէտք հարկաւորօքն ։ Արդ իբրև չորսամեայ իմ զբաղմամբ և յոյժ կարի աշխատանօքս , զայս Հայոց եկեղեցին յաւիտենական հոգւոյս յիշատակն կատարեցի , և զՊրիվիլէյն բրավային Լեհաբառ տուեալ 'ի Հայ լեզու թարգմանեցի , և պահեցի 'ի վայելումն Սուչքօվայ ժողովրդեանս , որպ և այլ քաղաքաց Հայազգս 'ի Լեհաստանի վարժէ . փոյթ եղև հոգետեսուչ պաշտօնի իմում որ բարեկարգի քաղաքավարութեան ժողովրդեանս . բացատրել նց

զա̃ծահաճոյ և քրիստոսադիր աւանդութ̃իս, և զքրիստոնէականի կենցաղուսիս բարեկարգութ̃իս. ուր և իսկ լիակատար 'ի նորին վերյիշեալ գերապայծառ առաջնորդից տուեալ ինձ իշխանութ̃բ և զօրութ̃բ. և 'ի սովորական արևելեան և յարևմտեան Հայոց լուսաւորչադաւան ազգիս աւանդութ̃է զհետևեալս ըստ Ածայնով օրհնութեն, անխախտ վայելմամբ պահելիքս յետ̃նս, կացուցի զայսոսիկ սահմանս ||.

## Ա. ՍԱՀՄԱՆ

### Վ̃ ժամանակութենէ և տևական կուսութենէ:

299. *Որովհետև որ եկեղեցին այ̃ տունն է՝ յարկն սրբութեց. Հրեշտակաց և սրց իջևանն. մարդկան Ածափառաբանութեց և աղօթից ընդունարան, մեղաւորաց սրբացական. հոգւոց փրկուե, և մեռելոց համրուան: Իսկ 'ի նմ̃ քահանայն պատարագօղն և հաշտարարն է. գիշեր և ցորեկ պաշտօն ժամօք սղ̃միւք և աղօթիւք բարեխօս է և միջնորդ է վ̃ն իւր ծուխին հոգւոց փրկութե, և աշխէնի խաղաղութե, և պահպանութե քաղաքիս և տանց, վտանգելոց և ապրանաց: Արձակօղ 'ի մեղաց խոստովանահայրն է, և հիւանդաց սրբութե տալով հոգէտեսուչ, և ննջեցելոց արքայութենայ հասցնօղն է:

Պարտ է ուրեմն ժամանէր ժողովուրդն զիւրեանց եկեղեցին շէն և պայծառ պահել անօթիւք, զգեստօք, զարդարանօք, մոմ, և ձէթով, խնկով, և բաժկացով. խաչն աւետարանով, և այլ ներսի և դրսի պիտոյիւքն լաւ հոգալ:

Ցանկալի ձայնին, իբրև Գաբրիէլ հրեշտակի փողոյն մտիկ անել ա̃մ պատարագին և ժամալածքին իբրև ա̃յ երեսի ցանկալով գնալ. և զքահանայն կելուրն չի խափանել. այլ ը̃ Հայոց աւանդուե թամամ տեսցեն. 'ի ք̃ադիր սահմանէն (Ղուկ. Ժ. 7:) զի արժանի է մշակն վարձու իւրոյ. ուր և Պօղոս առաքեալն (ա̃ Կորնթ. Թ. 12.) պահանջեաց, Ոչ գիտէք եթէ որք 'ի տաճարին գործեն, 'ի տաճարէ անտի ուտեն. և որք սեղանոյն պաշտօնեայք են, 'ի սեղանոյ անտի վայելեն: Նոյնպէս և տ̃րն հրամանեա, որոց զաւետարանն աւե-

տարանին, յաւետարանէ անտի կեալ։ Արդ և Ռաշքօվայ ժողովուրդն գիւրեանց քահանու վրպ̃ւլի տէր Նրօպօշչին կէլուրն սիտան այսպէս ։

ա. Աւագ գանձապետն ման պաձէ զգանձանակն, որ̃ բրավային մեկնութե մէջ հասկըցուցի ։

բ. Պաշխայ եկեղեցնայ գանձապետն, այն ժամի ընտկէն որ վրպ̃ւլի տէր Նրօպօշչին խուցին մէջ կու պահէն, հէչ ուրիշ բանի վ̃ր չիպի խարձէ ընդ պատուհասի բարկութե ա̃յ, սուրդ միայն 'ի փառս ա̃յ և եկեղեցու վ̃ր ։ (Առաջնորդին ամէն տարի կաղանդչէք ա̃ մանձտւ ոսկի, երբ խօձանայ գանձանակն. և քահանու վրպ̃ւլի տէր Նրօպօշչին ամէն տարի 'ի տաղաւարնուն ժամուց դրամ երկուաքան խուրուշ ։) Արդ հիմիկուցէն պիտան ամէն տաղաւարին կէս խ̃րշ, չորս քվարդալնի պատրգնուն ։

գ. Ու սովորական կէլուրն քահանու այսպէս լինի. ժամուց դրամն կէս խ̃րշ. Ք̃ի ծննդեան և Նոր զատկութե տանօրհնելչէք 'ի Տօլվաթաւորաց ա̃ խ̃րշ. միջնեւաց կէս խ̃րշ. 'ի ընէնձբէրից ա̃ ռուպ. 'ի ջուրօրհնելոյ մանկաբերացն ա̃ շահի ։ Կնունքից, կէս խ̃րշ. տղաբերից քաւսունվելուն ա̃ շահի ։ Հարսնախօսուե նշան օրհնելչէք կէս խ̃րշ. յերից ժամու մէջ պսակին ծանուցմանց կէս խ̃րշ ։ Պսակդրամին 'ի տօլվաթաւորաց, կարողութե գօրայ. 'ի միջնեւաց ա̃ ոսկի. և 'ի ընէնձբէրից կէս ոսկի. պսակին ութօրէի երես ջուրօրհնենքէն հարս և փեսին ա̃ դինֆ ։

Թաղմանչէք պիտան, որ̃ և պսակդրամն և զմոմն, և զայլ խարձն արասցէ մեռելին տէրն ։ մէկ գերեզմանօրհնելչէք ա̃ շահի. մէկ զանկակ քաշելուն ա̃ շահի ։ Քռաւսուն պատարագնուն յիշատակնու գ̃ ոսկի ։ 'Ի տարելից եկեղէքվիայէն ա̃ խ̃րշ. ա̃մ մատաղին կէս խ̃րշ ։ Աղցացին ա̃ծանեղին՝ ատաթին գօրայ ։ Իսկ անհաղորդ մեռելոյն մարմին արժանի չէ թաղման, և բանադրած կամ նզոված մեռելոյն մարմինն հէչ չի թաղվիլ, մինչև յեպիսկոպոսից գայ արձակումն ։

## Բ · ՍԱՀՄԱՆՆ

### Սահման Հարսնախօսութեան, Նշանտուութեան, և Հարսանեաց ։

300 . Երբ որ նախկայէն հարսնախօսութիւն լինի, խնամիքն հրաւիրեն զքահանայն, որ իմանայ թէ կու հաճին այն հարսնախօսութեան իւրեանց դուստր և որդուն մէջ ։ և քահանայն իմանալով որ չորսուն սրտից գոհ են, և այլ ինչ պատճառաւ մի կի հաճին, կու դրէ զքրօնիկն զինչ որ ծնօղքն խոստանան իւրեանց զաւկերն ձէհէզ, և ինչ փեսացուն կու խոստանայ երեսջուրն իւր հարսնցուին . և հաւանելով խնամոց, կու հարցընու քահանայն հարսին և փեսացուին, թէ կամաւորվեցան հարսնախօսութեան և իրուր ամուսնանալոյ ։ Այսպէս եղ զնոսա, և հաստատուն գտեալ, լինի նշանտուք ստաթին գօրայ . տալով քահանայու պաշխիշ, և դնեն զժամանակն հարսանեաց ։

Այս երկուսում օրն տանեն զնշաններն յեկեղեցին օրհնել պատարագի մէջ, տալով քահանայու ժամուց ։ Ապա քահանայն ծանուցումն անելով ժողովրդեան վասն եղած նշանտուքին՝ կառնու զմատանիքն կերթայ հարսին և փեսացուին տունն և դնէ իւրեանց չնահաւոր մատիցը ։ Ապա հարսանիքն այսպէս հեռաչակեն ։

Երեք շաբաթով առաջ իմաց տան քահանու . որ 'ի մէջ երեք կիրակէից հանդիսաւորութեան ծանուցանէ վասն պսակին լինելոյ ժամանակի, 'ի մէջ այս անուն հարս և փեսին, և այլ ։

Այս հարսանիքն միայն երեք օրն հեռաչակվի . Նախ բերեն քահանու մօտ խալած, մի հաւ, և իւղքու, և պաշխիշ մահրամայ, և պսակգրամն ։ Ապա երբ կտրիճ նուն պրասդավայ իցէ, կու հաշտեցնուն զպրասդավան . անդ նշանեն զոտընվոր կտրիճվորս . և յառաջնում աւուր կտրիճվորաց մարշալօքն զաւազան 'ի ձեռին տանէ զկտրիճվորաց հարսին տունը . անդ գանեց կանին մարշալօքին շարելնունպէս ընդ աղջիկանց . և յարկից ուբրայ չեն ձգեր . այլ մի վատրայ բիվայ իրենց կուտան խմել . և զաւազանին մահրամայ . և ցորեկվան լուսուն ելանեն անտի ։

Երկուսում օրն խաչլուներն, և կտրիճվորաց կու

միացեալ բարիքս. և քաւութիւն պատարագմանն հոգւոյ համար այսպէս. և մատաղին. և 'ի տարբերեցին, և այլ: Վասանն յշտնկ, այսպէս. և Փոխանուշ յաւիտենական պատարագնոյն՝ այսպէս: Նշանաւորդին այսպէս. Տալիք ունիմ այսպէս. Ընծելիք ունիմ այսպան. զատուցեալ վերճարել պարտականն է կենս իմ ա. ա. բարիքն: (Դրհեղն կնոջն Թամամ Համն. Նմանապէս և յիրեանց խոստացեալ նոյս երեսուն. և այսպէս գրել. մերտալ որքոնկարան). և խոստացեալ բարիքս, և պարգևաքս. տունն և տանանեցս վայելեսցէ կենս իբրև տիկին, և մայրն տղոցս, զորս շահելով և բարեկարգելով, հոգւոյ բարի յշտկ լիցին և մեռան այ և իմ օրհնութենս ամփոփ և բարեկիր: Իրդ վասն զի տղաքս բարեօք մեծանան, և յուսեքէ զրկանք չունենան, կամ զի զմնացած իւրեանց բարիքս չի փուճացնուն, և խելաւորվին, պարտին հնազանդիլ, և խօսքն բերանոյ Քաղան մայրոս ա. ա. զի զնա տնատէր և օրէնքուն նոցա, այս կտակովս Թողում. և պարտաւորեցանեմ այ համար: Այլ չիբէունօղն, կամ քանտօղն զայս իմ դեսդամենդն Ճուցեսալ տացէ ինձ յահեղ դատաստանին այ: Իսկ վասն աւաւել վաւերոր և զօրութի ունելոյ այս ինձանէ կամաւոր կտակած դեսդամենդին. իմ ձեռամբս կամ մատօքս, կամ նշանով իմ խաչին փձարձեցի, ամրացուցի և յատուկ ձեռամբս ստորագրեցայ ա. ա. և զառաջիկայ վկայքս ստորագրիլ արի.

՚Ի Մոսկովայ ամծապահ քաղաքում. Թվին ա. ամսոյ ա. աւուրն:

Դ. ՍԱՀՄԱՆ

Վասն Քահանայաշինութեան:

302. Փոխանուշն մարդու հոգեբաժին յիշատակն է, զորն որ կուտայ 'ի ձեռն իւրեանց վրիպուլի իր Երոպօշէին, և գանձապետացն գրելով և տալով որպէս և կամի, վասն յաւիտենական պատարագնուն այս եկեղեցու մէջ կատարելեաց՝ վասն իւր հոգուն, կամ վասն իւր ծնողաց հոգուն, կամ վասն այլ ննջեցելեաց հոգուն:

Այսպէս յանձնեն պատարագնուն նաղո տառն կու-

տան . ով կամի որ ամէն տարոց տարի մէկ պատարագ մի կատարուի պիտոյ նաղտ վեց սաղ թուրքի խուրուշ ։ Երկու պատարագնուն, պիտոյ երեք մաճառ ոսկի . և չորս քվարդալնի պատարագնու պիտոյ վեց մաճառ ոսկի ։ ԺԲ ամսագլօխ պատարագնու ԺԲ մաճառ ոսկի . Ծ ամէն շաբթայ պատարագնուն ՀԵ մաճառ ոսկի ։

Արդ չունքի որ այսպէս յաւիտենական յիշատակն 'ի Ռաշքօվում վանն յամէնուստ Թշնամեաց և պատահմանց կողմանէ ահուն՝ պահել և շահել յուղնս միշտ 'ի վտանգի գոլով անհնարին է զայսպիսի հիմնեալ Փունտուշնուն սումման պի խրկէն 'ի մայրաքաղաքն Լէվօվայ, Գերապայծառ Ռոգէշխ Առաջնորդին ձեռն . որ տայ Լուսաւորչայ հիմն գանձանակին Պրօվիզօրնուն ձեռն . և անկից պիտի առնուն ձեռնագիր ատեքաւրացիան, Թէ ինչպէս սումման հասաւ իրենց ձեռն . և ինչպէս պարտական մնացին զայն շահեցնել . և յուանս պահելով ամէն տարոց տարի Փունտուշին կօրայ հախն խրկելու Ռաշքօվայ Տէր Պրօպօշչին, և զայնպիսի ատաէքաւրացիան պիպահէն Ռաշքօվայ եկեղեցու գանձանակի մէջ, նախ Ռքթանուն մէջ, Ռուրէնտին, և յայսմ գրքի մէջ ինտուգօվաթ անելով, մի յուղնքն յիշատակին գիտենալոյ հետևողացն քհնյից և ժողովրդեան ։

## Ե . ՍԱՀՄԱՆ

Մասն շահու տալոյն զգանձանակին արդեանց ։

303 . Ով կամենայ զգանձանակին դրամն շահեցնելով աւելցնել, պարտ է տալ գանձապետաց ձեռն Թամասուկ և վկայ, և րէհին դնել ոսկեղէն կամ արծաթեղէն, կամ մարգրիտ և քլէնօթից, և ստորաձեռնագիրն այնպէս լիցի, Թէ մինչև Ա տարի, որ ոչ կարնայ հանելու զրէհինն . որն որ երկու տակ գնոյն աժենայ արած ստըկին կօրայ . նայ վօլնի իլայ գանձապետնուն զայն րէհինն ուրէնտին դիմաց գին կտրել, և ծախել, և Թամասուկին գօրայ զգանձանակին սումման և զշահն առնելով գանձանակի մէջ դնել . այլ զաւելի խուսուրն պիտան րէհնին տիրոջը . իսկ Թէ գանձանակի մէջ պակասուԹն իմանայ, գանձապետքն հիսապ տալով ամէն նոր տարում առաջի Ս . Տէր Պրօպօշչին

իւրեանց քաղկէն պարտին լման միձարել զամ պահպա- նութին և զարդարն. այլ պչօրն կամ զլաւթն հէչ ընհին չպիտի դէնեն ի սահմանաց զօրութէն:

## Զ. ՍԱՀՄԱՆ

### Ա. Պրոտէստանտ, և Բ. Սանսեթվորաց Հետևողաց:

304. Ի՞նչ իշխանութիւնք պիտի ունենան իւրեանց մէջ Հրէից և Պրոտոտականայ անընտով իւրեանց պահապանի մէկ սուրբին Ս. Յ, Ս. Աստուածածնոր, կամ Լ. Լուսաւորչուն կամ այլ՝ոց:

Պրոտոտական քիւրքչոց և Թէրզընուն, և որոնք ան- խամ կին բանին, որոց Պոյէթանին պաշտպանութեան անընտով լինի:

Պրոտոտական սուրուկձոց, կօշքարաց, մագմանո- ղաց, և խասսապչոց, և այլոց ընդ պահպանութեն որոց Գրիգորի Լուսաւորչին:

Պրոտոտական ամէնայն կորիձագալերուն, ընդ պաշտպա- նութեն Աստուածածնորն միշտ կուսի Մարիամայ:

Այս ամէն պրոտոտականներն պիտի ունենան պաշխայ իրենց գանձանակայ սնտուկներն, և մէջը պիպահէին զի- րենց Նրավային քօրայ արդիւքուլըներն, ընկերդըներն, աքթաներն, կելլուրի և խարձի Հափթարներն, նաղտ սաակն, և զժողովածն Ճուրուններուն, կամ ընհին- ներն երբ կուտան շահու սաակն: Նու այն սնտուկէն չպի- պի խարձեն ուրիշ տեղ, սալդ եկեղեցու վր. Սուպէ- նորգին, քահանային, և աղքատնուն, իւրեանց պաշխայ արդիւքունուն քօրայ. ինչպէս այլ քաղաքնուն մէջ Հայազգն ունի յառաջնորդից իշխանութեան սահմա- նած. անոր համար:

Ամէն պրոտոտականայ ամէն տարոց տարի եկեղեցիայով իւրեանց միջէն կընտրեն գլօխ Ե Սդարեսդայ Հեխ- միոդըներ, և բիսարն, որ գրէ զամ պէտք եղեալըն: Սընտուկն լինի մեծ Հեխմիսդրին մօտ, կամ քահա- նու խուցն. մէկ գոցին բալինքն պիլայ պիզաի Հեխ- միոդըրին ձեռն. և միւս բալինքն աւագ աղըօրը ձեռն. և այլ:

Այգպ կորիձվորաք իւրեանց եկեղեցիայով պի ընտրեն իրենց երկու խելօք տանուտէր Փունտալթօա, և ամէն

տարի պի ընտրեն իրենց միջէն չորս գլխաւոր վաթահս․ ա՟ սդարըրդայ․ բ՟ գանձապետ․ գ՟ մարշալըքն․ դ՟ բի-տարն։ Այս պի կառավարվին զիւրեանց պրասդավայ արդիւքութիւն գօրայ Նաւաջնորդին․ և այլ։

Ամ որ ուզենայ պրասդավայի մէջ գրվելու, պի խոստավանվի, պի հաղորդվի, և ուխտ պի խոստանայ եկե-ղեցու մէջ քհնուն դիմաց․ որ զանուն պրասդավայ մտնողին կու գրէ իւրանց սրբի բեմին առջեւն, մոմ ձե-ռին բռնելով, և չոգման․ և վերխնէկօ պիտայ սընտկին ա՟ դինֆ։ Ամէն տարոց տարի պրասդավին մարդն պի-տայ րօչիզնի ա՟ րուպ։

Որ եղբայրն արդիւքութիւն բռնքթայ չի բերնէ, կի ճուրումին զնա, և կի դատեն պիթիւն պրասդավայով նստած սընտկի մօտ սէսիային ժամանակ։ Պրասդավա-ներն ամինով ամէն տարի կու վիճարեն իրենց սընտկից քհնու չորս քվարդալնի պատարագնուն մէկ ոսկի մա-ճառի։

Ամ պրասդավայի աղքարքն իւրեանց ձեռի կերօնոմէն պիտի գտվի ամ թափօրնուն մէջ․ և չի կեցօղն ճու-րում պիտայ սընտկի ա՟ լիտրայ մոմ․ և կիրակէից կմ մեծաւուր սրբոյ պատարագի չի լօղն պիտայ ճուրում ա՟ լիտրայ մոմ․ մինչև իրեք հետ․ ապա ժամին դռա-նը երկաթում կու փակեն։

Ի․ ՍԱՀՄԱՆ

Սա հասարակ ամենեցունց։

305․ Այս ևս ով որ Տր Օստկութն չորս շաբթե-նը մէջ չի խոստովանվի կամ սրբութի չառնու Աւագ-քօվայ քահանու մօտ՝ բանադրանք նորա կի հասնի, և ճուրում պիտայ քահանու դատաստանի մօտ, և եր-կաթի մէջ ժամին դրանը ապաշխարանք քաշէ։

Դ Տր Օստկին ով որ իր տանէն Ռոսքայ չի բերէ ժամու մէջ օրհնելու, պիտայ ա՟ օխայ մոմ, և յերկա-թի մէջ պի փակվի ժամին դրանը։․․

Մեծ օրէնուն, Հարանիքնուն, Թազմանուն, Տաղա-վարնուն, Մատղընուն, և յայլ ննջեցելոց յիշելուն, ժողովուրդն խալաճ, և կերակուր, և ըմպելիք իւր-եանց տներուն կու խրկէն քհնու և աղքատացն։

Գրեցի Տէր Օգոստինոս Ագիլա։

## ՊԱԼԴԱ

306. Է գեղեցիկ քաղաք վաճառականութեան մերձ 'ի Պուկ գետ (380). որ գոլով սահմանագլուխ Լեհաստանու և Ռուսաստանու՝ յարմար է յոյժ առեւտրութեանց։ Յառաջագոյն կային աւա իբր 30 տունք Հայոց, որք և շինեցին քարաշէն եկեղեցի վայելուչ, և բնակարան ժողովրդապետին, որ մինչև ցայժմ նստի անդ և հովուէ զլէհ ժողովուրդն, զի չիք անդ հայազգի, բայց եթէ 'ի մօտաւոր գիւղօրէս։ Նոյն եկեղեցի ունի կալուած յեկամուտ ժողովրդապետարին, որ է մի 'ի նախապատիւ կանոնիկոսաց աթոռոյն Միլանի։

## ԳՐԻԳՈՐԻՊՕԼԻՍ

307. Է նոր քաղաք ոչինչ կարի հեռի 'ի Պալդայէ և 'ի Ռաշքօվայ, ուրանօր հաստատեալ յետ անցանելոյ ընդ-դանադան գիւղաքաղաքս Լեհաց։ Ի ծայր քաղաքին գոյ վտակ որ կոչի Չօրնա. յորոյ անուամբ բոլոր երկիրն անուանի Չօրնա։ Սակայն 'ի շինութեան անդ յանուն վերակացու իշխանին կոչեցաւ այս քաղաք Գրիգորիուպօլիս. որ հիմնեցաւ յամի տն 1792. յուլ. 25. հրամանաւ Կատարինէ Կայսերուհւոյն Ռուսաց։ Դիրք քաղաքիս է երկայնանիստ՝ առ եզր Տնեստր գետոյ, որ անցանէ ընդ աջակողմն. շինուածք տանցն և կրպակաց անշուք է գլխովին, և վաճառականութիւն նուազ յոյժ։

Եկեղեցիք Հայոց են երեք. առաջինն և մայր եկեղեցի է տաճար սրբոյն Կատարինեայ փայտաշէն ընդարձակ և անշուք, կառուցեալ 'ի վերայ հրապարակին, որոյ վասն գումար ինչ դրամոց տուաւ յարքունուստ առ 'ի քարաշէն կառուցանել 'ի նմին տեղւոջ։ Երկրորդն է յանուն Լուսաւորչին. իսկ երրորդն է յանուն սրբոյ Խաչին, զոր յաւուրս մեր կանգնեցին քարաշէն, բայց անձև, առ երի առաջնորդարանին, ուր է դպրատուն Հայոց անշուք։ Տեսաք 'ի սմա մարմարիոնեայ տապանս բերեալս յԻսմայիլէ ընդ իւրեանս. որք չեն այնչափ հնագիր. գր. * Այս է տապան հան-
» գըստեան Ստեփանի որդի Աստուածատուրին, որ հան-
» գեաւ Թվին ՌՃՀ ին. յուլիսի Ժ Ա (1721)։

Տեսաք յայտնիկ եկեղեցիս հին գրչագիր Յայսմաւուրս գրեալ 'ի վերայ մագաղաթի, Աւետարան մագաղաթեայ ընտիր գրեալ վասն Հեթմոյ Թագաւորին. Ճաշոց, եւն: Նոյնպէս տեսաք զյիշատակարան Ալվավլի՝ գրեալ Թաթարերէն 'ի 1630. 'ի տան ազնուական իշխանին Պօկոսան Խլանիչի Սադովլ. որ բազում մեծարանօք պատուասիրեաց զմեզ զաւուրս ինչ:

Այս քաղաք է Հայոց, և մեծ մասն բնակչաց են Հայք եկեալք յԻսմայիլէ, 'ի Քիլիոյ, 'ի Պաշտանէ, և 'ի Սուչքօվայ. և կէս մի յաւելեալ են անտի 'ի Ռուսաց և 'ի Մոլտովանից: Յառաջագոյն կային 900 տունք Հայոց, բայց բազումք անսովոր գոլով օդոյն՝ մեռան, և ոմանք ցրուեցան. այժմ հազիւ գտանին 350 տունք, որք ունին առանձին դատարան և 5 դատաւորս, որք որոշեն զամենայն դատս ազգին: Գլխաւոր դատաւորք Պրոկուրոր ձայնին, և ունին զերկու Սաժմանս. որոց մին նստի 'ի փօլից, և միւսն 'ի դատարանի: Սոքա ոչ միայն դատեն զժողովուրդն, այլև հաւաքեն զտուրս քաղաքին, որոյ քաղաքապետ կայ 'ի կողմանէ տէրութեան: Տեսաք 'ի դատարանի անդ զհայերէն դատաստանագիրս, որոյ կանոնք առեալ են ըստ մեծի մասին յաստուածաշունչ գրոց. այլ այն գոլով անբաւական, այժմ վարեն զկանոնագիրս Ռուսաց:

308. 'Ի մէջ դատարանին տեսաք զոսկեզօծ նշան կայսերական 'ի վ̄ր փառաւոր արկեղ, և 'ի նմին կայսերական հրովարտակ կամ պարգևագիր տուեալ Հայոց 'ի Պօղոս կայսերէ յամի 1799 որով տայ զանազան արտօնութիւնս և 30 հազար տէսէթին երկիր սակս երկրագործութե, ուր մի տէսէթին է 240 քայլ քառակուսի. զորոյ ապա զկէսն առեալ ետուն գերմանացւոց: Ահա պատճէն հրովարտակին. * Աստուծոյ ա-
» րագահաս ողորմութեամբն մեք Պօղոս առաջին կայսր
» և ինքնակալ ամենայն Ռուսաց . . . Հաւատարմա-
» գունից Հայոց քրիստոնէական օրինի հասարակութեն
» քաղաքին Գրիգորիուպօլու մ̄մ կերպի կողմանց ա-
» մենեցուն ընդհանրաբար և ամենեցն յատուկ մերս
» կայսերական ողորմածագոյն բան . . . ե̄. Ըպահան-
» ջել 'ի նոցանէ զդրամս վ̄ս շինութե տանց և խանու-
» թից, գործեաց և վաճառականութե . . . ե̄. Ս̄ն ադ-
» քատաց շինութեց 8041 ռուբլի, վ̄ս շինութե նաև

» վանիցն և աւագ եկեղեցւոյն ... Գ. Տացի 30 հազար
» տեսէթին երկիր մեր հայոց ընդ Գրակլատին որ 'ի 1794.
» հոկ. 12. յաւելուլ յայնմ նաև 30 հազար և 400
» տեսէթին մինչև ցգետն Տաշլիկ ... Դ. Նշան քաղա-
» քին ընդ նոյն Գրակլաթին պատրաստել ... Ե. 'Ի 4
» յունվարի և 'ի 19 ապր. 1799 ամի հրովարտակօք
» մերովք վերահաստատեցեալ զիրաւունս ընդարձակօ-
» րէն վարել հայոց 'ի կայսերութեան մերում զդատա-
» նութիս իւրեանց քրիստոնէական օրինի. շինել վա-
» նորայս, եկեղեցիս, զանգակատունս ... կախեալ զո-
» լով մի միայն յիշխանութենէ հայոց պատրիարգին
» Ղուկասու Էջմիածնի, և 'ի փոխանորդէ նորին ...
» հաստատելով առ 'ի դատել զհոգևոր և զմարմնաւոր
» անձինս 'ի Աստրախան զհայոց հոգևոր Կանցիստօրն
» լինել 'ի նմա նախագահութիւն ունօղ Արքիմանտրիդ-
» մի, և երեք դատաւորք յաւագ քահանայից. երկու
» սեկրետարք (այսինքն ատենադպիրք) մինն 'ի մասին հայոց՝
» վասն գիտողաց զլեզուն հայոց. իսկ միւսն 'ի մասին
» ռուսաց՝ յաղագս այնց հայոց, որք առաւել տեղեակ
» են լեզուին ռուսաց, քան հայոց. և չորս դրագիրք
» մեր դրագրութեան. ենթ կառավարութեան սմին Կանցիս-
» տորի եղիցին ամենայն եկեղեցիք հայոց և ծուխք նոցա ...
» Զ. Ունիցին սեպհական հայոց իրաւարան ընտրելով
» զդատաւորս 'ի ժողովրդենէ իւրեանց. զսեկրետարս,
» և զդրագիրս ... Է. Արձակեմք զնոսա յարքունա-
» կան հարկաց և 'ի ծառայութեանց, որպիսի կոչմանց և
» իցէ ... Ը. Ազատ վաճառականութեան արդիւնաւո-
» րեսցին 'ի ծովու և 'ի ցամաքի ... Թ. Հրամայեմք
» ամենայն նախարարաց պաշտպանել զայսոսիկ հասարա-
» կութիս ...

Յամի. 1799. և 'ի 28. հոկ.

ՊԱՒԷԼ.

Գրաֆ Ռոստափչին։

ԲԷՍԱՐԱԲԻԱ

309. Այս մասն Մոլտավիոյ կայ 'ի մէջ Տնես-տէր և Պրուտ գետոց, և է երկիր բարեբեր։ Աստ բնակեցան 'ի հնումն Անեցիք կամ Հայք, և շինեցին իւրեանց բնակութիս և եկեղեցիս այլովքն հանդերձ.

այլ յետ անկանելոյ ընդ հզօր տէրութեամբ Ռուսաց՝ սկսաւ օրըստօրէ ծաղկիլ և զարդարիլ շինութեամբք ։ Գլխաւոր քաղաքն է Քիշնով, ուր նստի Արքեպիսկոպոս Հայոց և հովուէ զփոքրիկ վիճակ իւր ։ Այս երկիր սկսեալ'ի Խօթունէ ձգի ընդ երկայն մինչև ցԱք-քիրման, որ գոլով ծովահայեաց՝ Թողում ստորագրել զկնի Կիլիոյ, և անտի անցանել յՕտէսաա ։

### ՔԻՇՆՈՎ

310. Նորոգ ծաղկեալ անուանի քաղաք 6 ժամաւ հեռի 'ի Գրիգորիպօլսոյ և 'ի Տօմպասարէ, ուստի միայն լինի Թոյլտուութիւն անցանել ընդ Տնեստէր գետ 'ի Պեսարապիա. քանզի գեղեցկադիր քաղաքն Տօմպասար է անդր, ուր տեսաք ոչ միայն գեղեցիկ շինուածս, այլև մեծամեծ լաստափայտս վասն անցանելոյ յայնկոյս գետոյն ; նաև գեղեցիկ պարտէզս՝ այլովքն հանդերձ ։

Արդ՝ Քիշնով զանազան շինուածովք օրըստօրէ վերստանէ 'ի կարգս մայրաքաղաքաց. ունի գեղեցիկ պարտէզս և երևելի շինութիւնս մեծամեծաց ։ Եկեղեցին Հայոց է 'ի քաղաքամիջի անդ կառուցեալ. իսկ եպիսկոպոսարանն է կողմանկի, որ յայժ անուանի եղև առաջի մեծամեծաց՝ քաղաքավարական հիւրասիրութբ մեծանուն Գրիգորի Արքեպիսկոպոսին ։ Հայք են 150 տունք, որոց բազումք են վաճառականք ։ 'Ի քաղաքիս գտանին ազգք զանազանք և ունին եկեղեցիս և դըպրոցս . առ որով անցանէ Պըկ գետակն ։

311. Պէնտէր անուանի բերդ՝ ոչ ինչ կարի հեռի 'ի Քիշնովէ, ուր կային բազում Հայք, և էր տուրևառուե տեղի. սակայն բազում պատերազմունք և արեանհեղութիւնք 'ի ժամանակս Թաթարաց նուազեցուցին զքրիստոնեայս, մինչև էանց 'ի ձեռս Ռուսաց ։

312. Պառլան փոքրիկ քաղաք յառաջագոյն էր բարեշէն, և կային 'ի նմա 200 տունք Հայոց, և ունէին քարաշէն եկեղեցի գեղեցիկ, զոր քանդեցին այլազգիք . ուստի և ժողովուրդն փոխեցաւ 'ի Գրիգորիպօլիս ։ Այժմ գտանին անդ 10 տունք Հայոց, այլ չունին եկեղեցի ։

313. Հընչեշ է վայելուչ գիւղ 6 ժամաւ հեռի 'ի

Վրժիշնովէ, զոր գնեաց մեծանուն հայ Միրզեան Մա-նուկ Պէկ Ռուսչուխցի, և շինեաց անդ եկեղեցի Հայոց և Մոլտովանից: Եթէ չէր ժամանեալ կանխահաս մահ իշխանիս, առաւել ծաղկեցուցանէր զտեղին և զազգն (356):

Օրհեյ գիւղաքաղաք նոյնպէս 6 ժամաւ հեռի 'ի Վրժիշնովէ, յորում կան 60 տունք Հայոց և ունին ե-կեղեցի յանուն Ածածնի. առ որով անցանէ գետակ և լճանայ. իսկ 'ի մերձակայ անտառին երևին աւե-րակք հին քաղաքի:

'Ի Բէլէնէշ գիւղաքաղաքի գտանին 10 տունք Հայոց. իսկ 'ի Փօլէշ գիւղ՝ 12. որք պարապին 'ի տու-րևառս:

314. Պէլց քաղաք՝ է երևելի վաճառատեղի, ուր յաճախեն վաճառականք 'ի Լեհաստանէ և 'ի Մոլ-տավիոյ. կան 10 տունք Հայոց: Լէփկան աւանն 'ի վեր անդր անկանի, յորում են 10 տունք Հայոց: Իսկ 'ի Պրեբչան գիւղաքաղաք են 15 տունք Հայոց, որք պարա-պին 'ի տուրևառս:

ԽՕԹԻՆ

315. Այս երևելի բերդաքաղաք Պեսարապիոյ՝ կա-ռուցեալ 'ի բարձրաւանդակի, առ որով անցանէ Տնես-տէր գետ, և հանդիպակաց է Օուանչայի (209): Աստ յառաջագոյն նստէր փաշայն և իշխէր բոլոր նա-հանգին: Գեղեցիկ երևի 'ի Օուանչայէ. ուստի տե-սաք զերևելի շինուածս, և զամրութիւն բերդին: Յա-ռաջագոյն անուանի էր և բազմամարդ, և կային 17 հազար բնակիչք, և ոչ սակաւ Հայք. այլ այժմ հա-զիւ մնացեալ են 20 տունք, որք ունին եկեղեցի յա-նուն սբ Ածածնին. 'ի խորանի անդ է պատկեր Տիրա-մօրն ըստ ձևոյ պատկերին Կամենիցի (215):

Այս բերդաքաղաք գոլով հանդիպակաց Լեհաստա-նու՝ է սահմանագլուխ, և սահմանակից Պուքօվինայի. ունի իբր 300 գիւղօրէս բարեբերս և գեղեցիկս:

ՀԱՅԿԱԶՈՒՆՔ ՊՈՒՔՕՎԻՆԱՅԻ

316. Այս երկիր է վերին մասն Մոլտավիոյ, յոր-

մէ բաժանեալ էանց յօսմանեանց առ գերմանացիս յամի 1776 . և բաժանի 'ի Կալիցիոյ 'ի ձեռն Չէրէմուշ գետոյ . իսկ 'ի Պեսարապիոյ 'ի ձեռն Բրուտ գետոյ : Անկեցիք 'ի վաղ ժամանակաց եկեալ բնակեցան աստ , և ապա բազումք 'ի նչէ անցին 'ի Մաճառստան . նմին իրի և մեզ պատշաճ դատեցաւ շրջիլ յայս աշխարհ և ստորագրել, և ապա անցանել 'ի Մաճառստան :

## ՉԷՌՆՈՒՎԻՑ

317. Ի մայրաքաղաք Պուքովինայի և սահմանակից Պեսարապիոյ՝ իբր 9 ժամու հեռի 'ի Խոթինէ . 'ի ձախմէ անցանէ Բրուտ գետ առատաջուր , որ անցեալ ընդ Մոլտավիա բաժանէ զայն 'ի Պեսարապիոյ : Աստանօր Տնեստէր այնչափ մերձենայ առ Բրուտ , մինչև երկրին ձևանալ իբրև պարանոց մի : Արդ՝ անցեալ մեր ընդ մեծ կամուրջ Բրուտի՝ հասաք 'ի Չէռնովից գեղեցիկ քաղաք , որ օրըստօրէ ծաղկի վաճառականութեամբ և մեծանայ վայելչադիր և բարձր շինուածովք : Տեսաք 'ի նմա երևելի պալատս, և վայելուչ եկեղեցիս այլովքն հանդերձ : Բնակեալ են աստ Գերմանացիք և Լեհք, իսկ Հայք են 30 տունք, գրեթէ ամենեքին վաճառականք,'ի վերջին ժամանակս գնացեալք անդր 'ի Լեհաստանէ : Թէպէտ չունին առանձին եկեղեցի , սակայն աջակողմեան խորան եկեղեցւոյն լատինացւոց է 'ի ձեռս Հայոց , զոր եւս շինել Միմնովիչ անուանի հայ վաճառական յանուն Լուսաւորչին :

Չեռնովից էր 'ի հնումն երևելի քաղաք Մոլտավիոյ , ուր կային բազում վաճառականք յազգէս մերմէ , և ունէին երկու եկեղեցիս . բայց յայրել քաղաքին անհետ եղեն տեղիք Հայոց և ինքեանք ցրուեցան . վ՟ն որոյ այժմ ամենայն ինչ նոր է 'ի քաղաքիս :

## ՍԷՐԱՑ

18. Ի վայելուչ գիւղաքաղաք և ունի քարաշէն շինուածս, և եկեղեցի մի Լեհաց . անցանէ ընդ քաղաքամէջն Սերատ կամ Սերէդին գետն և երթայ անկանի 'ի Դունա մեծ գետ (370) : Ունի մեծ կամուրջ

փայտաշէն՝ ընդ որ անցեալ մտաք 'ի քաղաք անդր ։ Ոչ տեսաք ինչ արժանի յիշատակաց ։ Երկերիւր ամօք յառաջ կային 'ի քաղաքիս բազում Հայք, որպէս գուշակի 'ի յիշատակարանէ Կամենիցի. այլ այժմ հազիւ մնացեալ են 10 տունք, զորս հովուէ լատին քահանայն, առ 'ի չգոյէ նոցա առանձին քահանայի և եկեղեցւոյ ։

## ՍՈՒՉՕՎԱ

319. Է՝ երեւելի հին քաղաք աթոռատեղի Դքսին կամ Պէկին Մոլտավիոյ, որ իշխանագլուխ տիրէր աստ, տեսաք 'ի սմա հին բերդ 'ի վերայ բլրոյ շինեալ 50 ամօք յառաջ քան զՐ.Ն, ըստ որում պատմեցին մեզ աւանդութեամբ ։ Տեսաք նաեւ զհին պալատ Պէկին, առ որով անցանէ Սէչով գետակ, որ բաժանէ զՄոլտավիա 'ի Պուքովինէ և երթայ թափի 'ի Սերաթ գետ ։ 'Ի շրջիլ մեր յայլեւայլ վայրս տեսաք զաշտարակս, հին գերեզմանս, և զկործանեալ պարիսպս ։ Յառաջագոյն կային աստ 17 հազար բնակիչք, այլ այժմ նուազ են յոյժ. Թէպէտ անպակաս են ամենայն ազգք և տարբերութիւնք այլեւայլ ազգաց ։ Տունք քաղաքիս ըստ մեծի մասին են միայարկ, այլ փառաւորին աստ և անդ հոյակապ շինուածք և եկեղեցիք ։ Երեւելի է մեծութեամբ և գեղեցկութեամբ նորաշէն գպրոցն արքունի կառուցեալ 'ի վերայ բլրոյ. յորում ուսանին ձրի մանկունք յամենայն ազգաց. ուր մեծ սենեակ մի որոշեալ է 'ի տէրութենէ վասն մանկանց ազգիս Հայոց, որք յանցանելս մեր էին թուով 80, պարապեալք յուսումն հայ և գերմանացի լեզուաց ։ Մերձ է սմա նորաշէն պայծառ եկեղեցին Լեհաց. առ որով է վանատուն, ուր նստի ժողովրդապետ նոցա ։

Մեծագործ է հին եկեղեցին Մոլտովանից շինեալ յամի տն 1500. յանուն սրբոյն Գէորգայ, որպէս ընթերցաք զյիշատակարանն 'ի վերայ դրան ։ Առաջի խորանին տեսաք 'ի մէջ արծաթապատ տապանի զամբողջ մարմին սրբոյն Յովհաննու նահատակին Տրապիզոնցւոյ, որ վասն 'ի քս հաւատոց վիճեալ յաղթահարեաց զհրեայս, մինչեւ նախանձեալ մատնեցին զարդարն այլազգեաց Աքքերմանու, որոց կապեալ զնա՝ բազմա-

պատիկ տանջանօք չարչարեցին. հուսկ յետոյ կապեալ ընդ ագի ձիոյ յածեցուցին ընդ քարաժայռս, մինչև կատարեցաւ. ուր երևեցան յայնժամ բազում սքանչելիք՝ ըստ որում պատմի. և յաւանդել զհոգին՝ ձին այլ ոչ ևս շարժեցաւ 'ի տեղւոջէ անտի, մինչև եղև հրաման թաղել զնա անդ: Լուեալ զայն դքսին Սուչօվայ՝ խնդրեաց զմարմինն 'ի Փաշայէ Սգըիրմանու, և բերեալ մեծահանդէս թափօրիւ եդին յայս եկեղեցի: Սակայն իբրև առին Լեհք զՍուչօվ՝ փոխադրեցին անտի զմարմինն սրբոյն 'ի Ժուլքվա. բայց զկնի 50 ամաց ժողովուրդ տեղւոյս խնդրեալ 'ի Յովսէփ կայսերէ յետս դարձուցին 'ի տեղի իւր, ուր յաճախեն բազում ուխտաւորք:

320. Յառաջագոյն էին 'ի Սուչօվ 700 տունք յազգէս Հայոց, յորս բազումք անցին 'ի Սաճաւստան. Այլ այժմ մնացեալ են 200 տունք Հայոց, որք և ունէին բազում եկեղեցիս և վանորայս, որպէս տեսաք զտեղիս եկեղեցեաց սրբոյ Երրորդութեան, և սրբոյն Նիկողայոսի. այլ այժմ քանդեալ են, միայն մնացեալ են երկու եկեղեցիք, և երկու վանորայք:

Սուրբ Խաչ է հին և աւագ եկեղեցի Հայոց, որ յառաջ փայտաշէն էր և յետոյ քարաշէն կառոյց Համգոյ իշխանն. 'ի վերայ ներքին դրան փորագրեալ կայ այսպէս * Թվին ՋՀ (1521) Սուրբ Խորանն նուիրեալ է Տիրամօրն. իսկ 'ի գաւիթն է խորան սրբոյն Յովհաննու՝ զոր կառոյց Բրիենց հայ իշխան, յարոյ 'ի տան օթագայեցաւ Յովսէփ կայսր և շնորհեաց Պարոնութիւն ցեղի նորին: Սուրբ եկեղեցւոյն է ընդարձակ գերեզմանատուն և ժամատուն. զանգակատունն է քարաշէն, յորում կայ յիշատակարան փորագրեալ 'ի մարմարիոնի այսպէս. * Յիշատակ է
„ զանգակատունս պարոն Պենեաթայեն իրեցփոխնի...
„ ՌԿԸ (1619): Տեառք յայս եկեղեցի հին աւետարան արծաթապատ այսպիսի յիշատակարանաւ. * Յոր-
„ ժամ գրեցաւ Սբ աւետարանս էր թիւ հայկազան
„ տումարի ՌՂԸ (1649) Գրեցաւ յերկիրս Պուղտա-
„ նաց 'ի քաղաքս Սէջով ընդ հովանեաւ Սբյն Սիմէօ-
„ նի. հայրապետուէ հայոց տն տր Փիլիպպոսի, և յա-
„ ռաջնորդուէն յասմ նահանգիս տր Մինաս վարդա-
„ պետին, ևն: Յետոյ պատմէ թէ գերի եղև սբ ա-

ւնտարանս, և աղաւնեցաք 'ի ձեռաց այլազգեաց ։

321. Սուրբ Սիմէոն է քարաշէն և գեղեցիկ եկեղեցի կառուցեալ 'ի ծայր Թաղին Հայոց. ունի ընդարձակ գերեզմանատուն. առաջին դրանն տեսաք հին գերեզման փորագրեալ 'ի վր̄. * Այս է տապան հանգըստ-
„ եան Խոջին և Մուղալին. որ է դուստր և որդի
„ տէր Մնասի. հանգեաւ Թվ. ՌԿԷ. օգոստոսի օրն
„ Ժ̄ շաբթի ‖ (1618) ։

322. Սուրբ Օգոստինոս է վանք գեղեցկադիր 'ի հարաւային ծայր քաղաքին, առ որով անցանէ գետակն. ունի ընդարձակ բակ պարտպապատ, յորոյ 'ի միջավայրի կառուցեալ կայ եկեղեցին քարաշէն հանդերձ կաթուղիկէիւ. առ որով է ջրհոր մեծ ։ 'Ի մէջ եկեղեցւոյն գոյ անուն շինողին փորագրեալ 'ի վերայ գերեզմանին այսպէս. * Տէր հանգչի Յակոբշայ շինող
„ տաճարիս Թվին Հայոց Ռ ‖ (1551) ։ Ներքս պատմեցին մեզ, թէ ցեղ սորա անցեալ է 'ի Վէնէտիկ ։ Կայ արտաքոյ և այլ գերեզման՝ յորոյ վերայ ընթերցաք՝
* Այս է տապան Սվադամայ որդւոյն. Թվ. ՌՁ ‖ (1631) ։
Զանգակատունն է յարևմտեան կողմն քարաշէն կամարակապ, ուր ելեալ ընդ քարաշէն սանդուխս՝ տեսաք զմատուռն Լուսաւորչի հանդերձ խորանաւ, առ որով է արևմտեան դուռն վանից ։ Իսկ 'ի վերայ արևելեան դրան է առաջնորդարանն քարաշէն, ուր կայ գեղեցիկ մատուռն կամարաշէն՝ հանդերձ խորանաւ. պատկերն է ննջման Ածածնին ։ 'Ի շրջակայս պարտիզին էին սենեակք կամ խրճիթք աբեղայից, ընդ որում գուշակի յաւերակացն ։

323. Սուրբ Խաչկատար կամ Հաճկատար է վանք Հայոց փոքր ինչ հեռի 'ի քաղաքէն յարևելեան կողմն շինեալ 'ի վերայ բլրոյ, որ յառաջագոյն անուանէր Խաչկարակատար սուրբ Ածածին ։ Ունի շուրջանակի սենեակս աբեղայից և ուխտաւորաց, և արտաքոյ ունի դաշտս. եկեղեցին է փոքրիկ քարաշէն հանդերձ կաթուղիկէիւ, ունի գաւիթ և երկու դրունս ։ Տեսաք 'ի վերայ հարաւային դրանն Թուական փորագրեալ յամի Տն̄ 1512. Թուի թէ իցէ Թուական նորոգութեան, զի շինուածն երևի վաղեմի ։ Աւագ խորան տաճարիս նուիրեալ է Ածածնի, և միւս խորանն Ս. Լուսաւորչին, ուր յաճախեն ուխտաւոր Հայք 'ի Մոլտավիոյ, մանաւանդ

'ի Վաղարշաւանին և 'ի սոյն օրըստ Նիկայի: 'Ի յիշա-
տակարանի եկեղեցւոյ Ս. Ծածնին Կամենիցի գնի.
* Ս. Ծ աղօթք սեչովցի օրդ Վ. Ննտաւորին հոգուն. ունի
ո յիշատակ ստ խաչի Ա:

# ՀԱՅԿԱԶՈՒՆՔ ՍԵՐՈՒՆԴՔ ԱՍԻՈՅ

## ԲՆԱԿԵԱԼՔ Ի ՄԱՃԱՌՈՒՍՏԱՆ

324. Հայկազունք անեցիք փախուցեալք յերեսաց Թաթարաց՝ զառաջինն անկան 'ի Պոնտոս, և անտի մտեալ 'ի նաւ անցին յՈւրսովիա և մինչև 'ի Մոլտա-վիա. անտի ևս յետ ժամանակաց փոխադրեցան 'ի Մաճառաստան: 'Ի սկզբան անդ բնակեցին խառն ընդ Մաճառաց ցրուեալք 'ի քաղաքս և 'ի գիւղօրէս. ապա տեսեալ զպատուաբերութիւն և զյարմարութիւն երկրին՝ բազումք միաբանեցան ազգասիրութեան օգտով և շի-նեցին երկու քաղաքս, մին անուանեցաւ Հայաքաղաք կամ Կեռլա, և միւսն Եղիսաբէթուպօլիս կամ Պաղպարմէ: և մի մասն ևս նոցա բնակեցաւ 'ի քաղաքս Մաճառաց 'ի Ճուրճով և 'ի Սեպվիզ. և այլք մնացին 'ի տեղիս խուրեանց յայլ և այլ քաղաքս և 'ի գիւղօրէս՝ ըստ յար-մարութեան տուրևառութեան նոցա, որպէս ունիմք պատմել և 'ի կարգիս:

Թիւ Հայոց 'ի Մաճառաստան հասանէ ըստ ոմանց ց15 հազար, յորոց բազումք են վաճառականք. ոմանք՝ ազնուականք կամ Սպահի, որք կոչին Նէմէշ. ունին մեծամեծ կալուածս հանդերձ զանազան արտօնու-թեամբք: Հայք շինեցին 'ի Մաճառաստան երևելի շինուածս և ականաւոր եկեղեցիս և վանատունս. որոց ժողովրդապետք են կանոնիկոսք: Որք և կայսե-րական հրովարտակօք ունին ոչ միայն զմասնաւոր ա-տեանս և ատենակալս, այլև զաւառական ժողովս և ատեանս. զի զամենայն վէճս ազգին և քաղաքաց իւ-րեանց լուծեալք վճարեն. Թէպէտ յատենէ նոցին մարթ է բողոքել 'ի գերագոյն ատեան:

### ԵՂԻՍԱԲԷԹՈՒՊՕԼԻՍ

325. Սոյն քաղաք 'ի հնումն անուանէր Էպպէշտորֆ,

յանուն Հին գեղջն. որ այժմ մերձ գոլով 'ի քաղաքս անուր՝ համարի արուարձան նորա որ և շինեալ է 'ի մէջ լայն ձորոյ շրջապատելոյ 'ի դալարագեղ բլրոց մշակելոց, ուր գան և այգիք ։ Ընդ երկայնութիւն գաւառին անցանէ Տռանովա գետ, որ ունի կամուրջ մեծ փայտակերտ բազմակամար և յարկածածուկ. յարևելեան կողմն գետոյն է երկիր Հայոց՝ կէս ժամու հեռի 'ի քաղաքէն ։ Պաշպալով անուանի այժմ այս թագաւորական ազատ քաղաք՝ փոքրիկ և բարեշէն. փողոցք նորա են ուղղահայեաց և տունք ազնուականք, և ըստ մեծի մասին միայարկք. իւրաքանչիւր տուն ունի պարտէզ արտաքոյ քաղաքին ։

Հայք են բնակիչք և տեարք քաղաքիս, որք են 2300. իսկ տունք նոցա են 450. որք ըստ մեծի մասին են վաճառականք բաց 'ի սակաւ արուեստաւորաց. են և ազնուականք, որք կայսերական պարգևագրով յորդւոց յորդիս ունին զազատութիւն ։ Եկեղեցիք Հայոց են չորս՝ առաջինն է հին տաճար սուրբ Երրորդութեան անուանեալ, 'ի վերայ դրանն փորագրեալ կայ, թէ շինեալ եղև գործակցութեամբ ամենայն հասարակացեալ ժողովրդոց ։ Այս փոքրիկ տաճար անուանական գոլով նոցա՝ 'ի յետին ժամանակս հիմնեցին 'ի վերայ մեծի հրապարակին նոր եկեղեցի ընդարձակ յանուն սրբուհւոյն Եղիսաբեթի դշխոյին Մաճառաց. Այս նէգ եկեղեցի է քառաշէն և միակամար, ունի 'ի ճակատն երկու բարձր զանգակատունս, և յերկարին կողմանս առաք խորանին վեց խորանս գեղեցիկս և երկու կրկնայարկ աւանդատունս. աջակողմեան վերնատունն է ազնուականաց, ուստի տեսանեն զպատարագ. իսկ ձախակողմեանն է դրատունն հասարակաց. Ճակատ եկեղեցւոյն է զարդարեալ գեղեցիկ սեամբք և արձանօք. ունի գմբէթ պղնձայարկ. որ և է ժողովրդապետական եկեղեցի քաղաքին ։

326. Երրորդ եկեղեցին է համանուն վերինոյն յարևմտեան կողմն հրապարակին՝ կառուցեալ 'ի 1795. 'ի Հարց Մխիթարեան միաբանութեն մերոյ՝ համեմատ, պայծառ և գեղեցիկ, ունի երիս խորանս ոսկեզօծս զարդարեալս արձանօք և արուեստաւոր պատկերօք և գեղեցիկ սեամբք ։ Յերկոսին կողմանս աւագ բեմին են երկու աւանդատունք, և 'ի վերայ նոցա

Կրկին վերնատունք շրջապատեալք ոսկեզօծ վանդա-
կօք վասն ազնուուհեաց : Այս եկեղեցի է միակամար, և որմունքն են գեղազարդեալք զանազան դրուագօք. որ և նուիրեալ է գլխաւոր առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, որպէս և վանքն կամ վանատունն՝ որ կից է ընդ եկեղեցւոյս . և ունի 'ի բակի անդ դպրատուն, ուր կրթին մանկունք Հայոց ընդ վերակացութեամբ Հարց միաբանութեան մերոյ :

327 . Զորրորդ եկեղեցին է սրբոյն Յովհաննու մկրտչի՝ կառուցեալ յերևելի իշխանէ անտի 'ի ցեղէ Թուրքեանց . ունի երիս խորանս, և գեղեցիկ զարդա-ոյլովքն հանդերձ : Նաց աստի գոյ և հին մատուռն կառուցեալ 'ի վերայ բարձրաւանդակի, ուր երթան յուխտ ժողովուրդք քաղաքին յաւուր շաբաթու . ընդ որ հետևակ ելանեն արք և կանայք իբրև ընդ լեառն գողգոթայ ամենայն բարեպաշտութեամբ : Այս մատուռն յառաջ քանդեալ կայր, այլ նորոգապէս կառուցաւ առ կողմամբ լերին 'ի յիշատակ հոգւոյ հայ վաճառականին Մղնեսայ, խորանն և մեծ արձան խաչելութեան ներկայացուցանեն զգողգոթայ, ուր երթան յուխտ հնդիցս 'ի տարւոջն փառաւոր Թափօրիւ հանդերձ քահանայիւք :

Պատրաստեալ կայ այլ հին եկեղեցի վասն ուղղափառ Մաճառաց . նոյնպէս այլ հին փայտաշէն եկեղեցի սակս ուղղափառ Ուլահաց, որք և ունին առանձին ժողովրդապետս յազգէ իւրեանց :

Երևելի են և դպրոցք քաղաքիս, ուր ձրի ուսանին մանկունք հայերէն, լատիներէն, գերմաներէն և մաճառերէն : Գտան և այլ երևելի շինուածք, գործարան սպիտակ մոմոյ, ևն : Իսկ զամենայն երևելի է հին բերդն մեծ՝ շինեալ յԱբաֆի բռնակալէ, որոյ անուն հին լատին գրով փորագրեալ կայ 'ի վերայ դրանն . 'ի միջավայրի անդ 'ի տեղիս տեղիս երևին խոշորագործ նկարք : 'Ի մի կողմն բերդին շինեցին պայծառատարան, և 'ի միւս կողմն խորհին շինել թէատրոն . 'ի սորին է դիւան և բանտ հասարակաց՝ հանդերձ բնակարանօք դպրապետին և բանտապետին :

328 . Կառավարութիւն քաղաքիս է ծերակուտական, և Հայք իշխեն և կառավարեն զհասարակութիւն իւրեանց և զայլ ազգս, որք իբր ծառայք համարին ին-

քեանց ։ Ունին հրովարտակ կայսերական՝ հանդերձ բազում արտօնութեամբք. ուր ոչ մտանեն զօրք, և ոչ ընդունին զօտարազգիս ։ Իսկ քաղաքն և թէ ամենայն տեղիք քաղաքին են սեպհականեալ Հայոց. ամենայն տանուտեարք 'ի միում աւուր տան հնձել զարտորայս իւրեանց, և 'ի միում աւուր սկսանին կթել զայգիս իւրեանց. այսպէս ամենայն գործողութիւնք 'ի քաղաքիս են կարգաւորեալ ։ Ի կիւրակէս պատարագ մատչի նախ յաւագ եկեղեցին, ապա 'ի վանս հարց Մխիթարեանց, և ապա 'ի Յովհաննէս Մկրտիչ, որ ունի մասնաւոր աւագերէց ։ Զայսուոր պատարագքն եւս մատչին ըստ վերջասացեալ կարգին ։ Երկին անգամ 'ի տարւոջ ժողովուրդն Թափօր կազմեալ երթայ հանդիսիւ յուխտ սրբոյն Անտոնի 'ի Մէտեաշ քաղաք՝ երեք ժամու հեռի անտի. եւս և 'ի Շիկիշվար քաղաք՝ յուխտ սրբոյն Ֆրանչիսկոսի ։ Իսկ այնք քաղաքացիք յաւուր Վերափոխման գան յուխտ 'ի Պաշպալով հանդերձ Թափօրիւ, որոց ընդ առաջ ելանեն ամենայն եկեղեցականք և հանդիսապէս հիւրընկալեալ զնոսա՝ 'ի հետևեալ աւուր յետ բազում հանդիսութեանց դարձեալ յուղարկեն զնոսա Թափօրիւ ։

Պաշպալով ունի բաւական կալուածս և դաշտորայս, յորոց հաւաքեալ զեկամուտս 'ի գանձարան հասարակաց՝ ծախեն 'ի պէտս եկեղեցեաց, քահանայից, դատաւորաց, վարժապետաց և բժշկաց, եւս և մանկաբարձաց, գիշերապահ ծառայից և հովուաց. զի սոքա ամենեքեան պարտապան են ծառայել հասարակաց առանց վարձու ։ Յաւուրս Մարիայ Թէրէզայի գնեցին չորս մեծամեծ գիւղս և հինգ անտառս, յորոց շատ եկամուտ գայ 'ի գանձարանն ։

329. Հայք 'ի քաղաքիս ունին երկու մեծ ատեանս, առաջինն կոչի Մօնէտօրըոդ՝ որ բաղկանայ յ12 դատաւորաց, յորոց ընտրեն զոմն յամենայն երիս ամս և դնեն գլուխ ժողովոյն և ազգին Պէրոլ անուամբ, յ՟ հրամանատար, որ ունի իշխանութիւն դատելոյ և վճռելոյ յիւրում բնակարանի զմասնաւոր վէճս ժողովրրդեան ։ Հրամանաւ ն՟ր երկիցս յեօթնեկի բանան զդատարանն կամ զՄօնէտօրըոդն, ուր վճարէ զամենայն դատս՝ գործակցութեամբ 12 դատաւորաց ։ Նոյս ա-

տեան ունի իշխանութիւն 'ի վերայ դատաստանի արեան, բայց նախ պարտի ծանուցանել զվճիռ իւր դերագոյն ատենին Գրանսիլվանիոյ. ուր Պիրոնն ստորագրէ, և կնքէ կնքով քաղաքին զամենայն որոշմունս Մակիստրատին։ Մին 'ի դատաւորաց անտի է մեծ դպրապետ և ունի իւր փոխանորդ զմին յիշխանաց երկրորդ ատենին. պաշտօն երկոցունց ևս է մշտնջենաւոր։ Այս դպրապետ պարտական է գրել համառօտիւ զքննութիւն և զորոշմունս ժողովոյն, և վերծանել դարձեալ յատենի անդ, զոր վերստին քննեալ՝ անցուցանեն 'ի մատեան Բրօդօքօլի. և ապա հրատարակեն զվճիռն, որոյ գործադրութիւն է 'ի ձեռս Տիրէքթօրի Բօլիցիայէն, որ և է մին յիշխանաց Մակիստրատին՝ որ յամենայն երիս ամս ընտրի։ Ընդ իշխանութեամբ սորա է բանտապետն, և պարտական է հսկել 'ի վ՟յ խաղաղութեան քաղաքին՝ պատժելով զստահակս և զգողս։

Պիրոնն թէպէտ յատենի անդ դահագլուխ նստի, բայց չունի աւելի իշխանութիւն քան զայլ դատաւորս. որ և զամենայն խնդիրս առաջարկէ ժողովոյն, և պարաւանդեալ է ջան դնել ստէպ պահպանութե՟ օրինաց՝ պատժելով զյանցաւորս, և խրատելով զնոսա՝ եդեալ 'ի բանտի իւրում, որ միշտ կայ առաջի դրան իւրոյ։

330. Երկրորդ ատեանն անուանի Սենատ՝որ բաղկանայ 'ի 40 դատաւորաց, գլխաւորաց ժողովրդեանն, որոց անկ է հոգալ և հաստատուն պահել զշինուածս հասարակաց և զկալուածս՝ նորոգելով զկամուրջս այլովքն հանդերձ։ Սոքա ևս ունին գլխապետ Սենատոր կամ Օրատօր յորջորջեալ, որ յերիս ամս փոխի. ունի իշխանութիւն երևելոյ յառաջին ատենի երբ և կամի, և յամենայն եօթնեկի հրամանաւ իւրով ատեան կազմէ. և պարտական է հսկել 'ի վերայ գործավարաց և պահապանաց շինուածոց քաղաքին, նաև պատուհասել զվնասաբերս եկամտից։ Ունի փոխանորդ ինքեան և այլ գործակիցս, որովք վճարէ զդատս. բայց առանց ստորագրութեան իւրոյ ոչինչ գործ և պարտք վճարին։ Կան նաև այլ պաշտօնատարք և իշխանք, որպիսի են՝ Համարակալ, Գանձապետ, Գործակալ, Փաստաբան, Վերակացու աղքատաց, Խնամակալ որբոց, Հարկապահանջ, Եկեղեցպան, ևն.

Այսօրիկ կրկին ատենից 52 դատաւորք պարտին լինել յազգէ Հայոց, որոց գլխաւորք են Պիրով, Սուդաշ և Տիրեգոր Սոլիցիոյ, որք ոչ պարտին լինել ազգականք իրերաց։ Այլ եթէ դատախազքն լինիցին ազգական կամ Դատաւորին, և կամ Պիրովին, հարկ է նոցա տեղի տալ յատենէ փնտի, և չմնել 'ի դատս նոցա։ Այնմայն դատախազք պարտին գրով առաջի ատենել զառաջարկութիւնս իւրեանց։ Յորժամ դատն խառն լինի՝ այս երկու ատեանք 'ի մի վայր հաւաքին։ Նոյնպէս լինի երբ փոփոխութիւն պաշտօնատարաց հանդերձեալ իցին առնել։

331. Իսկ ընտրութիւն դատաւորաց այսպէս լինի. միով եօթնեկաւ յառաջ ծանուցանի ժողովրդեան օրն ընտրութեան. և 'ի նմին աւուր ամենայն քահանայք, մանկունք դպրոցաց և բոլոր ժողովուրդք երթան 'ի մայր եկեղեցին, և առաջի որ խորհրդոյն 'ի ծունր իջեալ՝ առնեն զԵ՛կ սուրբ հոգի երգն, և ապա ժողովրդապետն մեծահանդէս պատարագէ վասն երջանկութեան քաղաքին և պայծառութեան ազգին։ Իսկ 'ի հետևեալ աւուր ատենակալքն հաւաքին 'ի դատարանի. և նախ վասն ընտրութեան Պիրովին բաժանեն 52 դատաւորաց կոտորակս թղթոց, որք են լայն 3 մատնաչափ՝ յերիս բաժանեալ, մի ծայրն միայն անբաժան, ուրանօք յետ խօսելոյ վասն օգտի հասարակութեան՝ իւրաքանչիւրոք գրէ 'ի վերայ թղթոյ իւրոյ զերիս անուանս, զորս յարմար համարի Պիրովութեան յ12 դատաւորաց (զի 'ի սոցանէ և եթ մարթ է ընտրել Պիրով). ապա իւրաքանչիւրն ձգէ զգրուած իւր յանօթ վիճակին, զոր երկու երդուեալ իշխանք առեալ երթան յառանձին տեղի և գրեն ցանկ մի անուանց 12 դատաւորաց Սակիտարադին. և քննեալ զկոտորակս թղթոցն, որչափ անձինք զմի անուն գրեալ են՝ նշանակեն 'ի ցանկին առընթեր այնր անուան, և ապա տարեալ զայն 'ի ներքս առաջի ատենին ընթեռնուն, և յորոց վերայ բազմաթիւ անուանք գրեալ կան, զայնս առաքեն առ կայսրն Գերմանիոյ ընտրել յերից անտի զորն որոշեսցէ նա. բայց այս պատիւ գրեթէ միշտ բազմաթիւ անուան վիճակի։ Նոքեանք իսկ զայն ընտրեն, և 'ի նմին ժամու առաքեն զծառայն հասարակաց, որ առաջի դրան նորա աւետիս տալով արձակէ հրացանս 'ի նշան ուրախութեան։

Զկնի ընտրութեան Պիրովլին լինի ընտրութիւն Մուգաշին նոյնին օրինակաւ, որ պարտի լինել ՚ի հասարակ դատաւորաց անտի։ Յետոյ լինի ընտրութիւն Տիրէքդօրի Պօլիցիոյ ևն։ Այլ յիւրաքանչիւր ընտրութեան ծառայք քաղաքին երթան առաջի դրանց նոցա արձակեն զհրացանս։ Ապա զկնի ճաշուն իշխանք Մագիստրադին երթան շնորհաւորեն զընտրեալ իշխանս. յետոյ երթան հասարակ իշխանք և ապա քահանայք։ Այս ընտրութիւն լինի երբեք ամսովք յառաջ. այլ մինչև է եկեալ հրովարտակ կայսեր սակս հաստատութեան Պիրովլին՝ ոչ ոք կարէ մտել ՚ի պաշտօն իւր։ Իսկ ընդ ժամանել հրովարտակին առնեքեան երթան յեկեղեցին. և առաջի Արքունին երգեն Զքեզ Ած գոհաբանեմք, և յետ հանդիսաւոր պատարագին՝ բազում ուրախութեամբ հրատարակի ընտրութիւնն։ Հուսկ յետոյ դատաւորք և քահանայք կարգ ըստ կարգի վերստին երթան ՚ի տունս նոցա և շնորհաւորեն, և այսպէս կատարի հանդէսն։

## ԿԵՌԼԱ

332. Այս Թագաւորական ազատ քաղաք կոչի ըստ Մաճ. Շամոշուվար. և ըստ Լտ. Արմէնօբօլիս. ըստ Հայ. Հայաքաղաք. զոր շինեցին Հայք յամի Տն 1703, ՚ի գեղազուարճ դաշտի մերձ ՚ի Շամուշ գետակ. և ՚ի 1711 ընկալան ՚ի կայսերէ զանազան ազատութիւնս։ Բնակիչք են իբր 6000. ամենեքեան Հայք. և տունք հազար, որք ըստ մեծի մասին աղիւսակերտ են և միայարկ։ Մեծատունքն են ազատազնեայք որդւոց յորդիս, և այլք են վաճառականք. կարի սակաւ են աստ արուեստաւորք, և նուազ օտարազգիք, որք ոչ կարեն գրել քաղաքացի։ Անդէն երիս եկեղեցիս. առաջինն և ժողովրդապետականն եկեղեցին նորաշէն նուիրեալ է սրբոյ Երրորդութեան, մեծ և գեղեցիկ, ունի 5 խորանս քարաշէնս, և առ նմին փոքրիկ մատուռն, որ և է մի ՚ի փառաւոր և ՚ի մեծագործ եկեղեցեաց Տրանսիլվանիոյ։ Երկրորդ եկեղեցին է յանուն Սողոմոնի, ոչ այնչափ մեծ. նոյնպէս և երրորդն, որ է ՚ի ձեռս Ֆրանչիսկեան մաճառ կրօնաւորաց։

Փողոցք քաղաքիս են լայն և ՚ի տեղիս տեղիս քա-

րայատակ, ուր գոյ մեծ գործարան չուխայի, և մեծ բանտ բոլոր Տրանսիլվանիոյ. անդ բանտարկեն զա-մենայն յանցաւորս այնր նահանգի, զոմանս մինչև ցմահ: Կառավարութիւն քաղաքիս նման է կառա-վարութեան և օրինաց Պաշպալովի. ունին երկու ա-տեանս, 12 դատաւորս, և 40 իշխանս՝ որք Սոտդս ա-նուանին: Սոքա ևս ունին իրաւունս ապաստանելոյ շհպա-տակս իւրեանց, բայց գործադրութիւն վճռոյն կախեալ է 'ի գերագոյն ատենէ Տրանսիլվանիոյ, որոյ աթոռ է 'ի Կլուժ քաղաք: Ունին նաև քանի մի գիւղօրէս ընդ տէրութեամբ իւրեանց յեկամուտ քաղաքին, որոց գիւղականք են իբր գերիք այսր հասարակութեան:

## ՍԷՆԴ ՄԻԳԼՕՇ, կամ ՃՈՒՐՃՈՎ

333. Է ընդարձակ քաղաք բարեշէն և բազմա-մարդ՝ իբր 3 մղոն տարածութեամբ երկայնեալ մերձ 'ի գետակն, ուր գոն 140 տունք Հայոց. իսկ բուն բնակիչք են Սաճառ: Հայոց եկեղեցին է գեղեցիկ և պայծառ. 'ի վերայ կողմնական դրան փորագրեալ կայ յիշատակարանս.* Թվին 1733 շինեցաւ տաճարս » այս դրամբք հասարակի ժողովրդեան Հայոց Ճուրճո-» վու 'ի ժամանակս Կղեպան տէր Ստեփանի Թորոսեան, » և տէր Յոհաննէսին. յեկեղեցպանութեան Թորոսի » Ագոնց, և պերովութե ՆՔ Պ շաղարի Օհանիսեան. » և այլոց պատուելի արանց, որոց անուանք գրեալ » են 'ի կոնդակի եկեղեցւոյս. գիտ և կարդա, և մեղ » ողորմիս ասա. Ամէն ||: Գլխաւոր ժողովուրդք քա-ղաքիս համարին Հայք, յորս գոն ազնուականք, և բա-զում վաճառականք, որք և ունին սեպհական ատեան, բաղկացեալ յ12 դատաւորաց, յորոց ընտրեն զՊի-րով գլխաւոր հրամանատար: Սոքա վճռեն զամենայն դատս ազգին, բաց յարեան պատուհասէ. զոր վճռէ ատեան Սաճառաց. և ոչ իսկ ունին բանտ հասա-րակաց:

## ՍԻԲՎԻԶ

334. Է գիւղաքաղաք, յորում բաց 'ի Սաճառաց գոն 52 տունք Հայոց, և 220 անձինք. որոց գործ է

տուեալութի: Աղքա ևս ունին սեպհական տաճան 12 դասատուորաց, բայց կախին յառաջնէն Պ'ուրճո-վի: Ունին եկեղեցի և վանատուն աղքատ յոյժ. այլ բազում ջանիւք և բարեկարգութեամբ բազմաշ-խատ Հ. Աղէքսանդրի վարդապետին մերոյ Խաչիկեան ժողովրդապետի նոցա՝ ոչ միայն եկեղեցին շինեցաւ և պայծառացաւ, այլ և ժողովուրդն կրթութեամբ և ուսմամբ՝ քաղաքական և պանծալի եղև առաջի օտար ազգաց: Գտաք 'ի Գրիգորիպօլիս յեկեղեցւոջ Լու-սաւորչին այսպիսի յիշատակարան. * Թուին ՌՃԽԳ 'ի

» (1694) փետ. ԺԴ օրն. Տր Սարգիսի շաբաթն 'ի եր-
» կիրս մաճառաց, որ կոչի գօղայքաղաքս Սիպվիդ
» տապատակեաց պիղծն Թաթար և գերեաց լուսաւոր-
» չադաւան հայկազան ազգն ժողովրդով քահանայով
» 'ի Տր պատարագ. մատչիլն տապատակեաց հարիւր
» քառասուն ութ հոգի. որ և Տր Յ̃Ս փրկեսցէ զա̃մ
» հաւատացեալս ‖:

ՑԻՎԱ

335. Ի ընդարձակ գիւղաքաղաք բարեշէն, ունի բերդ 'ի գլուխ լերին և քարաշէն տունս գեղեցիկս. կան աստ քանի մի տունք Հայոց վաճառականաց, որք ունին փոքրիկ եկեղեցի շինեալ յաղագ Ստեփանէ Պօշնախեան պաշտպալովցուդ, բայց չունին հայ քահա-նայ, այլ 'ի Փրանչիսկեան քահանայէ հովուին: Ի սմին քաղաքի չտեսաք ինչ յիշատակաց արժանի՝ բաց 'ի քաղաքավար հիւրասիրութենէ բնակչացն:

ԱՑՆՈՒՏ

336. Ի գլխաւոր քաղաք առ Մօրուշ գետով. ու-նի բերդ հանդերձ ջրալից խրամով. գտանին 'ի քա-ղաքիս քանի մի տունք Հայոց, բայց չունին առանձին եկեղեցի:

ԱՊՌՈՒՏ

337. Ի գիւղաքաղաք բարեշէն, ունի ոսկէհանք և արծաթահանք, և քանի մի տունս Հայոց վաճառա-

կանաց ։ Այսն նոյնպէս հայք ՚ի Դուբոսա քաղաք, և ՚ի Նեկլին աւան ։

## ԳԵՋՑԻ ՎԱՃԱՌՀԻԼ

338. Ի գիւղաքաղաք մեծ և բազմամարդ, ուր գտանին քանի մի տունք հայոց ։ Նոյնպէս գոն հայք ՚ի Զանդա աւան, որ հաղորդի ընդ վերնոյն ՚ի ձեռն մեծի կամրջին ։ Այդա չունին առանձին եկեղեցի և հայ հովիւ, որպէս ունին հայք մեծի քաղաքին Օտեբհէյայ, ուրանօր կայր յառաջն և երևելի դպրոց Յնեանց ։

## ՄՕՐՈՒՃ ՎԱՃԱՌՀԻԼ

339. Ի մեծ քաղաք բազմամարդ առ Մօրուշ գետով. ունի մեծ դպրոց և վանս Ֆրանչիսկեան կրօնաւորաց ։ Նա ունէին Յնեանք անուանի դպրոց ։ Գտանին աստ 10 տունք հայոց, և երևելի վաճառականք. բայց չունին յատուկ եկեղեցի ։

## ՆԱՑՍՈՑ

340. Ի նորաշէն ազատ քաղաք Թագաւորական կառուցեալ ՚ի հիւսիսակողմն մեծի գետոյն Դոնայի հանդէպ անառիկ բերդին Ռեդրօվարատինու. ուր հասաք ընդ նոյն գետ լաստափայտիւ՝ յետ շրջելոյ յայլ և այլ քաղաքս Սաճառստանու և Ալաւիոյ ։ Այս քաղաք բարեշէն ունի բազում տունս և քաղաքական շինութիւնս և եկեղեցիս ։ Յառաջագոյն բազում էին հայք ՚ի քաղաքիս և երևելի վաճառականք, շատք ՚ի Պելողատէ փոխադրեալք այսր. այլ այժմ իբր 30 տունք հայոց մնացին, որք ունին փառաւոր եկեղեցի քարաշէն յանուն սրբոյ Լուսաւորչին, և առ նմին քարաշէն բնակարան ժողովրդապետին հանդերձ պարտիզաւ, որ ժամանէ մինչև ցգետն Դոնա ։ Այս վանատուն և եկեղեցի պայծառացաւ առ հոգաբարձութեամբ բազմարդիւն Տ. Կարապետ վարդապետին մերոյ ։ Եկեղեցին ունի և կալուածս, որոյ հոգաբարձու լինի ոմն ՚ի Մխիթարեան միաբանութենէս կայսերական հրամանաւ. ուրանօր կառաքեն

զինծայրին պաշտամանս ուղղափառ. Նոյնք յունականս ծիսիւ, ոչ ունելով առանձին եկեղեցի.

Յետ աւուրց ինչ անցաք ընդ ահաւոր գետն Դունա 'ի հանդիպակաց քաղաքն կամ հզօր բերդն Բետրովարատին 'ի յարգուԹի եկաւորուԹե Իրինչիբեկի եղբօր կայսեր ընդ եպիսկոպոսին : Այս քաղաք միանայ ընդ վերնոյն 'ի ձեւն մեծի կամրջին ձեւացելոյ 'ի միաշար նաւակաց, ուր տեսաք մեծամեծ նաւս եկեալս 'ի Սխոնէ և 'ի Սեաւ ծովէ. Զարմանալի է դիրք բերդիս, որ յամենայն կողմանց ամրացեալ է, և բարձրացեալ յոյժ իբր եռայարկ : Սոորին ներքնաբերդն այնպիսի բազմարուեստ հնարիւք ձեւացեալ է, մինչև մտանէ ընդ գետով. զառաջեաւ բերդին կառուցեալ կան անմատչելի մարտկոցք, գաղտագողի ճանապարհք և որոգայԹք : Արտաքուստ տեսաք գետնափոր և լայն խրամս, և 'ի միւս կողմն անմատչելի ապառաժս, այլովքն հանդերձ : Զայս բերդ առին Օսմանեանք յամի տն 1526. որ չև էր այսպէս ամրացեալ. այլ 'ի 1687. անդրէն տիրեցին Նեմճաք. ապա յետ անցանելոյ առ Գերմանացիս՝ զօրացուցին յոյժ. և մեծահռչակ պանծալի եղև 'ի 1716. յորժամ վանեցան անտի Թշնամիք և բերդականքն հռչակաւոր յաղԹանակ կանգնեցին :

ՕՌԱՑԻԱ Խամ ՆՕՎ ՎԱՐՕՍ

341. Ի բերդաքաղաք մեծ և բազմամարդ. ունի մեծաշէն եկեղեցիս և այլ շինուածս. կան աստ 10 տունք Հայոց, յորս բազումք են մեծատունք և ազնուականք, բայց չունին եկեղեցի և քահանայ. լաւին քահանայք հովուեն զնոսա.

ԴԸՄԸՐՂԱՊԸ. Է ՔՆ. ԴՆՄԷՆԱ

342. Ի զօրաւոր բերդաքաղաք գեղեցիկ յոյժ ամրացեալ չորեքկարգեան Թանձր պարսպօք. և շուրջանակի զինեալ զանազան մարտկոցօք և յոլով ԹնդանօԹօք : Ամրակուռ դրունք և խորին խրամք՝ անմատ-

չէլլը աւանին ղայս բերդ, որոյ շրջապատ համարի եր-կուց ժամուց ճանապարհ, աւերեալ ընդ նմին և զմարտ-կոցն ։ Այս պայծառ և բազմամարդ քաղաք բոլոր-վին քարաշէն է և քարայատակ ․ անդ ՚ի նմ երևե-լի և գեղեցկանիստ շինուածս, մեծամեծ պալատս և վայելուչ եկեղեցիս ։

Մ՝եծագործ և հոյակապ է մայր եկեղեցին ․ ընդար-ձակ և վայելչագեղ են հրապարակք և զինարանք քա-ղաքիս, և չորս մեծաշէն վանորայք հանդերձ կրօնա-ւորօք ։ Կան նոյն քանի մի տունք Հայոց, այլ չու-նին յատուկ եկեղեցի և քահանայ ։ Արդ ելեալ ՚ի քաղաքէ աստի՝ անցաք ընդ բազում աւանս և քա-ղաքս Մ՝աճառաստանու ՚ի բազում տեղիս տեսաք տունս Հայոց և հայ իշխանաւորս, և կառավարիչս ՚ի վերայ օտար ազգաց ։

## ՍԻՊԻՆ ․ ըստ Գերմ ․ ՀԷՐՄԱՆՇԴԱՏԴ

343 ․ Է ազատ քաղաք Թագաւորական, և գլուխ նահանգին Սաքսոնացւոց, որ յառաջագոյն էր մայրա-քաղաք համօրէն Դրանսիլվանիոյ, ուր էր և ատեանն արքունի՝ որ յետոյ փոխադրեցաւ ՚ի Գլուժ քաղաք ․ աստ է աթոռ մեծի սպարապետին զինուորական կառա-վարութեան, և արքունի գանձարան ։ Այս գեղեցիկ քաղաք՝ մեծ է և բազմամարդ, լի մեծամեծ և բարձր քարաշէն շինուածովք, ամրափակեալ կրկնակի պարս-պօք յընդարձակ դաշտավայրի առ Սիպին գետով ։ Ուղղափառ բնակիչք քաղաքիս ունին 4 ․ եկեղեցիս ․ երևելի է ժողովրդապետական եկեղեցին մեծ և գե-ղեցիկ ․ ունի մարմարեայ խորանս սիւնազարդս ․ առ որով տեսաք զմեծաշէն բնակարանս ժողովրդապետին, ուր երբեմն էր վանատուն Յիսուեանց ։ Կան անդ երկու դպրոցք, և մենաստան մի կուսանաց, որք դաստիա-րակեն զաղջկունս ։ Երևելի է մեծ հրապարակն, և ՚ի միջի շատրուան գեղեցկաշէն ․ Նշանաւոր են և ապա-րանք Պրուգընդալ իշխանին, յորում են վսեմ զարդք, և հաւաքումն նորանշան իրաց և ճարտարագործ նկա-րուց ։ Գտանին աստ ՚ի Հայոց վաճառականք ոմանք կրպակաւորք ։

## ՍԱՍ ՍԻՊԻՇ

344. Ի՝ աղատ Թագաւորական քաղաք առ Միւլերպախ գետով հիմնեալ յամի Տն 1150. և է աթոռ վիճակին: Բնակիչք են Սաքսոնիացիք, և ոմանք 'ի Հայոց, որք պարապեն 'ի տուրեւառս, այլ չունին առանձին եկեղեցի:

## ՊՌԱՇՈՎ. ըստ Գերմ. ԳՐՕՆՇԴԱՏԴ

345. Ի՝ երեւելի աղատ քաղաք Թագաւորական, բազմամարդ, մեծ և պարսպապատ, շինեալ յամի Տն 1203 'ի մէջ լերանց՝ առ սահմանօք Վալաքիոյ կամ Ուլահաց: Ունի գեղեցիկ շինուածս, և հրապարակս վայելուչս. փողոցք նորա լայն և քարայատակ, յորս հոսեն ջուրք և մաքրեն զամենայն աղտեղութիւնս: Հոյակապ և մեծագործ է եկեղեցին Սաքսոնիացւոց վիմատաշ և բրգազարդ. երկայն 117 քայլ. և լայն 33. ունի 6 դրունս և զանգակատուն բարձր 136 ոտն. մինչև 'ի տեղի զանգակաց. իսկ բարձրութիւն զանգակին է 3. կանգուն: Գեղեցկաշէն է եկեղեցին ուղղափառաց, ուր պատարագէաք. զի սակաւաթիւ Հայք տեղւոյս չունին եկեղեցի: Այս քաղաք ունի երիս մեծամեծ արուարձանս, յորս բնակին և Ուլահք, որք ունին հին եկեղեցի բրգազարդ Շ.ռէց կոչեցեալ: Արտաքոյ քաղաքին է բերդն, և վանք Ֆրանչիսկեան կրօնաւորաց:

Արդ՝ յետ կալոյ մեր յայս քաղաք սահմանագլուխ Մաճառաստանու՝ ուղղեցաք զընթացս մեր նախ 'ի Վալաքիա, այն է յՈւլահս, և ապա 'ի Պուլղարիա:

# ՀԱՅՔ ՄՆԱՑՈՐԴՔ ՅԱՆԵՑՒՈՑ

## ԲՆԱԿԵԱԼՔ Ի ՎԱԼԱՔԻԱՑ ԵՒ Ի ՄՈԼՏԱՎԻԱՑ:

346. Այս բարեբեր աշխարհ սահմանակից է Մաճառաստանու և Դրանսիլվանիոյ, ուր 'ի հնումն բազում էին Հայք փախուցեալք յԱնւոյ, որք զառաջինն աստ դիմեցին, և 'ի մեծամեծ քաղաքս կեցեալ չափ նոքա բնակէին: Բայց յետոյ բազումք անցին 'ի Պու-

քօվկնայէ 'ի Մաճառստան և 'ի Լեհաստան, որով այժմ կարի նուազ մնացին Հայք յայսմիկ կողմանս, որպէս ունիմք ստորագրել 'ի կարգին ։

## ԲՈՒՔՐԷՇ

347. Ի՛ երեւելի մայրաքաղաք Վալաքիոյ կամ Ուլահու, համհմանակից տէրութեան Գերմանացւոց և հռչակաւոր վաճառատեղի ուր նստի Կուսակալ իշխան կամ Պէկ 'ի կողմանէ տէրութեան Օսմանեանց, և ունի բացարձակ իշխանութիւն, որոյ պալատ է մեծաշէն՝ Սարայ անուանեալ ։ Բնակիչք քաղաքիս հաշուին 50 հազար, և բոլոր քաղաքն բաժանի 'ի 67 թաղս. ամենայն տունք ունին պարիսպ, և ըստ մեծի մասին են փայտաշէնք. զի անդ սակաւ է քարն. իսկ փողոցք են գերանապատ սակս տղմոյ ։ Առ սովաւ անցանէ գետակն Տումպովիցա, յորմէ ելանէ ոսկի խառն ընդ աւազոյ, և է եկամուտ կարգեալ Տօմնային կամ Պրքոուհւոյն ։ Սոսէպ լուաք 'ի բնակչաց ունկաց զայս անկանի ստամնաւոր. * Տամնովիցա անուն գետոյն, Ըն 'նէէ ոչ' ո'նոս ոչ գտոյն ‖. Տումպովիցա անուշ ջուր է, այլ չմերձին, որ զայն ըմպէ ։ Նաւ ոչ անցանէ աղբիւր, զի բոլոր քաղաքն ըմպէ 'ի գետակէ անտի, որ է բարեջուր ։

Բազում են եկեղեցիք և փարթամ վանորայք Ուլահաց՝ ըստ մեծի մասին քարաշէնք. ըստ ոմանց են 400, 'ի սմին սահմանի ։ Գեղեցիկ է եկեղեցի և վանատուն Լատինացւոց, ուր օթագայեցաք. որ և կառուցաւ յաւուրս մեր առաջնորդութեամբ բաղմարգիւն հ. Անտոնիոսի Պապիկեան արքեպիսկոպոսի ։ Յառաջագոյն բազում էին աստ Հայք, և շինեցին եկեղեցիս. յորոց երկուք կան մինչև ցայժմ. մին փոքր է, և միւսն է գեղեցիկ քարաշէն և փառաւոր կառուցեալ յանուն Հրեշտակապետի. ունի երկու գմբէթս և բազում զարդս և անօթս ։ Իսկ տունք Հայոց են 120. յորոց ոմանք վաճառականք են, և այլք արուեստաւորք ։

## ՓՕՔՇԱՆ

348. Ի՛ գիւղաքաղաք 24 ժամու հեռի 'ի Պուքրէշէ, առ որով անցանէ Միլքով գետ ։ Բնակիչք ընդ

ամենայն են 7000 տունք. իսկ Հայք յառաջագոյն բազում էին անդ, այլ այժմ են 60 տունք և ունին երկու եկեղեցիս. մին Ս. Գէորգ, և միւսն Ս. Ածածին հնաշէն, զոր յետոյ նորոգեցին. ուր կայ և հին պատկեր, առ որ գնան յուխտ ամենեքեան։ Ակն այսր քաղաքի է ՚ի սահմանի Յաշին. և կէսն ՚ի սահմանի Պուքրեշին. ուստի Ս. Գէորգայ եկեղեցին է ՚ի մասին Պուքրեշի, և միւսն ՚ի մասին Յաշի։

## ՅԱՇ.

349. Ի մայրաքաղաքն Պուղտանու կամ Մոլտավիոյ առ Պահլու գետակաւ, ուր կային յառաջ զանազան ազգք և երևելի պալատք. այլ այժմ ըստ մեծի մասին անշքացեալ կայ այս քաղաք։ Բաց յեկեղեցեացն չիք այլ ինչ երևելի շինուած. յետ փոխադրելոյ աստ աթոռոյ Պէկին ՚ի Սուչօվէ՝ անպակաս են երթևեկութիւնք վաճառականաց։ Պալատ և պալատականք կամ կառավարութիւն Կուսակալին նման գոլով Պէկին Պուքրեշի, ըստ ամի բացարձակ տիրէ Պէկն բոլոր սահմանաց, և հանգոյն նմին արքայակերպ ճոխանայ։ Այժմեան կուսակալք են ՚ի Մոլտովական Պօյարաց, և ոչ ՚ի Ֆէնէրցի Յունաց. որպէս և Պէկն Իւլահու նաև ՚ի Պօյարաց երկրին։

Հայկազունք շինեցին աստ քանի մի եկեղեցիս. և ունէին առանձին եպիսկոպոս. այլ այժմ հազիւ գտանին աստ 150 տունք Հայոց, և ունին զերկու եկեղեցիս քարաշէնս անուամբ Լուսաւորչի և Աստուածածնին. եկեղեցի Լուսաւորչին շինեալ կամ նորոգեալ է 190 ամօք յառաջ՝ իսկ եկեղեցին Աստուածածնի դնի 400 ամօք յառաջ՝ որ գմբեթայարկ է և պայծառ. տեսանի և յիշատակարան, որ ասէ * Կա-
„ տարեցաւ գիրքս տօնամարգրութե ՚ի թվին ՌԾՁ ՚ի
„ Յաշ քաղաքն. որոյ առաջնորդ է Տէր Յովհան-
„ նէս Սիլիվլեցի ‖ ։ Պատմի անդանօր, թէ յամի տն 1551. Ստեփան ոմն Պուղտանու յարոյց մեծ հալածանս ՚ի վերայ Հայոց, և չարչարեալ զնոսա յայժ դառնալ ՚ի հռոմէութիւն, բայց ոչ կարաց ՚ի գլուխ տանել, ուստի բազումք ելին անտի։ Պատմեցին մեզ թէ ՚ի ժամանակի նորոգութեան եկեղեցւոյն ՚ի կամարի անդ

գտին վէմ մի փորագրեալ 400 ամօք յառաջ ։ Տեսաք ՚ի Անտաղին քաղաքին վաղեմի Ճաշոց, որոյ յիշատակարան այսպէս պատմէ. * Աւարտեցաւ քննահիմն և ա-
» ւաքելախօսս մարգարէաշէն հոգիաբուղխ այս տառ-
» ձեռամբ ոգնամեղ և անարհեստ դրչի տէր Սարգիս
» քհյի, ՚ի խնդրոյ ա͞ծասէր և բարեպաշտօն երկու եղ-
» բարց խճյ Սաւիլին և խճյ Պաւղոսին. ՚ի Թուական-
» րութեն հայկազեան սեռաւխս տովմարի ռ͞ղ ին. ՚ի հայ-
» րապետութեն հայոց տ͞ն տէր Փիլիպպոսին և առաջնոր-
» դութեն տէր Ներսէսս արհեպ͞սկսին պուղտանեաց եր-
» կրի ։ Եւ Թագաւորութեն Սաւիլ բարեպաշտ վովո-
» տային. մայրաքաղաքն Եաշ ընդ հովանեաւ տը
» Ածածնին. և տը Լուսաւորչին. և քհնյութեն տէր Սոմ-
» սեսին, և տէր Խաչտուրին. տէր Պուկասին, և դրչիս, և
» երեցփոխանութեն խճյ Ակսենտին ‖ ։

## ԴԵԳՈՒԶ.

350. Ի՝ քաղաքս Պուղտանեաւ առ Պալատ գետակաւ՝ 16 ժամաւ հեռի ՚ի Եաշէ. ուր գոն 1500 տունք Մոլտովանք ունին 4 եկեղեցիս ։ Յառաջագոյն հայք բազում էին աստ, այժմ հազիւ գտանին 200, անձինք և ունին եկեղեցի ։ Սուչօվցիք աստ էին յառաջ, ուր դոյ կամուրջ շինեալ ՚ի Ստեփանի իշխանէն (320) ։ Մերձ է աստ Պալատ աւան, ուր գոն քանի մի տունք հայոց, և ամենեքին պարապին ՚ի տուրեւառս ։

## ՌՕՄԱՆ

351. Ի՝ քաղաքս կառուցեալ առ երի Մոլտավա գետակին, որ Թափի ՚ի Սերետ գետ հեռի ՚ի Եաշէ 16 ժամաւ ։ Բնակիչք են 1500 տունք, որոց կէս յառաջ հայք էին. այժմ գոն 110 տունք հայոց ։ Եկեղեցին հայոց է յանուն Ածածնին շինեալ 200 ամօք յառաջ, որոյ յիշատակարան դնէ, թէ կատարեցաւ հոգաբարձութ͞բ տէր Խաչատուրին. և արդեամբք Յակոբշային. ուրանօր գոյ հին աւետարան 600 ամաց ։

## ՓՕԴՈՒՇԱՆ

352. Է անուանի քաղաք վաճառականաց իբր 18 ժամաւ հեռի 'ի Յաշէ՝ հանդէպ Սուչօվայի, ուր գոն 400 տունք Հայոց և ունին երկու եկեղեցիս յանուն Սբ Ածածնին, և սրբոյ Յարութեան. առաջինն է 480 ամաց, իսկ երկրորդն նորաշէն։ Աստանօր երևին աւերակք հին շինուածոց. գոն նաև անօթք և գրչագիր մատեանք բերեալք յԱնւոյ։ 'Ի յիշատակարանի եկեղեցւոյն Կամենիցի դնի. * «Ի ՌՃ լուսաւորէ պատ-» չանցի հայր Յովսեփին զհոգին, ունի յշէկ մէկ շուրջ » Ջառամ պանանախաշ և այլ պատարագի զգեստ»։

## ՀՕԳՆԱՑ

353. Է քաղաք փոքրիկ՝ 20 ժամաւ հեռի 'ի Յաշէ, առ որով անցանէ գետակ Բարեջուր. և ունի մեծ աղէհանք։ Գոն աստ 60 տունք Հայոց, և ունին եկեղեցի փայտաշէն յանուն Ածածնին։ Հերցա քաղաք չէ հեռի աստի, որ սահմանակից է գերմանացւոց. ուր գոն 10 տունք Հայոց եկեալք 'ի Փօդշանէ։

## ԳԱԼԱԾ կամ ՔԱԼԱՍ

354. Է բարեկից քաղաք և անուանի նաւահանգիստ Մոլտավիոյ շինեալ յեզերս Դունայի 'ի միջոցի Սերատ և Պրուտ գետոց, 36 ժամաւ հեռի 'ի Յաշէ։ Ուր բազում են երթևեկութիւնք նաւուց և վաճառականաց. յորմէ բարձեալ տանին յոլով ցորեան և զամենայն տեսակ ուտելեաց։ Աստանօր գոն 30 տունք Հայոց, և ունին եկեղեցի յանուն Ածածնին։ Յարևելեան կողմն 'ի բերան Սերատ գետոյ գոն աւերակք հին քաղաքի, զոր բնակիչք Կերկինա անուանեն. աստի ելանեն հին դրամք, որք ցուցանեն, թէ 'ի ժամանակս Տրայիանոսի կայսեր շինեալ է։

# ՊՈՒԼՂԱՐԻԱ

355. Հայք որ բնակին յայսմ աշխարհի՝ ոչ երևին եկեալք ուղղակի յԱնւոյ, այլ 'ի Պարսկաստանէ. սա-

## ՊՈՒՌՂԱԶ

361. Ի՜ փոքրիկ քաղաք, այլ անուանի վասն վաճառականութեան. զի էր նաւահանգիստ Իալիմեայի, ուր լինէր յառաջագոյն մեծ տօնավաճառ: 'Ի Պուռղազ գոն 20 տունք Հայոց, և ունին զեկեղեցի յանուն Ս. Աստուածածնին: Աստ է մեծ ծոց սեաւ ծովու, ուր շրջեցաք յամի տն 1808: (Տես 'ի Պոնտոս 259):

## ԳԱԳԱ ՑԱՂԻ

362. Ի՜ քաղաք անշուք. ունի ծովածոց, ուր թափի գետակ քաղաքին: 'Ի մերձակայ լերինս գտանին մեծամեծ արծիւք. մինչև կարել յափշտակել զոչխարս 'ի հովտաց: Աստ գոն 40 տունք Հայոց, որք ունին հին եկեղեցի քարաշէն յանուն Ս. Արագայ խաչին:

Տեսաք 'ի Գրիգորիպօլիս յեկեղեցւոջ սրբոյն Կատարինէի Յայսմաւուրք բոլորագիր մագաղաթեայ գրեալ 'ի Կոստանդինուպօլիս յեկեղեցւոջ Ս. Ածածնին յաւուրս Սուլթան Մահմետին 'ի թուին Հայոց ՌՃԻԴ (1675): Պատմէ թէ այս թագաւոր էառ զԿիրիտ և զԿամենից, և զբազում քրիստոնեայս գերի վարեաց. ապա ասէ. * Եւ եղաւ յիշատակս այս այսմաւուր 'ի
„ Պապատաղին. 'ի Ս. Արագայ խաչ կոչեցեալ եկեղե-
„ ցին ... աղաչեմ յիշել ... զգծօղս զՅովհաննէս երէց ||:

## ՏԻՄԷԹՕՔԱՑ

363. Ի՜ քաղաք անշուք, ուր բնակին զանազան ազգք. տունք Հայոց են 20. և ունին գեղեցկաշէն եկեղեցի 'ի վերայ լերին յանուն սրբոյն Գէորգայ:

Մերձ է աւանն Փազարճըխ, ուր գոն 30 տունք Հայոց. եկեղեցին է նորաշէն: Աստ լինի տօնավաճառ, և անպակաս է երթևեկութիւն վաճառականաց:

## ԴԸՌՆՕՎԱ, կամ ԴԻՐՆՕՎԻ

364. Ի՜ քաղաք բարեշէն և բազմամարդ. ունի հրապարակական շինուածս, իջևանս վաճառականաց,

և մզկիթս ։ Ուր գոն բազում Յոյնք և Պուլղարք և է աթոռ Մետրապօլտին համօրէն Պուլղարաց, որք ունին 18 եկեղեցիս ։ Աստ սակաւ են Հայք․ բայց ունին գեղեցկաշէն եկեղեցի ։ Այս անուանի քաղաք ունի բերդ 'ի վերայ ապառաժի 'ի ձև վեցանկիւնի հանդերձ 5 դրամբք․ զոր շուրջանակի պատէ բազուկ մի Դունայի, իջեալ 'ի բերդէ անտի․ ուր գոն և կրկին աշտարակք ։

## ՓԻԼԻՊՊԷ

365. Սաղեմի քաղաք հռչակաւոր՝ կառուցեալ յարքունի Ճանապարհին՝ լի հին շինուածովք․ ունի գեղեցիկ շուկայս, իջևանս, բաղանիս, մզկիթս և եկեղեցիս․ երևելի է աթոռանիստ եկեղեցի Մետրապօլտին Թրակիոյ ։ Գտանին անդ յազգէս Հայոց 100 տունք, որք յառաջ աւելի էին․ և ունին զեկեղեցի յանուն սրբոյն Ստեփաննոսի ։ Ուր 'ի ծայր լերին գոյ քառակուսի աշտարակ իբրև դղեակ իւր․ գլխաւոր բնակիչք տեղւոյս են Պուլղարք ։ Կան աստ երկու քարաշէն մատուռունք խաչաձևք․ բնակիչք պատմեցին թէ 'ի միումն քարոզեալ է սուրբ առաքեալն Պօղոս ։ Արտաքոյ քաղաքին երևին բազում հողակոյտք գերեզմանք նախնի հռովմայեցւոց անկելոց 'ի պատերազմի ։

## ԹԱԹԱՐ ՊԱԶԱՐԻ

366. Այս քաղաք կառուցեալ յարքունի Ճանապարհին առ Մերիճ գետով․ ուր լինի ամըստամէ տօնավաճառ, զոր Մօրաղ կոչեն ։ Գլխաւոր բնակիչք սորա են այլազգիք և Յոյնք․ գոն և 30 տունք Հայոց, որք ունին զեկեղեցի յանուն սրբոյն Ստեփաննոսի ։ Մերձ է աստ կիրճն ապառաժուտ Չէնկէ լերին․ ուր երևին մնացորդք հին կամարակապ դրան, զոր ասեն մնացեալ 'ի ժամանակէ Տրայիանոսի կայսեր ։

## ԿԻՒՄԻՒԼՃԻՆԷ

367. Այս քաղաք անշուք․ ունի մզկիթս, բաղանիս և իջևանս․ ուր գոն և 20 տունք Հայոց ։ Իսկ 'ի Զօռ-

լու են 100 տունք Հայոց, և ունին զեկեղեցի յանուն սրբոյն Գէորգայ. ուր գոյ և հրաշագործ պատկեր: Յառաջագոյն բազում էին Հայք յայսմիկ կողմանս. մանաւանդ ՚ի հռչակաւոր քաղաքն Սօֆիա, որ է վաղեմի մայրաքաղաք և երեւելի վաճառատեղի. որպէս երեւին ցարդ մնացորդք հին շինուածոց. ևս և առողջացուցիչ ջուրք և հանք ոսկւոյ: Սակայն հայ բնակիչք ցրուեալ կան յայլեւայլ կողմանս:

## ԷՏՐԻՆԷ

368. Ի վաղեմի մայրաքաղաք հռչակաւոր՝ ՚ի հնումն Ադրիանուպոլիս անուանեալ, որոյ շրջապատ է 9 մղոն. յիւրաքանչիւր կողմունս պարսպին կառուցեալ կան 12 աշտարակք ՚ի պաշտպանութիւն. Աւրանօր գոյ այլ բերդ քառակուսի, յորոյ յիւրաքանչիւր անկիւնս շինեալ կան բոլորաձեւ աշտարակք: Ի սմին քաղաքի են բազում երեւելի շինուածք, վայելուչ փողոցք և շուկայք, մեծաշէն իջեւանք, պէղպաղիստանք, և պալատք: Կրկին են անդ փրքունիք, և 42 մեծագործ մզկիթք. յորոց 10 գոլով առաւել հոյակապ՝ Սէլատին կոչին. ֆր արքունականք: Գլուխ ամենեցուն է մզկիթն Սէլիմէ. շինեալ ՚ի Բ Սուլ. Սէլիմէ յամի Տն 1574. ունի աւելի 999 լուսամուտս. գմբէթ նորա կանգնեալ կայ ՚ի վերայ 8 կամարաց, զոր մեծ ոմանք երկու կանգնաւ քան զԱյա սօֆիային. ունի 4 մինարէս ուղղաձիգ հաւասար հանդերձ 3 շէրիֆէիւք: Դրունք քաղաքիս են 10. մերձ ՚ի նոր ապարանս արքունի է քարաշէն կամուրջն 10 կամարօք, առ որով անցանէ գետակ. Թող և զայլ երեւելի կամուրջս և ջրաբաշխ աշտարակս այլովքն հանդերձ: Ի սմին քաղաքի բնակին գրեթէ ամենայն ազգաց վաճառականք: Հայկազունք յաճախեցին աստ և բազմացան, և շինեցին փառաւոր եկեղեցի յանուն սրբոյն Թէոդորոսի, ուր է աթոռ Արքեպիսկոպոսին. այժմ են աստ 1000 տունք Հայոց, այլ ՚ի վաղ ժամանակաց սկսան Հայք բնականալ աստ. քանզի ՚ի Թ դարու բնակէր անդ հաստուած յԱրշակունի նախարարութենէ, յորոց էր ա Բասիլ կայսր Մակեդոնացի, ըստ որում բերէ Կոստանդին Պերփիւռուժէն յասելն. * Ի դաւառէն մակեդոնիոյ ունէր

» զանկիզմն. և մերաբերէր առ հայս արշաւանօքն ադ-
» դաւ ||: Սոցա առաջինք, որք եկին 'ի Հայաստանէ՝
էին երկուք, որք 'ի Է դարու նախ եկին 'ի Կոստանդի-
նուպօլիս. այլ բերեալ նոցա զինուածս և զզաւակս փո-
խադրեցան 'ի Փիլիբբոս քաղաք Մակեդոնիոյ, և ան-
տուստ յԱդրիանուպօլիս. ուր * Տեսեալ նոցա (ասէ)
» զպարմար և զպատշաճ տեղին, իբր 'ի սեպհական
» ցեղ և 'ի տուն բնակաւորեալ՝ աճեցան բազմութք.
» և ըստ բաւականին առատ ընչիւք ճոխանալով, ըն-
» հայրենի ազնուականութին և զզարմ անխառն պա-
» հելով ||: Յիշատակի 'ի գիրս թէ 'ի սկիզբն Ժ դա-
րու քաղաքապետ Ադրիանուպօլսոյ էր հայկազուն
Բանդըրադուգաս իշխան:

## ՎԱՌՆԱ.

369. Ի՛ քաղաք ծովահայեաց և բարեկիրճ վաճառա-
ւատեղի. ունի մեծագործ բերդ շինեալ 'ի գլուխ անդր
ծովածոցոյն. առ որով անցանէ գետն Պանճը սույ. յա-
րոյ վերայ կառուցեալ կայ մեծ կամուրջ: Յայս քա-
ղաք անպակաս են երթևեկութիւնք վաճառականաց,
և բնակիչք են 'ի զանազան ազգաց: Յառաջագոյն բա-
զում էին աստ Հայք, որք 'ի ժամանակս պատերազ-
մաց ցրուեցան եղեն, այլ յանդորրանալ քաղաքին դար-
ձեալ ժողովեցան. ուստի այժմ գտանին աստ 150
տունք Հայոց. եկեղեցին է յանուն սրբոյն Սարգսի,
և հրաշագործ պատկերն է ուխտատեղի բարեպաշտից:

## ԻՊՐԱՅԻԼ

370. Որովհետև բազումք 'ի Հայոց Պուլղարիոյ
ցրուեցան 'ի քաղաքս Պուղնայի. և բազումք յԱնեց-
ւոց նաւու մտեալ 'ի Պուղնա եկին 'ի քաղաքս և 'ի նա-
ւահանգիստս մեծի գետոյն. և անտի չոքան 'ի Մոլտա-
վիա, նմին իրի հարկ եղև բանիս անցանել ընդ այնս
և խօսիլ 'ի վերայ մնացեալ Հայոց:

Արդ՝ Իպրայիլ բարեկերտ քաղաք անկանի 'ի ձախա-
կողմն Պուղնայի՝ սակաւ ինչ 'ի վեր քան զբերան Սերէ-
թին գետոյ (318). որ ունի բերդ ամուր 5 աշտարա-
կօք: Բնակիչք են 'ի զանազան ազգաց. ուր գոն և 20

տունք Հայոց, և ունին զեկեղեցի։ Նաւահանգիստն է ամբարանոց վաճառուց, ուրանօր հաւաքին ամենայն տեսակք ուտելեաց, և բարձեալ տանին անտի յայլեայլ տեղիս։ Դունա գետ աստ բաժանի 'ի զանազան առուս։

## ԻՍՄԱՅԻԼ

371. Ի բերդաքաղաք անուանի 'ի հիւսիսակողմն Դունայի, ուր Թափի Պրուտ գետ (401). Նաւահանգիստն է բարեկից, ուր յաճախեն նաւք, և բարձեալ տանին զամենայն տեսակս ուտելեաց։ Յառաջագոյն բազում էին աստ Հայք, և ունէին քարաշէն եկեղեցի յանուն Ա՟ծածնին. սակայն 'ի ժամանակի շինութեան բերդին յափշտակեցաւ յԱյլազգեաց սակս հուպ լինելոյ 'ի պարիսպն. որով ցրուեցան անտի Հայք, և շատք անցին 'ի Գրիգորիոպօլիս. մինչ որոյ այժմ հազիւ գտանին անդ 60 տունք Հայոց. և եկեղեցի նոցա է 'ի փոքրիկ տան (307)։ Աստի մինչև ցԱքքիրման բնակէին 'ի դաշտօրայս Պուճաք Թաթարք, որք այժմ փոխադրեցան յՕղու խրա (571)։

## ՔԻԼԻ

372. Ի գիւղաքաղաք շինեալ 'ի վերայ հիւսիսային առաջին Դունայի. ուր գետն ծովանման լայնարձակ է. և ունի 'ի միջի անդ զընդարձակ կղզի, որ թուի լինել հին Աքիլլէոս կղզին. որպէս և Քիլի անունս է համառօտեալն Աքիլլեայ, որ դեգերեցաւ յայսոսիկ կողմանս։ (Տես 'ի Պոնտոս 243); Բերդ սորա է 'ի լեռնակողմն, առ որով անցանէ գետակ։ Զանազան ազգք բնակէին 'ի Քիլի. յառաջ գոյր անդ բազմութիւն Հայոց, և ունէին զեկեղեցի յանուն Ա՟ծածնին, այլ բազումք անցին 'ի Գրիգորիոպօլիս։ Տեսաք 'ի յայսմաւուրս յիշատակարան, որ աստ գրեալ 'ի Պագձէսարայ 'ի ՌՃԾԱ. և եդեալ 'ի քաղաքն Քիլի 'ի դրունս սուրբ Ա՟ծածնին։

## ԱԳՔԻՐՄԱՆ

373. Ի անուանի ծովահայեաց բերդաքաղաք շինեալ 'ի ծայրն Պէսարապիոյ 'ի բերան Տնեսդէր գե-

տոյ, ամրաշէն է և գեղեցկադիր. զի 'ի մի կողմն է ա-հագին խոր խրամ լայն 60 ոտնաչափ. և 'ի միւս կողմն երկայն ծոց գետոյն, որ հոսի 'ի սեաւ ծով: Ուր էր 'ի հնումն Ակիզօնիում քաղաք. որ կայր մինչև ցժամա-նակս Պէնտվալացւոց: Այնպէս առ Տնեստերաւ գոյր երևելի Թիրաս քաղաք. ուր է այժմ Աքայաք գիւղն: 'Ի վերայ բերդին Ագքիրմանու երևին վէմք հնա-գիրք. որք բարձեալ եղեն 'ի մօտակայ գերեզմանա-տանց 'ի ժամանակս նորոգութեան: Զայս բերդ Ագ-քիրմանու էառ յՕսմանեանց Տիւք Տըռըշըլիեօ 'ի վերջին պատերազմի. որ առ սակաւ սակաւ ծաղկի ընդ տէրութեամբ Ռուսաց. ուր և բնակին զանազան ազգք: Հայք 'ի վաղուց բնակեն աստ, յորոց այժմ մնա-ցեալ են 150 տունք, որք ունին հին եկեղեցի քարա-շէն, բայց կիսով չափ թաղեալ 'ի գետնի. ուր և յի-շատակին երեք տաճարք 'ի յիշատակարանին, որ ասէ.
* Ի երատին նորոգեալ գրեցաւ ցանգ գանձարանիս
» թվին ՌՃՂԶ. 'ի ծովահայեաց քաղաքն Ակքիրման,
» 'ի դուռն սուրբ Աստուածածնին, և սուրբ Օդսէն-
» դին, և սուրբ Յովհաննու աւետարանչին երից սրբոց
» տաճարաց ||:

## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## ԸՆԴ ՆՈՐ ՌՈՒՍԻԱ

374. Նոր Ռուսիա կոչի այն մասն աշխարհի, որ սկսեալ 'ի Տօմպասարէ (310) ձգի մինչև ցՏօնաւիս գետ, և պարունակէ յինքեան զերիս կուսակալութիւն Խերսոնի, Դաւրիդոյ և Եկատարինոսլաւի. ուր գոն միլիոն մի և հինգ հարիւր հազար բնակիչք, բաղում քաղաքք, և 101 գիւղօրէք միայն օտար հատուածոց:

Մեծ կուսակալ իշխանն նստի 'ի մայրաքաղաքն Օտեսսա և իշխէ երից կուսակալութեանց միանգա-մայն, որոց առաջին հասանէ մինչև ցգետն Տնեբեր, և իշխանանիստ քաղաքն է Խերսոն. երկրորդն սկսեալ 'ի Տնեբէր գետոյ հասանէ մինչև ցկիրճ Թամանու, պարունակեալ ընդ իւր և զմեծ կղզին Ղրիմի. և իշխա-նանիստ քաղաքն է Ագմէջիդ. իսկ երրորդն սկսեալ յՕզու խըռէ, հասանէ մինչև ցնոր Նախիջևան և

ցՍպատարինաուլաւ, որ և է իշխանանիստ քաղաք Սպա-ռավարչին :

Նորա՝ շրջեալ մեր անձամբ 'ի Նոր Ռուսիա տե-սաք բազում հնութիւնս, տեղիս հին քաղաքաց ծաղ-կելոց 'ի ժամանակս հեթանոսութեան, հին դամբա-րանս և դրամս այլազգս հանդերձ : Մերձ յՈչակո-վէթուպօլիս գտան ընդ երկրաւ կրկին թեւք թռչնոյ ինչ պատեալ ոսկի թիթղամբ. նոյնպէս գաւ և ձուկն մի ոսկիապատ : Տեսաք զոսկերս մարդկան և զէնս քա-ջաց այնպէս այլափոխեալս, զի ընդ հպելն լուծանէին 'ի փոշի : 'Ի մէջ Տնեբեր գետոյ և Սգախ ծովու լի են արձանք խոշորաշէնք կանգնեալք 'ի նախնի հեթանո-սաց 'ի վերայ գերեզմանաց, յորոց ելանեն մեծամեծ կմախք (568) :

## ՀԱՅԿԱԶՈՒՆՔ ՆՈՐ ՌՈՒՍԻԱՅ

375. Ունեցի Հայք զաւառին փախուցեալք յե-րեսաց Թաթարաց դիմեցին նախ 'ի Ղրիմ, և անտի ծաւալեալք ընդ Նոր Ռուսիա՝ բնակեցան յայլ և այլ քաղաքս մինչև 'ի Սպատարինաուլաւ և 'ի Նոր Նախի-ջևան, զորոց զվիճակէ և զքաղաքաց գրեսցուք 'ի կար-գիս աշխարհագրական քննութեանս :

## ՕՏԵՍՍԱ

376. Նորա՝ թողեալ մեր զԳրիգորիոպօլիս, ուղղե-ցաք զընթացս յՕտեսսա մեծահռչակ մայրաքաղաք ընդարձակ բազմամարդ և բազմավաճառ. որ յառաջ քան զմտանելն ընդ տէրութեամբ Ռուսաց էր անշուք վայր, և ունէր մերձ 'ի ծովն, ուր այժմ է որգելա-նոց, անզօր դղեակ Խոճապէյ կոչեցեալ, զոր շինեաց այլազգի իշխանն Խոճա պէկ :

Սակայն 'ի հնումն գոյր յայսոսիկ կողմանս Օտեսոսս մայրաքաղաք Գրաղլիփիտացւոց, որք էին հա-տուածք եկեղք ըստ Պոմպոնիոսի Մելայէ : Յամի Տն 1794. Գրաստովիչ մեծ զօրապետն Ռուսաց էառ զայս դղեակ Խոճապէյ, ուր տէրութիւն Ռուսաց ետ բե-րել 'ի միջերկրական կղզեաց հաստուածս ինչ Յունաց՝ շնորհելով նոցա բազում ազատութիւնս. և անուա-

նեաց զտեղին Օտեսսա: Իսկ 'ի 1803. յամսեանն մարտի մեծ դուքսն գաղղիացի անուանեալ Տիւք Տը Ռըշլիէօ նստաւ անդ կուսակալ իշխան, և 'ի հետևեալ ամի սկսաւ նախ շինել զեկեղեցիս. որով ժողովեցան 8000 բնակիչք, և ապա լցաւ քաղաքն մեծամեծ շինուածովք և քաղաքական կարգօք, մինչ զի այժմ եղև մի յերևելի քաղաքաց Ռուսիոյ՝ ունելով 30 հազար բնակիչս՝ բաց 'ի զօրաց, որոց զօրագլուխ և մեծ կուսակալ կարգեցաւ յետ Տիւքին մեծ Կոմսն Լանժըռօն միակրօն մեր գաղղիացի. որ բազում մարդասիրութեամբ հիւրընկալեաց զմեզ յամի 1820: Իսկ զկնի սորա կարգեցաւ ընդհանուր կուսակալ Կոմսն Վորոնցով. որ նոյնպէս ոչ սակաւ մարդասիրութ. ժողովեաց զմեզ 'ի 1828: Այս փառաւոր իշխան կառոյց պալատ մեծագործ յարևելեան ծայր քաղաքին 'ի վերայ ձախակողմեան հրուանդանի կամ բազկի նաւահանգըստին: Ուր 'ի 1828 բնակեցաւ Օգոստափառ Կայսրուհին Աղեքսանդրա Ֆէոտորովնայ որ և 'ի տօնի աւուր ծննդեան մեծի Կայսեր Ռուսաց Նիկողայոսի ամուսնոյն իւրոյ հաճեցաւ տեսանել զմեզ և խօսակցել. նմին իրի աւուրբ յառաջ ետ գրել թուղթ մեծի Կոմսին Վորոնցովի այսպէս. * Պատիւ է ինձ ծանու-
„ցանել ձեզ՝ զի մեծափառ Կայսրուհին բարեհաճի
„հանդիպել տեսութե ձեր 'ի վաղիւ անդր 'ի մետասա-
„ներորդ ժամու 'ի պալատան անդ: ‖ Նա ինքն Վեհապանծ Կայսրուհին 'ի հետևեալ աւուր 'ի 25 յունիսի, 1828. ընկալեալ զմեզ քաղցրութ. խօսակցեցաւ ոչ սակաւ՝ հարցանելով զվիճակէ մերմէ. և ապա սըրտապնդեաց արժանաւ 'ի գործ՝ խոստանալով զպաշտպանութի մեծի Կայսեր՝ այլովքն հանդերձ: Ընդ ապա մեծ Կոմսն Վորոնցով առաջի մեծամեծացն խօսեցաւ բազում գովութիւ սակս ուսմանց և կրթութեց վարժատան մերոյ:

Արդ աստի սկսանի երկայնաձիգ ծառաստանեկ զբօսարան վասն քաղաքացւոց 'ի բարձր կայի, որ հայի 'ի վերայ նաւահանգստին, ուր մեծամեծք կարգաւ կառուցին հոյակապ պալատս բարձրադիրս և գեղեցիկս:

'Ի միջավայրի անդ սոյն զբօսարանի յաւուրս մեր կանգնեցին հսկայ արձան պղնձաձոյլ 'ի պատիւ մեծի Դուքսին Տըռըշլիէօ. որ և անկանի 'ի կատարած ընդար-

ձակ պողոտային հանդէպ ծովուն, որոյ կացեալ 'ի վե-
րայ քարաշէն պատուանդանի և ձգեալ զձեռն՝ մա-
տամբ ցուցանէ զդիրս նաւահանգստին ։

Յարևմտեան կողմն պատուանդանին փորագրեալ կայ 'ի վերայ մարմարիոնի Աստրէա աստուածուհի արդարութե (Ձեւ. 673)։ 'Ի հարաւակողմն՝ Հերմէս 'ի ձեռին օձապատ վիրգ (անդ 646)․ 'Ի հիւսիսակողմն Դեմետր աստուածուհի՝ 'ի միում ձեռին մանգաղ, և 'ի միւսումն եղջիւր առատութե (անդ 641)։

Իսկ 'ի ծովակողմն արևելեան՝ 'ի վերայ ամենագլխոյ տախտակի փորագրեալ կայ ընդ արձանաւ այսպիսի իմն արձանագիր ․

Герцогу Еммануилу Деришелье
Управлявшему
съ 1803 по 1814 годъ
Новороссійскимъ краемъ
и
Положившему основаніе благосостоянію
Одессы.

Благодарные къ незабвеннымъ его трудамъ жители всѣхъ сословій сего города и Губерній Екатеринославской, Херсонской и Таврической воздвигли памятникъ сей

въ 1825 годѣ
При Новороссійскомъ Генералѣ—Губернаторѣ
Графѣ Воронцовѣ.

* Էմմանուէլի Դըքին Տըռիշըլիեօ կառավարչի սահմանաց Նոր ռուսիոյ 'ի 1803 ամէ մինչև ց1814, և հաստողի զսկիզբն բարեկարգութե Օտեսայի, Շնորհակալու նորին անմոռանալի վաստակոց բնակիչք համայն ընկերութեց այսր քաղաքի և կուսակալութե Եկատերինոսլավի, Խերսոնի և Դաւրիոյ կանգնեցին զայս արձան 'ի 1826 ամի․ Յիշխանութե ընդհանուր Կուսակալի Նոր ռուսիոյ Կոմսին Վորոնցովի ։

Օտեսա է քաղաք գրեթէ ամենայն ազգաց մանաւանդ եւրոպացւոց․ ուր տեսաք վաճառականս ամենայն ազգաց և քաղաքաց, որք առնեն տուրևառութիւնս ընդ մեծամեծ քաղաքաց Եւրոպիոյ ։ Ունի և նաւք ամենայն տէրութեանց անպակաս յաճախեն

'ի նաւահանգիստն, բերեն զվաճառս Եւրոպիոյ, և տանին զցորեան : Այս նաւահանգիստ է ընդարձակ ծոց Պոնտոսի . ուր սակս ապահովութեան նաւուց՝ տէրութիւն Ռուսաց կանգնեաց երկայնաձիգ ամբարտակս 'ի մէջ ծովուն յերկուց կողմանց ընդարձակ միջոցաւ : Այսոքիկ կրկին բազուկք երկայնեալք 'ի ծովանդր՝ խորտակեն զալիս և յանդորրու պահեն զնաւս : Յաջակողմեան ամբարտակն մերձենան նաւք նորեկք . իսկ 'ի միւսն մաքրեալքն կամ ապահովեցեալ նաւք 'ի հիւանդութենէ :

377 . Այս քաղաք ընդարձակ է յոյժ և հարթածաւալ . փողոցքն լայն և ուղղաձիգ . յերկոսին կողմունս ամենայն փողոցաց շինեալ կան քարաշէն խրամք՝ առ 'ի հաւաքել անդ ջուրս, և քարայատակ ճանապարհ մարդկան . իսկ միջոցն է ընդարձակ փողոց վասն սայլից առանց քարի : Շուկայն և փառաւոր կրպակք շինեալ են 'ի վերայ մեծամեծ փողոցաց : Ամենայն տունք են քարաշէն և գեղեցկանիստ, շատք են կրկնայարկ և եռայարկ պղնձապատ : Դիրք քաղաքիս է բարձր և ծովահայեաց . ուր են երևելի շինուածք, պայծառ եկեղեցիք, իշխանք, դպրոցք և մեծաշէն պալատք : Երևելի է մեծ ուսումնարանն մեծի դքսին Ռիշըլիէօ . որոյ ծախիւք և ջանիւք այն կառուցաւ ընդարձակ և բարձր, քարաշէն և գեղեցիկ, բաժանեալ 'ի զանազան օրահս և 'ի կարգս, ուր հարիւրաւոր մանկունք ուսանին զլեզուագիտութիւն և զուսումնականութի : Անդ և մեզ վիճակեցաւ կրթել զմանկունս Գաղղիացւոց, Իտալացւոց և Գերմանացւոց խոստովանահայրական պաշտօնիւ՝ ցորչափ եղեաք անդ, որպէս ցուցանէ վկայական նոցա :

Գեղեցկաշէն է սիւնազարդ Թէատրոն քաղաքիս, ուր անընդհատ ձևացուցանեն զայլ և այլ պատմութիւնս :

Ամենայն քրիստոնեայք ունին աստ եկեղեցիս . որպէս և Հրեայք ունին սինակոկայ և դպրոց քարաշէն : Սակայն պայծառ և մեծաշէն է յոյժ եկեղեցին Ռուսաց՝ կառուցեալ յանուն սրբոյն Նիկողայոսի 'ի մեծ հրապարակի անդ, 'ի ձև քառակուսի բարձր և լայնանիստ . ունի զերիս դրունս և զերիս միակարգ խորանս ոսկեզօծս և փառաւորս . յատակն է զարդարեալ ընտիր մարմարեան քարամբք :

Այս եկեղեցին լատինացւոց փոքր է, բայց քարա-շէն և գեղեցիկ. ունի յերկոսին կողմանս զերկու աւանդատունս և զերիս խորանս. զկնդակատունն քարաշէն կառուցեալ կայ 'ի ճակատ դրանն, և արտաքոյ ունի զընդարձակ հրապարակ քառակուսի 'ի վերայ չորից երևելի փողոցաց քաղաքին, և 'ի չորեսին կողմունս չորս մեծամեծ դրունս: Վանատունն է քարաշէն կրկնայարկ կառուցեալ յաջակողմն եկեղեցւոյն 'ի վերայ մեծի փողոցին. ունի բակ և գեղեցիկ պարտէզ: Աստ եղև և մեր բնակութիւն՝ ցորչափ եղեաք յայս քաղաք կառավարելով զժողովուրդն 'ի խնդրոյ մեծի Կոմսին և Հոգաբարձուաց, որպէս ցուցանէ հետեւեալ վկայական նոցա գրեալ իտալերէն. * Հաւատարմա-
» ցուցանի վասն պարզ ճշմարտութեան և վկայութիւն
» ընծայի ամենեցուն, որք տեսանեն զայս, թէ Յար-
» գոյապատիւ Հայր Մինաս Բժշկեան 'ի կարգէ սրբոյն
» Անտոնի Աբբայի Մխիթարեան, առաքելական քա-
» րոզիչ՝ յապաղելն աստ տեսեալ զայս եկեղեցի կա-
» թոլիկաց անխնամ մնացեալ 'ի հոգեւոր վերակա-
» ցուաց, անձնատուր եղև ձրի 'ի սէրն Այ ամենայն
» նախանձու և եռանդեամբք ոչ միայն 'ի ծառայու-
» թիւն այսր եկեղեցւոյ, 'ի հոգաբարձութիւն և 'ի
» փրկութիւն հոգւոց, այլ նաև 'ի ծառայութիւն Ու-
» սումնարանի Դքսին Ռիշըլիեօ և 'ի հրապարակա-
» կան Անկելանոցին: Որոյ վասն արդիւնաւորեցաւ
» առնուլ զընդհանուր շնորհակալութիւնս մեր, տալով
» նմա զայս ներկայ վկայական ճշգրտեալ և ստորագ-
» րեալ 'ի վսեմափառ Կոմսէն Լանժըրօնէ 'ի զի-
» նուորական ընդհանուր Կուսակալէ [illegible], [illegible], [illegible]. նաև
» 'ի հոգաբարձու ժամանակաւոր գործակալաց նոյն
» Կաթոլիկ եկեղեցւոյն, առ 'ի զօրել յամենայն տե-
» ղիս. յորոյ 'ի հաւատարմութիւն եմ:

Օտեսսա. 19 օգոս. 1820.

Le Comte de Langeron. (L. S.)

378. Եկեղեցին Յունաց է 'ի հարաւակողմն քաղաքիս. և է բարձր քարաշէն. ունի ընդարձակ հրապարակ: Յոյնք ունին աստ երևելի դպրոց, ուր ուսանին բազում մանկունք զհարկաւոր ուսմունս:

Երևելի շինուած է հրապարակական Անկելանոց

քաղաքին բարձր և քարուկիր նախ յերկուս մասունս բաժանեալ արանց և կանանց և յայլ և այլ սենեակս որոշեալ. ուր դարմանին հիւանդք ամենայն քրիստոնէից. տեսաք 'ի նմին 240 հիւանդս քաղաքին: Խոզաբարձուն գաղղիացի և իտալացի հիւանդաց մեզ յանձնեցաւ հոգևորապէս ցորչափ եղեաք անդ. որք սակս երախտագիտութեն եառուն զհետևեալ գիր շնորհակալութեն 'ի ձեռն բժշկապետի Հիւանդանոցին գրեալ գաղղիարէն:* Սոտո-
» րագրեալս Յովսէփ բժշկուն, Արքունի խորհրդական
» և բժշկապետ քաղաքական Անկելանոցին Օտեսայի
» վկայեմ և հաստատեմ, թէ Մեծապատիւ Հայր
» Մինաս բժշկեան Առաքելական Քարոզիչ և Վար-
» դապետ Միաբանութեան՝ ցորչափ ժամանակս մնաց
» յայս քաղաք՝ ակներև եցոյց զքրիստոնէական դութն
» յաճախելով յԱնկելանոցն, որոյ պաշտօն յանձնեալ
» է ինձ. մխիթարէր անպակաս և մատակարարէր հո-
» գևոր նպաստս Կաթոլիկ հիւանդաց, զորս դժբաղ-
» դութիւնն և հիւանդութիւնն ժողովեալ է յայս տե-
» ղի գթութեան:
» Այսքիկ հիւանդք, որոց փոխան պարտաւորե-
» ցայ լինել շնորհակալու, մատուցանեն ինև զիւրեանց
» անկեղծ շնորհակալութիւնս նմին Արժանաւոր և
» Մեծարու վարդապետին. որոյ հեռագնացութիւն 'ի
» մէնջ պատճառէ մեզ աւելի իմն զգալի մորմոք: Յո-
» րոյ 'ի հաւատարմութիւն գրեցի զայս ներկայ բան
» 'ի վկայութիւն երախտագիտութեան նորա և իմ:
Օտեսա. 16 սեպտ. 1820.

*Pannecet D.r Med. Cons.-d-Cour.* || (L.S.)

379. Գեղեցիկ է հասարակաց պարտէզն 'ի քաղաքամիջի անդ այլ զուրկ 'ի պտղաբեր ծառոց: Սակայն շուրջ զքաղաքաւ անպակաս են ծառատունկք և պարտէզք ազգի ազգի պտղոց և բուսոց: Թողում ասել զվայելուչ փոքրիկ գիւղորէս շուրջ զքաղաքաւ, զոր Խուտոր կոչեն. որք են ամարանոցք մեծամեծաց: Ուր է արքունի պարտէզն ընդարձակ, և վանք Ռուս կրօնաւորաց:

Հայք բնակին 'ի հարաւակողմն քաղաքին, որք են իբր 30 տունք և աւելի, փոխադրեալք 'ի Գրիգորի-

պօլսոյ. բայց չունին առանձին եկեղեցի, այլ 'ի տան կատարեն զպաշտօն։

Տեսաք 'ի տան անդ փոքրիկ գրքոյկ բերեալ յՀնդկաստանէ և հանեալ 'ի վաղեմի գերեզմանաց՝ 32 թերթիւք, յօրինելովք 'ի մորթոյ շան և գեղելովք բալասանաւ. որպէս և թելքն են յաղեաց, որովք կապեալ, և 'ի կաշեայ անօթ եդեալ թաղեալ էին. չափ մեծութեան թերթիցն և անվերծանելի ձևք տառիցն երևին աստ, որ է մի երեսն այնր գրքուկի.

ነዐ·ፋ፡ቀሮ፡ወሌ
ፋኪ።ኢኤ·በ፡ሄደ
ከሌ፡ፕ·ወ·ክቀ፡ፏ
ክሬዩ፡ዘቴገበፅ፡ጽ
ኰቅኺ፡ኮ·ኮበ·,ን
ሏጢ·ኧጴመክኲ
ቴ ዩዐነ፡ዥጵ·ጙጡ·
ር፡፡ወግሁሮ፡፡ኔቴ
ጦ·ፊሬ·ፃ ኽ·ፅባK
ኌኳሖሮ·ኪ ጮቕኩ

Հաւատացեալք Գերմանացւոց են իբր 15, բնակեալք շուրջանակի 'ի գիւղօրէս և ամենքեան ունին եկեղեցիս և քահանայս. մեծ մասն է ուղղափառ. որոց գնացաք յայցելութի 'ի 1828, անցեալ ընդ երկայնաձիգ ակամնջս ծովու անջրպետս առ 'ի ձեռն ալեբեր աւազակուտին, որք կոչին լիմանս։

'Ի հիւսիսակողմն Օտեսայի հեռի 40 վերստաւ գոյ անուանի գիւղ Սենդրեստէփա շինեալ 'ի Կոմսէն Փօթօցքի Սեվերինօ. ուր տեսաք զանազան գործարանս։ Պալատ Կոմսին սքանչազարդ է և գեղեցիկ՝ համօրէն ընդարձակ պարտեզիւն։ Մերձ է եկեղեցին Ռուսաց քարաշէն յանուն Յովհաննու աւետարանչի. Իսկ 'ի վեր անդր է եկեղեցի Լեհաց նոյնպէս քարաշէն՝ ընծայեալ անուան Ս. Ծածնի. ուր ժողովրդապետն ունի պարտէզ և տուն։ Տեսաք 'ի լերին անդ ընդարձակ

այգի մի ազգի ազգի պտղալից ծառովք ։ Ի միւս կողմն անկանի աղեհանն ընդարձակ ։

## ՆԻՔՕԼԱՅԻՓ

380. Յամի տն 1820 'ի սեպտ. 29 ելեալ յՕտեսաայէ՝ ուղղեցաք զընթացս մեր ընդ ցամաք դէպ 'ի ցամաքակղզին Խրիմու, քննել զհանգամանս հայկականաց։ Ուստի հասեալ 'ի գիւղն Փերեսիպ՝ տեսաք զՏէքէինօ լիճն, որ ունի հաղորդակցութիւն ընդ սեաւ ծովու։ Ապա հասաք 'ի Բօլպի, ուր գոյ նոյնպէս լիճ. և ապա 'ի Տէնկէօլ, որ է ընդարձակ լիճ աղի ։ Ապա հասաք 'ի մերձակայ գիւղաքաղաքն Խանչօխրախ, յն աղբիւր Թագաւորի. ընդ որ անցանէ փոքրիկ վտակ և գնայ յՕզու ։ Անտի անցեալ ընդ մեծ դաշտն հասաք 'ի գիւղաքաղաքն Բօռւէնիխա՝ շինեալ 'ի բարձրաւանդակի. առ որով անցանէ մեծատարած գետն Պուկ, որ ելեալ 'ի լեհաստանէ՝ Թափի 'ի Լիման Օզուի, ոչինչ կարի հեռի աստի. նմին իրի ջուր գետոյն չէ անոյշ. աստ շրջին համարձակ նաև մեծամեծ նաւք. (Տես 'ի Պոնտոս 234)։ Այս գետ 'ի հնումն կոչէր Հիպպանիս. մերձ 'ի բերանն էր Օլպիօ հին մայրաքաղաք յոյն գաղթականաց, ըստ որում երևին ցարդ բազում հնութիւնք, յն մարմարիոնեայ սիւնք, վէմք և խարիսխք, նաև բազում դրամք ։ Տեսաք 'ի վերայ միոյ դրամոյ կառք քառաձի, և 'ի միւս կողմն կին նստեալ, առ որով գիր լատիներէն այսպէս. pro utilitate publica. յն վասն օգտի հասարակաց. զայս դրամ հատին Հռովմայեցիք երբ տիրեցին այսմ քաղաքի ։

Արդ անցեալ մեր նաւակաւ յայնկոյս գետոյն՝ հասաք 'ի Նիքօլայիֆ նորաշէն քաղաք գեղեցկատեսիլ և վայելչադիր, որ յերկուց կողմանց պատի 'ի գետոյ անտի. ուր և է անուանի գործարան արքունական նաւուց Ռուսաց, և մեծաշէն պալատ ծովապետին, որ նստի աստ, և ընդ իշխանութեամբ նորա են ոչ միայն ամենայն պատերազմական նաւք սեաւ ծովու, այլև ընդարձակ գործատունն կամ պահարանն կարասեաց պատերազմական նաւուց. որոյ երկայնութիւն է կէս վերստ՝ բաժանեալ 'ի զանազան վայրս ։ Ուր գոյ և

երևելի հանդիսարան անդիւտ իւրոց բնակչաց, ա-րուեստականաց և գիտութէց. և սև զաղափարք նաւուց, հաւաքումն բնական պատմութեանց, մետաղաց, պատկերաց և աշխարհացուցից ծովու։ Բաց աստի գոն 'ի Նիքօլայիֆ երևելի պալատք և քարաշէն եկեղեցիք։ Նորաշէն է եկեղեցին լատինացւոց, և ունի վանատուն քարաշէն, ուր օթագայեցաք։ Երևելի է բարձրաշէն պալատ Բամիս փաշային կառուցեալ 'ի վերայ բարձր գետոյն. որոյ տանիք են երկաթապատ. տա-սովաւ է հասարակաց պարտէզն գեղազարդ։

ՔԵՐՍՈՆ

381. Մեկնեալ 'ի Նիքօլայիֆէ՝ հասաք յերևելի քաղաքն Քերսոն, որ յառաջագոյն էր անշուք քաղաք Օչաքօվքի խաղախաց. այլ իբրև էանց առ Ռուսս՝ հետզհետէ այնչափ ծաղկեցաւ երևելի շինուածովք և վաճառականութեամբ՝ մինչև լինել 'ի նմա 30 հազար բնակչաց, մանաւանդ յաւուրս Փօթէմքի մեծանուն դքսին. այլ այժմ նուազեալ է յոյժ. և օդն չէ առողջ՝ գոլով առ եզր մեծի գետոյն Տնեպերայ։ Սա է աթոռ կուսակալ իշխանին, որ իշխէ մինչև ցՊերեգորիպօլիս կմ ցՏօմպասար, և երևելի պալատք և եկեղեցիք. լատինացւոցն փոքր է, և ունի վանատուն հանդերձ պարտիզաւ։ Փողոցք քաղաքիս լայն են, այլ ոչ այնչափ ձևաւոր։ Իսկ տունք ըստ մեծի մասին են ըստ ձևոյ եւրոպեանց։ Առաջի քաղաքիս է մեծ նաւահանգիստն Տնեպերայ, ուր յաճախեն մեծ և փոքր նաւք յամենայն կողմանց։ Անուանի է նաւատեղին. ուրանօր շինեն մեծամեծ նաւս պատերազմականս. Թէ աստ և թէ 'ի Նիկօլայիֆ շինեն զտաշտս նաւուց և տանեն 'ի Սևաստօբօլ առ 'ի կազմակերպել և հանդերձել կայմիւք և առագաստիւք (453)։

Տնեպեր գետ շահաւէտ է յոյժ և լի բազմատեսակ ձկամբք. ուր լինին մեծամեծ մուկինայք, մշրափին են։ Ելանէ 'ի Սմօլէնսկոյ անտառէ իբր 8 մղոնաւ հեռի 'ի Մօսքուայէ, և անցեալ ընդ Լիդուանիա, և ընդ փոքր Ռուսիա՝ ընդունի զբազում գետս. անցեալ և ընդ Քերսոն՝ թափի 'ի Լիման ծոց Օզուի. ընդ որ քե-

կամէր ամուսնանալ՝ պարտ էր Թողուլ զՍէտչեայն և նստիլ 'ի Սամար քաղաք. բայց երբ կամէր՝ կարէր Թողուլ զտուն իւր և գալ անդրէն 'ի Սէտչեայն։ Թէպէտ քրիստոնեայ էին, բայց լի աւելորդապաշտութեամբ. 'ի վերայ մեռելոց ամենեւին հողաբլուր, որպէս գտանին 'ի բազում տեղիս. յորոց ելանէին կմախք։ 'Ի միումն գտանի մեծամեծ ոսկերք. գանկն էր Թանձր յոյժ. աջ ձեռն էր 'ի վերայ սրոյն. և մերձ 'ի ձախն գոյր Ճանկ ինչ։ Թշնամի էին Թաթարաց և Ռուսաց. 'ի 1506. Ջանծիպաուաքի Նոգօյնին արշաւեաց 'ի Խրիմ ընդդէմ Մէնկլի խանին և բազում նախճիրս գործեաց. որպէս և այլք անպակաս ասպատակ սփռէին երբեմն 'ի Թաթարստան, երբեմն 'ի Ռուսաստան, և երբեմն 'ի Լեհաստան։

'Ի հնումն Թագաւորք Լեհաց զօրացուցին զնոսա առ 'ի դիմադրել նոքօք Թշնամեաց. բայց իբրև ապրօտամբեցան՝ Թշնամի եղեն ամենեցուն, մանաւանդ Ռուսաց։ Աստի 'ի 1770 տէրութիւն Ռուսաց հնարագիտութեամբ իւրով կալաւ զՆոգօյնին, և առեալ զքաղաքն՝ եբարձ զիշխանութիւն նոցա. և զմեծ մասն փոխադրեաց յերկիր Թամանու, որք այժմ կոչին Չեռնօմօրսկի խազախք (582). իսկ այլք ոչ կամելով հնազանդիլ Ռուսաց՝ ցրուեցան. ոմանք 'ի մօրուսաւոր խազախաց, որք կոչին Նեկրաս խազախ Թողլին զազգ իւրեանց և չոքան առ Օսմանեանս և բնակեցան 'ի Պուճնա, և 'ի Ղարշամպա (Պետր. 81)։

## ԱԼԻՇԿԻ

383. Արդ՝ Թողեալ մեր զերկիր Զափուօզի խազախաց՝ մտաք 'ի նաւ 'ի Խերսոնէ, անցաք ընդ լայնարձակ գետն Տնեբեր, և մտեալ 'ի բազուկ ինչ երկայնաձիգ՝ նաւեցաք 17 վերստ, մինչև հասաք յԱլեշկի գիւղաքաղաք. ուր ելեալ 'ի ցամաք՝ մտաք յընդարձակ աւազուտն։ Աստանօր տեսաք զարմանալի աւազաբլուրս, և ընդարձակ խորափոսս, յորս պատսպարէին 'ի ձմերան հազարաւոր ոչխարք, և կերակրէին 'ի բուսոց անտի։ Եթէ ոչ էին այս պատսպարանք՝ 'ի կորուստ գնային ոչխարքն ոչ միայն յերեսաց ցրտոյ, այլև 'ի հողմոց, որք յափշտակեալ երբեմն տանէին Թափէին զնոսա

'ի սեաւ ծով։ Նոյս աւազուտ գնայ ընդ երկայնութիւն Տնեբէր գետոյ 'ի բազում մղոնս. իսկ ըստ լայնութե հասանէ մինչև յՕռագաբու. որ թուի պատճառեալ 'ի ջուրց անտի, երբ բարձրացեալ էր Պոնտոս և ծածկեալ զբազում տեղիս։ Նոպա ընդ բանիւ բերանոյ Բոսփորոսին՝ ծովն յետս դարձաւ, և մնաց աւազն։ (Տես 'ի Պոնտոս 6։) Յետ այսորիկ մնաք 'ի մեծ անապատն Նօղայ Թաթարաց՝ կոչեցեալ Օղու խըրէ. զորմէ գլխի (566). և ապա հասաք 'ի Պաւըրիա ցամաք կղզին Խրիմու, ուր բնակեցան Նոեցիք 'ի ժամանակս Ճենովացւոց՝ յետ հարկանելոյ Չարմաղանին զՆոեւ։ Տես 'ի Քեֆէ (502)։

# ՏԱՒՐԻԱ

## ՈՐ Է

## ՑԱՄԱՔԱԿՂԶԻ ԽՐԻՄՈՅ

384. Այս հռչակաւոր Թերակղզի գոլով 'ի մէջ 51°. 9'. և 53°. 44'. ըստ արևելեան երկայնութեան. և 'ի մէջ 44°. 44'. և 45°. 59'. ըստ հիւսիսային լայնութեան, ունի շրջապատ իբր 700. մղոն, միայն նեղ պարանոցաւ Փերեկօբին կամ Օռին կցեալ ընդ Օզու խորուին : Ի հիւսիսոյ շրջապատեալ է 'ի Սաւրիս և յԱզախ ծովակաց. յարևելից 'ի նեղուցէն Սոսփորոսի. 'ի հարաւոյ 'ի սեաւ ծովէ. և յարևմտից 'ի մեռեալ ծովակէ : Ըստ Պղինիոսի (դ. Է. 12.) և Ստրաբոնի (գիրք Է.) այս Թերակղզի եւ 'ի ծովէ, և ապա ընկալաւ զանուն 'ի բնակչաց եկելոց 'ի Տաւրոս լերանց Ասիոյ իբր 2000 ամօք յառաջ քան զՔ͞ս : Որք և յաւելուն առել ընդ Կիմերի, Թէ 'ի հնումն բնակէին 'ի սմ Նաւորիկեցիք և Սկիւթացիք 1514 ամօք յառաջ քան զՔ͞ս. նոյնպէս և Կիմեցիք կամ Կիմմերացիք էին բնակիչք կղզւոյս. որոց անուամբ առեալ են 'ի բազում Կոտեմոս. Տ͞ ապառաժուտ : Սկիւթացիք լեռնաբնակ էին. որք ապա տարածեալ ընդարձակեցին զտէրութիւն իւրեանց :

385. Ըստ այլոց Տաւրիկեցիք էին վայրենի ժողովուրդ լեռնաբնակք. ապա 1700 ամօք յառաջ քան զՔ͞ս Թագուհին Ամազոնաց եկն զօրօք յայսկոյս Տանայիսի կամ Տօնաւիսի գետոյ 'ի Տաւրիա, և օրինադրեաց նոցա պաշտել զԱրէս չ͞ած և զԱնահիտ, անուանելով զայն Տծ Տաւրոպօլսեան. իսկ Կիմմերացիք էին ինքնագլուխ ժողովուրդ ձգեալ 'ի սեաւ ծովէ մինչև ցՊաղղիկ : Իսկ ըստ ոմանց հատուած եղեն անդ և Սկիւթանք եկեալք 'ի Պարսից, որք և պաշտէին զամ Արտեմն անուն : Արդ նախնի Սկիւթացիք գոլով փա-

խուցեալք 'ի Մանսուրէ արքայէն Ասորեստանեայց՝ առէպ արշաւեցին 'ի Պաւուրիա . այլ ոչ կարելով հալածական առնել անտի զՊփիմներացիս՝ պատսպարեցան 'ի լերինս, և կոչեցան Պաւրիկեցիք :

386 . Ըստ Հերոդոտոսի նախնի Սկիւթացիք բնակէին 'ի մէջ Տանեսդէր և Դանուբ գետոց . ուր և պաշտէին զԱրէս չ̃ծ , յորոյ 'ի պատիւ կանգնեցին մեծ սեղան և զոհէին 'ի վերայ նորա հարիւրաւոր գերիս 'ի թշնամեաց , ըմպէին զազանաբար զարիւնս նախկին զոհելոց , ապա հանեալ զմորթս թշնամեացն ծածկէին զգլուխս իւրեանց : 'Ի ժամանակս Պլատարքոսի ոչ գիտէին զերաժշտութիւն , բայց ունէին զպիտանիս . զգեստ նոցա էր մորթ կենդանեաց . գործի նոցա էր աղեղն . վայր նոցա էր անտառ , և բնակարանս սայլ . Թափկինաւէտ էին և քաջաղեղն, հեծեալ 'ի ձի արշաւէին ընդ լերինս . արհամարհէին զոսկի և զականս պատուականս : Կանայք նոցա հաւատարիմ էին . և մեծ եղեռն համարէին զանհաւատարմութիւն ամուսնական : Հնարեալ էին զարուեստս կտաւագործութեան և երկաթագործութեան : Այլ իբրև եհաս անդ հին հատուածն Յունաց՝ փոխեցին զվարս իւրեանց, և ուսան զքաղաքականութիւն :

387 . Իշխանք նախնի Պաւրիկեցւոց ամ ըստ ամէ առնէին տօն խրախութեան մեծամեծաց . ծերք կարգ ըստ կարգի բազմէին . մեծարու անձինք նստէին 'ի սեղան իշխանին , իսկ երիտասարդք պար առեալ զնեղանօվ կային յոտն : Ընդ տալ ուրուք նշանաւոր ձայնի ամենեքեան միանգամայն յոտն ելանէին . իշխանն յայնժամ առեալ բաժակ 'ի ձեռն՝ մերձեցուցանէր 'ի բերան իւր , և թանայր զշրթունս իւր , ապա տայր կաղգաւ նոցա միայն , որք սպանեալ էին զոք 'ի թշնամեաց : Ոսկի թէ այս հեղանիւթ խառնեալ էր արեամբ թշնամեաց , յորում գայր կաթն՝ հող և մեղր . զի գտանի ցարդ նշան այսպիսի արարողութեան առ Սկիւթացիս : Իսկ հանդէսն կատարէր՝ գովելով 'ի փախձանի զերևելի գործս քաջութեան , զոր արարին 'ի նմին ամի :

Պաւշտկութիւն յոյժ յարգի էր առ նոսա՝ ըստ աւելորդապաշտութեամբ , իսկ գուշակք էին կարի սակաւ . յամենայն գժուարինս դիմէին առ գուշակս՝ գնալով յուխտ 'ի վերայ գերեզմանաց նախնեաց իւրեանց : Ատրդնութին

դնելով զձեռս 'ի վերայ գերեզմանաց նախնին քաջազանց այնպիսի երկիւղածութեամբ, զի ոչ ոք համարձակէր երդնուլ ստութեամբ։ Երկու անձինք այնպիսի սիրով կապէին ընդ միմեանս, զի մինչեւ ցմահ մնային անբաժան. այլ հազիւ ուրեք երեք անձինք. որոց յաջողութիւն և դժբաղդութիւն հասարակաց էր։

Յորժամ երկու պատանեակք կամէին կապիլ ընդ միմեանս սիրով՝ նախ յերկար փորձէին զհաւատարմութիւն իրերաց. ապա հաւաքէին զընտանիս իւրեանց առաջի ծերոց և երդնուին մեռանիլ անվեհեր 'ի վ՛ր միմեանց։ Յետոյ գայլախազ քարիւ ծակէին զաջ թեւ և հեղուին զարիւնս 'ի մի աման. յոր և մխէին տէգ մի, ապա փոփոխակի ըմպէին՝ կիսով չափ մին, և կիսով չափ միւսն։

Ունէին և բարոյական սկզբունս ինչ, որով ցարդ կրթեն զմանկամարդս. ա՛. Ընթանալ զհետ շաւղաց ծնողաց իւրեանց և մի՛ ընաւ հեռանալ 'ի վարուց նոցին։ բ՛. Մի՛ ընաւ տհաճիլ ընդ սովորութիւնս նախնեաց։ գ՛. Իմաստութիւն համարիլ զայն որ թուի 'ի սկզբան դժուարին. և սրբազան համարիլ զայնպիսի գործողութիւն օգտակար, որով անուանի եղեն նախնիք իւրեանց։

## Անցք Տաւրիոյ։

388. Պատմէ Հերոդոտոս՝ թէ ընդ թագաւորութեամբ Արդուսի որդւոյ Կիկէսի Կիմմերացիք հալածեցան յերեսաց Սկիւթացւոց։ Յայսմ հանդիպեալ 'ի Տաւրիա, ետես զի զոհէին զմարդիկ 'ի տաճարն Արտեմեայ, ուր Թոաս եղեւ մեծ զոհագործ։ Պատմիչք Ասուրաց ասեն, թէ 'ի ժամանակս Արգոնաւորդաց 1200 ամօք յառաջ քան զՔՆ Տաւրիա ծանօթ էր Յունաց. և այնուհետեւ բացաւ ծովային ճանապարհ և եղեւ երեւելի յոյժ, և բնակիչքն լուսաւորեալ 'ի Յունաց անտի՝ քաղաքական եղեն։ Ապա այնուհետեւ հիմնարկեցին Յոյնք փոքր Ասիոյ զՊանդիկափէոն կամ Կերչ, զԹէոդոսիա, և զՔերսոն իբր 500 ամօք յառաջ քան զՔՆ, որք եղեն առանձին հասարակապետութիւնք. և առաջինն կոչեցաւ Միլետոսեան տէրութիւն. զորմէ զննի (551)։

389. Արդ Բերոնացիք էին հաստրակապետութիւն 'ի հարաւային կողմն Թերակղզւոյս, որք ծաղկեցուցին զԲերոնն վաճառականութեամբ և շինութեամբք մինչև ցՄիհրդատ և անդր։ Սոքա ըստ Պլինիոսի էին 'ի նախնի Թրակացւոց անտի, որք զօրացան 'ի Հերակլիա (Պնտ. 49.), և անտի անցեալ ընդ բերան Սեւաստոբօլի՝ շինեցին զայս քաղաք Բերոն, և այնչափ անուանի եղեն, մինչև ձգեցին զՅոյնս 'ի քաղաք իւրեանց։

390. Սափօրացիք բնակեալ էին յարևելեան կողմն Տաւրիոյ 'ի նեղուցն Կերչի. և շինեցին զերկու երևելի քաղաքս, զՊանդիգափէոն 'ի կողմն Եւրոպիոյ, և զՓանակօրիա 'ի կողմն Ասիոյ (538. 44). որոց առաջին Թագաւոր՝ կոչեցաւ Արքէանակտիդեայ [illegible] առաջին գլուխ. 480 ամօք յառաջ քան զՔ.։

391. Իսկ Միլեսացիք շինեցին զԹէոդոսիա և հետոյ հեռէ այնչափ զօրացան, մինչ զի Սօթիրոս Թագաւոր Սափորացւոց չկարաց յաղթել նոցա։ Սակայն աննեքեան յետոյ անձնատուր եղեն հզօր արքային Պոնտոսի մեծին Միհրդատայ 100 ամօք յառաջ քան զՔ.։ Ապա այնուհետև արշաւեցին Գութք 'ի Տաւրիա և բնակեցան Խազարք 'ի լերինս. առ որովք յութերորդ դարու ծագեցաւ լոյս քրիստոնէութեան յայս Թերակղզի. իսկ յիններորդ դարու կայսերք Յունաց տիրեցին Բերոնի։ Յերկոտասաներորդ դարու բաժանեցաւ տէրութիւն Յունաց 'ի փոքր հաստրակապետութիւնս, որք տիրեալ էին ծովեզերաց Տաւրիոյ։ Յետոյ Սարմատացի Թաթարք մտին 'ի Թէոդոսիա։ Յերեքտասաներորդ դարու վանեալ զնոսա՝ տիրեցին Ճենովացիք Թէոդոսիոյ և այլոց երևելի վայրաց։ 'Ի նմին ժամանակի զօրացեալ էր մեծ իշխանական Թաթարաց Ճինկիզխան. ուստի Թաթարք մտին 'ի Խրիմ և տիրեցին հիւսիսային մասին. այլ ոչ կարացին առնուլ զնաւահանգիստս և զբերդաքաղաքս 'ի Ճենովացւոց մինչև ց1454. և այնուհետև Թաթար խանք տիրեցին 'ի Խրիմ, զորոց Ճշգրիտ պատմութիւն համառօտեսցուք 'ի գրոց նոցին։

Ահմէտ հալածական արար զնա . և եդ խան զՋանիպէկ. ապա 'ի 1617 զՄահմուտ, որում յաջորդեաց Ինայէթ խան. ապա Պահատուր, և ապա Մահմուտ որդի Սելամէթ Կէրէյի ։ 'Ի 1644 նստաւ Իսլամ Կէրէյ եղբայր Սելամէթին, որ համոզեաց զԽմէլնիցի Հեթման Խազախաց ելանել 'ի վերայ Գազիմիր արքային Լեհաց, յորմէ այնչափ մնացեալ Թաթարք՝ մինչև երդուաւ Իսլամ Կէրէյ այլ ոչ ևս պատերազմիլ ընդ Լեհաց ։

'Ի 1665 . նստաւ Դ Մէհէմմէտ Կէրէյ, որոյ ցեղ կաչէր Արփէլ․ սա միացեալ ընդ Տօրօզ Հեթմանին՝ չոքաւ պաշարել զԿամենից․ այլ արքային Օսմանեանց փոխեալ՝ եդ զՍէլիմ Կէրէյ այր խոհեմ՝ քաջ և հմուտ պատերազմի, որ 'ի 1672 էառ զԿամենից․ ապա փոխեալ զնա՝ եդ զՄուրատ Կէրէյ խան, որ արշաւեալ 'ի Ռուսաստան՝ աւերեաց զբազում տեղիս․ մինչև ստիպեցաւ Ֆէտօր Ցար Ռուսաց առաքել դեսպան 'ի Կոստանդինուպօլիս առ Սուլթան Մահմուտ՝ խօսիլ 'ի խաղաղութիւն ։

396. 'Ի 1681․ նստաւ Հաճի Կէրէյ խան, այլ անդէն փոխեալ՝ նորոգ նստաւ Սէլիմ Կէրէյ․ զի Սուլ․ Մահամմէտ պէտս ունէր քաջ զօրապետի՝ առաքել 'ի վերայ Վիեննայի․ ուր իբրև յաղթեցան Օսմանեանք՝ Սէլիմ անկաւ յիշխանութենէ, և եղև խան Կէէր Կէրէյ ։ Այլ իբրև ռուս իշխանն Կալլիցին զօրօք եհաս յՕու, Սէլիմ դարձեալ հաստատեցաւ յիշխանութեան իւրում և վանեաց զՌուսս ։ Բայց իբրև թագաւորեաց Սուլ․ Սիւլէյման անկաւ յիշխանութենէ Սէլիմ․ ուր 'ի միջոցի 2 ամաց նստան 2 խանք․ որով ոտնակոխ եղև Խրիմ․ մինչև 'ի միւս անգամ զգօրութիւն Սէլիմին, և անդէն եդին զնա խան 'ի 1692․ որ արար բազում ուղղութիւնս և զօրացոյց ոչ միայն զտէրութիւն իւր, այլ և զտէրութիւն Օսմանեանց ։ Ապա առեալ հրաման՝ չոքաւ 'ի Մէքքէ, և եդաւ նմա մականուն Հաճի և հայր ինքնակալաց ։ Սա յորժամ էր 'ի Մէքքէ՝ արշաւեաց որդի իւր 'ի Բօլօնիա․ իսկ Օսփօռօսքի խազախք ելին 'ի վերայ նորա, և հանեալ յՕու՝ կողոպտեցին զբազում տեղիս ։

397 . 'Ի 1699 . մեծն Պետրոս սկիզբն արար ցուցանել զքաջութիւն իւր 'ի կողմանս Ազախու․ յաղթեաց Թաթարաց և զօրաց Սուլ․ Ահմետին ։ Յետ

տիրորիկ Սելիմ խնդրեաց 'ի Սուլ. Մուստաֆայէ՝ ելանել յիշխանութենէ, և դնել զՏէվլէթ որդին, որ գոլով այր անընդունակ՝ փութով անկաւ յիշխանութենէ և եղև վերստին Սելիմ, որ յետ բազում քաջագործութեանց և իմաստուն գործոց և օրինաց մեռաւ մեծանուն. և եղաւ մարմին նորա 'ի կարգս խանից 'ի Պաղչէսէրայ, որ և այնչափ զօրացեալ էր, մինչև կարէր հանել 250 հազար զօրս (433)։

398. Յետ մահուան Սելիմին սկսաւ նուազիլ իշխանութիւն խանից. քանզի Նօղայ Թաթարք, որք տարածեալ էին 'ի Դունայէ մինչև ցԿուպան գետ Չերքեզի՝ 'ի չորս բաժանեցան։ Պուճաք Թաթարք մնացին 'ի միջոցի Դունային և Տնեստերին. Ետիսան Թաթարք 'ի մէջ Տնեպերին և Տնեստերին. Ետիչքուլի Թաթարք 'ի մէջ Ազախու և Տնեպերին։

'Ի 1704. Սուլ. Ահմէտ կացոյց խան զՍէադէթ Կէրէյ այր բարեսէր, որ յետ սակաւուց մեռաւ 'ի ժանտախտէ, և նստաւ անդրէն Տէվլէթ Կէրէյ, զոր փոխեալ եդին զԳաբլան Կէրէյ՝ որ ապա ապստամբեալ յՕսմանեանց՝ ընկեցաւ յիշխանութենէ, և եղև երրորդ անգամ խան Տէվլէթ Կէրէյ։ Սակայն յետ բազում պատերազմաց վերստին նստաւ Գաբլան Կէրէյ 'ի 1714. Իսկ յետ երից ամաց նստաւ Սաադէթ Կէրէյ. ապա անդրէն նստաւ Տէվլէթ Կէրէյ, որում յաջորդեաց Մէնկլի Կէրէյ որդի Գաբլանին, որոյ ընդդէմ ելին ազնուականք Թաթարաց՝ և յետ բազում խռովութեանց նորոգ ընտրեցին զԳաբլան Կէրէյ. այլ նորա խոհեմութեամբ հրաժարեալ՝ անդրէն հաստատեցաւ Մէնկլի Կէրէյ.

399. Յամի տն 1725. յունվարի 28 մեռաւ մեծն Պետրոս կայսր Ռուսաց, որ կտակաւ պատուիրեաց առնուլ զԽրիմ 'ի Թաթարաց, որպէս զի ազատեսցի Ռուսաստան 'ի վտանգէ նոցա։ Իսկ 'ի 1730. անկաւ յիշխանութենէ Մէնկլի Կէրէյ, և նստաւ երրորդ անգամ Գաբլան Կէրէյ. և զկնի 5 ամաց անդրէն եկաց Մէնկլի Կէրէյ. որ և նորոգեաց զբերդն Օռի, և զբազում տեղիս Խրիմու ամրացոյց, որք քանդեալ էին յաւուրս Գաբլանին։ Նա սովաւ Լասչի Մառէշալն Ռուսաց անցեալ ընդ Արապատ՝ արշաւեաց 'ի Խարասու և բազում քանդմունս գործեաց. և անաի

ձեռնտու եղեն Շահին Գէրէյի, որ գունդ կազմեալ ՚ի Թաթարաց և ՚ի Չերքեզաց՝ զօրութեամբ Ռուսաց բռնադատեաց զՏեվլեթ Գէրէյ հրաժարիլ յիշխանութենէ. զի արդէն ՚ի ձեռս Ռուսաց էին բերդաքայք Օռի, Գըլպուռունի, Կերչի և Ենիգալէի. ուստի անաշխատ տիրեաց Խրիմու : Բայց անդէն և անդ Թաթարք ապստամբեցան ընդդէմ Շահին Գէրէյին ՚ի 1777. և բերեալ ՚ի Չերքեզէ զեղբայր նորա զՊահըր Գէրէյ եդին խան : Իսկ Շահին Գէրէյի բռնադատեալ ՚ի խռովութեանց աստի՝ փութով փախեաւ ՚ի Գէֆէյէ ՚ի Կերչ նաւաւ. և անտի դերձաւ յԱզախ, ուր զօրացեալ զօրօք Ռուսաց՝ դարձաւ անդրէն ՚ի Խրիմ, և նուաճեաց զապստամբսն, կոտորելով զբազումս ՚ի նոցանէ : Յուսկ յետոյ Սէլիմ Գէրէյ անուանեցաւ խան ՚ի կողմանէ Օսմանեանց, և Շահին Գէրէյ ՚ի կողմանէ Ռուսաց, որք պատերազմեալ մերձ ՚ի Պալըգլավա՝ Սէլիմ փախեաւ ՚ի Սինոպ. և Շահին Գէրէյ մնաց ՚ի Խրիմ :

401. Բայց ՚ի 1779 ապրիլի 21. Շահին Գէրէյ հանդիսիւ շնորհեաց զտէրութիւն իւր Թագուհւոյն Ռուսաց. ուր ապա Մըռզայք և գլխաւորք Թաթարաց երդուան մնալ հաւատարիմ տէրութեան Ռուսաց : Իսկ ՚ի 1784. հաւանեցան նաև Օսմանեանք. որով այս ցամաք կղզի անկաւ ընդ իշխանութեամբ այսր տէրութեան մինչև ցայսօր. և այնուհետև սկսան նստիլ յԱգմէչիտ քաղաք կուսակալ իշխանք Ռուսաց՝ Կուպեռնատօր անուամբ, որոց իշխանութիւն ձգի ՚ի Տնեբեր գետոյ մինչև ցՎոսփորոս (542) :

Կարգ Մըռզայից :

402. Ըստ պատմութեան Թաթարաց՝ ընիկ տեարք Խրիմու համարէին Մըռզայք կամ Միրզայք սերունդք հին ազնուական Մողոլաց, որոց խանն տայր ընծայս և ՚ի պատուի ունէր, նմին իրի զօրաւոր էին : Սոքա բաժանէին ՚ի չորս կարգս. առաջին և ազնուագոյնն կոչի Շիրին մըռզա. երկրորդն Պարըն մըռզա. երրորդն Մանսուր մըռզա և չորրորդն Արղըն մըռզա. որք ցարդ անխառն պահեն զցեղս իւրեանց. իսկ բառս Մըռզա կրճատեալ է ՚ի բառից աստի Էմիր զատէ : Գրան յեր-

կրորդ կարգի և ազնուականք Խրիմի խուլ ձայնեալք . որք արդեամբք ծառայելով խանին և տէրութեան և լինէին 'ի կարգ ազնուականաց :

Սոքա ամենեքեան էին 'ի պաշտաման Խանին , բայց գլխաւորագոյնք էին երեք , որք կոչէին Սեան զատէ . Պալղա Սուլդան էր երկրորդ խանին՝ որ նստէր յԱգմէջիդ և ունէր զընդարձակ իշխանութիւն : Օապէկի Սուլդան նստէր յՕռ և ժողովէր զեկամուտս աղի . Նուրրատին սուլդան նստէր յառաջագոյն մերձ 'ի Խարասու և 'ի Պաղչէսէրայ : Մեծ մասն Թաթարաց է յառաջին Մողոլաց անտի , որք այժմ են թուլամորթ և հեղգ 'ի գործ . և մի մասն են 'ի Նօղայ Թաթարաց եկելոց 'ի կողմանց Անափայի , որք աշխատասէր են ( 567 ): Թող զսերեալս 'ի Չէրքէզից , որք քան զամենեսեան բարեձև են և քաղաքական (534) :

## ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ՑԱՄԱՔԱԿՈՂՄՆ ԽՐԻՄՈՒ

403. Ըստ բերման ընթացից մերոց զառաջինն հանդիպեցաք 'ի հիւսիսային ցամաքակողմն Խրիմու , որ 'ի հնումն շրջապատեալ կարծի յամենայն կողմանց 'ի ջրոյ . ապա բուռն հողմունք յափշտակեալ զաւազուտն Տնեբերայ՝ լցին զայս վայր հիւսիսային մասին , և ձևացաւ Պարանոցն ցամաք . ըստ որում յիշէ և Պլինիոս : Ըստ սմին օրինակի ձևացաւ ասեն բարակ լեզուն Ճինիչքէի , որ չէ հեռի աստի (560) . ըստ որում ցուցանէ զայն և որպիսութիւն ներքին և արտաքին աւազակուտից : Լայնութիւն այսր պարանոցի է 8 վերստ՝ խրամ բացեալ ծովէ 'ի ծով . և 'ի միջոցի անդ բերդ զօրաւոր Օռ գաբու ձայնեալ : Այս խրամ լայն և քարաշէն յարևելից կուսէ հասանէր 'ի ծովն Սաւըխ , և յարևմտից 'ի ծովն մեռեալ . երբեմն ջուր ծովուն բարձրացեալ հասանէր մինչև ցբերդն :

## ՕՌ ԳԱԲՈՒ

404 . Ըստ Յունաց կոչի Տաֆրոս և ըստ Ռուսաց Փերեգօփ որ է խրամ կամ ջրանցք , ուր 'ի հնումն դուռ պարիսպ հանդերձ աշտարակօք և պատնէշ զօրա-

ւոր ընդդէմ սկիւթացւոց, զոր Յոյնք ՙԱքմ - Պուրնու ջն նոր պարիսպ ձայնէին։ Այս շինեցին Օսմանցիք փոքրիկ բերդ, այլ զօրաւոր՝ ամրացեալ պարսպօք և խրամով. ուր անցեալ ընդ կամուրջն շարժական՝ մտաք ՚ի բերդն ընդ դուռն կամարաւոր. ուրանօր չիք երևելի ինչ բաց ՚ի հողաբլրոց յամրութի բերդին։ Նստի տեսաք միանգամայն զծովն մեռեալ և զԱսովն յաջմէ և յահեկէ ՚ի ծայրս խրամոց։ Առ երի բերդին է դուռն երկաթի՝ մի միայն անցք ցամաք կղզւոյն, ունելով յաջ և յահեակ խրամ լայն և խորին, որ այժմ անխնամ մնացեալ կայ. որոյ լայնութիւն է 12 գրկաչափ, և խորութիւն 20 ոտն։ Որպէս և դուռնն կործանեալ կայ և ՚ի տեղին կառուցեալ կամուրջ և վայր պահապանաց. արտաքոյ է գիւղաքաղաք նոյնանուն, ուր յաճախեն անցաւորք։ Յամի տն 1698 Ռուսք տիրեցին Փերեգօբին. այլ անդրէն յետս դարձուցին։ Աստ նստէր երկրորդ որդի Խանին Օռ պեկի. այլ չունէր իշխանութիւն ՚ի վերայ բերդին. քանզի Օսմանեանք իշխէին ամենայն բերդօրէից Խրիմու։

ԱՐՄԵԱՆՍՔԻ ՊԱԶԱՐ

405. Ի գիւղաքաղաք միակարգ երկայնաձև, ուր յաճախեն ամենայն անցաւորք. որպէս և մեք օթագայեցաք յետ յառաջ խաղալոյ 5 վերստ։ Հայք ՚ի քաղաքիս են 60 տունք, որք ըստ մեծի մասին եկեալ են ՚ի ՙՆախիջևանէ, և ունին եկեղեցի նորաշէն համգերձ կաթուղիկէիւ յանուն ննջման Ածածնին, որ ունի բակ և տունս։ Տեսաք յիշատակարան ՚ի վերայ հիւսիսային դրանն այսպէս. * Յիշատակ է որք նշան » քատպը կողակցին փաշայ խաթ. զաւակացն Մար- » տիրոս սարկաւագին ‖։ Գլխաւոր բնակիչք քաղաքիս գոլով Հայք՝ կոչեցաւ ՚ի Ռուսաց Արմէանսկի պազար ջն Հայոց տօնավաճառ. զի ՚ի չորեքշաբաթի լինի աստ տօնավաճառ սակայն բազում են և Թաթարք. գոն և Հրէայք զարայիմք, որք ունին քարուկիր սինակոկայ կամարաշէն, որպէս և Թաթարք ունին մզկիթս և իջևանս։ Նստի 4. վերստ յառաջ խաղացեալ՝ տեսաք զընդարձակ աղեհանն, որ ունի զընտիր աղս և առաքէ ՚ի Ռուսաստան։ Յաճախ տեսաք յայտ

սին 'կողմանս գաւառական աղէհանս, որք ըստ ոմանց ունէին հաղորդակցութիւն ընդ Սաարիս ծովուն ։ Ձախակողմեան երկիրն բարեբեր կոչի Զենդար. որ հանանէ ցՍամըխ. իսկ աջակողմեանն է երկիր Թուրքմանու. ուր է ականջ մեռեալ ծովու, որ երթայ մինչև ենցկայն սար Կեօղլէմը (449)։ Ուր երբ բարձրանայ ծով, ջուրն ծածկէ զայս երկիր, և երբեմն բազում վնաս գործէ՝ կորուսանելով զխաշինս ։ Նաւի ուղղեալ զընթացս մեր դէպ յԱֆմեճիդ՝ հեռի 15 վերստիւ անցաք Է քարաշէն կամուրջ. ուր է ականջ մեռեալ ծովու հարուստ մի մնացեալ 'ի ջամաց անդր ։

ՅԱՄԱՔԱՑԵՂԻՔ ԽՐԻՄՈՒ

406. Սպառելով զննել զաւուրքն զպատմաքային վայրս Խրիմու՝ ուղղեցաք զընթացս մեր դէպ ուղիղ ընդ հարաւ, և շրջագայեալ 'ի բարեբեր գիւղօրէս Թաթարաց և 'ի գեղեցիկ դաշտավայրս ծածկեալս անտառովք՝ տեսաք զհիւրասիրութիւն Թաթարաց ։ Հուսկ յետոյ հասաք 'ի Սարասու միջավայր քաղաք Խրիմու և 'ի մերձակայ գիւղօրէս ; որք էին կալուածք Մըռզայից ։ ուր երբեմն ինքնագլուխ տիրէին նոքա 'ի ժամանակս Խանից ։

ԽԱՐԱՍՈՒ, կամ ԽԱՐԱՊԱԶԱՐ

407. Ի՛ քաղաք բազմամարդ և անուանի վաճառականօքն ամենայն ազգաց կառուցեալ 'ի միջավայրի Թերահզզեայն, ուր դիմեն Թաթարք և քրիստոնեայք յամենայն կողմանց՝ վաճառել և գնել զպիտոյս. նանաւանդ յաւուրս երկուշաբաթի, յորում լինի Պազար կամ տօնավաճառ 'ի Չաւխայրին ծայր քաղաքին յընդարձակ հրապարակի, որ կոչի Շօղաղար ։ Դիրք քաղաքիս է ցածագոյն՝ շրջապատեալ 'ի լերանց, որով յամարան տիրէ ջերմութիւն, այլ օդն չէ վնասակար. նոյնպէս և 'ի ձմերան Թիւրաթեք փողոցք ողորմելիք անանցք զքաղաքն ։ Տունք հասարակ ժողովրդեանն են անշուք. այլ տունք մեծամեծաց՝ բարեշէնք ։

Տեսանելի է շուկայն ըն բազում կրպակօք վաճառականաց և արուեստաւորաց. են 'ի նոսա մեծամեծ խջևանք սակս օտարականաց. Թող զվաճառատունս ու-

ռւելեաց և պտղոց, յորս գտանին ամենայն կարևորք քաղաքականաց և գիւղականաց ։ Էն 'ի սմա բազում գործարանք խաղախորդաց, օճառագործաց և մոմեղինաց ։ Զորս են եկեղեցիք 'ի քաղաքիս․ Կաթոլիկաց, Ռուսաց, Հայոց, և Յունաց․ 23 մզկիթք Թաթարաց ։ կրկին սինակոկայք, և դպրոց Հրէից, որպէս և դպրոց Թաթարաց․ 7 Ջրաղացք և 1300 բնակարանք․ իսկ բնակիչք են աւելի քան զտասն հազար ։ Բազում են Թաթարք՝ գլխաւոր բնակիչք քաղաքիս․ որք 'ի ժամանակէ անտի Չինկիզ խանին մնացեալ են նախ 'ի կողմանս Օւին․ և ապա բազումք աստ ժողովեալ՝ զառաջինն հիմնեցին տնակս յերկուսին կողմանս Ղարասու գետոյն, և գիւղաքաղաք ձևացուցեալ՝ անուանեցին Ղարասուպազար, ըստ որում ցարդ անուանեն ։ Պատմեն ևս թէ Թաթարք զառաջինն հիմնեցին գիւղաքաղաք յարևելեան ծայր քաղաքին, առ երի մեծի ապառաժին, որ կոչի Ախխայա, և ապա աստ փոխադրեցան (420) ։

408․ Այս քաղաք դրեալ է յերից գետոց շրջապատի․ Ղարասու գետ ելեալ 'ի հարաւային լերանց զայ յերկուս բաժանէ զքաղաքն, և շրջան առեալ գնայ ընդ արևելս կոյս 'ի Սալըխ․ Պանար գետակ գայ նոյնպէս 'ի հարաւային լերանց, և 'ի ծայր քաղաքին խառնի 'ի Ղարասու․ Ս․րբու անցեալ ընդ հիւսիսային կողմն քաղաքին՝ թափի նոյնպէս 'ի Ղարասու արտաքոյ քաղաքին ։ 'Ի հարաւային ծայր քաղաքին երկու փոսակք բաժանին 'ի Ղարասու գետոյ․ մին մտանէ 'ի մի մասն քաղաքին և միւսն 'ի միւս մասն․ և պարառեալ անցանեն ընդ քաղաքամէջն, և ոռոգեալ զգեղեցիկ պարտէզս տանց՝ երթան թափին 'ի գետ անդր ։ Արևելեան մասն քաղաքին է բարձրահայեաց և վայելչադիր, այլ ոչ այնչափ բարեշէն՝ սակս աղքատաշէն բնակարանաց ։ Ուր է բարձրադիտակ մեծ մզկիթն Ղանձավ քարաշէն և ընդարձակ, այլ 'ի ներքս անշուք․ ունի բարձր մինարէ կրկին շէրիֆէիւք, զոր կառուցեալ է Մենկլի Գէրէյ խան, որպէս ընթերցաք զյիշատակարանն 'ի վերայ վիմի եդելոյ 'ի ճակատ արտաքին դրանն այսպէս․

بیورمشدر رسول الله بو دنیا مومنه محنة. نصیب اولسون بو مقامیك
معمرلرینه جنة . . .

صاحب الخيرات والحسنات منكلى كراى خان دام ذكره غرّه محرّم
فى سنة ١١٤٠

قد وقع تعمير الجامع فى سنة الف ومأتان وخمسة وعشرون فى رجب

* Պուեուարմուղըր ամէօրիալըուլահ պաաթինն պաա'րիխէ Ճէհ-նէթ. Նասիպ օլսուն պու մագամըն մուամիրլէրինէ ճէննէթ. . .
Սահիպիւլ խայրաթ վէլ խասէնաթ Մէնկլի Կէրայ խան դամ զիքրիւհու ղուրրէ մուհարրէմ ֆի սէնէթի 1140.
Գատ վագայ թաամիրիւլ ճամիի ֆիյ սէնէթի էլֆ վէ միէթան վէ խամսէթին վէ էշրուն ֆիյ րէճէպ (1225).

Նստանոց է բնակարան Խանին և Սօֆուից՝ որք յաւուրս ուրբաթու ժողովեալ 'ի մզկիթն՝ հարուստ մի երգեն պարառեալ շուրջ զԽանիւ ձայնելով Հու. և անընդհատ շարժեալ զգլուխս՝ այնչափ գոչեն, մինչև ոմանք թալկանան փրփրեալ բերանով. ռամիկք զայն փրփուր առեալ 'ի բերանոյ նոցա՝ օծանին այնու: Նստի սկսանի ընդարձակ դաշտն գեղեցկագիր և հասանէ մինչև ցգերեզմանատուն Հայոց, ուր կայ աղբիւր ինքնաբուղխ և վտակ. առ որով անցանէ գետակն Գնաղ և անկանի 'ի գետն Խյարասու: 'Ի վերին ծայր դաշտին 'ի բարձր կայի շինեցաւ հրամանաւ Կատարինէ թագուհւոյն ընդարձակ զինուորանոց, ուրանօր զունդ մի զօրաց կարգեալ 'ի պահպանութիւն քաղաքին և բոլոր Խրիմու անպակաս առնեն կրթութիւն. և յամարան անդ վրանաբնակ լինին:

'Ի ձախակողմն մզկթին յառաջագոյն էր թաղ Հայոց Խյուրաղած կոչեցեալ, ուր այժմ սկսան նորոգ հիմնել բնակութիւն: Նա տեղեաւս 'ի հարաւային ծայր քաղաքին է զուարճալի պարտէզ Պիւլպիւլլի պահճէ, յորոյ 'ի միոյ կողմանէ անցանէ վերոյասացեալ վտակն Նուրխ, և 'ի միւս կողմանէ Խյարասու գետ:

Նաև 'ի ձախակողմն մզկթին գոյ այլ թաղ կոչեցեալ Սէյիտ մահալլէսի, ուր յառաջագոյն բնակէին Պարսկահայք: Նստի 'ի վեր է թաղն Չէօմլէքճի, ուր բնակէին բրուտք, և Յոյնք ունէին եկեղեցի: Նա տեղեաւս 'ի բլրի անդ կառուցեալ կայ քարաշէն մեծ կամուրջ Անաւէր քէօփրիւսի յաւէտ 'ի դիւրութիւն անցաւորաց առ թիկամբք քաղաքին:

Այս Թաղ Հաղորդի ընդ բուն քաղաքին 'ի ձեռն Հին կամրջի կոչեցելոյ Օխճիլլի քէօփրիւր, զի 'ի հնումն յերկուց կողմանց շղթայ կապեալ՝ յայնկոյս անցանէին ընդ տախտակամածն, այլ յետ ժամանակաց կանգնեցին քարաշէն ոտս, և 'ի վերայ հաստատուն տախտակամած. առ որով անցանէ Խրարասու գետ: 'Ի վերայ միոյ 'ի միջին ոտից տեսաք փորագրեալ յիշատակարան այսպէս. سنه ٦٧ ماه محرم تاريخ ١١٤٣ Սենէ 67 Մահէ Մուհարրէմ. Թարիխ 1143: Սուր առաջինն է 175 ամաց. իսկ երկրորդն՝ որ Թուի լինել նորոգութեան, 99 ամաց: Զայս կամուրջ յաւուրս մեր վայելուչ նորոգեաց Ապտուլլահ Չելէպի հանդերձ քարաշէն սանդխովք, և դնեալ 'ի միջավայրի յիշատակագիր նորոգութեանն օրինակ զայս.

دولت دنيايه قانع اوليوب عبد الله اغا عزّتي داربنه رغبة ايليوب
ايتدى سخا

همه قبول ايده اثارى خيراتى شها حشرايده كنديى و اولاديى تحت
اللوى

جاندلدن بورهمى بر دعا قلدى اكا كندينك واولادينك يرلرى
اوجماق اوله

* Տէվլէթի տիւնեայէ գանիյ օլուպ Ապտուլլահ աղա.
Իզզէթի տարինէ րաղպէթ էյլէյուպ էթտի սախա.
Հէմ գապուլ էտէ ասարը խայրաթընը շահա,
Հաշր էտէ քէնտինի վէ էվլատընը թահթիլլիվա.
Ճանտան տիւրլիւ պու բահիթ տիւր տուա գըլտը անա.
Քէնտինին վէ էվլատընըն եէրլէրի ուճմագ օլա ||:

409. Յայսմ մասին 'ի Հարաւակողմն առ երի Խրարասու գետոյն է եկեղեցի Հայոց՝ կառուցեալ յանուն սրբոյն Օգսենտիոսի, որ այրեցաւ 'ի 1735. յաւուրս Մէնկլի Գէրէյ խանին, երբ Ռուսք անցեալ ընդ Արապատ՝ հասին 'ի Խրարասու և այրեցին զքաղաքն: Կային յայնժամ 'ի քաղաքին 6000 տունք. 38 մզկիթք. 2 եկեղեցիք Հայոց և Յունաց. նաև 50 ջրաղացք. Թող զայլ շինութիւնս (399): Սակայն Թևանի Հայ իշխան Փողերանոցի հրամանն առեալ 'ի Խանէն՝ եւ վերստին

շինել։ Բայց յետ ժամանակաց իբրև ելին աստի Հայք՝ յափշտակեալ Թաթարաց զայս եկեղեցի փոխեցին 'ի մզկիթ մինչև ցդարձ Հայոց 'ի Աստարխանաւանէ. յայն-ժամ ապա սեպհականեալ նորոգեցին հանդերձ կաթու-ղիկէիւ ։ Ներքին կողմն է անշուք և անձուկ, բայց ունի երիս փոքրիկ խորանս, և այժմ կոչի Սրբատու-ծածին ։ Յիշատակարանն փորագրեալ կայ 'ի վերայ դրան յամի տեառն 1735. օրինակ զայս. * Վերս-
„ տին նորոգեցաւ սուրբ Օգսէնտ եկեղեցի. զի յա-
„ ւաջ հնացեալ էր. յետոյ վասն մեղաց մերոց աւրե-
„ ցաւ. իսկ ածային հրամանաւն և սիրով սուրբ եկե-
„ ղեցւոյս. վասն որոյ իսկ անպէպ եղև Թուանի աղան
„ սորայ. բազում աշխատանս կրեաց մինչև աւար-
„ տումն սբ տանս ած կողմանէ. իզնի չէրով Թագա-
„ ւորի հրամանաւ շինեալ կատարեցաւ. յիշատակն
„ օրհնութեամբ եղիցի իւրեանն որդւոյն և զաւակացն
„ և ած զարմից կամ եօթնպորտին. և ս առաւել բա-
„ րի ծնողացն հոգւոյն ամէն. կամ Պ արասուի եղեալ
„ ժողովուրդքս այր և կին ամենքեան օգնութիւն ա-
„ րարին մինչ 'ի աւարտումն սբ եկեղեցւոյս. ողորմի
„ իւրեանց ծնողացն. շատ և քիչ աշխատանք կրողացն
„ ամէն ։ Այս սբ եկեղեցիս Ֆէթիհէն մնացեալ էր.
„ այս եղև Թվին ՌՃՁԴՆ ։ Հանդէպ այսր դրան 'ի
մէջ բակին տեսաք զգերեզման նահատակի՝ ուխտատե-ղի ախտաժետաց. 'ի վերայ տապանին փորագրեալ կայ պատկեր նորա և գիր.

* Այս շիրիմն է հանգստի.
„ 'Ի յերկրէն արևելցի.
„ 'Ի գիւղէն շրջըվանցի,
„ Սա է որդի Ազիզ պէկի.
„ Իւր անունն է Ֆռանկուլի,
„ Քսան ամաց նահատակի.
„ Կախիւ մահուամբըն կատարի,
„ Մասն հաւատոյ սբ Ճշմարտի.
„ ՌՃՁ Թուականի,
„ Յունիսի ամսոյ մէկի ։

Վանատուն և դպրատուն կանգնեալ են 'ի բակի անդ եկեղեցւոյն. գտաք հին յիշատակարան, որ պատ-մէ թէ 'ի ժամանակս Դինխլիքզաց շինեցին Հայք բնա-

կուԹիւն, եկեղեցի և վանս 'ի Ղարապազարն և 'ի լեռ-ինս (505)։ Սոյն ինչ Հայոց բնակեն 'ի միւս կողմն գետոյն. և ընդ ամենայն լինին 200 տունք, յորոց բա-զումք են 'ի Հին քէֆեցոց անտի ։

410. Յայնկոյս գետոյն է բուն քաղաքն Ղարասու-լի բազում շինութեամբք տանց, իջևանաց և շուկայից, յորս երևելի է մեծ իջևանն բերդանման անուանեալ Տաշխան. որ 'ի միջավայրի մեծի շուկային 'ի բերանս քառեակ փողոցաց կառուցեալ կայ 'ի Նախնի Ղաթար մեծաւորէ՝ ամրաշէն պարսպապատ. 'ի վերայ պարսպին երևին մարտկոցք և ծակտիք պատերազմելոյ ընդ ար-տաքին Թշնամեաց ։ Իսկ 'ի Ճակատս կրկին դրանց գոյ յիշատակագիր անուան շինողին, որ էր իշխան և միան-գամայն Սէֆէր Ղազին, ըստ որում ցուցանէ առաջին տող տաղաչափութեան. իսկ վերջին բառն Պինայի աղա է Թուականն օսմանեան ١٠٤٠ որ է շինուած 177 ամաց, այսպէս.

اصف دوری سفر غازی اغای داتا
ابلدی هندسه عقلیله خاني بنا
کوروب اتمامنی چلی عمارت کاهك
دیدی فتحی اوله تاریخی بنای اغا

* Ասաֆ տէվրի սէֆէր ղազի աղայի տատա.
Էյլէտի հէնտէսէ աքլիլէ խանի պինա.
Կէօրիւպ իթմամըն ճալի իմարէթ քեահէքին.
Տէտի Ֆէթհի օլա Թարիխի պինայի աղա ։

Անուանի են կրկին շուկայք, Ոսկեան չարշի և Այճնի չարշի, որք սկսեալ 'ի մեծ իջևանէ անտի ուղիղ հասա-նեն մինչև ցհիւսիսային ծայր քաղաքին, յորս գտանին ամենայն տեսակք վաճառաց Օսմանցւոց և Ասիոյ։ Երևելի է արքունի դեղանոցն բարեկարգեալ 'ի պէտս զօրաց և ժողովրդեան բոլոր Խյրիմու, որ յառաջ էր յԱյճնի գալէ (550). այլ յամի 1796 առեալ փոխադրեալ զայն հաստատեցին յընդարձակ պալատի Ոսղէնպէրկ զօրապետին մինչև ցայսօր. ունի վայելուչ և մեծ պար-տէզ, որ հասանէ յարևելեան ծայր քաղաքին, առ ո-րով անցանէ Ղարասու գետ ։ Հանդէպ այսր պարտի-

ղի է միւս գեղեցիկ պարտէզ մեծապատիւ Տէր Խա-չատուր Կանոնիկոսին Տուհայեան Կեռլացւոյ, թո-ղեալ յեկամուտ հոգաբարձու քահանայից մերոց :

'Ի վերին ծայր նոր շուկային է թաղն Ռուսաց և նորաշէն եկեղեցի նոցա քարաշէն և վայելչագեղ յա-նուն սրբոյն Եղիայի կառուցեալ, առ որով գոյ բնա-կարան ինչ քահանայի : Իսկ եկեղեցի Յունաց է 'ի քա-ղաքամիջի անդ նուիրեալ անուան սրբոյն՝ Նիկողայոսի, որ յառաջագոյն էր բաղանիք . ունի բարձր զանգակա-տուն նորաշէն և ընդարձակ բակ և ժամատուն, նաև դպրոց : Անդ է մեծ հրապարակ քաղաքին, ուր է բնակարան պահապան զօրաց՝ Կոզաք ձայնեալ . առ որով է դատաստանատուն Հայկազն Կաթոլիկաց, և տուն քաղաքական կառավարութեան Փօլից անուամբ : Այս հրապարակ անջրպետ 'ի մէջ անկեալ է միւս փո-քրիկ շուկային Արապա ձայնելոյ, ուր են կօշկակարք : Առ տեղեաւս է Սինակոկայ Հրէից և դպրոց և ընդար-ձակ թաղ նոցա : Ուր գոն իջևանք, մեծ մզկիթ Թա-թարաց, և բաղանիք . ևս և վերոյասացեալ դեղանոցն :

Անցք հայկազն Կաթուլիկաց Խարասուէ :

411. Յամի տն 1777. յօգոստ. 20. իբրև վարեցան 'ի Խրիմէ Հայք, որք էին 3000 տունք, մեծ մասն նո-ցա չոգաւ յերկիրն Ազախու . և անդ շինեցին զնոր քա-ղաքն Նախիջևան (575) : Իսկ մի մասն իբր 80 տունք Հայկազն Կաթոլիկաց մնացին մերձ 'ի Սամար առ Տնե-բեր գետով . և անդ շինեցին նոր քաղաք Կադարինոսլա-անուն, և բնակեցան առ ժամանակ մի . ուր և կառու-ցին եկեղեցի փայտաշէն յանուն Լուսաւորչին 'ի 1781. մայիսի 1. և կատարեցաւ 'ի 1782. ըստ որում ընթեր-ցաք զյիշատակարանն լատիներէն . զոր 'ի 1784. օգոս. 13. եօծ վեհափառ լատին Արքեպիսկոպոսն Ստանիս-լաւոս Սէստրէնջևիչ Պօղուշ : Այսմ ժողովրդեան շնորհեցան ձեռամբ սրբակաց Կանոնիկոսին Տէր Յա-կովբայ Վարդերեսևիչ՝ զանազան ազատութիւնք պար-գևագրով 'ի Կատարինեայ կայսերուհւոյն Ռուսաց, ո-րով ունէին առանձին դատարան անկախ դատելոյ զիւր-եանց ժողովուրդ, Սուդիա, այս դատաւոր և Կօլօվա, որ է գլխապետ : 'Ի 1790. սոքա արքունի հրամանաւ դար-

ձան 'ի Խրիմ և բնակեցան 'ի Խարասու իբրև յապա-
հովլի , որոց անդրէն շնորհեցաւ նոյն ազատութիւն զոր
ունէին 'ի Կատարինասլաւ ։ 'Ի 1793 . շինեցին եկե-
ղեցի փայտաշէն հանդերձ վանատամբ . այլ զայս վայր
անյարմար դատելով գնեցին զբարձրահայեաց վայրն
գեղեցկադիր , ուր որով անցանէ Խարասու գետ ։ Սու-
րանօր 'ի 1810 . մայ . 1 . հիմնարկեցաւ նոր եկեղեցի
քարաշէն բարձր և մեծագործ՝ առաջնորդութեամբ
բազմարդիւն Տէր Խաչատուր Կանոնիկոսին , որ 'ի նմին
ժամանակի վախճանեցաւ . ապա 'ի 1813 այրեցաւ հին
եկեղեցին հանդերձ ամենայն զարդուք ։

## Եկեղեցի սուրբ Լուսաւորչին ։

412 . Սորա՝ 'ի 1823 . փետ . 2 . կատարեցաւ նորա-
շէն եկեղեցի Լուսաւորչին և մատուցաւ 'ի նմին ա-
ւուր առաջին հանդիսաւոր պատարագ . իսկ 'ի 1815 .
օգոս . 15 . հանդիսապէս օծաւ ձեռամբ մեծանուն
եպիսկոպոսին Յովսեփայ Քրիստոֆորովիչ (250) ։
Այս եկեղեցի թէպէտ ծախիւք համօրէն ժողովրդեան
կատարեցաւ , բայց յառաջացուցիչք էին Պապի Ա-
ղայ , Մուրատշայ Աղայ , Ածատուր Աղայ , Պետրոս
Աղայ , և Պարոն Մերկեան Մըրզայեան վերակացու
շինուածոյն ։

Այս հաստահիմն եկեղեցի է կամարակապ կանգ-
նեալ 'ի վերայ 6 մեծամեծ սեանց բարձր 33 ոտնաչափ .
լայն 50 և երկայն 80 . ունի միակարգ վերին խորանս
սիւնազարդս և քանդակագործս . զոր յամի 1829 տուաք
ոսկեզօծ գեղազարդել և չքնաղ նկարել ըստ ամենայն
հանգամանացն ։ Աւագ խորանն ընծայեալ է ամենա-
սուրբ Երրորդութեան . ուրանօր վայելչացաւ պանծալի
պատկեր նկարեալ 'ի Վենետիկ ։ 'Ի վերին կողմն պատ-
կերին պսակի Ածամայրն թագիւ 'ի սրբոյ Երրորդու-
թենէ . ուր որով կան 'ի մաղթանս սուրբ Լուսաւորիչ ,
սուրբ Ստեփաննոս , սուրբ Աթանաս աթենացի և սըր-
բուհին Գայիանէ կոյս ։ Իսկ 'ի ստորև դոյ յիշատա-
կարան այսպիսի . „ Արդեամբք Գայիանեայ բարե-
„ պաշտ տիկնոջ Տիկիւճեան 'ի յիշատակ ամուսնոյ
„ իւրոյ մեծանուն աղայ Ստեփանի Ամպարեան 'ի
„ թվին Հայոց ՌՄՀԸ „ ։ Այս խորան բարձր է և լայ-

Նարձակ, յերկոսին կողմունս 'ի վերայ դրանս եղան քանդակ ճարտարարագործ պատկերք մարդաչափ մեծութեամբ. Աւետման Ածածնին, Գաբրիէլի, Միքայելի, և Ռափայելի. զոր ընդ վերնոյն տուաք նկարել 'ի Վենետիկ ականաւոր պատկերահանին ։ Աջակողմեան խորանն է Ածածնի. իսկ ձախակողմեանն է Լուսաւորչի. յորս վայելչացեալ կան և պատկերքն ։

Այլև առաջի քանդակ մեծամեծ սեանց տաճարին կանգնեցաք և քանդակ խորանս՝ յանուն սրբոյն Մինասայ զօրավարին, սրբոյն Անտոնի պատուացւոյն, սրբոյն Յովհաննու Մկրտչին և սրբոյն Անտոնի Ճգնաւորին ։

Աստի և անտի են կրկին աւանդատունք. դուռն ձախակողմեան աւանդատանն է երկփեղկեայ ընկուզենի հին քանդակեալ խաչազարդ և ծաղկազարդ վերուստ 'ի վայր. և 'ի վերայ երկուց փեղկիցն գոյ յիշատակարան 314. ամաց, կէս մի փորագրեալ, և կէս մի գծագրեալ, որ էր դուռն տաճարին Րէֆէի, ըստ որում ցուցանէ տառնաւորն.

* Աստուածարնակ սուրբ տաճարիս,
„ Դուռն մտից կենաց յարկիս,
„ Կանգնեալ յանուն սուրբ Աստուածածնիս,
„ Ի յիշ. համաւրէն ժողովրդեանս. Թվ. ՋԿԱ (1512)։

Այս դուռն տարեալ 'ի Կատարինոսլաւ՝ եդաւ 'ի տաճար անդր. և անտի աստ փոխադրեցին. Եկեղեցի Լուսաւորչին ունի մեծ կաթուղիկէ երկաթապատ և շուրջանակի 8 մեծամեծ լուսամուտս ։ Ըստ նմին օրինակի յերկուս կողմանս ունի զերկուս կաթուղիկէս, և կրկին կարգս լուսամտից ։ Իսկ զանգակատունն է 'ի վերայ մեծի դրանն՝ սիւնազարդ ըստ ձևոյ Ռուսաց, ուր արտաքուստ ելանեն ընդ քարաշէն սանդուխս ։ 'Ի վերայ նոյն մեծի դրան 'ի ներքուստ կառուցեալ կան կրկին վերնատունք մի ընդ միով ըստ լայնութեան եկեղեցւոյն՝ վասն կանանց ։ Ունի երիս դրունս հանդերձ քարաշէն սանդխովք, յորս են սիւնք և զըմբեթք կաթուղիկեայց ։ Իսկ բուն ճակատ եկեղեցւոյն է կամարակապ մեծաշէն հանդերձ չորս մեծամեծ սեամբք ։ Ըստ 'ի վերայ մեծի դրան դնի այս արձանագիր.

* Մեծապանծ տաճար քաւութեան տեղի,
„ Նուիրեալ անուան սրբոյն Գրիգորի.
„ Ի յաջորդութեան տէր Խաչատուրի,
„ Աղէ հիմնարկեալ 'ի սոյն նոր տեղի.
„ Հազար ութհարիւր 'ի տասըն ամի,
„ Զանիւք և արդեամբ կաթողիկ հօտի,
„ Յետ երից ամաց 'ի կատար յանգի,
„ Այլ յետ երկ ամաց փառօք օծանի.
„ Պահպանողական աջըն տէրունի,
„ Հաստատ պահեսցէ զմեզ յայսմ յարկի ‖:

Ի 1826. ապր. 24. յանձն եղև մեզ 'ի Մեծաւո-րաց յայս եկեղեցի կատարել փառաւորապէս զհանդէս Պապական օրհնութեանց և Յոբելեան ներողու-թեանց զաւուրս 15 ըստ բոլոր Խրիմու:

Առաջնորդարանն է վայելչադիր և բարձրահայեաց կառուցեալ 'ի հարաւակողմն եկեղեցւոյն, և բաժա-նեալ 'ի զանազան սենեակս և 'ի սրահս բարեձևս: Ու-րանօր վիճակեցաւ մեզ բնակիլ յամի 1820. հոկ. 12: Այլ յետ բազում կարգադրութեանց ապա 'ի 1822. փետ. 25. հաստատեցաւ մեզ բոլոր վիճակն և ժողովր-դապետական եկեղեցին վիքարական պաշտօնատարու-թեամբ 'ի ձեռն կոնդակին առաքելոյ յԱթոռոյ ան-տի, որ սկսանի անուամբ մեծի Կայսեր լատիներէն այսպէս. In Imperio suæ serenissimæ Majestatis Alexandri I.mi Imperatoris et Authocratoris Totius Russiæ. ect. ect. ect. Domini Nostri Clementissimi Religioso Admodum R.do Patri Minæ Medicis Vicario ect.

Յետ այսորիկ 'ի 1828. փետ. 15. առաքեցաւ առ իս 'ի նոյն աթոռոյ այլ կոնդակ Առաջնորդութե. և 'ի հրամանեալ ամի հաստատեալ Սիղէթաթօռ Ռուսիոյ 'ի վերայ ամենայն եկեղեցեաց մերոց 'ի Գուբրիա:

Առ տեղեաւս է պարտէզ գեղեցիկ լի պտղաւէտ ծա-ռովք, զոր ոռոգանէ վտակ քաղաքին՝ անցեալ ընդ մէջ պարտիզին. Խակ գետն Խայրասու անցանէ արտաքոյ պարտիզին. առա է մեծ կամուրջն, ուր 30 ամօք յա-ռաջ այս գետ կալեալ իւր յորդեալ եանց ընդ կամուրջն.

413. Սուսանարանն գեղեցկաշէն կառուցեալ եղև 'ի մօտոյ յարևելեան կողմն մեծի բակին յարևմտեան եզր գետոյն Խայրասուին. զորոյ հիմն օրհնեցաք հան-

դիտապէս յառաջին օր մայիսի 1823. Նուիրեալ զայն անուան սրբոյ Հօրն մերոյ Լուսաւորչին. և մասն ինչ 'ի պատուական նշխարաց նորա հանդերձ գրուածով ինչ եդաւ 'ի մեծի հիման։ Ունի երիս դրունս և արտաքին սրահ երկայնաձև սիւնազարդ, ը որով անցանէ վը-տակն. Ներքին մեծ սրահն է քառակուսի, բարձր և գեղեցիկ զարդարեալ զանազան աշխարհացոյց և ուսումնական պատկերօք։ Անդ 'ի ճակատն եդաք զճարտարանկար պատկեր Լուսաւորչին բերեալ 'ի Վենետկոյ։ Յառաջին սենեկի անդ հաստատեցաք զգրատուն օգտակար մատենից այլևայլ ազգաց. որում նուիրեցաք և զմեր մատեանս։ Յայս ուսումնարան ուսանին մանկունք ոչ միայն գրագրութիւն և ուսումնականութիւն հայերէն, այլև ռուսերէն, գաղղիերէն, արաբերէն, ևն, բաժանեալք 'ի զանազան կարգս։ Ի վերայ մեծի դրան դնի այսպիսի արձանագիր.

* Ճեմարան պայծառ վարժելեաց տեղի.
» Այր իմաստութեան բազմաց ցանկալի.
» Կանգնեալ 'ի պատիւ սրբոյն Գրիգորի.
» Տրովք մեր եղբարց ուղղափառ հօտի.
» Առաջնորդութեամբ Բժշկեան պետի.
» Հայր Մինաս վիքար մեր վարդապետի.
» Աջով բարձրելոյն 'ի կատար բերի.
» Նոյն վառ պահեցէ ուսմամբք պանծալի‖։ 1823.

Մէնարան։

414. Ի հարաւակողմն քաղաքին առ երի կամրջին գետոյն վայելչադիր պարտէզ լի պտղալից ծառովք. որ սկսեալ 'ի Խարասու գետոյ հասանէ մինչև ցվերին փողոց։ Ի վերին կողմն պարտիզին կառուցաք կրկնայարկ մենարան սակս միանձանց մերոց Մխիթարեանց՝ հանդերձ քարաշէն և սիւնազարդ տաճարաւ. զոր և ընծայեցաք անուան սրբոյ Ածածնին պաշտպանին մերում։ Այս տաճար ունի զերիս խորանս վայելուչս հանդերձ գեղեցկանկար պատկերօք Վենետկոյ։ Աւագ խորանն է Ածամօրն, և այլք սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի։

Իսկ վանատունն կառուցեալ 'ի վերայ փողոցին ու-

նի զանազան սենեակս, և առաջի նրա՛ հ վայելչագիր, նաև գրատուն գրեանց զանազան լեզուաց, ևս և հանդիսարանս սակաւագիւտ իրաց և հնութեց, ունելով առաջի ծաղկոց և աղբիւր բարեհամ ջրոյ ։

## Պարսկական Խորասան ։

415. Որդ՝ այս մեր ժողովուրդ հետզհետէ աճեալ և բազմացեալ՝ լինին յաւուրս մեր 150 տունք. դրեթէ ամենքեան 'ի տուրևառութիւնս պարապին ընտականաւ արթնութեամբ, և ոմանք յաճախեն 'ի տօնավաճառս և յերևելի քաղաքս Սուսիոյ և Մէշհի ։ Պարգևագիր նոցա հաստատեցաւ և 'ի Պօղոս կայսերէ. ուստի ազատ են 'ի բազում հարկապահանջութեանց և ազատութեամբ վարեն զիւրեանց դատաստան Սենատ Ալեքսէյի անուամբ ։ Նախագահ դատաւորն կոչի փոլիցմէյստէր. որ նստի յառաջին տեղւոջ յատենի անդ, ունելով առընթեր զերկու դատօղակիցս. ևս և ատենադպիր և գրագիրս. որ բաց 'ի դատէ արեան՝ վճռէ զամենայն օրինօք Ռուսաց. ու՛ր եդեալ կայ առաջի դատաւորաց ոսկեզօծ նշանն կայսերական ։ Յայսմ դատարանի եթէ ոք ծառայեսցէ զամս ինչ գրագրութե՛, ելանէ յաստիճան ազնուականութեան, մինչև լինի Պաշտօնեան ։

Սօլօվայն է իշխանապետ, որ հոգայ զորբս և զայրիս՝ պահպանելով զամենայն ինչս և զեկամուտս նոցա ամենայն զգուշութեամբ, մինչև ցարբունս հասակի. որ և պարտական է ամ ըստ ամէ տալ տէրութեան զհամար ծախուց և եկամտից որբոց ։ Սա ինքն հոգայ զամենայն պահանջմունս քաղաքականս և զհարկաւորութիւնս ժողովրդեան. ժողովէ զհարկս և ծախէ 'ի պէտս ժողովրդեան կամ քաղաքին. և զայլ այսպիսիս ինքն հոգայ ։

Յամենայն երիս ամս լինի ընտրութիւն Սօլօվային և դատաւորաց. այս ընտրութիւն կախի 'ի հասարակութենէ այսր ժողովրդեան. որք հաւաքեալ 'ի դատարանն՝ զկնի հասուն խորհրդածութեան արկանեն քուէս. յորոյ անուն շատ ելանէ թիւն, ընտրի. բայց պիտի երդնուլ զերդումն հաւատարմութեան առաջի քաղաքապետին, և ուղղափառ քահանայի 'ի խաչ և

յաւիտեան. և զկնի այսորիկ ծանուցեալ Տէրութեան զընտրեալ անձինս լինի հաստատութիւն 'ի Տէրութենէ։

416. Զայս ամենայն արարողութիւնս առնեն զօրութեամբ այնր ոսկեգիր պարգևագրին, զոր պահեմք 'ի փառաւոր արկեղ. գրեալ կայ 'ի ձև մեծի մատենի 'ի միում էջի ռուսերէն, և 'ի միւսում հայերէն. որ յետ գրելոյ ոսկեգիր զամենայն պատուանուանս իշխանութեանց մեծի կայսերութեան, դարձուցանէ զբանն առ ժողովրդապետն և առ հասարակ ժողովուրդն այսպէս. * Հաւատարիմ մերոյ Յակոբ պատրուն և ամե-
„ նեցուն հասարակութեան խոնարհ քրիստոնէից հռովմէական
„ կաթոլիկեայ կրօնիցն. ամենից կողմանց առ հասա-
„ րակ և յատուկ անձանց մեր կայսերական ողորմա-
„ ծագունեղ բանն.

„ Ըստ հասարակ կամեցողութեամբ առաջադրութի
„ ձեր յաջողեցէ այն Բարձրելոյն. մեք վերահասու
„ եղաք հասարակութեան և յօժարական հիմնաւո-
„ րեալ խնդրոյն՝ սակս ազատութեան ձեր ամենեցուն
„ 'ի սպասաւորել լծոյ և տառապանացն ընդունիմամբ 'ի
„ յաւիտենական բնակութիւն 'ի կայսերութեանս մեր
„ Ռուսաց. հրամայեմք մեք ոչ միայն ընկալնուլ զձեզ
„ մեծ ենթ ողորմածագունեղի հովանաւորութեան
„ մերոյ. և որպէս սիրելագունեղ զաւակք հանդուցա-
„ նել 'ի ներքոյ նորին արտադրել զկեանս. այնքան բա-
„ րեկենցաղս, որքան ցանկութիւն մտահկանեցուաց և
„ անդադար ջանացողութիւն մեր առ նոյնն հասուցա-
„ նել կարէ։

„ Հետևելով սորին շնորհեմք ձեզ արդիւնաւորել 'ի
„ տէրութեան մերում ոչ միայն այնոքիւք ամենիւք ի-
„ րաւամբք և առաւելութեամբք, որովիւնք մեր ժողո-
„ վուրդք մեր 'ի մէնջ և 'ի նախնեաց մերոց 'ի վաղըն-
„ ջուց ժամանակաց վայելէին, այլև բաց յայնցանէ
„ հրամայեմք Մեք Նախ. Ըստ 'ի ներկայական անգրա-
„ բնակութեան ձերոյ 'ի քաղաքն աղովոյ մերիւք ծա-
„ խիւք բերել 'ի խոլիմոյ զայն մեր ինչս ձեր. զորս միայն
„ բերելն կարելի իցէ. որ և կարգաւորեցաւ 'ի մէնջ.
„ դրամոցն արդէն կատարումն եղեալ է։ Երկրորդ.
„ Ամ յարմարագոյն բնակութեան ձերոյ բարեյօժար կա-
„ մօք ձերովք ընտրեալ տեղին տալ ձեզ սակս շինու-
„ մնա առ քաղաքն նկատերինոսլավ. ուր խոստանա-

„ բանկունէ գետնիւն արդիւնաւորիցիք դուք հաստա-
„ կապէս է բնակչացն նոյնոյ քաղաքին Թարց ամի պա-
„ հանջման զհարկս 'ի գանձարանս մեր ։
„ Երրորդ. Յետ յառաջացուցանելոյ զանազանու-
„ թիւն ժողովրդական կացութեց ամենաողորմածաբար
„ տամք ազատութի ամենից հարկաց և ապաստաւորու-
„ թեց որպիսի անուամբ և իցեն մինչ 'ի տասն տարի.
„ այլ յանցանել նոյնոյ ժամանակի պարտաւորին վճա-
„ րել մերոյս գանձարանին իւրաքանչիւր տարւոջ վա-
„ ճառականքն յընչից իւրեանց հարիւրին մին, արհես-
„ տաւորք և մշակնիք իւրաքանչիւր տանց երկու ռու-
„ բլի ։ Իսկ եթէ այսուհետև պատահիցի. զի եկեսցեն
„ առ մեզ հողագործք 'ի ձերոց կրօնիցն՝ յայնժամ լի-
„ նիցին նոքա համահաւասար դրութե և զօրութե է
„ ելանողացն 'ի խորհրդէ քրիստոնէից հայոց դաւանու-
„ թեն. և որք չքաւորք իցեն վն շինելոյ տանց նոցին
„ փայտ և այլ նիւթք տացի 'ի գանձարանէ Թարց պա-
„ հանջելոյ զգինս նոցին ։ Հարուստք 'ի նոցանէ կա-
„ րօղք են շինել զտունս խանութս ամբարանոցս փա-
„ պրիքս, և այլ ամ, որ ինչ ինքեանց հարկաւոր իցէ.
„ և եղիցին ամն արդիւնաւորեցեալք հասարակօրէն
„ մինչտ ազատք յամենից փօստօեանց՝ բաց յայնցանէ
„ պատահմանց մինչ պատերազմական զինուորք առ
„ բնակութե ձերում անցանիցեն. յաւիտենական եղի-
„ ցին ազատք 'ի տալոյ զպատերազմական զինուորս,
„ բայց եթէ ոք է ինքեան ծառայել յօժարիցէ ։
„ Չորրորդ. Ամենողորմածաբար յանձնեմք պատրի
„ Յակոբին մինչև ցմահ նորին զհովուութի ամենից
„ այսց ելանողացն է նմ 'ի խորհրդ հռոմէական կաթո-
„ լիկաց կրօնիւք հայոց, և շնորհեմք նոցա շինել զեկե-
„ ղեցիս և զանկատկատունս. և է ծիսի և օրինաց նո-
„ ցին ազատօրէն գործածել զամ եկեղեցական պաշ-
„ տօնս և հոգևորական արարողութիս, և որպէս յի-
„ շեալ պատրին՝ նոյնպէս և այլ հռոմէական կաթոլի-
„ կաց կրօնիցն հոգևոր աստիճանաւորք եղիցին միայն
„ ընդ իշխանութե Ռէլօրուսքի Պիսկոպին ։
„ Հինգերորդ. Ակնի բնակութե ձերոյ հաստատել
„ ռադդուշ. որոյ և անուանել կաթոլիկական իրաւա-
„ րան և անդ վարել դատաստանս և իրաւունս է ձե-
„ րոց օրինաց և սովորութեց ընտրելով 'ի ձէնջ դա-

„ տուողս վրիժականգնութիւնք․ որք և արդիւնաւորեցեալ
„ լիցին աստիճանօք և վարձիւք ը՟ կարգադրութե՟ Ժո-
„ ղովոյ գաւառին․ և եղիցին ենթ իշխանութեան նա-
„ մեստնիքական կառավարութե՟։

„ Պարգեւալ․ յետ ընտրելոյ և մտանելոյ իւրաքան-
„ չիւրոց ՚ի ինքեանց զորպիսի և իցէ ցեղ կացութե՟
„ ՚ի տէրութե՟ այսպիսեաց թոյլատրեմք արդիւնաւո-
„ րիլ ՚ի յաւիտեան յետագայումն իւրեանց այնոքիւք
„ ամենիւք, զորս ը՟ հասարակ կանոնադրութե՟ մերոյ
„ իւրաքանչիւր ցեղ բնակչաց տէրութեանս արդիւնաւո-
„ րին որպիսիք են ազատօրէն գործածումն առևտրոյ
„ և վաճառաց․ որպէս արտաքոյ նոյնպէս և ՚ի մէջ
„ տէրութեանս․ և ՚ի առաւել շահաւէտութե՟ ՚ի նոյնս
„ հրամայեմք ձեզ ձերով ծախիւք շինել զծովային նաւս
„ վաճառականականս․ յօրինել զպիտանի և արդիւ-
„ նաւոր Փաբրիկս, զաւոտքս, մրգային այգիս, որ ը՟
„ աճիլն նոյնոյ ա՟մ կերպ գինի ՚ի խաղողոյ շինել ներ
„ բնակութե՟ ձերոյ մանր մանր չափիւք, և այլ ուրեք
„ ՚ի մէջ երկրին ռուսաց տանել և բօչքով վաճառելն
„ կարէք։

„ Փռանսուզի արախ շինեսցէ իւրաքանչիւրոք միայն
„ ՚ի ինքեանց գործածելոյ միով բանիւ զա՟մ արհեստս
„ բազմացուցանել զայն ա՟մ ը՟ յօժարութե՟ և կարո-
„ ղութե՟ իւրաքանչիւրոց, և վայելել ամենիւք նոքօք
„ ենթ ամենողորմածագունեղի մերոյ հովանաւորութե՟
„ և պահպանութե՟ օրինաց արդիւնաւորիլ։

„ Զայս ա՟մ առաւելութիւս մեք շնորհելով հանդի-
„ սօրէն ա՟մ հասարակութե՟ և յետագայիցն ՚ի յաւի-
„ տեանս ժամանակաց ՚ի առաւել հաստատութե՟ ստո-
„ րագրեցաք ձեռօք մերովք և թագաւորական կնքով
„ ամրացուցանել հրամայեցաք։ Տուեալ եղև ՚ի քա-
„ ղաքոջ մերում Սանդ Պետրպուրկ․ յամի ծննդեան
„ քՍի հազար եօթնհարիւր եօթանասուն ինն․ Նոյեմ-
„ բերի 14․ և թագաւորութե՟ մերոյ տասնութ ամի։

„ Իւր ստորագրեալ է նո-
„ րին կայսերական մեծու-
„ թեան ձեռօք այսպէս․
„ Եկատարինայ։

„ Նոյն Ռրիվէլէկին ստո-
„ րագրեալ է Պավէլ հաս-
„ տատեմ․ 1800 ամին․ 18
„ ապրիլի ամսոյ ||։

Զայս հրովարտակ հաստատեաց ը՟ Աղէքսանդր

կայսր Ռուսաց առանձին հրովարտակաւ յամի Տն 1804. յունվարի 30. ձեռամբ Նաղայ Մարտիրոսի Լեհցիով։

Մատուռն սրբոյն Անտոնի։

417. 'Ի հիւսիսային ծայր քաղաքին են կալուածք մեծանուն Զօրապետի Անտոն տէ Ռիյ գերմանացւոյ. որ 'ի բարեդիր վայրի կառոյց զընդարձակ պալատ իւր. առ որով են գեղեցիկ պարտէզք ծառալիցք և հովիտք ջրարբիք. ընդ որ անցանէ Խարասու գետ, և գնայ դէպուղիղ 'ի Սալղիր (561). յոր խառնի գետակն Սալրսու 'ի ծայրն պարտիզաց։ Նա երի պալատան գոն քանի մի բնակարանք և պանդոկք, ջրաղաց մեծ, և կամուրջ. ընդ որ անցանեն ամենայն ուղևորք գնալ 'ի *Քէֆէ 'ի Կերչ և 'ի գիւղօրէս։

Յաջակողմն մեծի պալատին կառուցեալ է մատուռն քարաշէն յանուն սրբոյն Անտոնի պատուացւոյ. առ որով գոյ պահարան. յորս պահին մարմինք մեծի Զօրապետին և կնոջն։ Իսկ շուրջանակի զմատրամբ գոն գերեզմանք, և արտաքոյ ընդարձակ դաշտ, շուրջ զորով տուաք գործել խրամ։

Յամի Տն 1817. դեկ. 8. կին քաջ Զօրապետին Մարիա Աննա Զօրապետուհի օրինաւոր կտակաւ եթող Հռովմէական հայոց Խարասուի վայս ամենայն կալուածս, զպալատն, զմատուռն և զամենայն ինչս իւր այսու պայմանաւ. զի չէն պահեսցին այն ամենայն տեղիք, տացի աղքատաց կերակուր, և 'ի մատրան պատարագեսցի այլովքն հանդերձ, որոյ հոգացողութիւն մեզ յանձնեցաւ բարձր հրամանաւ Մեծաւորաց։ Ամին իբր անպակաս լինին անդանօր հանդէսք. մանաւանդ 'ի տօնի սրբոյն Անտոնի պատուացւոյ տալով կերակուր աղքատաց քառիցս 'ի տարւոջն, և 'ի կիւրակէս պատարագելով։

'Ի հարաւային կողմն արտաքոյ քաղաքին փոքր ինչ հեռի կառուցեալ եղև մեծ պալատն արքունի 'ի վերայ Խարասուի 'ի Պեզպօռօտքի մեծ զօրապետէ. յորժամ եկն 'ի Խարասու Կատարինէ կայսրուհին ընդ Յովսէփ կայսեր։ Հաճեալ թագուհւոյն ընդ այս պալատ ընծայեաց նմա զամենայն շրջակայ դաշտս, բլուրս

և պարտէզս ըստ սովորութեան աչաց, զոր այժմ եղծեն Շամիրամ Բաբելոնի յոյն իշխանուհին, որ քանդեալ զայն պալատ շինեաց 'ի նոյն ծայր քաղաքին 'ի մերձակայ բարձրագլխատակ վայելուչ բլրի. առ որով անցանէ 'ի միոյ կողմանէ գետն Կյարասու, և 'ի միւս կողմանէ Պնաղ։ Այս մերձ է գեղագուարճ տեղին ծառալից Սկիւտէրէ ձայնեալ. ꙮ հինգ ծառ. ուրանօր գոյ ինքնաբուղխ ջուր և աւազան ուխտատեղի ռամկաց, յոր լուացեալ լինին ախտաժէտք։ 'Ի ժամանակս Թագաւորաց երբեմն աստ նստէր խանորդին Նուրբանուին Սուլդան. որպէս պատմեն ծերք։

### Կյարասու պաշէ.

418. Ի գեղեցիկ վայր զբօսանաց 'ի նոյն կողմն 7 վերստ հեռի 'ի քաղաքէն, ուր եղերին յերկուց կողմանց բլուրք ձորոյն 'ի մեծ ապառաժ ինչ միակտուր, որ է իբր դուռն կամ կապան ձորոյն, զոր մարթ է կոչել շտեմարան ջուրց. զի 'ի ներքուստ դատարկ գոլով 'ի տեղիս տեղիս երևին բերանք ապառաժին և խոռոչք պատճառեալք 'ի բաժնութենէ ջուրց։ Հա աստ է ակն կամ գլուխ Կյարասու գետոյն, որ համապատ բղխի 'ի ներքուստ անտի. երբ յորդ է ջուրն հոսի և 'ի խոռոչաց ժայռին, որ երևի ահագնատեսիլ իմն։ Այսպէս ջուրն զտեալ 'ի շտեմարանի անդ ականակիտ է և բարեհամ. այլ այսպ անցեալ ընդ ողմուս և ընդ հանքային վայրս փոխէ փոքր ինչ նկարագրն. զի տեսաք առ տեղեաւն աղբերակունս հանքախառն ջուրց։ Ջննեալ 'ի վերայ ժայռին գտաք բնական պատառուածս. յոր արկեալ զքարինս յետ հարուստ մի գնալոյ անկեալ 'ի խորս ժայռին արձակեաց զձայն 'ի ջուր անդ։

Յաջակողմեան մասանէ ապառաժին յորդագոյնս բղխի ջուրն 'ի ներքուստ անտի և միանայ ընդ միւս թևոյն։ Այս ջուր գայ երկու ժամու հեռի 'ի հովտէ անտի, որ 'ի Թաթարաց կոչի Կյարաղէն Չայըր, ուր լճանայ ջուրն և անցեալ ընդ ստորերկրեայ անցս գայ հոսի աստի։

Յերկոսին կողմանս գետոյն աստի և անտի են գեղեցիկ պարտէզք մրգաբերք մինչև ցքաղաք անդր.

յորմէ ելանէ համեղաճաշակ ձուկն խայտախայտիւ. Ս.-լողալըճէ կամ Զուարթ կոչեցեալ. և այլ տեսակ ձկանց։

## ԳԻՒՂՕՐԷՔ ԽԱՐԱՍՈՒԻ

419. Բազում են գիւղօրէք շուրջ զքաղաքաւս, յորոց գան գիւղականք և բերեալ զամենայն պիտանիս սփռեն ընդ քաղաքն ողջոյն և գնեն զհարկաւորս, որք են աշխատասերք և արթունք։ 'Ի կարգիս յիշեսցուք միայն զգիւղօրէս 'ի մէջ Խարասուի և Էսկի Խրիմի. յորս բնակէին Հայք. և ունէին վանորայս և եկեղեցիս, որպէս պատմէ յիշատակարանն յայսմաւուրաց յասեւն. * 'Ի Պարապաղարէն սկսեալ մինչև 'ի Սուրխաթ և 'ի Թէոդոսիա 'ի լերինս և 'ի դաշտս լի ա-ս բարին վանորէիւք և եկեղեցեօք‖։ 'Ի սոցանէ այժմ քանի մի և եթ ամբողջ կան յայլևայլ գիւղօրէս, յորոց հայազգի գիւղականք վարեցան 'ի Նախիջևան, և անդ շինեցին զնոյնանուն գիւղօրէս և Ճոխացան (578)։ Այժմ յայտնիկ գիւղօրէս, որք անուանին Խոյալը, Պահձելը, Օրթալանն, Թոփալ, Սալա և Խամըշլը՝ բնակին տաթարազգիք։ Շրջակայ լերինք Խարասուի լի են գայլախազ քարամբք 'ի գոյն թուխ և դեղին։

### Խոյա կամ Խոյալը։

420. Ի մերձաւորագոյն գիւղ փոքրիկ 'ի հիւսիսային կողմն Խարասուի յեզերս ջուրց հանդէպ մեծի պարտիզի Շէյց զօրապետին, ուր էին 20 տունք Հայոց յառաջ քան զերուժն։ Այս գիւղ յայն սակս այսպէս կոչի, զի է յոտս բերդանման բարձր լերին, որ կոչի Ագկայա, որ 'ի հեռաւոտ երևի իբր դղեակ. 'ի զառիվերն տեսանք մեծամեծ այրս և փապարս. ուստի ելանէ տեսակ ինչ հողոյ, որ 'ի Թաթարաց կոչի Ղիւլբէղան. որով սպիտակացուցանեն զմուշտակս։

'Ի վերայ լերին գոյ հողաբլուր Օղա կոչեցեալ, զոր բացեալ գտին 'ի ներքս կամարաշէն գերեզման և ոսկերս մարդոյ մնացեալս 'ի վաղ ժամանակաց։ Արևմտեան կողմն լեռնակիս երևի սեպացեալ սպիտակափառ 'ի վերուստ 'ի վայր մինչև ցգետն. Թուեցաւ մեզ թէ 'ի հնումն այն մասն ծածկեալ էր ջուրք Պոնտոսի

յառաջ քան զբացումն Բոսփորոսի . յորում տեսաք զբազում ոստրէս և ժժմակս ծովու քարացեալս և կրացեալս . 'ի մի կողմն երևի ծոց լինն ձևացեալ և նաւատեղի . ըստ որում և աւանդութիւնն պատմէ : (Տես 'ի Պատմ. 6) :

## Սուրբ Փրկիչ :

421. Ի հին վանք կառուցեալ 'ի Պաշաձելի գիւղ յարևելեան կողմն քաղաքին հեռի 15 վերստիւ . առ որով անցանէ գետակն փոքր Խաչաստու ելեալ 'ի մերձակայ լեռնէ անտի : Տարածութիւն վանացս փոքր է . բայց պարիսպն բարձր , որպէս և դիրքն . դուռն է յարևմտեան կողմն . որոյ հանդէպ քարընկէց մի հեռի տեսաք լուսաղբիւր քարաշէն և բարեջուր : Յայս կողմն պարսպին շինեցան յաւուրս մեր վերնատունք սակս ուխտաւորաց . դուռն և գետնափոր սենեակք , ուր յաճախեն ուխտաւորք 'ի վարդավառին ըստ հին սովորութեան իւրեանց . իսկ խոհակերանոցն է 'ի հարաւակողմն : Եկեղեցին է 'ի միջավայրի քարաշէն և կամարակապ հաստատուն յոյժ . ունի մի միայն խորան , ուր գոյ պատկեր Ածամօրն . յաջակողմն խորանին գոյ հին պատկեր յարութեան փորագրեալ 'ի քարի . և 'ի ձախակողմն նոյնպէս փորագրեալ պատկեր խաչելութեան : Առ որով գոյր յառաջ պատուանդան . որ էր սևագոյն վէմ Փրկչատուր ձայնեալ . և 'ի վերայ փորագրեալ խաչ 'ի մէջ բոլորակի , զոր բնակքն բարձեալ տարան ընդ իւրեանս 'ի Նախիջևան , զոր ասեն բերեալ յԱնւոյ և օծեալ յառաքելոյն Թադէոսէ : Ի ներքոյ բեմին տեսաք չորս փոքրիկ կամարս և 'ի միջոցի քանդակ ինչ կենդանեաց . յորմէ գուշակի թէ յառաջագոյն յատակ եկեղեցւոյն 'ի խոր իջանէր : Տեսաք յորմն զբազում խաչքարինս եդեալս 'ի ժամանակս նորոգութեան . 'ի միումն գրեալ կայ * Զչինկ է խաչս կաս Փացի տաշձի Կիրակոսէ ‖ :

Ի թիկանց խորանին ընդ գաղտնի ճանապարհ ելաք 'ի տանիս եկեղեցւոյն , որ ըստ բոլորին ծածկեալ է յղկեալ տափարակ քարամբք համեմատ ձևով . իսկ յերդերս տանեաց լայն քարամբք շրջանակ ձևացեալ : Երկայնութիւն տաճարին է 20 . քայլ . իսկ լայնութիւնն

10. 'ի վերայ առաստաղին և խորանին փորագրեալ կայ գառն մի: Ունի երիս դրունս կամարաշէնս արտաքուստ հանգերձ դրունագօք: 'Ի մի կողմն կամարին արևմտեան դրան փորագրեալ կայ այս բան. բայց թուականն եղծեալ է. * Վերստին նորոգեցաւ եկե-
» ղեցիս փրկչին . . . ||: Իսկ 'ի վերայ հարաւային դրան յիշատակարան վերջին շինութեան փորագրեալ կայ անյարդ շարագրութեամբ:

* Ահա այս է դուռն էին,
» Անկս անուանի որ 'նք Փրկչին.
» Արդեամբ ծախիւք հայոց ազգին,
» Որք խարասու իսկ բնակին.
» Նորոգեցին վերստին . . . Թու.
» 1810. յունվարի 6 ին ||:

Որմունք տաճարիս ամրացուցեալ են քարաշէն յենարանօք վերուստ 'ի վայր. 'ի հարաւային կողմն է փոքրիկ լուսաղբիւր մշտահոս. 'ի տեղի հին յիշատակարանին եդեալ են զնոր յամի 1811:

Մերձակայ լերան վանացս կոչի Մանաստըր տաղէ. պատմեն թէ նախ կամեցեալ են անդ կառուցանել զվանս. այլ սքանչելեօք իմն աստ նշանակեալ է տեղի վանացս: Սակայն մեզ թուի թէ 'ի սկզբան անդ շինեալ էին 'ի լերան մատուռն կամ խաչքար առ 'ի պատարագել նախ քան զշինութիւն վանացս, որպէս սովորութիւն է արևելեայց: (Պոնտ. 128:)

## Օրդաքլու:

422. Այս քարաշէն գիւղ միով ժամաւ հեռի է 'ի Պաշչէլիէ յարևելեան կողմն. ուր յառաջ բնակէին Հայք, և այժմ Յոյնք: Եկեղեցին Հայոց է 'ի ծայր ընդարձակ դաշտին. և շուրջ զնովաւ գերեզմանատուն Հայոց: Տաճարն է 'ի ձև քառակուսի հաստատ քարաշէն Գոթիկեան ձևով կառուցեալ քառեակ կամարօք իբր յերիս մասունս բաժանեալ: Միջին մասն է օրօրոցաձև. խորանն է կիսաբոլոր. և յերկուս կողմունս ունի զերկուս դրունս և փոքրիկ զգեստատունս: Յորմունս երևին խաչքարինք. 'ի վերայ աջակողմեան մեծի խաչքարին գրեալ կայ. * Տր ած յս քս ||:

Յատակն լցեալ է հողով. նմին իրի օրենք կիսով չափ թաղեալ կան. երկայնութիւնն է 17 քայլ, և լայնութիւնն 13։ Դուռն միայն է կործանեալ. յորոյ վերայ տեսաք քառակուսի սպիտակ քար, և ՚ի վերայ յիշատակարան նորոգութեան. բայց քարն է խորտակեալ և գիրն խանգարեալ. գր * Ընծեմիստանցի է այս նշկէ
„ պէկ մՀտիս բարձումն սորին. և մի
„ պէկին. Ճանիին ցն մարգարտին
„ զարմիցն թվ. ՌՃԽԹ. յուլ || . (1700)։

Այս եկեղեցի կառուցեալ է յանուն Համբարձման. և ՚ի նմին աւուր բազմութիւն յոյժ Հայոց յամենայն կողմանց հաւաքեալ աստ առնէին կերակուր աղքատաց։ Սակաւ ինչ ՚ի վայր է Յունաց եկեղեցին շինեալ ՚ի Հայոց անուն յանուն սրբոյն Եղիայի։ Փոքր ինչ տարակաց աստի ՚ի կողմն Սեօկդաշին գոյր այլ եկեղեցի Հայոց, զոր քանդեցին Թաթարք։

Խոտորջ։

423. Ի գիւղ Ղուարձաղի մօտ ժամու հեռի ՚ի նախընթացէն ՚ի կողմն Լակի խորհմու. ուր այժմ բնակին ասիացի Յոյնք։ Տեսաք ՚ի գիւղամիջի անդ առ փոքրիկ վտակաւ զհին եկեղեցին Հայոց քարաշէն հաստատ յանուն սրբոյն Սարգսի. դուռն է ՚ի հարաւակողմն կամարաձև. իսկ քառակուսի լուսամուտն ՚ի կողմն արևմտեան։ Տեղի խորանին է կիսաբոլոր երբ 10 ոտնաչափ. յերկոսին կողմանս պատուհանք։ ՚Ի տեղիս տեղիս յորմն են խաչքարինք և մնացորդք հին նկարուց։ Գոյ ՚ի ձախակողմն հին խաչքար 443 ամաց. ՚ի ստորև այսպէս գրեալ կայ. * Ես Ծ իւրոյ. ՚ի թվ. ՊԼԶ || (1387)։

Այս տաճար 5 կամարօք կապեալ է օրօրոցաձև հանդերձ շրջանակօք. թուի թէ յառաջ յատակն խորին էր։ Արտաքոյ դրան տեսաք փոքրիկ և խոնարհ մատուռն իբր պահարան ամուր կամարաձև. յառաստաղն երևին մնացորդք հին նկարուց և ձևոց։

Սուրբ Սարգիս։

424. Ի բարձրահայեաց եկեղեցի կառուցեալ յա-

նուն Պարասքևեայ կուսին 'ի վերայ վայելչադիր բլրոյ 'ի միւս կողմն վտակին, իբր քարընկէց մի հեռի 'ի գեղջէ անտի, որ յամենայն կողմանց երևի: Սուր և-լաք ընդ 80 քարեայ աստիճանս. շուրջանակի է գե-րեզմանատուն. և առ ոտս բլրոյն գեղազուարճ պար-տէզք և հովիտք ջրարբիք: Երկայնութիւն տաճա-րին չափեցաք 18 քայլ. իսկ լայնութիւնն 9 խորան նորա արտաքուստ կիսով չափ թաղեալ է ընդ հողով. այլ տաճարն է հաստատ. տեղի խորանին է ամբողջ կի-սաբոլոր, որոյ տրամագիծ է 10 ոտն: Շինութիւն տաճարիս է համեմատ հնգակամար օրօրոցաձև. յորմն 'ի տեղիս տեղիս են խաչքարինք օծութեան, և մնա-ցորդք պատկերաց ինչ: Յաջակողմն է աւազանն որձա-քար միակտուր խաչաձև միատնաչափ մեծութեամբ: Իսկ դուռն է յարևմտեան կողմն քանդակեալ 'ի վե-րուստ կամարաձև. ուր նկարեալ կայ տիրամայրն հան-դերձ մանկամբ: 'Ի նոյն արևմտեան կողմն է լուսա-մուտ մեծ. առ որով արտաքուստ դետեղեալ կայ քա-ռանկուսի քար սևագոյն, և 'ի վերայ արձանագիր վերա-շինութեան տաճարիս այսպէս.

* Փառաւոր տաճրս ածային,
" Որ է պատկերք հՅց ազգին.
" Սերատին կառուցաւ հիմանց,
" Տրօք ողորմունք ղըրմայ երկրին.
" Յանուն սրբոյ ուրբաթու կուսին,
" Առաջնորդութ Յակոբայ քաջ հռաբունեայն.
" Եւ վերակացութ մհտսի Յոհաննեսի,
" Եւ մհտսի Առաքելի քաֆայեցւոյ.
" Ձեռամբք քարագործ Գրիգորին եւ տօնականի.
" Սայելումն տէր Սարգսան քհնի.
" Սարգիս տիրացուին. Թվն ՌՃԾԱ ին ‖ (1702):

Սալ և Խամշեւի:

425. Այն գիւղօրէք Հայոց մերձ 'ի Թոքատ 'ի կողմն Սուստայի. յառաջինն բնակին այժմ Սուեաք և ոմնքն զեկեղեցին Հայոց. որ է քարաշէն նուիրեալ ա-նուան Ըծաննի: Իսկ 'ի Խամշելի այժմ բնակին Թու-րքք, ուր գոյ մեծ աղբիւր քարաշէն կառուցեալ 'ի

Հայոց. գրեալ 'ի վերայ յիշատակագիր Խաչատրոյ ։ Նոյնպէս մերձ 'ի Սալա գոյ և կամուրջ քարաշէն հան-դերձ արձանագրաւ անուան նոյն Խաչատրոյ ։

## ԳՈՌՈՒՉԱՑ

426. Ամելով մեր գնալ յԱգմէջիդ քաղաք կու-սակալութեան Ելիսաւետպօլոյս՝ դարձուցաք զընթացս մեր ընդ արևմուտս, և անցեալ ընդ քարաշէն կա-մուրջն Սորըստ գետակին, որ է յարևմտեան ծայր Խարասուի, հասաք յետ միոյ ժամու յականակիտ գե-տակն Գոռուչայ. ուստի սկսանի անուանի գիւղ և գլուխ Խարախոչ պառանի. որոյ մի ծայրն իբրև զկտոյց արծուոյ ձգի դէպ 'ի Խարասու ։ Ընդ այս բարեջուր գետակ կոչի Գոռուչայ. զի ամէն Թաթարք թէ յըն-թացս գալարեալ կարի իմն պտոյտքի և թափ անցանե-լով ընդ երկիր՝ անդրէն հոսի. նորին ազգաւ այսպէս կոչեցաւ ։ Որոյ ջուր է մի 'ի պատուական ջուրց Խորի-մի, որ հոսի դէպ 'ի Սարլու ծովակ. առ եզերբք են բազում գիւղօրէք ։ Ընդ 'ի ստորև է համանուն գեղ Գոռուչայ. իսկ 'ի վերոյ է անուանի գեղն Նօզինտալ գերմանացի հատուածոց. որք ունին առանձին եկեղե-ցի. երբեմն էին առանց քահանայի, մեք հովուեցաք զնոսա առ ժամանակ մի, որպէս և այժմ՝ յորժամ մնան առանց քահանայի ։

Ուստի ուղևորեալ զընթացս մեր դէպ 'ի գլուխ Գո-ռուչայի՝ յետ գնալոյ ընդ հարաւ 7 վերստ՝ հասաք 'ի կիրճն Խոյնավուտ փակեալ 'ի մէջ կրկին լերանց ընդ երկայն վերստ և կէս. ուր գոյ գիւղ Թաթարաց և մեծ քարանձաւ 'ի պաշտպանութիւն յոլով խաշանց ։

## ՋԻՒՑԷ

427. Ուստի յառաջ անցեալ հասաք 'ի միւս բարե-շէն գեղն Ալախուրքա նոյնպէս գերմանացի հատուածոց լուտերականաց, ուր տեսաք զանազան գեղեցիկ պար-տէզս եւրոպեան բանջարեղինաց ։ Ուստի հասաք յար-քունի գիւղն Օխչէ. ուր օթագայեցաւ Տն Աղէք-սանդր կայսր Ռուսաց 'ի 1812. և ետ նմա Ձաշ Ալ-Թալիկ Հաստարակութիւն մեր Խարասուի ։

Աստի խոտորեալ 'ի ձախակողմն կոյս հասանէ 'ի Փոռնտուգլւ գիւղ մեծապատիւ գաղղիացի քահանային Լաւպէ Լօրէնցօ Միլլիօթ, ուր կառուցեալ է նա ինքն քարաշէն մատուռն յանուն Ողլաւայ կուսին։ Աստի յետ միոյ ժամու հասանէ 'ի գիւղն Պէշէրէկ. ուստի անցանէ համանուն գետակ և ընդ գետակին Օքիւյէր երթայ թափի 'ի Սալղըր։

## ՍԱԼՂԸՐ

Սա անուանի գետ Խրիմի, որ 4 ժամաւ հեռի յԱգմեջիդէ ելանէ 'ի կողմանց Չատըրտաղին 'ի տեղւոջէ, որ կոչի Այան. ուր դոյր եկեղեցի յանուն սրբոյն Յովհաննու։ Աղբերակն է դուռ ինչ յապառաժի. ուստի բղխեալ խոխոջմամբ հոսի ընդ հիւսիս, և անցեալ յառաջոյ Ագմեջիդի ընդունի զբազում վտակս. և գնացեալ դէպ 'ի Սասըխ ծով անկանի 'ի Խյարասու գետ, և կորուսանէ զանունն (563)։

## ԱԳՄԷՋԻԴ կամ ԱԳՄԷՍՋԻԴ

428. Սա անուանի և ընդարձակ քաղաք կուսակալութեան Տաւրիոյ հեռի 'ի Խյարասուէ 42 վէրստ. 'ի հն. կոչէր 'ի Յունաց Սինֆէռօբօլ, որպէս կոչեն զարդիս և Ռուսք. և էր բարեշէն քաղաք, որպէս գուշակի 'ի դրիցն. այլ բոլորովին քանդեցաւ 'ի Թաթարաց։ Ապա առ սակաւ սակաւ բնակեցան գիւղական Թաթարք և շինեցին փոքրիկ Մէսջիդ. որոյ սպիտակափառ որմունք նշմարեալք 'ի հեռուստ պատճառ եղեն անցաւորաց կոչել զայն Ագմէսջիդ ըստ Սպիտակ տաճար. մինչ զի տեղին ևս յայս անուն յարանուանեցաւ. զոր ինքեանք կոչէին Ալմա քէօյի։ Ապա Խանք Թաթարաց տեսեալ զվայելչութիւն տեղւոյն՝ շինեցին քաղաք, և կառուցեալ զմեծ մզկիթն կոչեցին Ագմէսջիդ։ Աստ նստէր անդրանիկ որդի Խանին Գալղա Սուլթան իբր երկրորդ Խանին և իշխէր մինչև ցԽյարասու և անդր ընդարձակ իշխանութեամբ, և առաջ յաջորդէր խանին։ Վերջինն եղև Մախսուտ քէրէյ Գալղա Սուլդան. զաւերակս ընդարձակ պալատի նորա տեսաք մերձ 'ի Սալղըր. զոր քանդեցին Ռուսք։

Այս քաղաք յետ անցանելոյ առ Ռուսս եղև աթոռանիստ Կառավարչի իշխանին Նովոռոսիոյ. որոյ իշխանութիւն ձգի մինչև ցԱափոր և յՕզուխոր (566)։ Էր և այժմ բաժանի 'ի Հին և 'ի Նոր Թաղ. Հին Թաղն է բուն քաղաք, ուր բնակին ամենայն ազինք. անդ է շուկայն. 'ի մի ծայրն ընդ երկայնութիւն Ալզըրին բնակին մեծամեծք 'ի բարձրադիր և 'ի զուարճալի վայրի։

Անդ 'ի վերին ծայրն կառուցեալ է մեծ պալատ առաջին զօրապետի. յորում օթագայեցաւ Օգոստափառ Կայսրն Ռուսաց Աղեքսանդր 'ի 24. Հոկ. 1825։ Անդանօր կոչեաց զմեզ առ ինքն՝ խօսակցեցաւ առանձին ամենայն քաղցրութեամբ և սիրով. խրախ եղև ընդ անզուգ աշխատասիրութիւն մեր խոստանալով ձեռնտու լինել յամենայնի։ Զնոյն կրկնեաց յետ մեկնելոյն անտի գրելով առ իս թուղթ 'ի ձեռն Կուսակալին յայտնելով զհաճութիւն իւր գիտել թէ զինչ ինչ կամք իցեն մեզ խնդրել 'ի Տէրութենէ նորա։

Անդ են դատարանք, պաշտօնատեղիք, եկեղեցի Ռուսաց քարաշէն կառուցեալ յանուն Պետրոսի և Պօղոսի, եկեղեցիք և բնակարանք Հայոց և Յունաց. ևս և Մզկիթք և Թաղ Թաթարաց և այլոց։

Իսկ Նորն է աջակողմեան մասն քաղաքին յընդարձակ և 'ի վայելչագեղ դաշտի կառուցեալ մեծամեծ շինուածովք ըստ եւրոպական ձևոյ՝ անջրպետ 'ի մէջ ունելով զարքունական պողոտայն, յորոյ 'ի վերին ծայրն լինի մեծ տօնավաճառ յամենայն շաբաթու։ Աստ է մեծ ուսումնարան արքունի զանազան լեզուաց և գիտութեանց վասն ամենայն ազգաց։ Անդ յաւուրս մեր առընթեր Ալզըրի կառուցաւ կամարաշէն մեծ եկեղեցի ուղղափառական յանուն սրբոյն Աղեքսանդրի Նևսկւոյ 'ի պատիւ անուան մեծի կայսեր ն Աղեքսանդրի։ Սորին բարձր կաթուղիկէ շքեղապատեալ 'ի քառեակ փոքունց. յերկու կողմանս կանգնեալ կան վեց վեց մեծամեծ սիւնք առաջի երից կամարայարկ փառաւոր դրանց։

Այս նոր քաղաք կառուցեալ 'ի բարձրադիր և ընդարձակ դաշտի՝ օրըստօրէ վայելչանայ կանոնաւոր շինուածովք և ուղղաձիգ լայն Հրապարակօք, նաև կրկնայարկ քարուկիր պալատանօք մեծամեծաց։ Հայոց եկեղեցին է քարաշէն և վայելուչ նորոգ կառուցեալ

առ երի հնոյն համօրէրձ կաթուղիկէիւ ։ Ուր առ բե- միւ տեսաք Խաչքար բերեալ յայլուստ 229 ամաց ։ 'ի վերին կողմն փորագրեալ է թուականն Ռ Ծ ։ և 'ի ներքոյ ։ * Յիշատակ է որ խաչս պարոն Յակոբին || ։ Ուրանօր տեսաք հին Յայսմաւուրք գրեալ 'ի Պաղչէ- սէրայ 'ի քարակոփ եկեղեցին (436) ։ և աւետարան նուիրեալ եկեղեցւոյն Պօլրդլաֆայի (469) ։ Այս ե- կեղեցի Հայոց նուիրեալ է անուան սրբոյ Ածածնին ։ իսկ ժողովուրդքն են 40 տունք ։

Բարձրահայեաց մզկիթն Ազամէսճիդ բոլորովին քա- րաշէն՝ է նոյնպէս կառուցեալ 'ի հին բաժնի քաղաքին ։ որ ունի Մինարէ և Մեհրապ, ուր ուսանին մանկունք Թաթարաց ։ զոր շինեալ է Մէնկլի Գէրէյ Խան ։ ըն- թերցաք զյիշատակարանն 332 ամաց 'ի վերայ ներքին դրանն այսպէս ։

سلطان منكلي كرى خان ابن عبد الرحمن . . . سنه ۹۱۴

* Սուլթան Մէնկլի Գէրէյ Խան իպնի ապտուռահման . . . Սէնէ 914 || ։

Տեսաք զայլ արձանագիր այսպէս ։

ماخصود اغا ابن حسين اغا . . سنه ۱۱۵۳

* Մախսուտ աղայ իպնի հիւսէին աղայ . . . Սէնէ 1153 || ։

## ԷՍԿԻ ՍԵՐԱՅ

429. Արդ մեկնեալ մեր յԱզամէսճիդէ ուղեւորեցաք դէպ 'ի Հարաւ, և յետ 2 ժամուց հասաք յԷսկի սէ- րայ ։ որ է ամրոց շինացեալ 'ի վաղ ժամանակաց ։ որոյ պարիսպք ըստ մեծի մասին ամբողջ կան ։ առ որով գոյ և հին եկեղեցի լքեալ, եւս և վայելուչ գիւղօրէք մե- ծամեծաց տանի և անուն Սալղըրին ։

Յետ այսորիկ անցեալ յաճախ ընդ այն գետ հասաք 'ի մի վտակն Սալղըրի՝ անուանեալ Կիւռուլիւք ատա ։ որ գայ 'ի Խրայարպիյ մարգէ ։ Օկսի տապա հասաք յայլ վտակ Սալղըրի 'ի տեղին Լանճի տալս և տապա Ակչուն տալան ։ Բաշի ժամ մի 'ի վեր է ակն Սալղըրի, որ ե- լանէ յանձաւատ խոռոչէ անձուկ տապառածին ։ առ որով գոյր 'ի հնումն եկեղեցի Յունաց Այն ի սուրբ Յով- հաննէս առ կողմանք մեծի լերինն Չատըր տաղի ։ որ-

դէս առաջաւ։ Ապա հասաք 'ի գիւղն Զավքա. ուր գոյ աղբաւնի Թղթատար. աստի սկսանի մեծ լեառն Նըղար, որ հասանէ մինչև ցԱլուշդա ցժամս 4։

Արդ թողեալ մեր զՍալղըր յաջակողմն՝ անցաք ընդ լեառն. զորոյ անկախելի ուղին եւս հարթել տէրութիւն Ռուսաց մինչև ցԱլուշդա։ Յեղջս մեծի լերին տեսաք զաղբիւր քարաշէն պատուական ջրոյ. որոյ հանդէպ անկանի Տէմիրճի գիւղ. առ որով է և գիւղն Շումա. որ սակս շշնջմանց ջուրցն այսպէս կոչեցաւ։ Ապա հասաք 'ի ծովեզերեայ գիւղն Ալուշդա բարեշէն և գեղեցկադիր. ունի վայելուչ պարտէզս և այգիս։ Յաւուրս մեր աստանօր շինեցաւ պալատ արքունի երկկարգեան սիւնազարդ 'ի վերայ նաւահանգստին, որ է անպատսպար. ընդ աջակողմն գեղջ անցանէ գետակ և ոռոգանէ զպարտէզս։ Անդ 'ի գիւղամիջի տեսաք հին բերդ, որոյ մասն պարսպի հանդերձ քառեակ աշտարակօք կանգուն կայ. զերկայնութիւն միոյ կողման չափեցաք 125 քայլ։

Այնուհետև անցեալ ընդ գետակն ուղղեցաք զընթացս մեր ընդ արևմուտս. և յետ միոյ ժամու հասաք յապառաժն բարձր ձայնեալ 'ի նոցանէ Քաստէլ. ամրոց. որոյ ծայր երևի որպէս դղեակ. ուր ասեն ամրանային երբեմն Ճէնիվիզք առ 'ի չտալ անցս թշնամեաց։ Աստանօր տեսաք և մեծամեծ վէմս առ ճանապարհին, որ կոչի դուռն կապանի. 'ի ծայրն դոյ լեզու երկայնեալ 'ի ծովն։ Աստի յետ միոյ ժամու հասաք 'ի Պիւշիւք Լամպատ. որ է գիւղ բարձրահայեաց. ունի գեղեցիկ նաւահանգիստ կիսաբոլոր ընդարձակ, այլ ոչ ապահով 'ի հարաւային հողմոյ։ Աստ շինեաց զերևելի պալատ Ռուս զօրապետն Պորազովին։ 'Ի վեր անդր է միւս գիւղ Պէօյիւք Լամպատ. 'ի հն. Փոսոյլոն. ուր գոյր ամրոց շինեալ 'ի Յուստինիանոսէ։

Ապա անցեալ յառաջ ժամ մի և կէս՝ հասաք 'ի Պառթին կամ Պառթէնթ. ուր տեսաք 'ի վերայ աջակողմեան լերին վաղեմի դղեակ և ապառաժ բարձր Պառատէլ անուամբ. յորոյ վերայ եկեղեցի Սյ Կոստանդեայ և Հեղինեա. մի որմն կանգուն կայ վեցանկնաչափ. և առնովին մարմարիոնեայ սիւն։ Իսկ 'ի հանդիպակաց լերին 'ի կողմն Լամպատի երևի մնացորդ վանաց ինչ անուամբ Պալաքօն։

Զկնի միոյ ժամու հասաք 'ի գիւղն Արթէք. 'ի հն. Καρδιατρικων. ուր 'ի վերայ աջակողման լերինն է գիւղն Խզըլդաշ. առ որով տեսաք ապառաժ կարմրագոյն և 'ի վերայ փոքրիկ ամրոց վաղեմի. Զգիւղն Արթէք գնեալ Մէհցի Կոմսին Օլիզարի կառոյց շինուածս բնակութեան. տնկեաց գեղեցիկ պարտէզս և ծառաստունկս. որ և բազում մարդասիրութբ ժողովեաց զմեզ. Այս գեղ անկանի առ Այու տաղիւ, որ 'ի հն. կոչէր Ճ[illegible]. սա երևի 'ի հեռուստ 'ի ձև արջու երկայնեալ զքիթն 'ի ծով անդր. Ըն որք համարին թէ այս է անուանեալն 'ի Նախնեաց Կրիումէտոփոն. այլք ասեն լինել լեառն Այա.

Յետ այսորիկ հասաք 'ի գիւղն Կուռզուֆ. 'ի հն. Gorzabita. որ 'ի լեզու Սկլաւեանց նշանակէ ասեն լեառն փայլեալ. Զայս վայր ա̄ Յուստինիանոս զօրացոյց. տեսաք 'ի մօտոս գեղջ 'ի վերայ ապառաժին զմնացորդս հին պարսպաց. Արևելեան ապառաժք փոքր ինչ պատսպարեն զնաւահանգիստն վայելչագիր. 'Ի բերան նաւահանգստին տեսաք գեղեցիկ պարտէզս ազգի ազգի մրգաբեր ծառոց և զընդարձակ այգի Մեծի Կոմսին Մօրոնցովի. որ և կառոյց 'ի միջոցի անդ ծովափանց զմեծագործ պալատ փառաւոր. անդ իջևանեցաւ ա̄ Աղէքսանդր Կայսր. Աստի անցեալ ընդ սարսափելի լերինս հասաք 'ի լայնանիստ գլուխ արքունի գեղջ Կիքիթայի. ուր տեսաք զարքունական պարտէզ և բուրաստան լի բազմապիսի պտղաբեր ծառովք և ծաղկօք. Ուր գոյ և հին եկեղեցի Այան. առ որով Այազմա և վաղեմի դղեակ. Հասաք ապա 'ի Մաղարաչ. որ յառաջնմէ էր գիւղ Յունաց և այժմ անմարդաբնակ. ուրանօր գոյ նոյնպէս հին եկեղեցի Այան և Այազմա. Յետ այնր հասաք 'ի Մարսանտա գիւղ Յունաց. ապա յԱյվասիլ, և ապա Տերէ քէօյ. յորս Յոյնք յաճախեն տնկել զծխախոտս. Յետ այսորիկ հասաք յանուանի գիւղ Յունաց Եալթա նաւահանգիստ. 'ի վերայ արևելեան սարին տեսաք հին եկեղեցի, որ փոքր ինչ պատսպարէ զընդարձակ ծովափն, ուր Թափի գետակ յետ ոռոգանելոյ զբարեբեր պարտէզս.

Աստի սկսանի արքունական պողոտայն նորոգ կոփեալ յապառաժի յաւուրս մեր. որ ունի եզերիլ ան-

հնարին աշխատանօք 'ի Պայտար օվա։ Զկնի ապա ելեալ մեր ընդ զառ 'ի վեր հասաք յԱմուլթքա գեղ Յունաց և Թաթից. ապա 'ի Պռասպի կամ Պաստրա. հուսկ յետոյ 'ի Պռուրեկիզ։ Աստանօր յաւուրս մեր մեծանուն Պռքուսհին Կալէջեին կառոյց փառաւոր պալատ յընդարձակ և 'ի վայելչագեղ պարտիզի իւրում. ուր և ժողովեալ զմեզ պատուասիրեաց մեծարանօք։ Ոչ եւի պալատան գոյր յառաջ Ճամի. այրով փորեալ գտան ոսկերք մարդոյ. ուր 'ի հնումն էր եկեղեցի. զոր և նա փոխեաց դարձեալ յեկեղեցի Յունաց. ընդ որ հոսի վտակ պատուական ջուրց 'ի պէսպէս ծաղկոցաց և պարտիզաց պալատան և թափի 'ի ծով անդր։ Զկնի այսորիկ թողեալ զարահետն գնալ յառաջ ուղղեցաք զընթացս մեր ընդ սարսափելի զառիւանողն այսր գեղջ. ուր ելեալ ընդ զառ 'ի վեր մտաք յանտառն մայր ծառոյ. և ապա յարքունի անտառն մեծ. և յետ երկուց ժամուց հասաք 'ի գլուխ լերին 'ի մարգագետին ընդարձակ, տեսաք անդ յամարայնի զառոն։ Ընդ որ անցեալ հասաք 'ի գլուխ հիւսիսային զառ 'ի վայրի ձայնելոյ 'ի Թաթից Լնոփէ։

Ապա և անդր կոչի Տէնէկէ. Ի̅Ի̅ արտաքին երկիր. ապա հասաք 'ի Ռամփոփոլ, ուր գոյ ինքնաբուղխ պատուական ջուր. ապա հասաք 'ի սոսկալի պտոյտս զառ 'ի վայրին, որ կոչի Պոստմալար։ Հուսկ յետոյ իջեալ 'ի վայր հասաք 'ի բարեբեր գիւղ Թաթարաց Ռիւշիւք էօղէն պաշ. Ի̅Ի̅ փոքր ակն գետոյ. քանզի 'ի գիւղամիջի անդ տեսաք խոռոչ ապառաժից. յորմէ բղխի ականակիտ ջուր և միացեալ Ը վտակաց ձևացուցանէ զգետն Պէլպէք։ Զկնի կէս ժամու հասաք 'ի Պէօյիւք էօղէն պաշ հարուստ գեղ. ուրանօր գոն 300 տունք Թաթարաց, 3 ջամիք և ոչ սակաւ բարեբեր պարտէզք։ Բնակիչքն պարապայլին ոչ միայն 'ի մշակել զերկիր, այլև 'ի շինութի անուոյ սայլից. յորմէ և շահին յոյժ։ Անդանօր յաջակողմեան լերին տեսաք ապառաժուտ. յորմէ բղխի վտակ և խառնեալ ընդ վերնոյն գնայ ընդ հարաւ՝ անցեալ ընդ գիւղօրեան Թաթար օսման, Պավրի, Փօցատա, Ալպատ, Սիվրէն, Տուվան քէօյ մերձ 'ի Պէլպէք գիւղ. յորմէ առեալ զանունն գնայ ընդ Զալաղա. ապա ընդ Կապարթա, և Զամրուխ. հուսկ յետոյ թափի 'ի ծով մերձ 'ի բե-

րան Սեւաստաքօլի ։ Յառաջագոյն կայքն ՚ի կրապարթա Չէրքէզք ․ որպէս և ՚ի մուտս աղխաղխ լերանց ․ ուր գոյ վաղեմի դղեակ ՚ի վերայ բարձր լերին Չէրքէզ քէրման ձայնեալ ։ Տունք այսր գեղջ փակեալ են ՚ի մէջ կրկին լերանց յայտս և ՚ի փոսս ընդ երկայնութիւն երկուց կողմանց ։ Մինչ կարի հեռի է աստի միւս դղեակ հին Իսէքիէ քէրման ձայնեալ ՚ի վերայ բարձր լերին ։

Իսկ ապա ելեալ մեր ՚ի Պէշուիւք եաղէն պաշէ ուղևորեցաք դէպ ՚ի Պաղչէսէրայ անցեալ միանգամայն ընդ Սիվուճի քէօյ, Ուլուսալա, Շիւրի և ընդ Սաբլըա ։ ՚Ի լերանց աստի բղխեալ վտակաց առատանան և ձևացուցանեն զգետն Կաչի սու ․ որ ունի յերկոսին կողմանս գեղեցիկ գիւղօրէս, պարտէզս և այգիս բարեբերս ։ Զոր և թողեալ ՚ի ձախակողմն հասեալ ընդ գիւղն Մամաշա և ապա ՚ի ծով անդր, մեք շրջեցաք ընդ ստորոտ լերինս, և հուսկ ուրեմն ընդ զառ՚ի վայր Պաղչէսէրայն հասաք ՚ի քաղաք անդր ։

## ՍՕԳԼԱՑ

430 ․ Է անուանի գիւղ հեռի յԱգմէչիդէ 10 վերստ ՚ի ձախակողմն կայս յասս մեծի լերին Չատըր տաղ ․ զոր պանծալի հանդիսացոյց Կուսակալ իշխանն Պարաղոտին կառուցանելով ՚ի նմա զանազան գործարանս չուխայի, ֆէսի, եւ այլն, որպէս տեսաք ։ Երար ՚ի նմա ծառաստանս գեղեցիկ պարտէզս և ծաղկոցս զարմանալիս ․ նաև ձմերանոցս բուսոց բերելով ՚ի հեռաւոր այլևայլ բոյսս և ծաղկունս ։ Յորս տեսաք զբոյսս և զծաղիկս հեռաւոր աշխարհաց ․ զորս հաստուցանեն նաև ՚ի ձմեռնամիջի ըստ եւրոպեան կարգի ․ մինչև ձգել զանցաւորս ՚ի տեսութիւն տեղւոյն ։

## ՉԱՏԸՐ ՏԱՂԻ

431 ․ Է մեծ և բարձրագոյն լեառն Իւլմու հեռի յԱգմէչիդէ 20 վերստ ՚ի կողմն Ալուշդայի ․ յորմէ ելանեն զանազան գետք ևս և Սալղըր և Ալմա ․ զոր յետ Ստրաբոնի նախնիք անուանեցին Թռաբէզոս այսինքն Սեղան ։ Արդարև սեղանաձև է բայց երկայնանիստ

է սէլիմ գերէյ խան յետ դարձին 'ի մէքքայէ. ընթեր-
ցաք զարձանագիրն այսպէս.

الحاج سليم كرى خان سنه ١١٤٦

Ելհաճ սէլիմ գէրէյ խան սէնէ 1.146:

Աստի մտաք 'ի պայծառ հանգիստարանն նկարէն ոսկե-
զօծ, որ յերից կողմանց հայի 'ի ծաղկոցն վայելուչ
յատակ տեղւոյս յօրինեալ է մեծամեծ մարմարիոն
քարամբք, և 'ի միջավայրի մեծագործ շատրուան բազ-
մացայտ: Ընդ կողմնական դուռն մտաք 'ի ծաղկոց
անդր զարդարեալ գոյնագոյն ծաղկօք, և շուրջանակի
ձեմարան գեղեցիկ հանդերձ զանազան քօւսակք: Անդ
'ի վայրաջութիւն գոն աղբերակունք մարմարիոնեայք
յորմն ձեւացեալք. յորոց հոսի կարկաջահոս ջուր ընդ
15 ակունս, և ընդ մարմարիոնեայ անցս գնայ նախ յա-
ւազանն մեծ, և ապա յամենայն վայրս պալատին.
Ձայն հոսանացն գեղեցիկ իմն լսի. և ձկունք պարառեալ
կայտառան: Անդ տեսաք նստարան շուրջ զաւազանաւ.
ուր բազմեալ խանն զբօսնոյր: Աստի ապա մտաք 'ի
մեծ խորհրդարանն փառաւոր. որ ունի վերնատուն
վանդակաւոր, ուր նստեալ խանն լսէր զխորհուրդ
խորհրդականաց՝ առանց երեւելոյ:

Աստի ելեալ ընդ մեծ սանդուխս 'ի վերին դստիկոն՝
մտաք 'ի մեծ սրահ խանին բարձր ընդարձակ և նկա-
րէն. ունի 25 լուսամուտս մեծամեծս. տեսաք զի զայս
մասն պալատին նորոգէին յարքունուստ: 'Ի մի կողմն
գոյ փոքրիկ դուռն. անտի գային աղաչաւոր կանայք
խնդրել ինչ 'ի խանէն առանց երեւելոյ. ուր են երկա-
ներքին սենեակք: Աստ է առաւել պայծառ խորհրդա-
րանն խանին ընդարձակ յոյժ 'ի ձև քառակուսի. ունի
5 դրունս և բազում պատուհանս: Աստ 'ի մեծի հար-
կաւորութեան հաւաքեալ խորհրդականաց՝ խորհէին
ընդ նմա: Աստի մտաք յոսկէզօծ և 'ի գեղազուարճ
սենեակ խանին խանէլէ օդասի ձայնեալ. զի աստ նստեալ
նորա ընդ տիկնաց ըմպէր խահվէ: Աստի անցաք յայլ
դահլիճ և 'ի մեծ հանգիստարան, որ ասի տիւվանխանէ.
ուր օթագայեցաւ Տ̃ Կատարինէ թագուհին յամի 1787.
ապրի: 19. որ զներքին սենեակն լուսացարան պատ-
րեալ էր վասն իւր:

Ի մեծ դահլիճն սորա անցանք 'ի ներքնատունն վան-դակապատ, որ հայի 'ի վերայ առաջին մեծի դաւթի. յոր նստէր խանն տեսանել զելեւմուտս պալատականաց առանց երեւելոյ: Մերձ է սոա բարձրագոյն վերնա-տունն աշտարակաձեւ, որ հայի 'ի վերայ մեծի հրապա-րակին. ուրանօր ելեալ խանն ընդ տիկնաց զբօսնոյր 'ի տեսանել զխաղս ըմբշամարտից: Կից էր սոա բոյն բազէից. խանն կերակրելով զնոսա զբաղէր. առ որով է բուն ներքին բնակարան կանանց անշուք՝ փակեալ յանձուկ վայրի. զոր քանդեալ նորոգեցին:

435. Ճանդէպ պալատան է մզկիթն մեծագործ բարձր և համեմատ կրկին մինարէիւք. յոր երթայր խանն յաւ-ուրս ուրբաթու, և ելեալ 'ի վերնատունն ապակափեղկ բարձր աղօթէր, որ է 'ի ձախակողմն մզկթին: Երկ-կայնութիւն մզկթին է 40 քայլ. յերկուց կողմանց կամարաշէն ըստ ձեւոյ գթաց, կառուցեալ 'ի վերայ մե-ծամեծ սեանց. շուրջանակի վերնատուն և լուսամուտք: Մի դուռն բացեալ 'ի պալատ անդր. և մեծ դուռն հասարակաց է 'ի վերայ վտակին Ջուրուք սուի: Ուր 'ի վերայ ոսկեզօծ դրան ընթերցաք զարձանագիր շի-նութեան այսպէս. سلامت كراى خان سنه ١١٥٩ Սէլամէթ Կէրայ խան սէնէ 1159:

Ի փողոցէ սորա մտեալ ընդ քարաշէն դուռն մէտ-րէսէին տեսաք անդ մեծ շատրուան բազմահոս, և բնա-կարանս ուսանողաց: Բաց 'ի գերեզմանատուն խանից, յորում երեւին երկու մեծամեծ դամբարանք գմբէթայարկք բարձրագոյնք և մեծագործք: Ի միում են 17 գերեզմանք ցեղին Գէրէյի. յորում է գերեզման Մէնկլի Քէրէյ խանին և Հաճի Քէրէյ խանին. միայն չորք են քարաշէնք, այլք փայտաշէնք քանդակագործք ծած-կեալք կանաչ կերպասիւք: Իսկ յերկրորդումն են մահ-արձանք թագուհեաց և սուլդանից. առ երի դրանն է բարձր մահարձան կնոջ Քերիմ Քէրէյ խանին:

Եւ մեք 'ի մեծ գաւթէ անտի մտեալ ընդ փոքրիկ դուռն՝ զառաջինն հանդիպեցաք մարմարիոնեայ մահ-արձանին, յորոյ վերայ ընթերցաք قديم كراى خان ١١٨٣ Գատիմ Կէրայ խան: Մերձ առ նմին են վերոյասացեալ դամբարանք: Ուր մտեալ 'ի մեծ դամբարանն տեսաք առ դրան զգերեզման մեծի խանին Սելիմի ծածկեալ

կանաչ կերպասիւք և գրեալ 'ի վերայ. الحاج سليم كراي خان Հաճի Սէլիմ Գէրայ խան : Իսկ յաջակողմն մարմարիոնեայ գերեզմանն սուլթանին գրեալ 'ի վերայ عظامت كراي سلطان ١١٠٢ Ազամէթ Գէրայ սուլթան : Ապա, عادل صاحب كراي خان Ադիլ Սահիպ Գէրայ խան : Սա հիմնադիր էր ջամիին և դամբարանացն. զորս յետոյ այլք 'ի կատար հասուցին : Յետ նորա سعادت كراي خان Սաատէթ Գէրայ խան : Ապա قره دولت كراي خان Գարա Տէվլէթ Գէրայ խան : اسلام كراي خان Իսլամ Գէրայ խան : بهدر دولت كراي خان Պահատըր Տէվլէթ Գէրայ խան : سعادت كراي خان Սաատէթ Գէրայ խան : محمود كراي سلطان Մահմուտ Գէրայ սուլթան : ١٠٤١ دولت كراي سلطان Տէվլէթ Գէրայ սուլթան : محمد كراي خان Մահմէտ Գէրայ խան : Սա անուանի է վասն պատերազմին, զոր արար մերձ 'ի Մոսկով : حسام كراي خان ١٠٤٠ Խիսամ Գէրայ խան : مكلي كراي خان ١٠٥٧ Մէնկլի Գէրայ խան : عظامت كراي خان Ազամէթ Գէրայ խան : حسام كراي سلطان Խիսամ Գէրայ սուլթան. և արտաքս مكلي كراي خان سنه ١١٠١ Մէնկլի Գէրայ խան :

Ապա գնայ 'ի պարտէզն ծառալից և ընդարձակ. ուր կայ այլ դամբարան նոյնպէս գմբէթաւէն և մեծագործ, յոր հայր լուսամուտ խանին. որպէս զի տեսեալ նորա զգերեզմանս նախնեաց իւրոց՝ յիշեսցէ զմահ իւր :

436. Գլխաւոր բնակիչք քաղաքիս են Թաթարք իբր 5000. և 240 մօլլայք. բաղնիք են փարթամք, որպէս և Հրէայք, որք բնակին 'ի բերդն, և յամենայն օր գան 'ի քաղաք անդր 'ի կրպակս իւրեանց : Յոյնք ունին եկեղեցի, որպէս և Հայք. որոց նորաշէն եկեղեցի է յանուն սրբոյ Աստուածածնին կանգնեալ 'ի վերայ 4 սեանց 'ի ձև քառակուսի հանդերձ գմբէթիւ. իսկ Հայք են 20 տունք : Տեսաք զՀին Թաղն Հայոց 'ի հիւսիսակողմեան ձորամիջի 'ի միջոցի կրկին ժայռաւոր լերանց. յորս կոփեալ են ստորի և անտի յապառաժի անդ ներքնատունս և շտեմարանս. ուր տեսաք զաւե-

բանիս բազում տանց։ Մինչ ՚ի միջավայրի կառուցեալ էր Հին եկեղեցին Ս. Ծամօրին, զոր ոմանք Լուսաւորիչ ձայնեն, Թերեւս վասն խորանին եղելոյ անդ։ Ընդարձակութիւն եկեղեցւոյս էր իբր 40 քայլ ՚ի ձեւ բոլորշի, այլ անշուք․ որմունք և յատակ ապականած էին։ Խորանն զարմանաքանչ կոփեալ էր բոլորովին յապառաժի անդ․ զոր գտաք կործանեալ և անկեալ ժայռն առ ձմնապարհաւ։ Տեսաք ՚ի նմա խաչս և պատուահանս կոփեալս։

՚Ի ժամանակս Թաթարաց կային աստ 300 տունք Հայոց, որք կատարէին զամենայն պաշտամունս յայս քարակոփ եկեղեցի, ըստ որում պատմէ յիշատակարան Հին յայսմաւուրաց եկեղեցւոյն Սգմէջիտի․
„ *Սորդ գրեցաւ ՚ի Թուականիս ՉԿԹ ամին․ ՚ի ծննդեան ՌՅԻ․ յաշխարհն Հոնաց ՚ի Թագաւորանիստ
„ դիւղաքաղաքիս, որ այժմ աղջատարայ ասի ՚ի վիճա-
„ կիս Ձորամիջիս ընդ հովանեաւ Սբ. Ածածնի, որ է
„ եկեղեցի առանց Հիման։

Նաեւ յիշատակարան բոլորգիր Ճաշոցին ասէ․ * „Գրե-
„ ցաւ ՚ի Թվ․ ՌՃԼԹ Ձեռամբ սարգիս երիցու․․
„ յաշխարհս Հոնաց որ կոչի ղրիմ ՚ի մեծի աքքայանիստ
„ քաղաքիս պաղչասարայու և ՚ի Թագաւորութեան սէ-
„ լիմ քէրէյին․ ընդ հովանեաւ Սբ. Լուսաւորչի և ՚ի
„ բազմածաղիկ բարունակեալ և շրջապատեալ արքայ
„ խորանացն․ և ՚ի կաթողիկոսութեան Տեառն եղիազարու
„ և առաջնորդութեան այսմ նահանգի Տէր․․ Նայ արհի-
„ եպիսկոպոսի․ և որդիացելոյն իւր յակոբ երիցանկի․ որ այժմ
„ կայ ՚ի սուրղաթ ՚ի վանսն Սբ. Նշանի։

Որպէս դուշակի ՚ի վերոյգրեալ բանից, ՚ի ժամանակս խանից բազում էին աստ երթեւեկութիւնք և տուրեւառութիւնք։ Սա նաեւ դեսպանս դաղղիացւոց․ և հատանէին դրամք․ որպէս ընթերցաք ՚ի վերայ դրամի միոյ․ ՚ի մի կողմն գրեալ էր․ ضرب فی باغجه سرای سنه 1141 * Զարպէ Ֆի պաղչէսէրայ սէնէ 1191։ Իսկ ՚ի միւս կողմն خان شاهين كراى ابن احمد كراى سلطان
* Խան Շահին Գէրայ Իպնի Ահմէտ Գէրայ սուլթան։

438. Ի զարմանալիս Հին բերդ կառուցեալ 'ի վե-րայ բարձրագոյն լերին հանդէպ Մայրումայ. ուր եղաք ընդ դժուարակոխ ուղի առանձնաւոր աւելի քան վերստ մի. հասեալ յետոյ հասաք 'ի ստորին փոքրիկ դաշտն, որ բացեալ է պատուանդանն ամենայն ժայռից: Այս բերդ յերկուց կողմանց պարսպեալ է յանմատ-չելի բարձրաբերձ ժայռից, և 'ի միւսին կողմանէ ունի հաստատուն պարիսպ և աշտարակ. ուր է մեծ դուռն և 'ի վերայ նշան հին Թաթարաց կամ Խազարաց. ուրուա-կան դրուխ եզին և երկաժանի փորագրեալ 'ի վիմի անդ. և սև բու Թռչուն` հանգարեալ նշան Չինկիզ խա-նին: Ի միջավայրի բերդին սեսաց կամար քարաշէն իբր ամենջոյնեա բերդին: Ընդանօր սեսաք կրկին սինա-կակայս Գուարայիմ Հրէից քարաշէնս. և մին սիւնա-գովը. ուր գոյր ասեն անցք ստորերկրեայ, որ հանէր մինչև յաղբերն ձորամիջի. ուստի այժմ բերեն ջուր բերդին. զի այն անցք աւերեալ կայ:

Թուի թէ զայս բերդ շինեցին Գութք կամ Ասսարք երբ բռնացեալ էին 'ի ներքին կողմանս Արմենիա (391): Ըստ պատմագրէին Դ՚ենովացիք և յետ նոցա Թա-թարք. որպէս և գերեզմանք նոցա յայտ առնեն. յորս դատանի և գերեզման Թոխտամիշ խանին ոյ Թագու-հւոյ, և Գրբչաց ազնուականին: Իսկ զի Լենկթէմուր յետ ավերող Գրբչաղաց եւ 'ի վերայ Թոխտամիշ Թա-թարց խանին. որ բնակէր 'ի Զուֆուտղալէ յամի ՄԽ 1392: յայնժամ խռան եւ ընդդէմ Լենկթէմուրայ, որ գնայր 'ի վերայ Մուսաց: Իսկ քաջ պատանին Գրբ-չաղ սպրեւլին Լենկթեմուրայ եառ զՊապջեաեւրայ և յաղ-ձակեցաւ 'ի վերայ բերդին. ուր խանին ոյ դուստր Թոխտամիշ խանին սիրահարեալ ընդ պատանւոյն հա-մեցաւ տալ 'ի ձեռս նորա զբերդն: Այլ յընդդիմա-նալ բերդակալաց` ծագեցաւ շփոթութիւն մեծ. և 'ի խռովն անդ վիրաւորեալ անկաւ գրբչաղն: Զայն տեսեալ աղջկանն ռռնադատեցաւ 'ի կրից, և արշաւեալ անկաւ 'ի վերայ պատանւոյն, և մեռան երկոքեան 'ի միասին:

Այժմեան բնակիչք բերդիս են Գուարայիմ Հրէայք

խճողեալք 'ի բերդի անդ. աւելի են քան 200 տունք. և 1200 անձինք. որ տուրևտուութիւնս առնեն 'ի Պաղչէսէրայ. յորոց բազումք են փարթամք. ունին զլեզու, զսովորութիւն և զզգեստս Թաթարաց: Մնացեալք են 'ի հին սադուկեցւոց անտի. որք միայն զՀինգ գիրս Մովսիսի պահպանեն. խոտեն զԹալմուտն և զամենայն աւանդութիւնս ծերոց: Սկիզբն աղանդոյ սոցա ասեն լինել 'ի ժամանակէ անտի Աղեքսանդրոսի՝ երբ վարեցան 'ի գերութիւն. որք զայդ անուն հանեն 'ի բառէս Կարրայ. ըստ բառին. անփոփոխ. որպէս պանծան լինելոց. բայց ոչ ընդունելին զանմահութիւն հոգւոյ (447):

Նաև ելեալ մեր ընդ վերնադուռն բերդին՝ գնացաք 'ի գերեզմանատուն նոցա առ բերդաւն երկայնաձև տարածեալ. ուր տեսաք զկանայս նոցա շուրջ նստեալ զգերեզմանաւ մեռելոյ ուրուք, և արկեալ զհանդերձս 'ի վերայ հողոյ նորա կոծէին թաթարերէն: Յետոյ անցեալ 'ի ներքս անդր գտաք զՀին գերեզմանս թաղեալս 'ի գետնի. երկայնութիւն միոյն էր 11 թզաչափ: 'Ի վերայ այլ գերեզմանի գրեալ էր հրէարէն * Նայս... յովսէփ որդի խավաթայի... 5204 Ա. ըստ յամի տն 1445: Կայ 'ի Սուրխաթ գերեզման Նհարան բժշկին 533 ամաց (488):

## ԷՍԿԻ ՅՈՒՐՏ

439. Յետ այսորիկ ելեալ 'ի ձորէ Պաղչէսէրային և յառաջեալ յընթացս 2 վերստ՝ հասաք 'ի գեղեցիկ բարեզիր և ջրարբի, որ կոչի Էսկի Եուրթ. ըստ Հին բնակարան: Քանզի զառաջինն աստ բնակէին Թաթարք, և էր երևելի քաղաք նոցա. որպէս դուշակի 'ի շինուածոց, և 'ի գերեզմանաց: Տեսաք 'ի մուտս գեղջն երկին մզկիթս քայքայեալս. բայց 'ի գերեզմանատան անդ՝ կանգուն կան 3 երևելի մեծագործ դամբարանք գմբէթայարկք բարձրաբերձք: Մին է առաւել մեծաշէն ութանկիւնի. ունի Ը լուսամուտս հանդերձ մարմարիոնեայ շրջանակօք. տրամագիծն է 25 քայլ՝ չափեալ 'ի ներքուստ: Տեսաք 'ի ներքս մնացորդս մարմարիոնեայ սեանց և վերնախարիսխս այլազգին հանդերձ:

Մօտի սակաւ յառաջ անցեալ զնիւեցաք զայլ եւս երկին զամբարտակս ութանկիւնիս, այլ ոչ այնչափ մեծագործս, որպէս զառաջինն։ Առաջի գեղջ իբր 'ի հրապարակի կառուցեալ կայ քարաշէն աղբիւր քառանկեան. յա-րոց հոսի անընդհատ պատուական ջուր։ Բնակիչք անդուոյս են Թաթարք, որք մշակեն զգեղեցիկ պար-տէզս Չրաքրիս, եւ զծառաստանս մրգաբերս։

## ԽԱՉԻՍԱՐ ԵՒ ԳԻԼԳԵԿ

440. Ելեալ մեր անտի եւ անցեալ ընդ վայելչագոյն զառաջավայրս՝ հասաք 'ի գետն Խոջալի սու, որ ելանէ 'ի գեղեցիկ հովտէ մերձ յՕսմանլու օղլու, 6 վերստ հեռի 'ի Պաղչէսարայէ. եւ անցեալ ասաի գնայ Թափի 'ի Սեւ ծով մերձ 'ի բերան Ալմային 'ի ծոցն Կեօզլէվի։ Անտի հասաք 'ի գետն Պէլպէկ, որ ելեալ յապառաժից Յօղլէն ողջ՝ անկանի յայլ հովիտ, եւ ընդունի զանուանս Պէլպէկ. ապա գնայ 'ի բերան Սեւաստօբօլի։ Ալկաքին կողմանք այսոցիկ երից գետոց որպէս եւ Պուլկանաքին լի են այգեստանեօք եւ պտղաբեր ծառովք. զպտուղ, անդ-եայս տանին 'ի Ռուսաստան։ Ասի թէ երբեմն առ ե-զերբ Պելպէկի բնակէին Չերքէզք բերեալք 'ի Կա-պարդայէ. վասն այն այս գետ կոչէր Կապարդա. 'ի մեր-ձակայ վայրս գոյ հին աշտարակ կոչեցեալ Չերքէզ քեր-ման. առ երի երկելին մնացորդք պարսպաց։ 'Ի մերձա-կայ գիւղն գոյ ջրհոր յոյժ խորին կոփեալ յապառաժի հարիւրաւոր աստիճանօք։

## ՄԱՆԳՈՒԲ

441. Ուղղեալ զընթացս մեր դէպ 'ի հարաւ՝ անցաք 'ի մէջ Պաղչէսարայի եւ Պալըգլավայի զաւերակ Մանգուբայ երեւելի հին մայրաքաղաքին հասարակապե-տութեան Գոթաց, ուր զօրացան նոքա եւ ամրացուցեալ զպարիսպս կոչեցին Դօրի կամ ըստ յն. Դօրիւս Դօ-րոս։ Քանզի ըստ հնախօսից յերեքտասաներորդ դարուն տէրութիւն Յունաց 'ի Խրիմ իբրեւ բաժանե-ցաւ 'ի զանազան փոքրիկ իշխանութիւնս, Գոթք եւ Խազարք բռնացան յայսոսիկ կողմանս եւ հաստատեցին հասարակապետութիւն. մինչեւ տիրեցին Ճենովացիք եւ

ուշադրութեան աստ ամփոփեցուցեալ զաւերակս. որպէս ցուցանեն ձեւ բոլորշի աշտարակաց, աւերակք եկեղեցեաց, և հիմունք պարսպաց, նաև աւերակք ապարանաց: Ի յե-տին ժամանակս բնակիչք սորայս էին Թաթարք և Հրէայք, որք հեռահեռակ ցրուեցան աստի և մնաց քա-ղաքն ամայի. զոր քանդեալ հեռահեռակ՝ տանին զքա-րինս հին շինուածոյ այլուր. մինչ զի եղծեալ անտաք զամենայն վայելչութիւն բերդաքաղաքիս: Դիրք տե-ղւոյս այնչափ բարձրադիտակ՝ և վայելուչ է շրջապա-տեալ 'ի գեղազուարճ հովտաց, մինչև գեղեցիկ շի-նուածք և աշտարակք երեւէին 'ի Կէօզլէվէ. այլ այժմ հաւասար է ընդ գետնի: Սա որով է հովիտ և վտակ Սայթօող կոչեցեալ:

## ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿՈՂՄՆ ԽՐԻՄԱՅ

442. Յետ գննելոյ մեր զցամաքատեղիս 'ի մէջա-վայրս Խրիմու՝ ժամ է արդ ուղղել զընթացս մեր ընդ արեւմուտս. ուր գնալով ընդ աջակողմն Ակմէջիդի՝ հան-դիպեցաք շրջապատոյս անդից Սալղըրին. Է որ կոչին անդամ անցեալ հասաք 'ի դուարճալի գիւղն Թէփէ չօխրակ: Անտի ուղեւորեալ ընդ զանազան գիւղօրէս Թաթարաց. ուշինչ ծառաստանս տեսաք ուրեք. մինչեւ հասաք 'ի մեծ գիւղն Սաքի յետ 6 ժամուց, ուր նախ աղապեա իշխան 'ի կողմանէ տէրութեան Ռուսաց:

## ԴՈՒԶԼԱ

443. Ի երեւելի և ընտիր աղէհան 'ի մէջ Խրիմու ա-ւերի Սախին. ձգի Է երկայն մերձ 'ի ծով. առատ է աղն և բարեհամ յոյժ, մանաւանդ հարաւային կողմանն. որ մակարդի յօդոստոսի: Ուր նախ երեւին կարմրա-գոյն որդունք, և ապա կտտորեալ լինին իբր սերմն մա-կարդիչ ջրոյն. որով սկսանի քարանալ կամ ապակեա-ցեալ գոյաւորի աղ անկիւնաւոր սպիտակ: Շրջապատ լճին համարի 18 վերստ. անցեալ մեր ընդ արեւելեան բազուկն տեսաք զհող տեղւոյն աղէփայլ, և ջուրն այն-պէս տոգորեալ, զի ձեռք մեր եղեալ 'ի նմին պա-տեցան աղիւ: Նոյնպէս տիղմն այսր աղէհանի ապա-քինիչ է յօդացաւութեան. ուր յաճախեն ախտաժէտք

յօդուստոյ, ընկողմանեալք 'ի տղմի անդ. այլ ոչ կա-
րեն ընդ երկար տոկալ 'ի նմին առ. սաստիկ ձգողութեն
տղմոյն. զոր Մորխանոս կոչէ Մոմիլոս:

Յարեւելեան կողմն աղեհանին մերձ յարքունի ճա-
նապարհն տեսաք 12 մեծամեծ ջրհորս սակս անասնոց.
ուր ջրոյն փոքր ինչ աղեհամ է: Իսկ 'ի հարաւակողմն
գոյ պարանոց, անջրպետ 'ի մէջ աղեհանին եւ ծովուն:
Սոր գոյ եւ ուղի գնալոյ 'ի Սեւաստօպօլ անցեալ ընդ
գլուխն Խըտըլ [illegible] եւ ընդ բերանս գետոց Պուլկա-
նաքի, Ալմայի, Խաչի, եւ Պելպեկի. ուրանօր 'ի տե-
ղիս տեղիս երեւին փոքրիկ աղեհանք (450):

## ԽԱՐԱ ԹԷՓԷ ԵՒ ՍԱՍԸԽ

444. Յետ միոյ ժամու հասաք 'ի գեղեցկադիր բը-
լուրն Խարա Թէփէ. զի 'ի հեռուստ երեւի ամպագոյն
սակս բարձրութեան դիրից: Նա որոշ է արեւելեան
ծայր Սասըխ լճին. որ ձգի ընդ արեւմուտս ժամս 2.
նոյնչափ եւ ընդ հարաւ. 'ի նոյն ծայր է Սանայ գեղ:
Պարանոցն ընդ մէջ լճին եւ ծովուն Պէկ կոչի, որ է
աւազուտ ձեւացեալ յաւազոյ գետոց Պօնտոսի կու-
տելոց առա 'ի բուռն ալեաց ծովուն, որպէս երեւի:

Լայնութիւն պարանոցին չէ միօրինակ յամենայն
տեղիս. զի սկիզբն լայն է 3 վերստ. միջավայրն 2. ուր
գտն պահապան խաղախք Կազակ կոչեցեալք. որք յա-
մենայն եզերս Խրիմու բոլորեալ առա եւ 'ւնոտ պահպա-
նեն: Իսկ արեւմտեան ծայր լճին հազիւ լինի մի վերստ
լայն. ուր երբեմն ալիք ծովուն յորդեալ խառնին 'ի
լիճն: Սոյն տղմախառն ջուր ոչ զօրէ սնուցանել եւ ա-
ճեցուցանել զձկունս. թէպէտ տիղմն առողջարար հա-
մարի յօդացաւութեան. սակայն չիք անդ ձուկն:

## ԿԷՕԶԼԷՎ ԿԱՄ ԵՒՊԱՏՕՐԻԱ

445. Է քաղաք ծովեզերեայ անուանի եւ բարեշէն
հիմնեալ 'ի հնումն յարեւմտեան ծայր լճին 'ի մեծէն
Միհրդատայ, որպէս ասեն, յիւր անուն կոչելով զայն
Եւպատորիա. ըստ այլոց Pompeopolis. Տեսաք եւ ոսկի դը-
րամ ըստ մեծութեան [illegible] 'ի մի կողմն 'ի շուր-
ջանակն գոյր գիր յունարէն ΒΑΣΙΛΕΩΣ ΕΥΠΑΤΟΡΟΣ

Մատւկոս Եւպատորոս. 'ի միջոցին գեմք մօրուաւոր երկայնահեր և թագ 'ի գլուխ. գեմքն ահեղ. աչքն ահաւոր և ունչքն մեծ. որ թուի լինել մեծին Միհրդատայ. Թեպէտ նորա գեմք հասարակօրէն անմօրուս գրին. նաև ունէր զթիկամբ վերարկու ըստ ձևոյ հաւանմանեցւոց։ Իսկ 'ի միւս կողմն գեմք կանգ մօրուաւոր և հերապանծ առ, որով կան երեքին տառքս ΣΙΤ. և առ նմին ծայր նետի։ Զ այս տիտղոս Յոյնք եդուն Միհրդատայ ըստ որում Նզզառեր կամ Հօրամանին, յետ մեծամեծ գործոց։

'Ի պատմութեան Խաթարաց աւանդի թէ այս անուանի քաղաք յանցանել ժամանակաց աւերեալ անհետ եղև. մինչև Ջենովացիք յետ տիրելոյ ծովեզերեայց Ղրիմու՝ շինեցին աստ փոքրիկ դղեակ 'ի ծայր լեզուին, որ կոչի Լսօսօ պուռնի. զոր կործանեցին Խաթարք և Թողին ամայի։ Այս սկսան Խաթարք բնակիլ աստ և անդ յառաջնմին անուանս. զորս կոչէին Պէրէքօղ էվ. յորմէ եւ առեալ անունս Կեօզլէվ։ Կամ որպէս այլք ասեն, աղքատին տունք նոցա շինեալ էին 'ի Թաղեաց. զոր նոքա կոչեն Բէէղ. որով և կոչեցաւ տեղին Բէէղլէ էվ. կամ Կեօզլէվ. թէպէտ 'ի մէջ հին անուանց դնի և Կէօլէվէ (565)։

Սակայն թուի թէ Խասարք կամ Խաթարք կանգնեցին կամ նորոգեցին անդրէն զքաղաքն Կեօզլէվի հանդերձ լայն և խոր խրամաւ. որ ձգէր 'ի միոյ ծայրէ ծովուն մինչև ցմիւսն։ Նոյն յետ անցանելոյ առ Ռուսս՝ բոլորովին քանդեցին և լցին զխրամն. այժմ հազիւ որոշին տեղիք 'ի մնացուածոց ինչ բերդին։

Այս բերդ ունէր 5 մեծ դրունս. ա. Իսքէլէ գափուսի, որ է 'ի ծովակողմն և մինչև ցայժմ ամբողջ կայ հանդերձ մասամբ ինչ պարսպին։ 'Ի ներքին կողմն յերկրորդ կամարի տեսանք փորագրեալ 'ի վիմի գլուխ մարդոյ երկայնագագաթն. զոր անուանեն Նշան դրան։ բ. Աք գափուսի յարևմտեան կողմն. զոր ապա փակեալ սակս ձախող դիպուածոց ինչ կոչեցին Եասար գափուսի. այժմ չիք հետք այսր դրան, որպէս և հետևորդին։

գ. Խօջէրապ գափուսի. յաջակողմն այսր դրան փորագրեալ կայր 'ի վիմի սանտր իբր նշան բերդին. քանզի և 'ի վերայ հին գերեզմանաց փորագրեալ տեսաւ այս ձև։ Նա երի դրանս գոյր աշտարակ հզօր։

Դ. Մէջ ծովու գաւառն. յորում նշան փորագրեալ էր 'ի վիմի պորտ մարդոյ և 'ի վերայ ագուցեալ ապակի ։ Որ սրովն էր փոքրիկ գուռն Տէղէ՜ կոչեցեալ. որ նշանակէ բացուած. այժմ չիք տեղին. ուր բազում առունք և բնակութիւնք շինեցան և շինին հետզհետէ ։

Ե. Օշտին Բաղար գաւառն. որ կանգուն կայ մինչև ցայժմ 'ի մէջ շուկային. առ որով գոյր աշտարակ և փոքրիկ գուռն Տէղէ՜ ձայնեալ. յորոյ վերայ փորագրեալ կային կրկին առիւծք իբր նշան ։

Յարևելեան կողմն մերձ 'ի ծովն գոյր ներքնաբերդ պարսպապատ. և 'ի ծայրն մեծ աշտարակ բոլորշի բարձր և եռայարկ. որ 'ի յետին ժամանակս կոչեցաւ Լուսնի խուղ վասն անդ սպանանելոյ զմահապարտս ։ Սակաւ հեռի աստի գոյր այլ աշտարակ հզօր. որպէս և 'ի միւս կողմն մերձ 'ի Խան Ճամի. նաև 'ի հիւսիսակողմն զօրաւոր աշտարակ ։ Այս ներքնաբերդ ընդ աշտարակաց թուի լինել գործ Դէնովլացւոց, զոր շինեցին յետ առաջնոյն յապահովութիւն նաւահանգստին, որ է 'ի հարաւակողմն բերդին լայնաբաց և անպատսպարպար 'ի հարաւային հողմոց, որ երբեմն ձգէ զնաւս 'ի ցամաք և վտանգէ ։

446. Խան Ճամի. է մեծագործ շինուած քաղաքիս մերձ 'ի ծովն, բարձր յոյժ, զի յամենայն կողմանց երևի, ունի բարձր և լայնանիստ գմբէթ կապարապատ կանգնեալ 'ի վերայ 6 կամարաց և շուրջանակի 12 գմբէթս կապարապատս. 'ի մեծի գմբեթի են 15 լուսամուտք ։ Չև արքունի մզկիթիս է քառակուսի բոլորովին քարուկիր. և յերկուց կողմանց կրկնայարկ. երկայն և լայն 40 քայլ ։ Դուռն է 'ի հիւսիսակողմն. ունի գաւիթ երկայնաձև գմբէթաւոր, կանգնեալ 'ի վերայ 4 մարմարիոն սեանց. Թէպէտ 2 սիւնք յերկոսին կողմանս ծածկեալ են 'ի մէջ որմոյ ։

Ի ճակատ մեծի միհրապին ընթերցաք զթուական շինութեանն զայս օրինակ. قبول الخير * Գապուլ էլ խէյր ։ Ի տառից աստի ելանէ թիւ ٩٧٩ ըստ որոյ շինութիւն լինի 263 ամաց ։ Սակաւ ինչ 'ի սորա ընթերցաք զայլ գրուած այսպէս. كُلَّمَا دَخَلَ عَلَيْهَا زَكَرِيَّا الْمِحْرَابَ * Քիւլլէ-մա տախալէ ալէյհա զէքէրիյա էլ միհրապ ։ Այս Յարա-

ժամ 'ի մնացնելն յաղօթս խորհեաց ընդ միջօրային , կամ առաւօտի աղօթարանին ։ Ունկնդիր արտաքին դրան էր մեծ աղբիւրն , որ այժմ է աւերակ . Նոյնպէս բաղանիք քարաշէն համդիպակաց՝ էր մախրէֆ այսր մզկթի . որ ամբողջ կայ ։ Նա 'ի ծովակողմն է Պալճխան հնաշէն . 'ի վերայ դրան գրեալ կայ 'ի վիմի անդ . محمد شاه اغاخان اعظیم * Մահամմէտ շահ աղայ խան ազիմ ‖ ։

Մերձ է Սալախան ամրաշէն յոյժ՝ շինեալ 'ի հնումն 'ի հովուէ յեկամուտ 12 աղբերաց իւրոց առ որով էր հին Պէգպազիստան . այս ամենայն շրջակայ տեղիք մախրէֆ էին մեծի մզկթին . որպէս և գրեալ կայ 'ի վերայ դրան այսր իջևանի 'ի ժամանակս Ասլան քէրէյին.
صاحب الخیرات والاحسان ارسلان کرای خان بن دولت کرای
1140 خان * Սահիպ էլ խայրաթ վէլ էհսան արսլան Գէրէյայ խան պէնի տէվլէթ գէրայ խան 1165 ։

'Ի քաղաքամիջի անդ տեսաք քաւանկինաձև քարաշէն Թագաւորին . ուստի բաշխէր ջուրն յամենայն կողմանս քաղաքին ։ Ասինչ կարի հեռի է ստորին բարձրաշէն Թէքքէ քարուկիր ութանկիւնի գմբէթայարկ , և 'ի ներքուստ բոլորշի . ուր շուրջանակի յորմն են 19 քարաշէն խորշք բնակարանք Տէրվիշաց ։ Առ որով է լճակն Խոտ Լըճակ . որոյ յատակ է ապառաժ . երբ ցամաքի ջուր լճակիս , յայն ամ ոչ լինի առատութի հացի ասեն Թաթարք ։ Անդ է Ղամաղա ճամիի անուաք և Սէպըէտ Թաթարաց ։

447. Իսկ 'ի միւս կողմն քաղաքին է Թաղն Կարայիմ Հրէից որք են 800 տունք . ունին կրկին երևելի սինակոկայս , զոր նոքա Քշնօլա կոչեն , բոլորովին ասլայատակք, քարաշէնք և սիւնազարդք առընթեր միմեանց ։ Տեսաք 'ի ներքս քանի մի արծաթապատ հնգամատեան ծածածուն , որ են մագաղաթեայ գրչագիրք փաթութեալք և երկայնաձիգք ըստ հին սովորութե . զորս ներքեմն հանեալ և եդեալ 'ի վերայ կերպասապատ գրակալին վերծանեն 'ի լուր ժողովրդեան . մերձ է անդ դպրոց նոցա ։ Նոցա օրէնսդիր եղև Անանոն բժիշկ 550 ամօք յառաջ ուսուցանելով նոցա զանմահութիւն հոգւոյ զհանդերձեալ կեանս ա (488) ։

Եկեղեցին Յունաց և Հայոց է յարևելեան ծայր քա-ղաքին. որ է բարձրաշէն և խաչաձև հանդերձ կաթու-ղիկէիւ. ունի շուրջանակի հրապարակ. ուր է դպրոց նոցա :

Արտաքոյ բերդին էր Թաղ Հայոց. որք ունէին 'ի հնումն եկեղեցի յանուն սրբոյն Նիկողայոսի. զոր այրեցին Օսմանցիք : Ապա մերձ 'ի տեղին կանգնեցին զայլ եկեղեցի փայտաշէն. իսկ 'ի 1817. յունիսի 13. հիմնեցին յառաջին տեղւոջ զայժմեան քարաշէն եկե-ղեցին նովին անուամբ. վայելուչ կառուցեալ 'ի վերայ կրկին լայնանիստ կամարաց. ունի 3 դրունս և սիւնա-զարդ բակս : Սակայն տակաւին անյարկ գոլով 'ի ժա-մատան կատարեն զա̃ծայինն պաշտամունս : Հայք 'ի սմին քաղաքի են 90 տունք. որք պարապին 'ի տուրև-առութիւն : 'Ի բազում տունս քաղաքիս տեսաք ստոր-երկրեայ անցս. և 'ի մէջ ջրհորոց պահարանս. յորս մտեալ պատսպարէին 'ի հնումն յարշաւել Օսմանցւոց :

Յարևմտեան ծայր քաղաքին է արգելանոցն հիմ-նեալ 'ի վերայ բլրակին Լօտոս պուրանի. որ պատսպարէ զնաւահանգիստն յարևմտեան հողմոց, որպէս 'ի միւս կողմանէ պատսպարէ յարևելեան հողմոց գլուխն Սգ-եառի. միայն անպատսպար է 'ի հարաւային հողմոց : Ճենովացիք ևս էին կառուցեալ զդղեակն, որպէս 'ի միւս ծայր քաղաքին գոյր այլ դղեակ 'ի պաշտպանու-թիւն նաւահանգստին. ուր տեսաք հանեալ 'ի հողոյ մեծա-մեծ քարինս : Յաւուրս մեր գտին աստ ընդ հողով եր-կու վիմատաշ արձանս. մին առն որ գծեցեալ էր ըստ ձևոյ հին Յունաց և 'ի գլուխն սաղաւարտ. իսկ միւսն էր կնոջ. որոյ գծեալ էր ը̃ն տարազու հռովմայեցւոց :

Աստանօր մերձ 'ի ծով տեսաք ջրհոր բարեհամ ջրոյ. ընդ որ անցեալ ջուրն գնայ 'ի ծով. 'ի յատակն գոյ մեծ քար, զոր երբեմն հանեալ՝ գտին զջուրն աղէհամ : Սակաւ հեռի աստի դէպ յարևմուտս են 5 մեծամեծ ջրհորք Օնար խուլէսի կոչեցեալք. որք մատակարարեն զջուր քաղաքին. ջուրն է առողջ և քաղցր՝ երբ հողմն շնչէ 'ի ցամաքէ. և երբ 'ի ծովէ՝ լինի փոքր ինչ աղէ-համ : Աստ առ տեղեաւս է զինուորանոցն բովանդա-կեալ յերկուս շինուածս. մին վասն հասարակ զինուո-րաց, և միւսն վասն զօրապետաց :

Անտի ուղղեալ զընթացս մեր ընդ արևմուտս կ. ան-

բաշխին բարձր 60 կանգուն. յոր 'ի գիշերի վառեին լապտերս յառաջնորդութիւն նաւուց ։

Լայնութիւն լեզուին ծովէ 'ի ծով լինի 10 վերստ. ուր տեսանք ըղձաղուեալ գիւղօրէս. զի երկիրն է բարի. թուի թէ 'ի հնումն գոյր աստ լապտեր. զի այս լեզու կոչի 'ի յունաց Պոօթինօ Փանարի ։

Հիւսիսային ծոցն կոչի Տեղ Ճարլահ. ըստ հն. Tamirake, ուր է հին քաղաք Թաթարաց Թագլահ ակ-ճէյ. որ ունի գեղեցիկ նաւահանգիստ ապահով ձըգեալ 'ի ներքս ։ Սակայն երբեմն ալիք ընդհարեալք վիմաց բերանոյն, անհանգիստ առնեն զնաւս 'ի նաւահանգստի ։ Յայոր յաճախէին նաւք 'ի ժամանակս Թաթարաց. այլ այժմ մնացեալ են քանի մի տունք և եթ Թաթարաց և մզկիթ ։ Մերձ է աստ Չէպլէր. ուր գոյր Թէքքէ և բաղուեալ Տէրվիշք ։

Առաջի սկսանի միւսեալ ծովն երկայնիլ 'ի ծոց անդր մինչև ցՕռգաբու (404) ։ Սուրբ գօլար է գիւղ 'ի մէջ Թաթարխանու և Օռկին, որ ունի երկայն լեզու ձգեալ 'ի միւսեալ ծովն ։ Այս ծովեզերեայ երկիր կոչի Մանղըթ. 'ի հն. կոչէր ծոց կարկինիտեան. ուր գոյր Կարկինէ քաղաք և հին բերդ Նէկրօբոլիս ։

Համադիպակողմն միւսեալ ծովու է Լռա-ըլղամն կղզին խոստանէս, ուր ձարակեն անասունք ։ Առաջի մինչև ցաւուր քիթն Պօլղաւաուն՝ կոչի ընթացք Աքիլլեայ. ըստ յն. Տրօմօս ախիլլէօս. խորև զի քաջն Աքիլլէս աստ առնէր առնէր զկրթութիւն իւր ։ Գտանք պղնձի դրամ ստորա. 'ի մի կողմն էր աշխարհատեսիլ մեծակն կերպարան մծրսուատոր. և 'ի միւս կողմն մեծ տուր և 'ի վերայ տառքս ΝΙΚΗ, Նիկէ, և 'ի ներքոյ ΑΧΙΛΛΕΤΣ ΤΡΔ Աքիլլէոս. Թերդ ։

Ընդ երկայնութի միւսեալ ծովու հանդէպ Պօլղաւաունի ձգի երկայնաձև կղզին խոստանէս Թէքնէրէ ադասի ։ Տես 'ի Պանտոս. 230 ։

## ԱՅԼ ՄԱՍՆ ԱՐԵՒՄՏԵԱՆ

450. Յետ շրջելոյ մեր յարևմտեան ծովեզերեայ վայրս սկսեալ 'ի միւսեալ ծովէ մինչև ցծոցն Կեօզլէվէ, տարա՝ դարձ արարեալ անտի ընդ պարանոցս Սարըխ լճակին և Աղէհանին (443) հասանք 'ի գիւղին Ես-

պայծառ և սիւնազարդ ։ Բարձրահայեաց է կաթու-ղիկէն. 'ի մէջն հանդէպ եդեալ կայ մեծ պատկեր Յսի և Տիրամօրն քաղցրալիր արձանթապատ ։ Նոյնպէս 'ի վերոյ քան զխորանն յաջակողմն կանգնեալ կան երկու մարդաչափ պատկերք արձանթապատք. մին Տիրամօրն և միւսն Պետրոսի և Պօղոսի ։ Իսկ 'ի ձախակողմն նոյնաչափ երկրին պատկերք արձանթապատք յարութեան, և սրբոյն Նիկողայոսի. յորոյ անուն շինեալ է այս եկեղեցի. որ ունի փոքրիկ գաւիթ և զանգակատուն բարձր և սիւնազարդ ։ Առաջի խորանին տեսաք զայլ պատկեր Յսի գեղեցկագործ արձանթապատ ոսկեզօծ ։

Շուրջ զեկեղեցեաւն գոյ չափաւոր հրապարակ. ուստի տեսանի մեծ գործատունն կարասեաց նաւուց, և հասանէ մինչև ցծովն՝ բաժանեալ 'ի զանազան վայրս մեծամեծս. յորս յօրինին ամենակերպ կարասիք երկաթեղէնք և պղնձեղէնք 'ի պէտս նաւուց ։

Անդ է զինարանն և նաւարանն, ուր յօրինին նաւք ոչ այնչափ մեծք, զի մեծամեծ նաւք այլուստ գան աստ և զարդարին (38 ։) ։

Եկեղեցին Յունաց է 'ի վեր անդր բարձրահայեաց՝ խաչաձև կառուցեալ 'ի վերայ Դ մեծամեծ սեանց. ունի և փոքրիկ դպրատուն անդ սակս յայն մանկանց. Առ-երի արտաքին դրան յորմն տեսաք սպիտակ մարմարիոնեայ վէմ երկայն 3 ոտն. և լայն՝ մի և կէս. յորոյ վերայ փորագրեալ կան պատկերք առն և կնոջ. ատովք է յունարէն արձանագիր անուանց նոցա. *Ածածնունդ Քրիսթիոնոս և կին նորա Ուլպիանա երջանիկք 'ի ամս 75 և 52 ընկերեալ ‖ ։

### ΘΕΑΓΕΝΗΣ ΧΡΙΣΤΙΩΝΟΣ ΚΑΙ
### Η ΓΥΝΗ ΑΥΤΟΥ ΟΥΛΠΙΑΝΑ
### ΜΑΚΑΡΙΑ ΕΤΩΝ ΖΕ ΚΑΙ ΝΒ կմ ΚΑΙΡΕ

Յետինքն երկու բառք են 'ի տեղի Թուականի ամաց նոցա. առաջինն է առն 75, և երկրորդն կնոջն 52 ։ Այսքա էին արդիւնաւոր անձինք աշխուականք Քերսոնի հաստատակայնութեան. յորոց 'ի պատիւ զայս վէմ փորագրեալ եդին 'ի տեղւոջ ուրեք. զոր հանեալ յաւերակաց Քերսոնի եդեալ են աստ ։ Տեսաք այլուր զայլ վէմ նման նմին, և 'ի վերայ կին մի. և առ նմին

մանաւանդ՝ հանդերձ եղծեալ յոյն գրով։ Ընդ ամնոր տե-սաք զակն ամրոտակ զերթ պաղլեղ, և 'ի վերայ փորագ-րեալ գրով Աւգոստոսյ գեղեցիկ յոյժ։ Նոյնպէս տե-սաք դայլևայլ դրամս Ներոնեայ . յորոց քանի մի նշանակեսցուք (464)։

454. Յետ այսորիկ եկաք 'ի զնին այլևայլ բաղկաց կամ Նաւահանգստից Սևաստոպօլի. յարևմտեան ծայրք քաղաքին տեսաք 'ի ծոցամիջի անդ զբերան և զբազուկ ծոցոյն երկայնեալ 'ի ցամաք անդր՝ ընդ 300 գրկա-չափ, որ է առաջնոյն Նաւահանգիստ. այլ անզաւառական մեծամեծ նաւուց՝ սակս ծանծաղուէն։ Այս բազուկ կոչի Արթիլլերեյսկայա պուխթա. ուր գոյ և մարտկոց 'ի պաշտպանութիւն մեծի ծոցոյն. վասն այն կոչեցաւ հրազինեալ ծոց։ Անտի ընդ 700 գրկաչափ միջոց 'ի ներքս խաղացեալ տեսաք զայլ բերան 'ի նոյն կողմն. ուստի սկսանի մեծ բազուկն կոչեցեալ Յուժնայա պուխ-թա. այ̃ հարաւային ծոցիկ. որ ձգի ընդ երկայն 'ի ցա-մաք 2 վերստ և կէս, և լայն 200 գրկաչափ. ունի զօ-րաւոր մարտկոց 'ի բերան անդ. ձայնեալ Ալեքսանդրո-ֆսկա պաթարեա։ Այս նաւահանգիստ շրջապատեալ 'ի բլրոց ոչ միայն է ապահով, այլ և պիտանի յոյժ վասն մեծամեծ նաւուց, որք լի են աստ՝ մերձեալք 'ի ցամաք անդր՝ պատրաստին 'ի կազմութիւն և 'ի նորոգութիւն ամենայն դիւրութեամբք. քանզի խոր է յոյժ ջուրն և միջոցն ընդարձակ. միայն վերջին ծայրն անձկանայ, այնպէս զի տեսաք զանգս շինեալ 'ի քարանց առ 'ի դնել հետևոտս յայնկոյս բաղկին։ Աստ գոն մեծամեծ բնակարանք և զինուորանոցք նաւաստեաց, շտեմա-րանք կարասեաց և այլն, որով իբրև արուարձան ձևացեալ է այն մասն։ Իսկ 'ի միւս կողմն անցելոյն գոյ այլ նեղ ծոց իբր լիՃ. շուրջ զորով բազում պալատք կառուցեալ կան վայելուչ առընթեր ծովու։

Մերձ 'ի բերան այսր մեծի բաղկին երկայնի այլ բա-զուկ դէպ 'ի միւս կողմն ցամաքին ընդ արևելս 900 գրկաչափ երկայնութեամբ, որ կոչի Կորապելնայա պուխթա այ̃ նաւային ծոց. որ այնչափ խոր է, զի համար-ձակ մտանեն և ձմերեն մեծամեծ նաւք։ Աստ տեսաք զերկերկարգեան մեծագոյն նաւ պատերազմի փորեծ անուն. մին յարքունի վերակացուաց տարա գալով յաղ-գէ մեծի գափիթան Լազար Մաքսովիչ շնչեցոյց

ըստ հին պատմութեան գոյր մեծ պարիսպ. որոյ մի ծայր գոլով 'ի Պալըգլավա՝ միացուցանէր զերկոսին քաղաքս ։ Զայս բերդ որպէս թուի յետոյ ամրացուցին Ճէնովացիք 'ի ձեռն մարտկոցաց. առ որով են վաղեմի քարանձաւք կոփեալք յապառաժս զարմանալի մեծագործութեամբ 'ի Քերսոնացւոց անտի վասն զօրաց իւրեանց. յորս պատսպարէին յերեսաց լեռնականաց ։

Այլք համարին թէ 'ի ժամանակս քրիստոնէութեան հաստատեցեալք վասն ապաստանի 'ի ձեռաց հեթանոսաց անդ ամրացեալ լինէին ։ Աստանօր աքսորեցաւ սուրբն Կղեմէս Դ. Հայրապետ Հռովմայ. աստ սուրբն Մարտինոս միւս 'ի Թոռանց Պոնտերիանոսի, և այնք 'ի պալատականաց աստ աքսորեցան ։ Քանզի զայնու ժամանակաւ աստ էր տեղի աքսորանաց նոցա յետ Քորսիքայի. ուր աքսորեալքն փորէին յապառաժի անդ սենեակս վասն մարմնոց իւրեանց, յորս և թաղէին, որով և կոչի Քարանձաւաքաղաք ։

Յերեքտասաներորդ դարու իբրև բաժանեցաւ տէրութիւն Յունաց 'ի զանազան փոքրիկ իշխանութիւնս, Ինքիրման եղև ինքնագլուխ քաղաք երևելի հասրակապետութեան իւրեանց. ապա էանց առ Ճէնովացիս և առ Թաթարս, որք բոլորովին կործանեցին. մինչև չմնալ այլ ինչ բաց 'ի քարանձաւաց. յորս շըրջեալ անձամբ զննեցաք զամենայն մեծագործութիւնս, զոր տեսաք և պատմեմք 'ի կարգին. ապա անցանեմք 'ի Քերսոն ։

## ՔԱՐԱՆՁԱՒԱՔԱՂԱՔ

457. Արդ՝ յանցանել մեր ընդ գեղեցիկ հովիտն Ինքիրմանի շրջապատեալ 'ի լերանց անտի ուղղեցաք զընթացս մեր յարևելեան քարանձաւս, որք յոտս լերին աստ և անդ գտանին յերկոսին կողմանս ։

Ապա յառաջեալ 'ի միւս կողմն տեսաք մեծ դուռն և ընդարձակ ճանապարհ փորեալ յապառաժ լերին և ընդ նմին քարակոփ աստիճան. 'ի վերանալ մեր Է բարձրութիւնն տեսաք 'ի մի կողմն զանազան սենեակս քարակոփս, և 'ի միւս կողմն լուսամուտս քարափորս զարմանալիս և պատշգամբս ։ Ելեալ 'ի վեր ընդ 40 աստիճանս քարակոփ սանդխոց՝ գտաք զմեծ սենեակ,

և 'ի վերուստ լուսամուտ. ուստի սկսանի նեղ սրահ կամ ճանապարհ ընդ հարաւ 3 քայլ լայն, և մարդաչափ բարձր ։ Յաջակողմն այսր ճանապարհի տեսաք քառակուսի դուռն ընդարձակ. մտեալ 'ի ներքս գտաք լայնանիստ եկեղեցի կամարաւոր բոլորովին քարակոփ ։ Նոյն առաջակողմեան կամարքն անկեալ կան 'ի վայր 'ի բարձրութենէ 15 կանգնոց. ուր տեսաք և զերկու դամբարանս ։

Յաջակողմն այսր տաճարի գտաք դուռն. ընդ նեղ անցս մտեալ 'ի ներքս տեսաք զփոքրիկ մատուռն քարակոփ երկայն 8 քայլ, և լայն 4 ։ Խորանատեղին է կիսաբոլոր, և որմամածին 4 քայլ. առ նմին և պատուհան ։ 'Ի ձախակողմեան որմն 'ի վեր անդր փորագրեալ կայ եռանկիւնաձև գիծ, և 'ի մէջն վաղեմի գիր անվերծանելի. և առ նմին մնացուած ինչ ներկոյ և պատկերաց ։ Դուռնն և յարկն, բարձր են. իսկ որմունք բոլոր քարանձաւին այնպէս զարմանալի արուեստիւ կոփեալ կան. զի 'ի բազում տեղիս հազիւ լինի մատնաչափ թանձրութիւն որմոյն ։

Իսկ առաջի մեծի տաճարին տեսաք 'ի ստորև զայլ ապառաժ, որ բարձրացեալ հասանէր մինչև ցվեր անդր. և ձևացուցանէր զաւիթ կամ սրահ տաճարին. այլ այժմ կործանեալ կայ ։ 'Ի քարակոփ տունս այսր մեծի լերին բնակին այժմ պահապան զինուորք և նաւաստիք, որք դէգերին յայսմիկ կողմանս 'ի զգուշութի ։

Իջեալ մեր աստի ընդ նոյն քարակոփ սանդուխս և անցեալ ընդ ձորամէջն, հանդիպեցաք կրկնակամար անձև կամրջոյ, այլ այնպէս բարձր և խոշորաշէն, մինչև կարծիս տայ թէ մնացեալ իցէ 'ի նախնեաց անտի. ընդ որով անցանէ գետակն Պէօյիւք էօզէն ։

458. Հասաք ապա 'ի հանդիպակաց լեառն մեծ լի մեծամեծ վիմափոր տամբք. առ որով անցանէ փոքրիկ վտակ և խառնի ընդ առաջինն ։ Տեսաք 'ի տեղիս տեղիս հատեալ լեառն վերուստ 'ի վայր, և անմատչելի գործեալ 'ի թշնամեաց ։ Յարևմտեան կողմն տեսաք մեծամեծ այրս և զարմանալի բնակարանս, որք ունէին զառաջեաւ զայլ շինուածս և պատսպարանս, Ծ որում յայտ առնեն անկեալ պարիսպքն, յորս այժմ բնակին զինուորք և գործեն շնչքորակ 'ի մերձակայ հաղոյ անտի ։ Ընդ առաջի լերին տեսաք զընդարձակ

որաՀ կափեալ յապառաժի. նաև 'ի ստորև Միացորդ Հլին պարսպաց կամ աշտարակաց :

Նոյնպէս յարևելեան կողմն մեծի ապառաժին տե-սաք բազում քարանձաւս և սանդուխս 'ի վեր ելանե-լոյ յերկուց կողմանց անմատչելի լերին. այլ այնպիսի արուեստիւ, ուր այժմ չէք հնար մատչել: Ուստի թէ-տաւի 'ի ծայրէ վերին պարսպի շարունակեր վաղեմի մեծ պարիսպն ձգեալ մինչև ցՊալըգըլավա անշքացեա տէրութեան Գենուացւոց :

Իսկ յարևմտեան կողմն յընդարձակ բակի անդ տե-սաք Ճանապարհ հատեալ յապառաժի. վերստանեալ ընդ սանդխաձև անցս՝ գտաք յարկս բնակութեան և դատավկոնս : Ուր ելեալ ընդ 15 աստիճանս գտաք զա-նազան սենեակս. ընդ որս և զեկեղեցի բարձր և գե-ղեցիկ համայն կոփեալ 'ի ժայռի անդ 'ի փոր լերին. որ ունէր 'ի մի կողմն 4 կամարս և 4 'ի միւսն հանդերձ շրջանակօք և վերնախարսխօք :

'Ի մեծի կամարի անդ խորանին տեսաք մեծ խաչ փորագրեալ 'ի վիմին. և 'ի վերայ իւրաքանչիւր թևոյ այլ փոքրիկ խաչս : Չափեցաք զտրամագիծ խորանին 10, ոտն. զերկայնութիւն տաճարին 13 քայլ. և զբարձրու-թիւն 10 ոտն. ցարդ երևին 'ի տեղիս տեղիս մնացուածք ինչ ներկոյ և պատկերաց : Դուռն է ընդարձակ, և 'ի վերայ դրան կիսաբոլորաձև մեծ լուսամուտ. յեր-կոսին կողմանս աւանդատունք. աջակողմեանն է մա-տուռն. որ ունի խորան և պատուհան, և և լուսա-մուտս յերկոսին կողմունս դրան : Նոյն 'ի վեր է զար-մանագործ վերնատուն վիմափոր բարձր մարդաչափ, որոյ յատակ է ձեղուն գաւթի մատրան : Արտաքոյ դրան տաճարին գոյ բակ կամ գաւիթ կամարաձև. իսկ աջակողմեան աւանդատունն աւելի ընդարձակ է, և ունի լուսամուտ և խորան :

459. Յայսմ յարկէ ելեալ 'ի վերին յարկ ընդ 7 աստիճանս վիմափորս, տեսաք զայլ սենեակ՝ որոյ որ-մունք ապակիացեալ էին : Ընդ 'ի սենեկի գտաք բոլո-րաձև լուսամուտ 'ի վերուստ. ուր ելեալ բազում դը-ժուարութե՛ գտաք 'ի տանիս զանհյարկ ճանապարհ կա-փեալ և ձգեալ ընդ զառ 'ի վեր լերին. միոյ կողմանն որմն ձևացեալ է յապառաժէ. ընդ որ ելեալ իբր ընդ աս-տիճանս հասաք 'ի վերայ բարձր լերին. Ուրանօր կա-

ուսուցեալ կայ բերդն վաղեմի (456) որ պատրաստեալ է 'ի միջի կողմանէ և եթ. զի յերից կողմանց է լեառն անմատչելի. միայն հիւսիսակողմն է անպատսպար: Նորին աղագաւ շինեալ են անդ բերդ կրկնապարիսպ ամրացեալ յաշտարակաց Ջենովացւոց:

'Ի մի ծայրին տեսանք կրկին բոլորաձև աշտարակս. իսկ յարտաքին պարիսպ անդր գոյ մեծ և բարձր աշտարակ բոլորաձև: Այս պարիսպ ունի խրամ լայն 20 քայլ. որ ըստ մեծի մասին 'ի ժայռի անդ կոփեալ է. անդ 'ի տեղիս տեղիս տեսանք պահարանս և ջրշիղջս: Այլ պարսպին եզերի 'ի վախս ինչ բարձր սարսափելի. ուր տեսանք զլեռնակոփ անցս կամ ճանապարհ իջանելոյ 'ի վայր, որ այժմ աւերեալ է. ընդ որ 30. աստիճանս 'ի վայր իջեալ՝ տեսանէի ջուր պատուական վիմաբուղխ և աստի շարունակեալ վիմափոր ճանապարհ երթայ ասեն մինչև ցՊալըքլավա. ուր էր սահման քաղաքիս: Այս խրամ որպէս և քարանձաւք թուեցան մեզ լինել գործ կարի վաղնջական. թէպէտ 'ի ժամանակս քրիստոնէութեան զեկեղեցիս շինեալ և զպարիսպն ամրացուցեալ են. որպէս յայտ է: Անցեալ մեր ընդ պատառուածս պարսպաց՝ յընդարձակութիւն միւս մասին մեծի լերին, տեսանք 'ի բարձրաւանդակի զանազան քարանձաւս. և անտի իջեալ ընդ զառ 'ի վայր լերին նոյնպէս տեսանք զայլ մեծամեծ քարանձաւս, որք այժմ կարգեալ են 'ի բնակութիւն նաւագործ զօրաց: 'Ի ստորև մեծի լերին սկսանի գեղեցիկ հովիտն. ուր են վայելուչ պարտէզք:

## ԱՐԳԵԼԱՆՈՑ ՍԵՒԱՍՏՕՊՕԼԻ

460. Յետ քննելոյ զամենայն քարանձաւս Ինքերմանին, և զքաղաքն Սեւաստօպօլ՝ ապա ուղղեցաք զընթացս մեր ընդ ցամաք, անցեալ ընդ գեղեցիկ դաշտս և բլուրս հասաք 'ի գերեզմանատուն Սեւաստօպօլի, ուր տեսաք զեկեղեցի Ռուսաց նորաշէն յանուն ամենայն սրբոց. և առ նմին զանգակատուն բարձր և մահարձան: Անտի հասաք յարգելանոցն կառուցեալ առերի ծովուն, որ բաժանեալ է 'ի զանազան վայրս հանդերձ ընդարձակ հրապարակաւ. ուր տեսաք այլս ինչ: Առ որով է այլ բազում մեծի ծոցոյն Սեւաստօպօլի կա-

չեցեալ Պրոպոնտիդեան գաւառին. որ անցեալ զաւա-ջեաւ զնայ պտուտաձեւ 'ի ցամաքն կոյս և ձեւանայ պա-տուական նաւահանգիստ լայն 200 գրկաչափ և երկայն մի վերստ. ուր ապահովանան նաւք վաճառականացն : Օ մի մասն սորա կոչէին Սաւաթարք Զորչէնա. և զմիւսն Խլամսու լիմանի : Բայց Յոյնք կոչեցին ծոց արգելանոցի :

Իսկ ձախակողմեան բազուկն կոչի Սորբէնէչոյնեա գաւա-ռաւ, խոր 6. մինչև ցերկու գրկաչափ. իսկ բերանն 10. և 12. որ ունի զօրաւոր մարտկոց 'ի պաշտպանութիւն մեծի ծոցոյն : Ընդ դէպ 'ի ծոցն գոյ այլ բազուկ ե-ղեգնուտ 2 վերստ հեռի. որ կոչի Խրամշինոյեա գաւառին, խոր 6. գրկաչափ, ունի մարտկոց Տէսսիլնեայ դաշ-տէա. ուր գոն 2 լիճք աղի : Ընդ և անդր է այլ բա-զուկ Քոզոյեանեա գաւառին կոչեցեալ. որ ունի նորոգեա մարտկոց Սերէփոնեա դաշտէա. որոյ պահապանքն են խաղախք. ուր գոյ և լիճ աղի. որ յառաջ կից էր ընդ ծոցոյն՝ բաժանեալ աւերածութեամբ 'ի ձեւն աւազուտին երկայն 130. գրկաչափ : Ընդ է մեծ աշտարակն լապտե-րի, որ ասի Ֆէնէր. առ որ ուղղեալ նաւուց զընթացս՝ իբրև տեսանեն ընդ տեսողական գծիւ զկրկին լապ-տերս 'ի վերջին ծայր ծոցոյն գտանեն անվրէպ զբերան ծոցոյն (451) : Ռանգի 'ի բերան անդր յերկոսին կող-մանս գտանին ապառաժք վտանգաւորք : Իսկ հանդի-պակաց սորին կոչի Ռոմոխանեա գոյա. անդ և ս գոյ բերդ. 'Ի Ֆէնէրէ մինչև ցՍեւաստօպօլ է 12 վերստ, նոյն-չափ է մինչև ցՍբ Գէորգ (466) :

## ՎԱՆՔ ՀԻՆ

461. Առ երի արգելանոցին տեսաք զաւերակ հին մենաստանին 'ի ցամաքն կոյս շինեալ յանուն սրբոյն Կոստանդիանոսի և Հեղինեայ. ուր շրջեալ որոշեցաք զվայրս և զհետս պարսպաց : Նկատեցին էր 'ի վերայ փոքրիկ բլրոյ. առընթեր տեղւոյն տեսաք մարմա-րիոնեայ ներքնախարիսխս. միոյն տրամագիծ մի և կէս ոտն : Յաջակողմն կոյս խաղաղաւ տեսաք 'ի մի կողմն ներքնատուն ընդ երկրաւ բոլորաձեւն կոփեալ յապա-ռաժի. ունի մեծ դուռն. առ նմին սրահ վիմափոր : Ընդ մնեալ յայլ վիմափոր սենեակ տեսաք շուրջա-նակի նշխարան կամ նստարան կափածոյ : Ընդ սակաւ

յառաջ գնացեալ առաւք զայլ ականակն քարակոփ 'ի ձև բոլորշի և շուրջանակի ննջարանք։ Տեսաք մերձ յեկեղեցին պատուական ջուր և ջրհոր փորեալ 'ի վիմի. որ ունի զերկու բերանս և ստորերկրեայ ճանապարհ, որ գնայ ուղէպ 'ի հարաւ։ Թերևս այս էր մեծ ջրանցք Քերսոնի. զոր հատեալ ցամաքեցոյց մեծն Վլատիմէր յառնուլն զքաղաքն. այլ այժմ լցեալ է այս անցք (463). Աստանօր փորեալ գտին գերեզմանս արտաքոյ եկեղեցւոյն. ուր կային մեծամեծ քարինք եդեալք 'ի վերայ միմեանց. և 'ի նմին ոսկերք մեռելոց, և 25 արծաթի դրամք հատեալք 'ի ժամանակս քրիստոնէութեան։ Կրկին էին դրունք վանաց դէմ ընդդէմ միմեանց ընդ հիւսիս և ընդ հարաւ։ Ուրանօր գտն այժմ քանի մի տունք պահապանաց. և 'ի վեր անդր տուն բժշկին արգելանոցի։

## ՔԵՐՍՈՆԷՍ

462. Այս մեծահռչակ մայրաքաղաք վաղեմի կառուցեալ 'ի Հերակլեացւոց անտի, որք եկին յՍինոպ, և ընդ սոյն մեծի ծոցոյն հանճեալ՝ աստ իբր 'ի բերանի հիմնեցին զայս քաղաք, և ընդ նմին Հասարակապետութիւն 2426 ամօք յառաջ. նմին իրի կոչի 'ի Ստրաբոնէ Քերսոնէս կամ Քերսոնեսոս Հերակլեան։ Երկիրն որ 'ի մէջ Սևաստոպօլի և Պալըգլավայի՝ կոչի 'ի նախնեաց Թերակէս. և սահմանեալ էր 'ի ձեռն մեծի պարսպին, որ սկսեալ 'ի ծայրէ մեծի ծոցոյն կամ յԻնքերմանէ հասանէր ցՊալըգլավա, որպէս երևին աստ և անդ հետք աւերակաց։ Որով այս երկիր ձևանայր թերակղզի, և մայրաքաղաքն մեծատարած էր պարուտեալ 'ի ցամաքէ, և ամրացեալ 'ի ծովէ։

Այս հասարակապետութիւն անհնարին զօրացաւ գեղեցիկ կարգօք և քաղաքականութեամբ, մինչև զբազում ժողովուրդս յայլևայլ կողմանց ձգեաց յինքն և ծաղկեցաւ յոյժ, մանաւանդ 500 ամօք յառաջ քան զՔս։ Նա յետ ժամանակաց իբրև հարստահարեցան 'ի Սկիւթացւոց՝ խնդրեցին զպաշտպանութիւն մեծին Միհրդատայ. որով դարձեալ զօրացան մեծապէս։ Յամի Տն 536. Հոնկրէգք և Հիւնք պաշարեցին զՔերսոնէս, և մտին 'ի մի կողմն. այլ ոչ կարացին տե-

բեղ․ զի Խերսոնացիք օգնութիւն առեալ 'ի Յուստինիանոսէ՝ վանեցին զնոսա (391)։

'Ի 695. Բ Յուստինիանոս աքսորեցաւ 'ի Խերսոնէս եւ փակեցաւ 'ի մի վանս. այլ յետ դարձին յաթոռ իւր դժուարացեալ ընդդէմ Խերսոնացւոց, ջան եդ յափշտակել զանէրութիւն նոցա։ Իւր յայնժամ աքսորեալ էր քաջ զօրավարն իւր հայազգի Վարդանէս կամ Վրթանէս, որ եւ մեծամեծ ծառայութիւնս արարեալ էր կայսեր։ Խերսոնացիք հաստատեցին զնա գլուխ եւ սպարապետ իւրեանց. որ այնպիսի քաջութեամբ խորտակեաց զբանակ Յուստինիանոսի, զի անդէն հալածական արար զնոսա մինչեւ ցԿոստանդնուպօլիս։

463. Այս յիններորդ դարուն Թէոփիլոս կայսր կարգեաց զԽերսոնէս նահանգ Հռովմայեցւոց։ Իսկ մեծ դուքսն Ռուսաց Խնեազ Վլատիմէր ցասուցեալ ընդդէմ կայսեր Յունաց եկն զօրու ծանու եւ պաշարեաց զԽերսոնէս յամի Տն 987։ Այլ սակայն ոչ կարաց 'ի նեղ արկանել զԽերսոնացիս. որք ունէին զամենայն պիտոյս, զկերակուր, եւ զջուր այլովքն հանդերձ. իբր զի ջուր քաղաքին երթայր 'ի ներքս անդր ընդ անյայտ անցս, զոր ոչ կարաց գտանել Վլատիմէր։ Գտաւ յայնժամ ոմն 'ի պաշարելոց անուն Անաստաս քահանայ, որ արձակեաց զնետ իւր 'ի բանակ Վլատիմերայ, կապեալ 'ի վերայ զթուղթ գրեալ այսպէս. Եթէ կամիս առնուլ զայս քաղաք, պատրաստս խցանել զանցս ջրոյն յայս ինչ տեղւոջ. եւ նա իբրեւ արգել զջուրն հոսել 'ի Խերսոնէս, յուսահատք եղեալ քաղաքացւոց՝ անձնատուր եղեն Վլատիմերայ, որ գոլով կռապաշտ որպէս եւ բոլոր ազգն Ռուսաց, իբրեւ ետես 'ի սմին քաղաքի զքրիստոնէութիւն ծաղկեալ, լուսաւորեցան միտք նորա լուսով սրբոյ աւետարանին։ Եւ բարեպաշտ խորհրդով ջան եդ լուսաւորել զնա եւ զազգ իւր։ Նմին իրի ետ բերել զիմաստունս այլեւայլ ազգաց, եւ ուսեալ եւ ընկալեալ զկրօն Յունաց՝ մկրտեցաւ յամի Տն 988. ձեռամբ Միխայէլ Պատրիարգին Յունաց։ Ապա խնդրեալ զքոյրն կամ զթոռն կայսերաց Վասլի եւ Կոստանդեայ Աննա անուն, ամուսնացաւ ընդ նմա. եւ ապա առաքեաց 10 անձինս 'ի Կոստանդնուպօլիս ուսանիլ զբան հաւատոյ առ 'ի ծաղկեցուցանել 'ի Ռուսաստան զքրիստոնէութիւն. որոց լուեալ զերգս

ընդդրեալ յոյն դրամ, որ պատմէր զհարազատութիւն բնագլին առ Թագաւորութեամբ Զենոնի կայսեր, եղեալ կայ 'ի սմա միում : Սոյնպէս և այն արձան զգեստաւոր եղեալ յեկեղեցւոջ ունէր 'ի ձեռին գլուխ և տապանագիր լատինարէն . որ պատմէ զիշխանութիւն Ճենովացւոց կողմանցս այսոցիկ : Տեսաք 'ի Սեւաստօփօլ զմեծն և քանի մի արձանագիրս Քերսոնեացւոց : Իսկ զայն՝ զի միշտ եւանեն յերկրէ կտորակք հին տապակեաց, որք ցուցացուցանեն զգոյնս ծիածանին եւս, և զանազան զրանք տեսութեան նոցա :

Տեսաք 'ի մի կողմն միոյ դրամոյ գլուխ Ապողոնի պսակազարդ . առաջի իւր լիրա զարծի և գիր ΧΕΡΣΟΝΗΣΟΥ . Իսկ 'ի միւս կողմն Դիանա չապառաւածահէ ախոյեալ աղեղամբ զհետ եղին : 'Ի մի կողմն Ե դրամոյ դրոշմեալ կայ կառք վարեալ 'ի Դ ձիոց . և առ նմին կառավար և 'ի վերայ գիր Փ . Իսկ 'ի միւս կողմն այր պատերազմօղ վահան 'ի ձեռին առ որով գիր ΧΕΡ : 'Ի մի կողմն Դ դրամոյ եղն, որ հարկանէ զերի եղջերբ . առ որով գիր ΕΛΕΥΘΕΡΙΑ . որ ազատութիւն . Իսկ 'ի միւս կողմն եղն մի հալածեալ 'ի յաւէրժահարսանէ, առ որով անուն քաղաքին . ΧΕΡΣ : 'Ի մի կողմն այլ դրամոյ խաչ և խաչիւս նուռ . Իսկ 'ի միւսմն խաչաձև նշանակք և գիր ՃX :

ԱՒԵՐԱԿ ՔԵՐՍՈՆԻՍԻ

465. Աղէտալի է տեսիլ մեծամեծ բերդաքաղաքիս ծածկեալ աւերակօք . յորս շրջեալ և զննեալ պատմեցուք 'ի կարգիս : Որդ՝ գիրք Քերսոնեսի է երկայնանիստ և բարձրահայեաց, շինեալ դոլով 'ի վերայ տափարակ բլրոյ 'ի մէջ կրկին բազկաց մեծի ծոցոյն Սեւաստօփօլի, որով երեւի Թերակղզի իմն վայելչադիր : 'Ի տեղիս տեղիս կանգուն կան մնացորդք պարսպաց և աշտարակաց . այլ զկոփածոյ վէմս բարձեալ են անտի : Որոշեցաք ցանկիւնս 'ի պարսպին, և մարտկոցս կործանեալս . նաև վայրս դրանց բերդին ծովու և ցամաքի :

Ցամաքակողմն բերդին 'ի բերան փոքր ծոցոյն երեւի 'ի ծովամիջի քարայատակ հրաւանդան . յոր մատչէին նաւք . ուր տեսաք յարևելեան կողմն մնացուած մեծի աշտարակին : Հասեալ մեր 'ի միջավայրն բերդին, ցուցին մեզ 'ի բլրի անդ զտեղի նորընծայեկեղեցին . առ որով

էր ծովահայեաց պալատ հիւպատոսաց և խորհրդականաց ։ Անդ էր Թերեւս կուսաստանն . ուստի եղանեին ադնիւ մարմարիոն սիւնք , վէմք , և խոյակք , այլովքն հանդերձ ։ Սուր տեսաք տեղի ինչ փորեալ , և 'ի նմին սարքս ճեպեցեալս 'ի նախնեաց . եւս և կոյս վիմաց . 'ի միջավայրի պարսպին գոյր մեծ վէմ խորանարդ իբր խարիսխ սեղանոյ , կամ պատուանդան կռոց ինչ ։

Անցեալ աստ յարեւմտեան կողմն բերդին տեսաք մեծ աշտարակ 'ի բերան ծոցոյն , և պարիսպ երկայնեալ դէպ 'ի հարաւ լայն և հաստատուն ։ Այնչափ ամրաշէն են պարիսպք , զի չէք հնար բաժանել զքարինս 'ի կրոյ ։ Ի ցամաքն կոյս տեսաք խրամ պարըսպատոր , և 'ի հարաւակողմն այդ աշտարակ և տեղի դրան . նաև առաջի Ճանապարհ քարաշէն յերկուց կողմանց . որպէս երեւին քարինք ընդ մեծամեծ վիմաց , որք ցուցանեն թէ 'ի հնումն գոյր արտաքոյ բերդին մեծատարած շինութիւն իբր արուարձան ։

Զայս օրինակ տեսաք և զարեւելեան կողմն . ուր կային մեծամեծ պարտէզք և այգեստանեայք . ուրանօր գտաւ և վաղեմի ներքնատուն ։ Ընդանօր տեսաք զհիմն աշտարակի 'ի պաշտպանութիւն կարգեալ արեւելեան դրան . ստոր և անդր եղերի 'ի ծոց ծովուն պարսպին մեծ բերդաքաղաքին ։ Իսկ 'ի հիւսիսային ծայր բերդին տեսաք զայլ մեծ աշտարակ բոլորշի խրամաւոր հիմնեալ 'ի վերայ բլրոյ . որ ունի յերկուց կողմանց բաղուկ պարսպի դէպ 'ի նաւահանգիստն հիւսիսային ։ Նոյնպէս և արեւելեան պարսպին ժամանէ 'ի ծայր նաւահանգստին . և անտի գնայ միանայ ընդ արեւմտեան ծայրի բերդին . առ որով է արգելանոցն , որ 'ի Ռուսաց կոչի Խարանթին (460) ։ Այս տեղի , որպէս և Սեպաստօպօլ մեծանունն քաղաք շինեցաւ 'ի քարանց Խերսոնիսի . սակայն ճեպեցորդք քարանցն կարեն շինել և զայլ քաղաք ։

Դժուարին է որոշել զտարածութիւն Խերսոնիսի . քանզի արտաքոյ գոյր ընդարձակ բնակութիւն . միայն ներքինն համարի 6080 ոտնաչափ քառակուսի կանգուն ։ Ի շրջակայս երեւին հետք բազում աշտարակաց կարգելոց 'ի պաշտպանութիւն յաւէտ գեղեցիկ գիւղօրէից և պարտիզաց . յորս բնակէին նախնի Խերսոնացիք ։ Ի 150 գրկաչափ տարակայութեան

տեսանի յարեւմտեան հիւսիս հետք ինչ հին շինուածոց, առ որով և քարանձաւք ։ Ի ծովակողմն դոյ քարակոյտ, առ որով և հիմունք պարսպաց . նաև քարաշար փողք, որք թուին լինել վաղեմի գերեզմանք նախնի Խերսոնեացւոց ։

ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ

466. Ա անուանի մենաստան վաղեմի շինեալ 'ի վերայ Այատարին 'ի մէջ Պալըգլավայի և Խերսոնի . ուր յառաջագոյն կային բազում կրօնաւորք և եպիսկոպոս Յունաց . որպէս և այժմ գտանին սակաւ ոմանք . այլ ուխտաւորք են անպակաս ։ Ի կողմն սարին կոչի յանուն վանաց Այ Կէօրկէ ։ Եկեղեցի մենաստանիս է քարաշէն և փոքր, և ունի ինքնաբուղխ ջուր պատուական ։ Աստ ասեն մկրտեցաւ մեծ դուքսն Վլատիմէր ։ Աստ եա բերել Կախովկայի կոմս զմեծամեծ կոփածոյ քարինս Խերսոնի առ 'ի կանգնել զմատուռն 'ի յիշատակ կնոջն . այլ գործն մնաց անկատար ։

Այս մեծահռչակ սար 'ի հնումն կոչէր Criametopon, այսինքն Սէբալըն, զի անդ էր անուանի տաճարն Անահտայ կուոց, թերեւս 'ի տեղի մենաստանիս ։ Ուր երեւին նշանք ինչ հնութեանց . նաև 'ի մերձակայ վայրն դոյ սիւն մի ոտնաչափ տրամագծիւ, մնացորդ այնր տաճարի ։ Յայս տաճար Արտեմեայ հազարաւոր մարդիկ զոհէին . նմին իրի Իփիգենի առեալ զմարմարինեայ անդրին խորտակեալ 'ի փոշի դարձոյց, համարելով թէ զեղբայր իւր զոհելոց էին 'ի վերայ այնր անդրնոյ ։ Ուրանօր եդեալ կայր ոսկի արձան կուոց 'ի վերայ պատուանդանի ։ Սորա տաճարք յամենայն վայրս Խրիմու մեծագործ էին . որպէս և տաճար Օրէստէոն կուոց էր յայսոսիկ կողմանս անուանի ։

Գտանին 'ի տեղիս տեղիս կոփեալ քարինք մնացորդք Խերսոնիսի . նաև երեւի մնացորդ հին պարսպի թանձր 6 ոտնաչափ . և երկայն 15 գրկաչափ . հեռի 'ի վանաց 2 վերստ ։ Պատմեն հնախօսք, թէ 'ի վերայ հրուանդանին դոյր մեհեան կուսի դիւի, յորմէ և այս լեառն կոչեցաւ Parthenion. ուրանօր եդեալ կայր և արձանն . իսկ զմեհեանն անուանէին Fanum dæmonis Virginis. Սորա տաճար և արձան կանգնեալ կայր և 'ի Խերսոնէս ըստ Ստրաբոնի . գիրք Է ։

467. Շրջեալ մեր ընդ գեղեցիկ դաշտօրայս Պալըգլավայի՝ անցանք ապա ընդ քարաշէն կամուրջն. ընդ որով անցանէ Չօռնա գետակն Սևաստօպօլի. և գնալով դէպ 'ի հարաւ սկսանին լեռնիք յերկուց կողմանց միանալ։ Այս անցեալ ընդ հովիտն և ընդ անձուկ պատոյտս լերանց, անդէն և անդ ընդ առաջ ել գեղեցիկ նաւահանգիստն Պալըգլավայի փակեալ յերից կողմանց 'ի բարձրաբերձ լերանց. որոյ երկայնութիւն է մի մղոն և կէս. լայնութիւնն 200 գրկաչափ. լի բազում ձկամբք. ուր անկչիռ վաճառեն զձուկն։

Այս նաւահանգիստ երևի իբր լիճ խիտ երկայնաձև. քանզի բերանն պատուեալ է յարևելս 'ի ձեռն սեպացեալ ժայռից. և այնչափ անձուկ, մինչ զի երկու նաւք դժուարաւ անցանեն միանգամայն անտի։ Ընդ 'ի բերանի խորութիւնն է 12 գրկաչափ. այլ գնալով 'ի միջավայրն լինի 17 գրկաչափ. և ապա առ փոքր փոքր կորուսանէ զխորութիւնն։ Զունի բնաւ շարժումն. այլ յամենայն ժամանակի միօրինակ խաղաղ և ապահով է յամենայն հողմոց։ Արդ՝ Պալըգլավա 'ի հնումն կոչէր Սիմպօլօն, Բալլաքլամ, և Պէլլաքլավէ. յորմէ ելեալ է անունս Պալըգլավա։ Ընդ առ Այս ասրիւ իբր 'ի Թերակղզւոջ շինեաց Շլորոս դղեակ 'ի պահպանութ Խերսոնի ընդդէմ զօրապետացն Միհրդատայ (552), որպէս բերէ Ստրաբոն. և յաւելու թէ մօտն էր այն Խերսոնի. որոյ պարիսպ հասանէր մինչև ցայսվայր. Գ. եր Է։ Յաւելու Ստրաբոն. * 'Ի մէջ Խերսոնի և բարձրաւանդակի գոն երեք նաւահանգիստք. յաջորդէ և վաղնջական Խերսոն կործանեալ. և յետ այնր նաւահանգիստն անձուկ կոչմաւ Սիմպօլօն անուանի։ Նաց 'ի սոցանէ գոն այլ դղեակք. զորս Շլորոս և որդիք իւր կանգնեցին ընդդէմ զօրապետաց Միհրդատայ զՊալլաքիոս, Խաբեւս, Նէապօլիս։ Նոյն նաև Եւբաթօրիոս կանգնեալ 'ի Դիոփանէ Գ. եր Ք։ Յորմէ հետևի թէ անունս Պալըգլավա ելեալ է 'ի Պալլաքիոսէ. ուր այլք համնեն 'ի Պէլլաքեավէ անուանէն։

Այս դղեակ յետ ժամանակաց եղանց 'ի ձեռս Ճէնովացւոց. զոր նորոգեցին և զօրացուցին աշտարակօք. ուր տեսաք 'ի պարիսպս զնշան նորոգութե

և զՀին սիւնս բեկբեկոյս այլուստ ։ Այլ այժմ ըստ մեծի մասին աւերեալ կայ. մինչ զի Թերակղզին ծածկեալ է աւերակօք դղեկիս ։

## ԴՂԵԱԿ

468. Զայս դղեակ կամք եղեն մեզ մանր խուզարկել. նախ իբրև անցեալ ընդ ծովափն եկաք 'ի լեառն կամ 'ի Թերակղզին բազում դժուարութեամբ, տեսաք 'ի կողմանէ Նաւահանգստին զմարտկոցս և զաշտարակս 'ի պաշտպանութիւն նորին ։ Ընդ 'ի միջավայրի բերդին տեսաք քարաշէն սենեակ գմբեթաւոր նման մատրան. և 'ի վերայ Նաւահանգստին քառակուսի աւերակ, որ էր եկեղեցի Հայոց ։ Թուեցաւ մեզ թէ Ճենովացիք զայս տեղի պիտանի առեալ էին Հայոց առ 'ի պաշտպանել զՆաւահանգիստն, որ մնաց առ նոսա մինչև ցյետին ժամանակս. զորմէ զկնի ։

Ընտի դէպ ուղիղ գնալով հասաք 'ի ծայր լերին և 'ի բերան Նաւահանգստին. ուր բոլորին պատուարք ժայռից յերկուց կողմանց Նաւահանգստին ։ Ուրանօր տեսաք զաշտարակ վասն լապտերաց. զոր յառաջագոյն վառէին գիշերայն ։ Իսկ 'ի հանդիպակաց փոքրիկ ծոցի գոյ պատնէշ դէմընդդէմ բերանոյն յապահովութիւն Նաւահանգստին ։ Անտի զննեալ զպատուարս բերանոյն, տեսաք զի բերանն դարձեալ է 'ի հարաւոյ դէպ յարեւելս. և անդ ծոց իմն ձևացեալ արտաքուստ դառնայ անդրէն դէպ 'ի հարաւ. որով դժուարին է յոյժ արշաւել 'ի հեռուստ զայս բերան ։ Այն զի արտաքոյ բերանոյն գոյ մեծ ժայռ ծածկեալ 'ի ծովի՝ կոչեցեալ Սանեօզ Կայա. որ բազում անգամ վտանգէ զնաւս ։ Անտուստ 'ի հարաւային ծայրէ բերդին գնալով 'ի վեր հասաք 'ի քառակուսի աշտարակն անմատոյց և յամենայն կողմանց ամրացեալ. որ տիրէ 'ի վերայ մտից Նաւահանգստին, և է կրկնապարիսպ իբր ներքնաբերդ. յոր մտեալ բազում աշխատանօք տեսաք բերան յապառաժ յատակին, և 'ի ներքս խորին շտեմարան կամ զընդան. որ մեզ թուեցաւ Ջրշիղջ ։ Անտի ձգեալ մեծաշէն պարիսպ ընդ արևելս գնայ մինչև ցհիւսիսային ծայր լերին. և անտի խոնարհեալ ընդ ձորամէջն հասանէ յաշտարակն Նաւահանգստին ։

Անցեալ մեր այսր ընդ արեւելս հասաք 'ի վերին ծայր բերդին, ուր է մարտկոց կամ ներքնաբերդ. եւ բոլորշի աշտարակ բարձր. յոր ելեալ տեսաք 'ի միջավայրին բերան բոլորաձեւ 2 կանգնաչափ տրամագծիւ, եւ 'ի ներքուստ շտեմարանեալ չափաւոր խորութք։ Անդ առ երի դրան տեսաք ջրագուգայս, ընդ որս հոսէր ջուրն 'ի շտեմարան անդր, եկեալ 'ի հանդիպակաց բարձրագոյն լեռնէ. ընդ որում տեսաք 'ի լերին անդ զմեծ ջրանցս։ Արդ՝ պերճապատ այսր աշտարակի չափեալ 'ի 'ի ներքին կողմանէ գտաք 25 քայլս. տեսաք 'ի պարսպի անդ եւ յաշտարակին զփայտեայ գերանս, որով հաւատալի՝ լինել գործ Ճենովացւոց. զի նախնի Յոյնք ոչ դնէին փայտ 'ի պարիսպս, որպէս դիտեցաք 'ի բազում տեղիս։

Աստի փոքր ինչ հեռի դէպ յարեւելս գոյ այլ մեծ աշտարակ բոլորաձեւ, որ աւարտի 'ի սուր ծայր յանկիւն արեւելեան եւ հիւսիսային։ Այս աշտարակ ամբողջ կայ, եւ ունի շրջանակս եւ զարդս 'ի վեր անդր. առ որով եդեալ կայ 'ի Ճակատ աշտարակին վէմ մի մեծ փորագրեալ 'ի միջավայրին խաչ. 'ի մի կողմն սանդղաձեւ նշան Ճենովացւոց. եւ 'ի միւս կողմն ձեւ ինչ եղծեալ։ Առ սմին տեսաք զայլ վէմ մեծ փորագրեալ 'ի մի ծայրն սբ Գէորգ, 'ի մէջն խաչ, եւ 'ի միւս ծայրն 3 գիծք զուգահեռականք մի քան զմի կարճ։ Աստի ելեալ արտաքս տեսաք զայլ պարիսպ եւ զտունս ցամաքակողմեան. ընդ որ իջեալ 'ի ձոր անդր հասաք 'ի ստորին ծայր բերդին, ուրանօր գոյր դուռն մերձ 'ի նաւահանգիստն։ Պարիսպ այսր կողման ամբողջ կայ ըստ մեծի մասին. ուր երեւին 5 աշտարակք, որոց իւրաքանչիւր ունի առաջի իւր պատնէշ կիսաբոլոր հաստատուն յոյժ։

469. Աստի սկսանի այժմեան քաղաք Պալըգլավայի ձգեալ ընդ երկայն 'ի ձախակողմն նաւահանգստին. որոյ բնակիչք են Յոյնք մակեդոնացիք իբր 120 տունք. զորս աստ բնակեցոյց Բ Կատարինէ Թագուհին, կարգելով զնոսա առանձին գունդ զինուորաց պահապան այսոցիկ կողմանց։ Մերձ առ պարիսպն է արգելանոց քաղաքին շինեալ 'ի քարանց բերդին. որպէս եւ եկեղեցին նորաշէն եւ խաչաձեւ, որ կառուցեալ է յանուն սրբոյն Նիկողայոսի։ Ուր տեսաք հատուած ինչ սեան

և խարիսխ մարմարիոնեայ մնացուած հին շինուածոց ։ Անդ տեղեաւս է հին եկեղեցին Յունաց յանուն սրբոյ Երրորդութեան ․ և 'ի բարձու անդ է այլ եկեղեցի յանուն սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի ։ 'Ի վերջին ծայր քաղաքին 'ի բարձրագոյն գեղեցիկ վայրի է ընդարձակ դպրոց , կառուցեալ 'ի ձ̃ Աղէքսանդր Ինքնակալէ վասն 120 մանկանց ․ զորս բաժանեալ յերիս մեծամեծ սենեակս , մարզեն 'ի լեզու Ռուսաց ․ որք և կերակրին յարքունուստ ․ ուր գոյ և աղբիւր բարեջուր , և բնակարանք ուսուցչաց ։

Յառաջ 'ի սմին քաղաքի գոյր և փայտաշէն եկեղեցի Հայոց , որպէս ասեն և զաւերակ հին մատրան 'ի բերդի անդ (468) ։ Տեսաք արծաթի հին խաչ աւետարանի յեկեղեցին Ագմէջիդի , փորագրեալ այսպէս ․ * Յի-
» շատակ է սբ̃ աւետարանս կիւմիշ յօվանեսի որդի
» տիցւ միրաչին 'ի դուռն պալըգլավայ սբ̃ օհաննեսի ․
» թվին ռըձժզ ‖ ։

Ըստ պատմութեան Սորաքօնի 'ի պարսպէ անտի բերդին սկսանէր մեծ պարիսպն 8 վերստ երկայն , որ հասանէր ցնաւահանգիստ Քերսոնի․ հանդերձ աշտարակօք ․ 'ի քարանց անտի շինեցին զՊալըգլավա և զՔուֆէ ղէօյ ։ Իսկ յաւելու ասել թէ նախ քան զշինութիւն Քերսոնէսի գոյր յայսոսիկ կողմանս այլ բերդաքաղաք , որ յաւուրս իւր կործանեալ էր ․ * 'Ի մէջ քաղաքին (Նոր Քերսոնի) և հրամանդանին՝ գոն երեք նաւահանգիստք ․ ապա հին Քերսոն , որ այժմ կործանեալ է ․ յետ այսր նաւահանգիստն նեղ Սիմպօլօն ։ Պլին Է ։

Աստանօր , պատմեցին մեզ , դիպուած իմն աղէտալի պատահեալ սակս դժուարութեան մտից նաւահանգըստիս ․ իբր զի նաւ մի ստիպեալ 'ի բռնութենէ հողմոց՝ դիմէ 'ի Պալըգլավա ։ Այլ որդի նաւապետին քաջ ևս քան զհայրն ուղղէ զնաւն 'ի ժայռ անդր ծոցոյն ․ հայրն պնդէ խոտորիլ՝ բայց հմուտ պատանին արձանացեալ ոչ փոխէ զգիծն ․ մինչ զի բարձրաբերձ ժայռք ընդառաջ ելեալ՝ թուին կործանել զնաւն ։ Յայնժամ հայրն առ բռնութեան կրից՝ յառնէ 'ի վերայ պատանւոյն , և վիրաւորէ զնա չարաչար ։ Իսկ քաջ պատանին յոգիս ապաստանեալ՝ ձգէ զնաւն նովին գծիւ 'ի ծոց անդր ընդ ժայռիւ 'ի բերան նաւահանգստին ապահովապէս , և ինքն անդէն մեռանի ։

471. Այս մասն Խրիմու կոչի Իչ Էլ. այս Ներքին Երկիր. զի գոտիք բարձրաբերձ լերանց պղխապղխեալ պարզեն զայն 'ի դաշտավայրաց Խրիմու Տէլէն ձայնեա-լոց : Ո. յորքին լերինք ամփոփակեալ զայն մասն յե-րեսաց Հիւսիսային հողմոց բարեխառն և բարեբեր առ-նեն, սկսեալ 'ի Պալըքլավայէ մինչև ց'Քէֆէ : Ուրա-նօք գտանին գրեթէ ամենայն տեսակք պտղոց. չիք անդ ոչ լու և ոչ այլ նեղիչ կենդանի : Բնակիչք ա-ղուցոյն կոչին Թաթար. որք են սերունդք նախնի Յունաց. յորս մինչև յայժմ տեսանին նշանք ինչ և մնա-ցուածք Յունաց. Թէպէտ այժմ են մահմէտականք :

Այնա թէ դիմօք, թէ բարուք և թէ սովորութիւնք բերեն զնմանութիւն Յունաց Պոնտոսի. որոց գլխա-ւոր տեղիք են յետ Պալըքլավայի Մէրտվէն պօղազ, ուր գոյ բերան ապառաժուտ, որ երևի նման սանդ-խոց. ընդ որս ելեալ մեր ընդ գետ 'ի վեր դարաւան-դին հասաք 'ի Պայտար օվա :

Ընդ դարաւանդիւս գոյ բերան և փոքրիկ ծոց. և ա և սարն Փօռօզ. յետ որոյ երևի յարևմուտս Այս սար երկայնեալ 'ի ծով անդր առ Պալըքլավայի բա-րուրմանացու, իբր մեծ հրուանդան աղջամնառու հան-դիպակաց սարին Սինոպայ եւայլոց (Պոնտ. 75) :

472. Իսկ յարևելեան կողմն գլխոյ Փօռօզին յաջորդէ գիւղն Մուխալաթքա. ապա Մխսալաթքա, ապա Քիւ-չիւք քէօյ. ապա մեծ սարն Քէքէնէիզ. ապա բարձր սարն Կուրթերի. և ապա այլ սար և հին պարիսպ անուանեալ Այթօտոր : Յետ որոյ Լիմէն. ապա վայե-լուչ գեղն Ալուբքա. ուրանօր մեծ կոմսն Վորոնցով հաստատեաց գեղեցիկ պարտէզ և ամարանոց յիւրում կալուածի : Օկնի ապա յաջորդէ Սիմիզ սար. ապա Միսխոր և ապա Դուրբէրդ. զոր տարրագրեցաք յաղե-գնացութեան մերում անդ յԵալթայէ ը Ալուշտա և ը այլ մասն Իչէլի մինչև ց'Պաղչէսէրայ. տես անդ (433) :

473. Իսկ ապա յԱլուշտայէ անդր գնալով ընդ ծովեզերս յարևելեան կողմն յաջորդէ այլ բերան և գետակ ձայնեալ Տէմիրճի քէօյին. ապա գետակ և բե-րան Ուլու Էօզէն. ապա Սուտաք : Ապա Կապսխոր քէօյին. ապա Օտուզ քէօյին և Քօքթէպէլ քէօյին. ապա Թոտլաք և

ապա Պրահովա. որք են ծովք և բերանք գետակաց. ուր գան բարեշէն գիւղօրէք Թաւաթից և պարտէզք: Հրեակ ուրեմն շրջեալ ընդ առատապարս հասարակ ՚ի գիւղն Խուզիւթ:

ԻՒՍՎՔԻՒԹ.

474. Անուանի գիւղ. յորում են 300 տունք Թաւաթից և քաղաքաշէն մեղկութ. գրեթէ ամենայն տունք են սառերեկրեայ հողայարկ. այնպէս զի տանիք միոյն է բակ միւսոյ: Ի ծախակողմն է ձորն մեծ, և ՚ի նմին գետակ. բերան ծովուն փոքր ինչ հեռի է աստի, ուր գտանին պատուական ձկունք: Ի ձորամիջի անդ առաւք բազում այգեստանեայս և զուարճալի պարտէզս. որք սկսեալ ՚ի լերանց հասանեն մինչև ցծովափն: Անուանի են պարտէզք աեղւոյս. ուր գան գրեթէ ամենայն տեսակք պտղոց: Կամելով մեր շրջիլ ՚ի լեռնակողմն՝ ելաք ՚ի ձի զառ ՚ի վեր լերանց, որք կոչին Պաւագատա. ընդ որս հասի գետակն Խասպազապամ եօզէն. ՚ի վեր անդր է Ղամլարուբէ տօխա և լեռան Ալէպուր. որոյ հանդէպ անկանի բարձր լեռան Սոզէնբունէյի, նաև Պասսաւալա լեռան Ագփարի: Այս ելեալ բազում դժուարութբ ընդ զառ ՚ի վեր մեծի լերին Սեւերէքէնէր կոչեցելոյ՝ հասաք ՚ի կիրճն Պալօրունբի. որ է անցք և գօտի լերանց. ուր յերկուց կողմանց լերինք մերձենան միմեանց: Ի մի կողմն է ծակ ապառաժ Տէլիքլի տաշ ձայնեալ. և ՚ի միւս կողմն է բարձր լեռան Պալօրունբ. ուր ՚ի բարձրաւանդակի անդ երևի դուռն վաղեմի մինարաշ եկեղեցւոյ, որ կոչէր Այ Եօրկի. ուր յառաջ յաճախէին Յոյնք: Յոյս լերինն բոլոր քաղցրահամ ջուր անկանի: Անցեալ ապա ընդ առհաւոր լերինս հասաք ՚ի սահմանագլուխ Սիմէլիոյ, Պօղազ կոչեցեալ: Սուտի իջեալ ընդ զառ ՚ի վայր մեծի լերին՝ հասաք ՚ի Պօխաա. աստ է գլուխ Պնաազ գետակին Խաբասուլի. ուրանօր գոյ և համանուն գիւղ (408):

ԽԱՓԼՍԽՕՐ.

475. Անուանի գիւղ Թաւաթից փոքր ինչ հեռի ՚ի ծովածոցոյ. ունի յառաջ և յահեակ կրկին ձորս և բա-

ընեւեր ապաստանեալս : Իսկ յառաջադոյն ժամակէին Յոյնք և ունէին զեկեղեցիս . զի տեսաք առաջի գեղջ բարերարի բլրակ և 'ի վերայ աւերակ հին եկեղեցւոյ երկայն 13 քայլ և լայն 6 . յոր յաճախէին ուխտաւորք 'ի զատկի : Նոյնպէս երևելի ուխտատեղի էր Նշ-ւէս 'ի վեր անդր 'ի կողմն ապաստանինեայց , որ այժմ աւերակ է :

Նա այսմ՝ի սորա գեղջն տեսաք զայլ աւերակ եկեղեցւոյ 'ի մէջ այգւոյ : Նոր հասեալ՝ի բերան անդր ձորոյն տեսաք զարմանալի լերինս և կիրճս , որք կոչին Նշանի տաշ , Մուրճի թէօշէօն , Սարի աղամճըն տէրէսի , և Չօզան գօոլէ էօշէնի , որ է ձոր 'ի մէջ ապառաժ լերանց . մերձ 'ի բերանն բղխի բարեհամ ջուր :

Զարմանալի են գիրք այսոցիկ լերանց , զի զուգաւորեցուցեալ 'ի ձգիլ շառաւիղաց արևու փայլի բոլոր լեառնն իբրև զատակել : Իբրև զի յապառաժս գոյացեալ կան սալիտակափայլ ակունք որպէս անդամանդ , որք ունին յատկութիւն ինչ անդամանդի . տակաւ հրոյ , և մաշեն զապակի , այլ չեն այնչափ կարծր . ձև նոցա է տարանկիւն . զոր և կոչեն Ճանկին թէքէշ էշմաս . որովհետև այս խաւն ապար չինել յայսոցիկ ականց այլև այլ զարդս :

## ՁՈՐԱՆ ԳՈՒՂԻ

476. Է բոլորաձև աշտարակ մեծ 'ի ծայր լերին 'ի մէջ Խափըրխօրի և Իւզիւթի բարձրադիր . զորոյ ներքին տրամագիծ չափեցաք 12 քայլ . իսկ բուն տրամագիծն 20 կանգուն . և արտաքին շրջապատն 64 . բարձրութիւն է 9 գրկաչափ . ունի պատուհանս և մարտկոցս . իսկ դուռն է 'ի ծովակողմն : Տեսաք 'ի մէջ աշտարակին կամարաշէն ներքնատուն , որ թուի լինել ջրշեղջ . յոր գայր առեն ջուրն 'ի լերանց անտի ընդ ստորերկրեայ ճանապարհ : Նոյն սկսանի պարիսպն լայն և հասանէ մինչև ցարևելեան ծայր լերին յերկայն 240 քայլ : 'Ի ծայր անդր գոյր զօրաւոր մարտկոց , և 'ի միւս ծայրն կրկին աշտարակք . որպէս ցուցանեն հիմունք և մնացորդք պարսպաց : Նա որով գան հին գերեզմանք յանտառ քարանց եղելոց 'ի վերայ միմեանց , որ է գործ հին Յունաց :

որ ձգեալ երկայնի 'ի մէջ երկուց լերանց մինչեւ ցծովն Խեր ձուածե. ուր ձգեալ շառաւիղք արեւու գերազանց գործեն զգինին. համգիպակաց բոլորաձեւ լեառն կոչի Փերքէմ գայա: 'Ի մէջ հովտիս տեսաք զուարճալի վայրս բարեբերս եւ ականակիտ աղբիւրս. անուանի այգիս ծաղկահոտ գինւոյ, եւ զմեծաշէն պալատս մեծատուրաց: 'Ի հնումն կոչէր Ստրոյս. զոր Թաթարք կոչեցին Սուտաղ. իբր զի յաջակողմեան մասին նաւահանգստի ոչ այլ ինչ երեւի, բայց եթէ մերկ լեառն եւ ջուր ծովու. որով ասի Սու-Տաղ: Սուտակն համանուն հաւաքեալ 'ի լերանց անտի ողողանէ զայգիս. յոր խառնեալ վտակն Գուարագաշ գնայ 'ի ծով:

479. Նաւահանգիստ Սուտաղի թէպէտ գեղեցկադիր է ընդարձակ է, այլ չէ ապահով յարեւելեան եւ 'ի հարաւային հողմոց. զի աջակողմեան թերակղզին պաշտպանէ միայն 'ի հիւսիսային եւ յարեւմտեան հողմոց: Փոքր ինչ հեռի գտանի ատի յարեւմտեան կողմն նաւահանգիստ Ճենովացւոց ամրափակեալ 'ի ժայռից Գոշգայայի եւ Փերքէմ գայայի առ Խըլըճ գայայի վայր ապահով. ուր յաճախէին նաւք 'ի հնումն. որ կոչի Սուտակ լիման:

Թերակղզին է ապառաժ լեառն ընդարձակ ձգեալ ընդ զառիվեր եւ մտեալ 'ի ծով անդր կիսով չափ. յարոյ վերայ շինեալ է զօրաւոր բերդ Ճենովացւոց, որ գլխովին ապահով է 'ի կողմանէ ծովուն, եւ յայլ ամենայն կողմանց ամրացեալ է հզօր աշտարակօք: Ներքին է բոլորաձեւ պարսպապատ. ամենայն շինուածք են 'ի ձեւ գօթացի: Դուռն է մեծաշէն 'ի հիւսիսակողմն բարձր եւ ամրացեալ կրկին ներքնադրամբք եւ երիւք պարսպօք: Սակայն առաջին դուռն հանդերձ պարսպօք քանդեալ է. արտաքոյ դրան է աղբիւրն հին քարաշէն. որոյ ճակատ է միակտուր արձաքար վէմ մեծ եւ 'ի վերայ փորագրեալ պատկեր սրբոյն Գէորգայ. առ ոտով վիշապ, եւ յերկոսին կողմանս անորոշ հին գիր գօթացի. երկայնութիւն այսր քարի է չորս կանգնաչափ եւ լայնութիւն 2. տեսաք յայլ կողմունս աղբեր քանդակս եւ զարդս:

Երկրորդ պարիսպն եւ դուռն նոյնպէս քանդեալ են, բայց գոն մնացորդք 'ի տեղիս տեղիս. իսկ երրորդն է բուն ներքին դուռն բերդին կամարաշէն մեծագործ

Հանդերձ կրկին բարձրագոյն աշտարակօք. լայնութիւն դրանն է 7 կանգուն։ Իսկ կամարն ընդ պարապոյն յեր-կուս բաժանեալ, է և ունի միջոց վերուստ 'ի վայր ըստ լայնութեան դրանն՝ վասն իջուցանելոյ 'ի վերուստ սա-տի զդուռն արուեստիւ իմն, և ամրանալոյ՝ եթէ հարկն պահանջէր։ Եթէ թշնամին փութայ ինչ հատուցանէր դրան, անդէն զայլ դուռն պատրաստական իջուցա-նէին 'ի տեղի նորա կամարանին 'ի միջոյ կրկին պարըս-պաց։ 'Ի վերայ աջակողմեան աշտարակին տեսաք ար-տաքուստ սպիտակ վէմ շրջանակաւոր. բայց քանդակն խանգարեալ է։ Իսկ ներքին կողման վէմն և արձանա-գիրն ամբողջ կայ հին գօթացի գրով. 'ի ներքոյ նշան Ճենովացւոց, 'ի միջավայրն խաչ. և յերկոսին կող-մանս զոյգ մի թիկնոց. 'ի մի կողմն առիւծ, և 'ի միւս կողմն սանդխաձև նշան։

Սոյն նմին օրինակի 'ի վերայ ձախակողմեան աշտա-րակին գոյր հին քար խաչազարդ՝ գեղեցիկ շրջանակօք։ Յերկուց կողմանց դրան սկսանին կարգաւ 'ի պարիսպն քառակուսի աշտարակք, թուով 17, ոչինչ կարի հեռի 'ի միմեանց բոլորեալ զքերդն, որք հասանեն ծովէ 'ի ծով յերկոսին ծոցս թերակղզւոյն։ 'Ի վերայ հիւսիսակող-մեան մեծի աշտարակին տեսաք տապան մեծ շրջանա-կաւոր՝ փորագրեալ 'ի միջավայրն խաչ 'ի մէջ բոլորակի. յերկոսին կողմանս առիւծանման և մարդանման նշանք. 'ի միւսում սանդխաձև նշան Ճենովացւոց, և գիր անվերծանելի։ Առ որով 'ի պարսպի անդ գտաք զայլ վէմ, և 'ի վերայ խաչ և գիր այսպէս. ΤΗΡΜΑΞΑ-ΡΗΑΣΜ.

Տեսաք 'ի մէջ բերդին զերկու մեծամեծ ջրշտեմս կա-մարաշէնս, ուր հաւաքէին ջուրք անձրևաց 'ի քարա-պատ յատակէ անտի։ Մին է միակամար և խորին. իսկ միւսն է կրկնակամար յերկուս շտեմարանս բա-ժանեալ, երկայն 13 կանգուն, լայն 11, և բարձր 30։ Եկեղեցի բերդին է յարևելեան կողմն բոլորակին քա-րաշէն. բայց զկամար գաւթին և զանգակատան քան-դեալ են Թաթարք։ Տեսաք 'ի հարաւային կողմն վայր Միհրապի. յորմէ յայտ է թէ Թաթարք 'ի մզկիթ փոխեալ էին. և այժմ է եկեղեցի Ռուսաց։ Առաջի դրան գոյ վաղեմի վէմ, և արձանագիր անվերծանելի. որ թուի լինել վէմ պարսպին։ 'Ի մերձակայ աշտա-

րակլին. անտառք նոյնպէս արձանագիր և նշան Ճենո-վացւոց:

480. Պուղկոլլէ է մեծագործ աշխարհին աշտարակ իբր ներքնաբերդ. բաղմեալ 'ի գլուխ բերդին 'ի բարձրա-ւանդակի. որ է իբր մեծ հրուանդան երկայնեալ 'ի ծովն, ուղղաղիծ ձգեալ բարձր վերուստ 'ի վայր: Նոյն անմատչելի աշտարակ ունէր առնն ծածուկ ճանապարհ կուեալ յապառաժի, որ յանհնարին բարձրութենէ անտի իջանէր մինչև 'ի ծովն առ 'ի փախչիլ 'ի նաւս: 'Ի զառ'ի թափի է միջնապարիսպն հանդերձ աշտարա-կօք. ուստի սկսանի հարաւային պարիսպն և հասանէ մինչև ցարևելեան մեծ աշտարակն, ուր յառաջ գոյր սանդուխք կամարաշէն, որ հանէր յերկրորդ յարկ նոյն աշտարակին: Մւրանոր եղեալ տեսաք 'ի մէջ մեծի պարսպին զջրանցս, որ հասանէ մինչև ցներքնաբերդն բարձր: Պատմեցին մեզ թէ 'ի հանդիպակաց լեռնէ, որ կոչի Պուղկայ, գայր ջուրն մինչև ցաշտարակն մեծ:

Մուտող քաղաք 'ի հնումն էր յարևմտեան կողմն Թերակղզւոյն, ըստ որում տեսաք զհետս շինուածոց, ուր այժմ շինեալ են բնակարանս պահապան զօրաց: Մերձ յաջակողմեան ծոց Թերակղզւոյն տեսաք զաւե-րակս հին պարսպաց, որ սկսեալ 'ի լեռնէ անտի հա-սանէր ցաշտարակն մերձակայ և հատանէր զանցս ծո-ցոյն: Նոյն քառակուսի բարձր աշտարակ է արտաքոյ բերդին ամրաշէն և զօրաւոր կառուցեալ 'ի պաշտպա-նութիւն ծոցոյն և միանգամայն բերդին: Մուտն է յարևելեան կողմն 'ի բարձր կայի. ուր մտանէին 'ի պարսպէ անտի, որ պարտի լինել լայն: 'Ի ճակատի անդ է մեծ տապան, գոթացի գրուածով, հանդերձ նշանօք Ճենովացւոց:

Նա ստորև գոյ փոքրիկ մատուռն կամարաշէն. յոր-մունս տեսաք զպատկերս սրբոց, և 'ի հարաւային կողմն պատկեր աւետման: Փոքր ինչ տարակաց առնի տե-սաք զաւերակ հին բաղանեաց. լերինք և տեղիք այսր կողման գլխովին մերկ են. ուր զննեալ տեսաք զհանքս երկաթոյ: Նորանոր բնակլին գերմանացի գիւղականք 'ի լուսերականաց. մերձ 'ի գիւղն զան երկու հին փոք-րիկ եկեղեցիք լքեալք անխնամ:

481. Չախակողմեան ծոցն է մեծ նաւահանգիստ Մուտողի առ բերդիւ ընդարձակ և գեղեցկագիր, այլ

ոչ ապահով. ուր նշխարք ձորին և մեծ հօքիան. առաջի սկսանելոյն այգեստանեայք և ուղղակի հատանեն մինչև ցԽաթարաբախտաց լեառն։ Յարևմտեան կողմն է գլխաւոր բնակութիւն և շուկայ Սուսադի. ուրանոր յաւուրս մեր սկսան շինել եկեղեցի Յունաց 'ի քարանց անտի հին եկեղեցւոյն, զոր գտին առ եզր ծովուն. յորս առ-ւաք հին սիւնս, կամարս, և վերնախարիսխս այլովքն հանդերձ, որ պարտ էր լինել երևելի եկեղեցի. յորմէ մակաբերի թէ գոյր բնակութիւն 'ի հին նաւահան-գիստն Ջենովացւոց (479)։

Աստի 'ի վեր դէպ 'ի յարևմուտս էր Այասու վանք Յունաց, մերձ յաղբիւր բարեջուր, յորոյ անուն մինչև ցայժմ նոյն անգի այնպէս կոչի. գոյ և հին եկեղեցի սրբոյն Գէորգայ, ուր դնան ուխտաւորք 'ի Յունաց։ Մերձ յաղբիւր անդր երևին որմունք հին եկեղեցւոյ. և 'ի վեր քան զԱյասլա է լեառն Մանճըլ գոյս. առ Փերչէմ գայայիւ. որ տիրէ 'ի վերայ Սուսադ լի-մանի հին նաւահանգստին։ 'Ի ծովակողմն գոյ Կէօչ-գաղ բլուր Թուխ, որ ունի յատկութիւն ինչ մարմարիոնի։

Յայս կողմն Սուսադի էր 'ի հնումն թաղն Հայոց, ուր գոն եկեղեցիք Հայոց և վանք սրբոյն Գէորգայ, որոյ կամար քանդեալ է. իսկ 'ի վերայ դրան գոյ նոր գիր * Յիշատակ է սուրբ խաչս իզմիրցի անդրէասի որդի եղիայի‖։ Ուր երևին հետք պարսպաց և սենե-կաց։ Գոյր անդ գիւղ Հայոց և եկեղեցի Ածածնի. երկիրն կամ այգին ցարդ է 'ի ձեռս Հայոց Խրիմու, թէպէտ այժմ չիք անդ ժողովուրդ։ Տեսաք վէմ յա-ռանձին տան, յորոյ վերայ դրեալ կայր յիշատակարան եկեղեցւոյ սրբոյն Ստեփաննոսի։ Յորմէ մակաբերի թէ յետ զօրանալոյ Հայոց 'ի Կաֆէ, հատուած մի 'ի նոցանէ առաքեցին Ջենովացիք առ 'ի պաշտպա-նութիւն տեղւոյս։

Աստի սկսանի առապաժն Փէրչէմ գոյս. և հանդի-պակաց արևելեան լերինք կոչին Ալէօ տաղլարի։ 'Ի մէջ լերանց տեսաք զեկեղեցին սրբոյն Գէորգայ. առ որով են արքունի այգեստանեայք վայելչագիւրք, որք կոչին Ալըխըր. ուստի յորինէ վերակացուն զազնիւ գինիս և առաքէ յարքունիս Բէգլերպէկեայ, քանզի ոչ միայն գինի տեղւոյս՝ այլև բոլոր կողմանցս է ծաղ-կաւհաց և յարգի ընդ բոլոր Ասիա։

ճանապարհին Մ'Ռէֆէի ։ Ի միւս քաղաքին երեւին մեծ աւերակք կրկին մզկիթաց, և երկու աւերակք մեծ եկեղեցեաց Հայոց ․ որք թուին լինել մեծագործ ուղղանկիւնի եկեղեցիք գմբէթաւորք ․ ունէին նախագաւիթս և գաւիթս ըստ հին հայկական ճարտարութեան ։ Հայք բազմութեամբ աստ բնակէին, և ծաղկեցուցին զքաղաքն մեծամեծ շինուածովք, որպէս պատմեն յեշատակարանք ․ Թէպէտ այժմ և ոչ իսկ քարինք և հետք մեծագործութեանց նոցա երեւին ․ զի մեծաւորք քանդեալ փոխադրեցին այլուր և եդին 'ի նոր շինուածս ։

Նոյն՝ մնացեալ մեր 'ի քաղաքամէջն՝ գտաք զայն գեղեցկագիր և բարեձեւ ․ առաջի իւր ունի ընդարձակ դաշտ, ընդ որ անցանէ Սեբէն գետակ ․ և բնակիչք են Հայք, որք ունին առանձին պարգեւագիր հանդերձ արտօնութեամբք, զոր ետ Պօղոս կայսր յամի 1799 ․ հոկ ․ 28 ․ որ սկսանի ․ * Հաւատարմագունից մեր քրիստոնէական օրինի հպատակացն քաղաքին Էսկի Ղրիմու, որք 'ի դաւրի բնակեցեալք, մեզ կէրպի կողմանց ընդհանրապէս, և ամենեցուն յատուկ մերս կայսերական ողորմածութեան բան || Եւ ․ որով ընկալան 12 հազար տէսէթին երկիր ․ բայց Պուլղար գիւղականք առին զմասն ինչ 'ի նոցանէ և բնակիչ եղեն միոյ կողման (488) ։

Այս հրովարտակ պահի 'ի դատարանի անդ Հայոց, առ որով է և դպրոց մանկանց ։ Ուրանօր է շուկայ քաղաքին և առընթեր մեծ աղբիւր քարաշէն և բարեձեւ, շինեալ 'ի մեծ զօրապետէն Տէշիֆ (417) ։ Այժմեան եկեղեցի է հնաշէն և անշուք կառուցեալ քարընկեց մի հեռի 'ի դաշտին յանուն սուրբ Նշանի ։ 'Ի գերեզմանատան տեսաք տապան գրեալ ․ * Այս է տապան հանգստեան, որ է անուն Նիկողայոսին, և քրոջն սիրմայ խաթունին ․․․ թվ ․ ռՀԲ ին || (1623) ։ Առընթեր սորին տեսաք հին գերեզման օրօրոցաձեւ՝ հին երկաթագրով ․ զորմէ ասեն լինել տապան նահատակի ։

Տեսաք 'ի սմին դաշտի երկու աւերակս եկեղեցեաց ․ վերջինն է յանուն սրբոյ Կարապետին և առաջինն՝ սրբոյն Ստեփաննոսի, որոց միայն որմունք կանգուն կան զուրկ յամենայն վայելչութենէ ։ Այս

53₁. Ի գեղեցիկ դաշտ Ռէֆէլի ի պաղպաջ ծառովք յօրինեալ ընդ ուրախութեան ձեւոյ 'ի բլրի անդ հանդէպ ծովածոցոյն մերձ 'ի ծով Ասկաւ հեռի 'ի քաղաքէն : Սուրանօր Շահին քերկէյ խանին կառուցեալ էր մեծ պալատ, և առ նմին փողերանոց : Արդ նստեալ նորա առ ժամանակ մի եհաս դշխոյն. զոր Ռուսք հիմնայատակ արարին : Իսկ այժմ դրան պարտիզին կանգնեալ կան երկու մեծամեծ կձեայ առիւծք. զոր կանգնեալ էին Մենէշլեցիք 'ի ծովեզերս Թրաւմանու. այլ 'ի վերջոյ աստ փոխադրեցան (544) :

Ըստանօր եղերի նաւահանգիստն Ռէֆէլի. նմին իրի զննեալ տեսակք, զի բազում անդիք ծանծաղ են : Սեւ անպատկառ են ձկունք և ոստրէք. յորս գտանին բազում անգամ և մարգարիտք անողորկք և մանրահատք. 'ի միումն գտանի երբեմն 20 և մինչև 30 :

53₂. Մերձ 'ի բերան նաւահանգստին յաջակողմեան ծովեզերս գոյ փոքրիկ կղզի, որ իբրև սար պատըսպարէ զնաւահանգիստն. և կոչի Կէէկ աթլամադ : Իսկ զի եղծիկ մի ասեն փախուցեալ յորսորդաց՝ դահավէժ անկեալ է 'ի լեռնէ անտի յայս կղզի : 'Ի հանդիպակողմն նաւահանգստին գոյ այլ սար Ղեալչեա պատնէ կոչեցեալ, որ է արևելեան քիթ նաւահանգըստին Ռէֆէլի : Ստոր մինչև ցԿէլիկ աթլամայի հաշուեն 36 մղոն սամ. նոյնչափ դնեն մինչև ցՊարասէղն (53₁) :

Օծնեալ տեսակք 'ի բարձրագոյն լեռնէ անտի զծոց և զգաղաւկ Կէլիկ աթլամայի սարին, որ իբրև երկայնաձիգ հրուանդան խառնարհի ընդ արևելս, և զծոցն տափահով առնէ 'ի հարաւային և յարևմտեան հողմոց : Ասեւի թէ այն կղզի էր ծայր նոյն իսկ սարին, և ապա բաժանեալ անտի երկրաշարժութեամբ : Ամա յաջորդէ միւս սարն փոքրիկ Մանդանա պատնէ. 'ի վերայ լերին տեսակք զեկեղեցին Յունաց Ըսկէա, նորոգեալ յետոյ : Իսկ ամա յաջորդէ այլ փոքրիկ քիթ Ըսկա պատնէ մերձ յարգելանոցն 'ի ծոցամիջի անդ (51₂) : Տեսակք 'ի լեռնէ անտի մթնագոյն մեծ լեառն Գորբաղաղ. որ երկայնեալ ձգի 'ի ծով անդր մերձ 'ի Խյօզ : (48₂) :

մարմարեայ ։ Այս կուռք ունէր աչս և ատամունս․ զոր յիշէ Սորաքամն (543) ։

Տեսանի նաև առաջի բերդին ՚ի մէջ ծովու զմեծագործ ամբարտականն շինեալ ՚ի Նախոնի ժողովրդենէ առև ապահովութեան նաւուց՝ երկայն 250 քայլ ։ Այժմ ջուրն քայքայեալ է զարտաքին քարինս․ ամբողջ կայ յատակն ՚ի մէջ ծովուն ։

Հանդէպ բերդին է մշտահոս աղբիւր քաղցրաջուր, և առ նմին պալատ քաղաքապետին ։ Առաջի սկսանի շուկայն և այժմեան քաղաքն Սէրճ միակարգ երկայնեալ դէպ ՚ի դաշտն մեծ․ ուր յերկուց կողմանց շինեալ են տունք և օթևանք․ անդ է և եկեղեցին Յոհնայ ։ Առ բերդին գոյր հին շինուած և գեղեցիկ արձան հիւպատոսի տեղւոյն ։ Բազում արձանք խարխուլք և սեղանք մնացորդք նախնի շինութեանց եդան ՚ի հիմն եկեղեցւոյն Յոհնայ․ որպէս և յայլ շինուածս ։ Գտաւ երբեմն մարմարիոն վէմ երկայն երկու կանգուն և լայն մի․ փորագրեալ էր ՚ի վերայ յիշատակագիր․ ATAΘHTTXH․ զոր հանեալ ՚ի յատակէ աւազանին հին աղբեր եդեալ էին ՚ի միում տան ։

Այս վէմ 7 թզաչափ ցուցանէ սեղան ինչ կոչեցեալ ՚ի նախնեաց Triclinium․ որ ՚ի հն․ էր ՚ի սրահի՝ ուր կային 3 թիկնաւոր բազմոցք․ յորս նստէին յաւուրս տօնից ։ Գտաւ յայս քաղաք ազնիւ քար մի մեծ, յորոյ վերայ փորագրեալ էր զոհագործութիւն ինչ հեթանոսաց առաջի տաճարի միոյ․ որոյ 4 սիւնք երևին, և ՚ի ճակատ անդր քանդակեալ կայ գլուխ մարդոյ, և յերկուս կողմունս երկու դլփինք ։

՚Ի գաւթի անդ երևի եզն մի պսակազարդ և առաջի նորա սիւն հաստեալ և առ նմին 6 զոհարարք զգեստաւորեալք, առաջինն ունի ՚ի գլուխն զարմնիդեայ պսակ, և յաջոյ ձեռին այլ պսակ․ իսկ ՚ի ձախն սուր երկսայրի ։ Մերձ առ նմին պատանի պսակաւոր ունի ՚ի ձեռին անօթ հրալիր, ուր գոյ այլ զոհարար՝ լախտ ՚ի ձեռին․ ՚ի միջավայրին կայ քուրմն մօրուսաւոր ծեր ծածկեալ գլխով․ և առաջի իւր այր զօրաւոր՝ լախտ ՚ի ձեռին․ իսկ զկնի՝ քրմին կայ քրմուհի մատուցանող զոհին ։

540․ ՚Ի վերայ աջակողմեան նաւահանգստին է լեառն գեղեցկադիր․ յորոյ վերայ երևին մահարձանք առա

ճախեն նաւք 'ի ծաղկեցուցանել զվաճառականութիւն տեղւոյս ։

Յամի տն 1820 արտաքոյ քաղաքին փորեալ զբլրակ մի՝ գտին տապան միակտուր, որ էր դուռն գերեզմանի, յոր մտեալ տեսին անօթ դատարկ և ննջարան յանփուտ փայտէ, պատեալ 'ի տեղիս տեղիս ոսկի թիթեղամբ, և 'ի վերայ 4 խարխաց 4 ոսկի արձանք մանկունք. իսկ 'ի մէջ ննջարանին ոսկի պսակ օձապատ կրկին շրջանակօք. այս էր գերեզման հին թագաւորաց Ոսփորի ։ Դարձեալ գտաւ յայլ բլրի ոսկի խաչ և ոսկի շղթայ, զորս տարեալ 'ի Պետերբուրգ եդին յարքունի գանձատան ։ Թողում յիշել զայլ հնութիւնս, որք անպակաս ելանեն 'ի հողոյ. և զորս տեսաք 'ի ԿԷՖԷ (515) ։

## ՎՈՍՓՈՐՈՍ ԿԻՄՄԵՐԵԱՆ

542. Է անուանի նեղուց 'ի մէջ Ասիոյ և Եւրոպիոյ, կամ 'ի մէջ Կերչի և Թամանու. որոյ հարաւային բերան 'ի կողմն Սեաւ ծովու բացեալ լինի առաջի Պղըլղաշին, և անձկացեալ առաջի Ենիգալէին երթայ ցհիւսիսային բերանն յԱզախ ծով ։ Ուրանօր տեսաք 'ի տեղիս տեղիս աւազուտ պատճառելոյ 'ի տղմոց Կուպանին, մանաւանդ 'ի կողմն Ասիական, ուր ծանծաղ է յոյժ ծովն և վտանգաւոր նաւուց ։ Երկայնութիւն նեղուցիս 'ի հարաւոյ 'ի հիւսիս գրեթէ 40 վերստ. իսկ լայնութիւնն է անհաւասար. 'ի Կերչէ մինչև ցԹամանն է 28 վերստ ։ Մեծ ծոց նորա առ րածի դէպ 'ի Թէմրուք իբր 40 վերստ. բայց առաջի Ենիգալէին 7. և երբեմն 4 մինչև ցասիական ցամաք լեզուն, որ ասի Չէվէնայա քօսսա ։ Այս երկայնանձիգ ցամաքք են պատճառք 'ի գետոց անտի (Պէտր. 8 ։) Հոսանք այսր նեղուցի միշտ է երևելի 'ի մակերևոյթն, և գնալով դէպ 'ի բերանն անձուկ՝ ձևանայ երիզ ինչ յերեսս ջուրց. ուր համդիպի դեղնորակ ջուր Ազախու՝ երկնագոյն աղի ջուրց նեղուցին ։ Առաւել խորքն տեղին է 17 ոտն, 'ի հեռաւորութեան միոյ վերստի 'ի բերդէն. ուստի անցեալ 'ի ծովն Ազախու պակասի մինչև ց14 ոտն ։ Ուր յաճախ են պատուական մեծամեծ ձկունք. մանաւանդ Սուռինա

կամ Խուլուս կարի մեծ ձուկն. զոր հանեալ 'ի մաքտի գործեն Զէյթ, և տանին յամենայն աշխարհ : Քանզի այս ձուկն ձմերէ 'ի խոր տեղիս 'ի ծովու Մապաղայի, և 'ի գարնան խմբովին գնայ յԱզախ ծով, թափել զձուս յեղեգնուտս Տօնաւիս գետոյ :

543. Ցամաք կղզին Թամանու երկայնեալ 'ի ծով անդր դէպ 'ի Կրամիշ պուռնի· առաւել մերձ էր յառաջ յեւրոպեան ցամաք Կերձի. այլ զկնի երկրաշարժութեան՝ մեծ մասն անյայտ եղև անեն : Գոյ փոքրիկ կղզի մերձ 'ի Կրամիշ պուռնի, որ յառաջ կցեալ էր ընդ ցամաք 10 վերստ հեռի 'ի Կերձէ : Սաստիկ է յոյժ ցուրտն Սևծովու 'ի ձմերան. մինչ զի յաճախ սառի ողջոյն նեղուցն, և տուեալ անցանեն յայնկոյս. որպէս եղև յաւուրս մեր 'ի 1825 : Պատմի թէ Միհրդատ մեծ յաղթութիւն արար 'ի վերայ սառուցից նեղուցին ցամաքային զօրօք : Ասէ Ստրաբոն, թէ զօրապետքն թողեալ զնաւամարտսն յամարայնի, պատերազմեցան 'ի ձմերան ընդ գիմմերացւոց որք էին ձիաւորք. Գէէր է :

Պատմէ նա ինքն թէ * Երատոսթէն աւանդեաց „ մեզ յիշատակարան ինչ գրեալ 'ի վերայ պղնձի անօ- „ թոյ եղելոյ 'ի տաճարն Ասկղէպիոսի 'ի Պանդիկա- „ փէան : Այս անօթ բեկեալ էր (աստ) 'ի ցրտոյ, և „ յիշատակարանն էր այս ինչ. Եթէ իցէ ոք որ ան- „ հաւան գտցի սաստկութեան ցրտոյ որ առ մեզ, հա- „ մոզեսցի 'ի տեսանելն զայս անօթ. զոր քուրմն Ստրա- „ տիոս եդ աստ ոչ իբր ընծայ արժանավայել աս- „ տուծոյն, այլ որպէս յիշատակ ինչ սաստկասառոյց „ ցրտոյ ||: Գտաւ ընդ հողով և արձանաքար, որ ցուցանէր զչափ լայնութեան նեղուցին. զոր առեալ էին չուանաւ, յորժամ սառուցեալ էր ծովն :

## ԹԱՄԱՆ կամ ՖԱՆԱԳՕՐԻԱ

544. Ի ցամաք կղզի յայնկոյս վոսփորեան Կերձի յԱսիա, բարեբեր և վայելչադիր պարագրեալ 'ի հարաւոյ 'ի Սեաւ ծովէ. յարևելից 'ի Կուպան գետոյ, 'ի հիւսիսոյ յԱզախ ծովէ, և յարևմտից 'ի Վոսփորէ : Սա գոլով մասն Վոսփորեան Թագաւորութեան,

ունէր 'ի հնումն արքայանիստ հռչակաւոր քաղաք Փա-նագորիա անուամբ կառուցեալ 'ի հին Յունաց. որ յե-տոյ կոչեցաւ Թմուտարական, որում տիրէին Խազարք: Այլ յամի Տն 965 Ռուսս մեծ իշխանն Սվեաթօս-լավ Իգորեւիչ յաղթանակեալ էառ 'ի նոցանէ զայս երկիր: Ապա մն Վլատիմիր 'ի բաժանել զժառան-գութիւն որդւոց իւրոց ետ Թամանն եօթներորդ որ-դւոյն Մստիսլավայ. որոյ յաղթեալ մերձակայ իշ-խանաց՝ հաստատեաց զիշխանութիւն Թամանայ և զայն քաղաք արար իշխանանիստ. ուր հետզհետէ տիրէին Ռուսս իշխանք մինչև ցժամանակս Թաթարաց:

'Ի վերջին ժամանակս գտաւ ընդ հողով հին բեր-դին տապան երկայնաձև Գլեպ իշխանին փորագրեալ յամի Տն 1068. որ տիրէր անդ յամի 1064. այլ 'ի նմին ամի հալածական եղև 'ի Ռօսթիսլավայ իշխանէ. բայց զկնի մահու նորա անդէն տիրեաց Թամանայ. ապա յետ 4 ամաց չափեաց զկիրճն՝ որպէս գրի 'ի վե-րայ այնր տապանի այսպէս. „Յամի 6576 (Տն 1068) ինտիկտիոնի 6. Գլեպ իշխան չափեաց զծովն 'ի վերայ սառուցից 'ի Թամանէ մինչև ցԿէրճ 8054 սաժէն (եռկանգնաչափ)„:

Այժմեան Թամանն է բերդաքաղաք քարաշէն ամ-րացեալ ընդդէմ Չէրքէզից. ուր է պալատ մեծ զօ-րապետին Չեռնօմօռսքի խազախաց Ռօշչէվոյի (382). նաև բնակութիւնք զինուորաց առ ծովեզեր, որպէս տեսաք:

Ուրանօր 'ի հնումն եղեալ էին երկու առիւծք վե-նետիկեցւոց. տեսաք և քանի մի դրամս (531):

Յառաջագոյն կային 'ի սմա բազում ամրոցք և բնակութիւնք. այլ այժմ չիք: 'Ի մէջ աւերակաց հին Թամանու արտաքոյ ամրոցին գոյր մեծ աւազան սա-լաքար հին ճարտարապետական ձևով և արձանագիր յունարէն: Ուր յառաջ կային մեծամեծ պարտէզք և այգիք. ամենայն ուրեք երևէին մնացորդք հնու-թեանց, կիսարձանք և սիւնք ընդ վերնախարխաց 'ի սպիտակ մարմարիանէ:

Այս երկիր 'ի հն. Թմօք կոչեցեալ. է եռանկիւ-նաձև բաժանեալ իբր յերիս ցամաքս կղզիս 'ի Թամանէ 'ի Թէմրուք և յԱնապա. զոր տէրութիւն Ռուսաց ետ 'ի բնակութիւն և 'ի պահպանութիւն Զափօռօժքի

տար երեւի ինքնաղաղանդ ըլուր տղմոյ բոլորշի բարձր երեք մարդաչափ. 'ի միջավայրին է երեւելի բերան ինքնաբուղխ Պուլղա ձայնեալ, յորմէ բղխէ տիղմ թոյլ եւ ցուրտ յոյժ. տրամագիծն է երկկանգնաչափ: Որ երբեմն երբեմն սաստիկ ցայտէ ձայնիւ մեծաւ. եւ տիղմն' է զի մարդաչափ, եւ է զի կանգնաչափ բարձրանայ: Ունի զերկու մեծ ցայտս 'ի կողմն արեւելեան միասնաչափ տրամագծիւ եւ զերկու փոքունս 'ի կողմն արեւմտեան: Է զի մին եւ է զի միւսն ցայտէ. է զի մեծաձայն, եւ է զի մեղմաձայն: Այս տիղմն համբաքին հոսի 'ի վայր միշտ յարեւմտեան կողմանէ, եւ ցամաքեալ առ սակաւ սակաւ լինի իբր կաւ մոխրագոյն. 'ի սկզբան անդ ցոլանայ փայլեալ յարեգակն: Հոսումն տղմոյն բաժանի 'ի զանազան ձիւղս գնալով իբրեւ 300 քայլ հեռի: Նայց յամենայն ընթացս միշտ հոսի ընդ արեւմուտս եւ ոչ երբեք դառնայ յարեւելս:

Բնութիւն այսր տղմոյ կարի իմն սեղմիչ եւ ցուրտ է. մինչ զի առն 'ի մէնջ եդ. զմատն 'ի տիղմ անդր, իսկոյն ցամաքեալ տղմոյն' սկսաւ սեղմել զմատն, մինչեւ դժուարաւ շարժել յօդուածոյ մատին. ապա սկսաւ ցրտութիւնն տարածիլ 'ի ձեռն, անտի 'ի բազուկն եւ ընդ բոլոր մարմինն. 'ի շարժել բանի զմատն, սկսաւ ափն ցաւիլ: Նոյն արտաքուստ բոլորովին սառուցեալ էր ձեռն. եւս եւ բազուկն: Այլ իբրեւ մաքրեաց զմատն 'ի տղմոյ անտի' սկսաւ թմրիլ: Զկնի բազում աւուրց իբրեւ փորձեցաք զցամաքեալ կաւն' սակաւուն պահէր զսեղմիչ զօրութիւնն եւ զհոտն ծծմբայինն, այլ կորուսեալ էր զցրտացուցիչ զօրութիւնն: Դառն է յոյժ համն. զոր եւ մերձեցուցեալ 'ի ծայր լեզուին, ցերկար ժամս աղդէր համն:

Փոքր ինչ ստորեւ գոյ այլ բերան, բայց փոքրիկ իբր կանգնաչափ. սակաւ ցայտէ տիղմն ըստ մեծութեան աչաց, եւ հոսի նոյնպէս ընդ արեւմուտս: Սակայն 'ի հոսիլ անդ փոխէ զընթացս' բաժանեալ 'ի բազում ձիւղս: Թուի թէ ընդ առաջ եղանեն հակակրական նիւթք ինչ: Ընդ տիղմն դառնոյն եւ դեղնագոյն կամ սպիտակագոյն քարինք թքեալք 'ի բերանոյ անտի' թող զայն զի ջերմութիւն արեւու պնդացուցանէ զտիղմն ծանրակշիռ. զոր լուծեալ, եւ եդեալ 'ի նմին զմատն' ցաւ ձգողութեան ընթացաւ:

'Ի վեր անդր երկու երեւելի Թեւք Կուպանին բաժանեալք անկանին յԱզով և կոչին Չերնայա Պրոթոքա, և Գիուզլեյ Ներեք․ ուր գոն և աղէհանք․ միոյն շրջապատն է 4 վերստ։

## ԹԷՄՐՈՒՔ

545. Ի փոքրիկ աւան բարձրադիր և բարեշէն, օդն է բանիւ և ջրով առողջարար․ բնակիչք են Չեռնօմօռսքի խազախք, ունին քարաշէն եկեղեցի։ Շուրջանակի գոն բազում գիւղօրէք․ որոց բարեբեր դաշտք լի են անտառովք և մասամբք ամենայն բարեաց։ 'Ի տեղիս տեղիս երեւին աւերակք հին դղեկաց և մարտկոցաց։ Պուլյայա հեռի է աստի 16 վերստ․ իսկ լայնութիւն երկրին է 12։ 'Ի Թէմրուքէ գնալով ընդ արեւելս 20 վերստ՝ եղերի Ճանապարհ ծովեզեր․ աստի և անդր դառնայ ուղին 'ի ծովէ դէպ 'ի Կուպան և գնացեալ 60 վերստ՝ հանդիպի Խոտկի հին քաղաքին Թմաթարայց, որ Թարգմանի դռնաւոր․ զի աստ իբրև ընդ դուռն հոսի երեւելի Թեւ Կուպանին, և անցեալ ընդ Աշու՝ Թափի 'ի ծով Ազախու, ընդ որ անցանեն լաստափայտիւ․ զոր Թմաթարք կոչեն Խոբրւոկոսյն և Խազախք Փոստեւոյ․ յի հոսանս։

Աստի գնալով ընդ երկայնութիւն Կուպանին 100 վերստ՝ հանդիպի Եկատերինոդար նոր գլխաւոր քաղաքին Չեռնօմօռսքի խազախաց․ ուր գոն 1000 տունք հանդերձ քարաշէն եկեղեցեաւ․ ուրանօր լինի տօնավաճառ։ Աստ յառաջագոյն էր անտառ․ զոր հատեալ խազախք շինեցին քաղաք։ Գլխաւորն նոցա Չ[illegible] կոչեցեալ․ որ է ճենճեալ մայոր, նստի 'ի Թաման (544)։

Աստի մինչև ցԿապա քաղաք ընդ երկայնութիւն Կուպանին է 40 վերստ․ և անտի մինչև ցԳէօրգիեսկա մայրաքաղաք է 260 վերստ (608)։

## ԿՈՒԲԱՆ կամ ԱՆԹԻՉԻԹԷՍ

546. Ի երեւելի գետ հոսեալ 'ի կողմանց Կովկասու յապառաժէ անտի ձայնելոյ Էլբրուս գոյս 250 Վերստ հեռի․ ուր է սահման կառավարութեան Կով-

Հանդերձ բերանոյ նեղուցին, տեսանք զՀինն մեծի աշտարակին, զոր այժմ կոչեն Պուրճողլի. որոյ տրամագիծ է 12 կանգուն. որ կառուցեալ էր մեծահատոր վիմօք կապելովք կապարաւ: Սա էր քիթ ձախակողմեան նաւահանգստին Սերձի. որում յաջորդէ քիթն Պուրգապատան, որ երթայ միանայ ընդ սարին Սենիգալեի: Սա և անդ յայտնեցան 50 գերեզմանք նախնեաց: Յառաջագոյն ցայս վայր հաստանէր տարածումն հին Բանդրգադիէմնի, ուր էր և խրամ. ուստի ելին բազում անօթք կաւեղէնք և մնացորդք նախնի շինուածոց: Այժմ առ տեղեաւս են այգիք. այլ առ պակասութեան խնամոց գինին չէ 'ի համարի:

Բերդ՝ Սենիգալէ հեռի է 'ի Սերձէ 11 մղոն, կառուցեալ 'ի հիւսիսային անկեան Թերակղզւոյն Սերձի, և 'ի բերան ծովուն Ոգախու: Այս ամրաշէն բերդ է գործ Օսմանեանց շինեալ 'ի վերայ բարձրադիր ժայռի: Ի կողմանէ ծովուն երևի բազմանկիւնի անկանոն պարսպապատեալ 'ի քարաշէն պատնշաց հանդերձ մեծամեծ Թնդանօթիւք: Դուռն բերդին է 'ի հարաւակողմն. առ որով է մշտահոս աղբիւր քաղցրաջուր, որ հոսի յերկոսին կճեայ աւազանս. որք էին հին գերեզմանք նախնեաց բերեալք 'ի Թուամանէ: Ի հիւսիսակողմն այսր բերդի 'ի հնումն գոյր մարտկոց և հին քաղաք. որպէս և 'ի հանդիպակաց ցամաքն Թուամանական 12 դղեակք (Պոլ. 187):

Քաղաքն Սենիգալեի է մերձ 'ի ծովն երկայնանիստ, որպէս և շուկայն. այլ շինուածքն են անշուք և բնակիչք Յոյնք ձկնավաճառք. որպէս և բնակիչք Սերձի: Պալատ բերդակալ իշխանին ցուցանէ զմնացուածս հին հնութեանց. ուր գոյր վէմ երկայն 6 Թզաչափ, և լայն 2. նաև այլ վէմ 4 Թզաչափ: Սա և անդ կային գեղեցիկ սիւնք և աղբերակունք. ջուր միայն էր ձիթախառն:

Յառաջագոյն կային աստ և Հայք, և ունէին եկեղեցի յանուն սրբոյն Յակովբայ, որպէս տեսանք զտեղին 'ի քաղաքամիջի անդ. ընթերցաք այլուր զյիշատակարան 'ի վերայ խաչին, որ ասէ. * Յիշատակ է սուրբ
„ խաչս 'ի դուռն Սենկիրղալեի որ Յակոբին. Թվին
„ ՌՃԻԴ ||: Այսելչադիր է եկեղեցին Յունաց կառուցեալ 'ի բարձր կայի յանուն նշման Ածածնին, կա-

մարտչէն և պայծառ ։ Ունի գեղեցիկ կաթուղիկէ 'ի վերայ սեանց. զոր մզկիթ արարեալ էին Թաթարք. առ որում գոյ դպրոց վասն յոյն մանկանց ։

ԹԱԳԱՒՈՐՔ ՎՈՍՓՈՐՈՍԻ

551. Սոքա թէպէտ տիրէին մեծագոյն մասին Վոսփորի, և իշխանութիւն նոցա սկսեալ 'ի Կիմմերեան Ոսփորոսէ ձգէր մինչև ցՈսփոր բիւզանդեան. սակայն թագաւորանիստ քաղաքք էին Փանդիկապէոն և Փանակորիա ։ Իշխանութիւն նոցա 'ի սկզբան անդ չէր ընդարձակ, սկսեալ 'ի լերանց Կովկասու հազիւ հասանէր 'ի ծոց Խէֆէի ։ Եւրանոր Սաւրոմատ արար պատերազմ ընդ Խերսոնեացւոց. իսկ ապա միւս Սաւրոմատ ոչ հաճեալ ընդ որոշումն սահմանաց՝ յարոյց պատերազմ. այլ 'ի պարտութիւն մատնեցաւ ։ Որով ստիպեցան Վոսփորացիք յետս ընկրկել զսահմանս տէրութեան իւրեանց մինչև ցԿիպերնիդոս 40 մղոնաւ հեռի 'ի Ոսփորէ ։

Ըստ պատմութեան Դիոդորոսի առաջին բնակիչք Ոսփորի եղեն հին յոյնք Միլեսացիք, և առաջին թագաւոր իւրեանց կոչեցաւ Արքէանակտիդ. այսինքն առա- ջին գլուխ, որ նստաւ թագաւոր 480 ամօք յառաջ քան զՔՍ. որում յաջորդեաց Է Արքէանակտիդք. և ապա՝ Ա Սպարտակոս յամի Հռովմայ իբր 309 թագաւորեաց զամս 7 ։

Սելևկոս տիրեաց զամս 4 ։

Բ Սպարտակոս թագաւորեաց զամս 20 ։ Սորա ընդարձակեցին զտէրութիւնն մինչև ցԿոնստա ։ Սօթիրոս [illegible] տիրեաց զամս 14. և հաստատեաց զթագաւորութիւն իւր. և այնչափ ծաղկեցոյց, զի Ոսփորացիք յետ մահուան նորա պաշտէին զարձան իւր՝ կոչելով զնա փրկիչ ։ Սա պաշարեաց զԹէոդոսիա. այլ ոչ կարաց առնուլ. գոյ առ մեզ դրամ սորա պղնձի (1) ։

Լևկոն որդի Սօթիրոսի [illegible] յաջորդեաց հօրն 393 ամօք յառաջ քան զՔՍ և 40 ամ թագաւորեաց քաջութեամբ և խոհեմութեամբ. էառ զԹէոդոսիա, և եհան անտի 2 միլիոն և 100 հազար չափ ցորենոյ ։ Սակաւ թագաւորք հաւասարեցին մեծութեան և արդարութեան սորա ։

Դ. Սատրապ պայազատեաց, այլ յաղթեալ 'ի քերսոնացւոց առեալ եւս. մինչ զի 'նոքա տիրեցին միոյ մասին Թերակղզւոյն Կերճի յամի Տն 292. որք եւ չափանի յօգնութիւն մեծին Կոստանդիանոսի, եւ յաղթեցին Սկիւթացւոց մերձ 'ի Դանուբ գետ. նաեւ 'ի պարգեւի մասին ընկալան 'ի կայսերէ զոսկի արձան ծածկեալ կայսերական վերարկուաւ.

Ե. Սատրապ յաջորդեաց վերնոյն. ունիմք զպղնձի դրամ սորա, որպէս եւ նախորդին (18).

Զ. Ռեսկուպորիս պայազատեաց. որ ունի դրամ հատեալ յամի Հռ. 1073.

Է. Սատրապ. եղեւ վերջին թագաւոր Ոսփորոսի. քանզի յամի Տն 376. Սարմատացիք զօրացեալ խապառ տիրեցին, եւ 'ի վերջ հատուցին զթագաւորութիւն Ոսփորոսի.

Դրամք Վոսփորական Իշխանութեան.

555. Տեսաք զազգմատեսակ դրամս այսր իշխանութե, որք հատեալ են յայլեւայլ ժամանակս յանուն թագաւորաց եւ քաղաքաց. որք եւ գտանին առ մեզ, բայց շատք պակասին. եւ այլք 'ի յայտ գան հետզհետէ. յորս յառաջ տեսանին եւ գեմք Կայսերաց Հռովմայ. որք Ը. ձեռամբ ունէին զՈսփոր. զդրամս զգլխաւորաց դիցուք 'ի կարգիս.

1. Դրամ պղնձի մեծին Սօթիրոսի Թասիոնի. յառաջին երեսն տպագրեալ կայ մեծադէմ գլուխ ծաղկապսակ երիտասարդի, եւ 'ի միւսն երիտասարդ կանգուն լախտ 'ի ձեռին եւ գիր ΗΡΑΚΛΕΥΣ ΣΩΤΗΡΟΣ ΘΑΣΙΩΝ. յն Իրակլէոս Սօթէրոս Թասիոնծ.

2. Դրամ տն Պէրիսատ արքայի. 'ի մի կողմն է գեմք անմօրուս՝ գլուխն բաց. 'ի միւս կողմն նստեալ այր առջաւարտաւոր 'ի ձեռին փոքրիկ կուռք. առ որով եռաժանի եւ գիր կողմնակի. ΒΑΣΙΛΕΩΣ ΠΑΙΡΙΣΑΤΟΥ. յն Թագաւորի Պէրիսադի.

3. Դրամ տն Միհրդատայ. 'ի մի կողմն գլուխ ահեղադէմ անմօրուս եւ հերապանծ. եւ 'ի միւս կողմն ծաղկեայ շրջանակ. 'ի միջոցին եղնիկ արածող 'ի վեր եւ 'ի

Այս բերդ շինեալ է 'ի միջավայրի մօտ երկայնաձիգ ցամաքալեզուին Չինիչկէի. յերկոսին կողմանս բերդին գոյր լայն խրամ և քարաշէն մարտկոցք յաջ և յահեակ 'ի բերդէ 'ի ծով. որպէս տեսաք զաւերակս: Առ երի աջակողմեան մարտկոցին գոյր մեծ դուռն Չինիչկէի. ընդ որ միայն մարթ էր անցանել 'ի ցամաք լեզուն, և կամ անտի մտանել 'ի Խրիմ:

Պիրք տեղւոյս է զարմանաւորանց գործ բնութ. զի ծայր Սգախու հասեալ կայ յաջակողմեան մարտկոցն, ուր տեսաք զաւազն սպիտակագոյն և զջուր ծովուն դեղնախառն սպիտակ, և ոչ այնչափ աղի. Իբր զի Տօնաւիս և այլ գետք բարեխառնեն, մինչև անաանոց լինել ըմպելի. և բազում տեղիք ցցեալ են տղմով. ուր տեսաք կանաչագոյն սէզ բուսեալ 'ի ծովն: Սոա ոչ գտանի որդն նաւուց, որպէս գտանի 'ի ծոցս Սեաւ ծովու:

559. Ի ձախակողմն բերդին է ծոց բազմապըտոյտ և բազմախորշ Սասըխ ծովակին, որ կոչի Բուռդըլու. այսինքն հոտեալ, զի միշտ հոտ բուրէ յեզերաց: Այս ծոց ևս հասանէր 'ի ձախակողմեան մարտկոցն. որ երբեմն առատանայ և երբեմն նուազեալ յետս դառնայ. ընդ այս ծոց անցաք կառօք ընդ մղմնաւոր տեղիս ցամաքեալ յամարայնի: Թուեցաւ մեզ թէ 'ի սկզբան անդ այս երկոքին ծովք մի էին. այլ յանցանել դարուց տիղմն գետոց և աւազք Տնեբերայ անջրպետեցին 'ի ձեռն ցամաք լեզուին. որպէս ասացաւ (403):

## ՃԻՆԻՉԿԷ. Ժ ԲԱՐԱԿ

560. Այս ցամաք լեզու ձգեալ երկայնեալ դէպ 'ի Սուսատատան ընդ հիւսիս 110 վէրստ. որ այնչափ մերձենայ առ ցամաքն Օզու խըրխի, մինչև փոքրիկ բերան կամ անձուկ կիրճ լինի միջոցն, որով հաղորդի Սգախ ծով ընդ Սասըխի: Լայնութիւն ցամաքալեզուին չէ հաւասար յամենայն տեղիս. սկիզբն է իբր նեղ բազուկ. ապա ընդլայնի և 'ի տեղիս ինչ անձկանայ, յորում գտանին խեցեմորթք և ժժմակք ծովու: Երկիրն է աւազուտ, այլ խոտաւէտ. Ջուրն է առատ. 'ի տեղիս ինչ գտանին պանդօկք, ևս և լճակք. անպակաս է անդ երթևեկութիւն ուղևորաց:

Յերկոսին եկեղեցիս գտանին 150 ծանրագին շուր-ջառք, արծաթապատ սաղաւարտք, բազում ջահք և կանթեղք, բուրվառք և խաչք։ Արծաթապատ պատ-կեր Տիրամօրն երկայն 5 ոտն եդեալ կայ 'ի խորա-նի անդ։

Եկեղեցի սրբոյն Կատարինեայ փոքր է, շինեալ 'ի հանգստարանի արտաքոյ քաղաքին 'ի հարաւակողմն կէս մղոնաւ հեռի 'ի մայր եկեղեցւոյն. որ կոչի Հին հանգստարանի։ Իսկ եկեղեցին սուրբ Յարութեան կոչեցեալ՝ Նոր հանգստարանի է 'ի հիւսիսակողմեան հանգստարանի 3 մղոնաւ հեռի 'ի քաղաքէն։ Բայց 'ի սոցանէ զատ և եկեղեցի յանուն Ս Երափոխման Հռով-մէական Հայոց նորաշէն և գեղեցիկ. զգեստատունն է յետկոյս, և ունի կրկին զանգակատունս։ Իսկ վա-նատունն է յարևմտեան կողմն աղիւսակերտ և կրկնա-յարկ, ունի 8 սենեակս և սեղանատուն։ Հանդէպ եկեղեցւոյն է այլ կրկնայարկ շինուած. ստորին յարկն է դպրոց մանկանց։ Ունին և զայլ եկեղեցի յանուն Գաբրիէլի հրեշտակապետին արտաքոյ քաղաքին 'ի հանգստարանի անդ իւրեանց. ուր գան և կրպակա-ւոր վաճառականք. ընդ ամենայն լինին 300 անձինք, և ունին ժողովրդապետ. գան նաև 50 եւրոպացիք. Թէմ վլուտերականս, որք և ունին եկեղեցի։

Լեզու Հայոց մաքուր է աստ քան յայլ տեղիս, և մերձաւոր գրաբառին. յառաջագոյն բազում էին աստ Հայք, բայց բազումք չոքան 'ի Մաքութ 12 ժամաւ հեռի. ուր տեսանին հին գերեզմանք և հետք հին շի-նուածոց։

592. Հայք ունին պարգևագիր 'ի Պօղոս կայսերէն հանդերձ բազում արտօնութեամբք. որոց մասնակ-ցէ և զՀայս Կիզլարի և Մօզդօգի, օրինակ զայս. *

* Հաւատարմագունից մեր Հայկազուն քրիստոնէ-
„ական օրինի հասարակութեան բնակեցելոցն 'ի կայսե-
„րութեան մերում 'ի քաղաքն Աստրախան, Կիզլար, և 'ի
„Մօզդօգ. ա̃մ կերպի կողմանց ամենեցուն ընդհան-
„րաբար և ամենիցն յատկապէս՝ մերս կայսերական
„ողորմածագոյն բան.... Յամի ծննդեան փրկչին
„1799. և 'ի 28 ին Հոկտեմբերի։ Եւ 'ի Թագաւո-
„րութեան մերոյ յերրորդում ամի. Ստորագրեցեալ իւ-
„րոյ կայսերական իսկական ձեռամբն Պաւել»։

593. Ի սմին քաղաքի գոյ ծովային զինուորաց կամ ամրոց պարսպապատ, առ որով է վաճառատանցն Թաթարաց, որ ձևանայ իբր արուարձան։ Թող զվաճառանոցս Հայոց 'ի Սպիտակալա արուարձանի, ուր վաճառին ընդ Պարսից։ Կան և արուարձանք Ստրելեցեայ, Խոյազանայ, և Թաթարաց։ Ի 1746 շինեցաւ նոր արուարձան 'ի հարաւակողմն քաղաքին, ուր ընդ մեծի մասին բնակին Հայք։ Ընդ մէջ այսր արուարձանի և քաղաքին է վերայատացեալ վտակն կոչեցեալ, որ անցեալ ընդ լճին այն՝ միացուցանէ զԿուտում գետ ընդ Էթիլ. ուրանոր նաւք խաղաղին արկանեն։

Այս մեծանուն քաղաք կարի յարմար է վաճառականութեան, զոր մարթ է կոչել գանձարան վաճառաց Պարսից, Հնդկաց, Պուխարացւոց, Խիւայոց, Հայոց և Թաթարաց. ուստի սփռին վաճառք ընդ ամենայն աշխարհ։ Աստ ամենայն գտանին առ 3000 վաճառականք, յորս զկնուարքն ունին նաւս 'ի ծովն Կասպից և յԷթիլ գետ։ Կան աստ զանազան գործարանք կտաւոյ, բամբակի և մետաքսեայ կերպասուց, եւն։

Առ սմին Կուտում գետոյ է այգի Ռինեաղ Խուտուֆովի. ուր գոյ նշանաւոր ծառ տնկեալ 'ի մեծէն Պետրոսէ յամի տն 1722. 'ի դարձի անդ իւրում 'ի Պարսկաստանէ. ուր հանդէպ ծառայն եդեալ կայ պատկեր նորին. առ որով և յիշատակարան ռուսերէն օրինակ զայս.

Императоръ Петръ Великій 1722 года въ сентябрѣ мѣсяцѣ на возвратномъ пути Своемъ изъ Персіи удостоилъ городъ Астраханъ Своимъ въ немъ пребываніемъ; и сажалъ собственными своими руками сіе дерево. Труды и дѣянія столь великаго и всею Европою почитаемаго человѣка достойны быть сохраняемы въ памяти нашей.

* Մեծն Պետրոս Կայսր 'ի դարձի անդ իւրում 'ի Պարսկաստանէ պատուաւորեաց զԱստրախան քաղաք գալստեամբ իւրով 'ի նմա. որ և տնկեաց զայս ծառ յատուկ ձեռօք իւրովք։ Աշխատք և գործք այնպիսի մեծի առն պատուելոյ ընդ բոլոր Եւրոպիա՝ արժանի են յաւերժանալ 'ի յիշատակի մերում ։

Առ 'ի 1819. մայ. 10. զայս ծառ հատեալ տարաւ ընդ իւր 'ի Մոսկով տէր այգւոյն. և այժմ յարձանայ

անուն վերջնմիղեալ է բարբառով հանգէպ յիշատակարանին ։

Ի շրջակայս գետն բազում մրգաստանք պարտիզաց և այգիք ․ Թէպէտ զբաղմատեսակ բանջարեղէնս և առատ ձկունս, որք ելանեն 'ի ջրոյ անտի ։

594 ․ Այս քաղաք 'ի հնումն նստէին Խանք Թաթարաց, որք բազում անգամ արշաւեալ 'ի Ռուսաստան աւարառ վարէին ։ Բայց 'ի 1544 Ցար Ռուսաց Իւան Վասիլեւիչ յաղթահարեալ նուաճեաց զԹաթարս և տիրեաց մինչև 'ի ծովն Կասպից ․ այսուհետև եղև Աշտերխան առաջնին կուսակալութիւն կից Ասիականդ Ռուսաց ։ Ի նախնի ժամանակի հին Աշտերխան քաղաքն էր 'ի Սելիտրենոյ ղուլէր ․ ուր այժմ մաքրեն և պատրաստեն բորակ վասն վառօդոյ ։

595 ․ Ենոտաեւսկ կամ Ենոթայա 30 մղոնաւ հեռի աստի 'ի կողմն Ախտուպայի՝ Թուի լինել հին քաղաք ․ ուր գտանին ընդ հողով վէմք մնացորդք հին շինուածոց, զորս մուծին 'ի շինուածս ապարանից և դղեկին Աշտերխանու ։ Գտանին յայսոսիկ կողմանս և վաղեմի աղիւսակերտ դամբարանք Է հողաբլրով, յորոց ելին մեծամեծ ոսկերք ․ մին 'ի նոցանէ էր 3 կանգնաչափ երկայն, և կէս կանգնաչափ Թանձր ․ զոր փոխադրեցին 'ի Պետերբուրկ յարքունիս ։

ՂԶԼԱՐ

596 ․ Ի բարեշէն քաղաք 470 և կէս մղոնաւ հեռի յԱշտերխանէ, շինեալ 'ի 1735 կէս մի աղիւսակերտ, և մեծ մասն փայտակերտ ․ որ շրջապատեալ 'ի Թերեք և 'ի Պարսաու գետոց՝ ձևանայ կղզի ըստ նմանութեան Աշտերխանու ։ Այսոսիկ գետք զաւակին առաջածան հանեն 'ի լերանց Կովկասու յարևմտից կուսէ ․ և 7 մղոնաւ հեռի 'ի Ղզլարէ յերկուս առաջս բաժանին ․ որոց մին Թերէք անուամբ գնայ ընդ արևելս և անկանի 'ի Կուր գետ, և նովաւ հանդերձ 'ի ծովն Կասպից ․ իսկ միւսն Պարսաու անուամբ հարաւամ մի ընթանայ ընդ հիւսիս ․ ապա խոտորեալ յարևելս՝ Թափի 'ի նոյն ծով Կասպից 41 մղոնաւ հեռի 'ի քաղաքէն առ Թերեքի քաղաքաւ ․

Ի վերայ երկուց գետոց եղեալ կան տախտակա-

մած նաւակք խորէ կամուրջ. 'ի մի կողմն ունելով գե-րան. իսկ յերկուսին եզերս գետոց աստի և անտի վար-ժեալ կան գերանք, և կապեալ պարան, զոր ուղեւորք ձգեն ձեռամբ և անցանեն յայնկոյս։ Ընդ Պ տրաու-գետ գնան նաւակք ընդ Հիւսիս յԱժտէրխան, և ընդ արեւմուտս 'ի Սօղոտ և 'ի Նաւկորցկա. այլ ընդ Թերք գետ գնան ընդ հարաւ 'ի Դարբանդ, 'ի Տաղ-ստան, և 'ի գիւղն Անդրէա (601)։

597. 'Ի Պ յլար են զանազան ազգք, և անհնարին քրիստոնեայք ունին եկեղեցիս։ Տունք Հայոց աւե-լի են քան զհազար, և ունին 3 եկեղեցիս. յորս են բազում արծաթեղէն անօթք, ջահք, կանթեղք, բուր-վառք և խաչք, թող զկերպասեայ զգեստեղէնս։ Ա-ռաջինն է աւագ եկեղեցի յանուն Վերափոխման՝ փայ-տաշէն, բայց փառաւոր. ունի 12 քահանայս։ Երկ-րորդն է քարաշէն մեծադիր և հրաշակառոյց յանուն Լուսաւորչին. յորոյ վերայ ցարդ ծախեցան բազում գումարք դրամոց, և տակաւին չէ կատարեալ. ունի 6 քահանայս։ Երրորդն է փայտակերտ և փոքրա-դիր յանուն սրբոյն Գէորգայ կառուցեալ 'ի հանգըս-տարանի մեռոց մարմնոց հեռի 'ի քաղաքէն։

Են 'ի սմին քաղաքի երկու վաճառանոցք. մին բո-լորաձեւ՝ յերկուս կարգս բաժանեալ, ուր վաճառեն զկերպաս և զկտաւեղէնս՝ այլովքն հանդերձ։ Իսկ միւսն երկայնաձեւ վաճառատեղի մրգեղինաց, ընդե-ղինաց, ապակեղինաց և պղնձեաց։ 'Ի քաղաքի աստ դատանին յարմարաւոր անձինք ուսմանն և վաճառակա-նութեան։ Աստի է ուսումնասէր Տէր Սարգսեան Յօ-աննեան Ճարտարադիր Ամենապատւոյ Յովհաննու Ար-քեպիսկոպոսին Հայոց։

598. Ընդ մէջ քաղաքին անցանէ վտակ Թերք գետոյ ընդ արեւելս և ոռոգանէ պատուական այգիս թուով 2000. որոց մին բերէ երբեմն մինչև 500 նաև 800 սա-կառս գինւոյ (ուր իւրաքանչիւր սակառ է 400 հօխայ). յորմէ հանեալ ցքի՝ տանին 'ի Ռուսաստան։ Բարե-բեր է յոյժ քաղաքս, առատ են անդ անհնարին տեսակք արմտեաց, ցորեան, գարի, կորեակ և մանաւանդ որիզ պատուական և առատագոյն։ Թող զայլ ազգի պտուղս ծառոց և պատուական բանջարեղէնս. եւս և մետաքս և բամբակ առատ։ Բազում առատութիւն է

ամոք ձկանց · յորս ազնուագոյն է Ճանձառի ձուկն պարարտ և պատուական, որ չիք յայլ ուրեք · միայն աստ ելանէ, և այն 'ի ձմեռային · մեծագոյնն է կէս կանգնաչափ · զոր տանին յընծայ 'ի հեռաւոր տեղիս :

Արտաքոյ քաղաքիս գոյ բերդ հողապատեալ շինեալ յընդարձակ դաշտի հանդերձ լայն և ջրալից խրամաւ · ունի 3 դրունս · և առաջի դրանցն տախտակամած և շարժական կամուրջս, զորս 'ի գիշերի բառնան 'ի վեր շղթայիւք : Հեռի աստի միով ասպարիզաւ գոյ անտառ առ ափն Ախերը գետոյն · ուրանօր յաւազակայս վայրի գոյ խնձորենի · առ որով և պատկեր սրբոյն Գէորգայ, ուր յաճախեն ուխտաւորք յամենայն ազգաց, և զենուն զառինս և հաւս, համարելով գտանել անտի զբժշկութիւն ախտաժետաց :

ԲԵՔԷԲԵ, ՄՕԼԴԱՒԱՅ, ՂԱՐԱԶԱՅ

599 · Սոյն քաղաքէն գիւղօրէք 25 մղոնաւ հեռի 'ի Պզլարէ 'ի հիւսիսակողմն : Բնակիչք առաջնոյն են Պուլղարացի հայք 70 տունք · որք ունին զեկեղեցի փայտաշէն յանուն Ամենափրկչին : Բնակիչք երկրորդին են գիւղականք Պուլղարաց, զորս վարեաց աստ Օսման, 'ի 1797 · ուր գոն 100 տունք Հայոց · որք ունին զեկեղեցի Աստուածածնին : Բնակիչք երրորդին են նոյնպէս գիւղականք Պուլղարացւոց 150 տունք, ունին զեկեղեցի Աստուածածնի · որք առ հասարակ են այգեպանք և հողագործք · զի իւրաքանչիւր գիւղական ունի 30 տնկէթին երկեր՝ տուեալ նոցին պարգևագրով, որ սկսանի ·

600 · * Հաւատարմագունից մեզ հայկազանց քրիս-
„ տոնէական օրինի հասարակութեանն Պերբենդու և
„ Մուսկուրու ամ կերպի կողմանց ամենեցուն ընդ-
„ հանրապար և ամենից յատկապէս մերս կայսերական
„ ողորմածագոյն բան ... Յամի ծննդեան փրկչին 1799
„ և 'ի 28ին հոկտեմբերի : Նու Թագաւորութեն մերոյ
„ յերրորդում ամի : Անօրադրեցեալ իւրոյ կայսերա-
„ կան իւկական ձեռամբն Պաւէլ » :

601. Սամշին է գիւղ յարեւմտեան կողմն. ուր գան 60 տունք հայոց և եկեղեցի յանուն սուրբ Աստուածածնին։ Իսկ երկրորդն է Նոխայէս գիւղ Թաթարաց ՚ի հարաւակողմն Պզլարի՝ մի և կէսօրեայ ճանապարհաւ հեռի անտի. որ անկանի ՚ի մէջ Սուլաք և Աքսայ գետոց՝ ամրացեալ բարձրաբերձ լերամբք և անտառօք։ Ուր գան 10 տունք հայոց և 60 կրպակք Թիֆլիզեցի և Դարբանդեցի վաճառականաց հայոց. ունին եկեղեցի յանուն Աստուածածնին։

## ԴԱՐԲԱՆԴ

602. Սա անուանի քաղաք վեցօրեայ ճանապարհաւ հեռի ՚ի Պզլարէ ընդ հարաւակողմն, որ ունի յարեւելից զծովն Կասպից, յարեւմտից զլեառն մեծ, ՚ի հիւսիսոյ և ՚ի հարաւոյ զհռչակաւոր ամուր պարիսպն Խաչխարհեկ, որ կառուցեալ է կրկին անհնարին մեծահաստ քարամբք եւեթ. զոր ասեն շինեալ ՚ի մեծէն Աղեքսանդրէ։ Այսոքիկ պարիսպք ունին կրկին դրունս. մին ընդ հարաւ, ընդ որ գնան յաշխարհն Պարսից, և միւսն ընդ հիւսիս, որ է դուռն Ճորայ, ընդ որ գնան ՚ի Պզլար և յԱժտէրխան ընդ ցամաք։

603. Այլ դիտելի է, զի պարսկական անուամբ Տէրպէնդ նշանակէ դռնակապ. որովհետև այս քաղաք շինեալ է ՚ի կիրճս ձորամիջի իբր դուռն. որ կոչեցաւ ՚ի տաճկաց Տէմիրգափու։ Իսկ լայնութիւն ձորամիջին է իբր կէս մղոն, և երկայնութիւնն յարեւելից յարեւմուտս իբր 3 մղոն. որ յարեւելից կուսէ յանգի ՚ի ծովն Կասպից, և յարեւմտից կուսէ ՚ի սառոտս ապառաժ լերանց։ Պարիսպք քաղաքին բարձր են յոյժ և թանձր 3 կանգնաչափ. զոր ոմանք համարին թէ շինեալ իցէ ՚ի կրոյ և ՚ի ծովային խեցեաց լուսեղոց. զոր երկարութիւն ժամանակաց երեւեցուցանէ վէմ իմն միաստանի։ Այլ այլք համարին միահաստոր վէմս, յորս երեւին տառք ինչ Ասորւոց և Արաբացւոց, կամ անծանօթ նշանագիրք ինչ։

604. Էվլիաթիպ չէլէպին այսպէս խօսի ՚ի վերայ պարսպաց Դարբանդի. * Երկու պարիսպք են (առէ)

„ 'ի սառուցեալ բոլորակաձև լերինն կառուցեալք . 'ի մէ-
„ ջոցէն հոսի աղբիւր բարեհամ : Երկայնութիւն պարըս-
„ պին 10500 կանգուն, և լայնութիւնն 550 . ունի 70
„ բրգունս ... պարիսպն ներքոյ և արտաքոյ է 'ի սրբա-
„ տաշ քարանց, յորս են քարինք մեծամեծք չորեք-
„ կանգնաչափք յերկայն և 'ի լայն ... ասեն թէ պա-
„ րիսպ սորա մնացեալ է 'ի ծով անտի իբրև մղոնս 2 . » :
Իսկ 'ի պատմութիւն Մողոլ թաթարաց դնի, թէ պարիսպք նորա շինեալ են վեցտասնաչափ թանձր 'ի մասնաւոր նիւթոյ զանգելոյ 'ի խեցեմորթից և 'ի գայլախազ քարանց լուսելոյ 'ի միասին, որ կարծրագոյն է քան զվէմս : Ընդ մէջ ծովուն և լերին գոյ ընդարձակութիւն քառորդի միոյ փարսախի . ուր 400 ասնաչափ պարիսպք կառուցեալք՝ թուին երկու մեծամեծ վէմք հիմնեալք 'ի ծայրս լերանց, և ձգեալք 'ի լեռնէ մինչև ցծով այնպիսի ամրութեամբ, զի հարկ է ընդ երկաթի դրունսն անցանել :

605 . Այս քաղաք կոչի Տէհէրխանէ . այսինքն քաղաք Յունաց . ըստ որում շինեալ յԱղէքսանդրէ մեծէ . ընդարձակութիւնն, զոր պատպարաքն պարփակեն, է երրորդ մասն քաղաքին . իսկ բուն երկայնութիւն քաղաքին է քառորդ փարսախի . զորմէ ասեն Պարսիկք թէ աւերեալ կայր . զոր մեծն Խոսրով նորոգեաց առ Յուստինիանոսիւ :

Գոյ անդ նաւահանգիստ փակեալ շղթայիւք, որք ձգին յերկուց ամրոցաց, և ոչ թողուն աւան նաւուց առանց հրամանի մտանել 'ի ներքս : Զորս պաշտպանէ բերդն, որ 'ի գլուխ լերինն : Առ բերդիւ երևին աւերակք երկայնաձիգ պարսպի, որ սկսեալ 'ի Կասպից ծովէ հասանէր ասեն մինչև ցՍև ծով առաւել քան 150 մղոնս . զորմէ այսպէս խօսի Լեվեք . * Այս գործ
„ կարէ միայն համեմատիլ ընդ մեծի պարսպին Չի-
„ նաց, և յանդիման առնել այժմ զզօրութիւն և
„ զճարտարութի նախնի բնակչաց այսոցիկ կողմանց » :
Պատմ . Ռուս :

606 . Բնակիչք քաղաքիս են Պարսիկք և այլազգիք . ուր այժմ գտանին 50 տունք Հայոց, և ունին զեկեղեցի յանուն Ամենափրկչին : Առաջնորդ գոյ և վանք վաղնջական սրբոյն Գրիգորիսի . որոյ եկեղեցին մեծ է և ընդարձակ համակ 'ի մեծահատոր վիմաց .

անդ և 15 տունք Հայոց . որք ունին առանձին եկեղեցի ։ Արտաքոյ քաղաքին մերձ յարուարձանս են բոլորաձև և սիւնազարդ կրպակք թուով իբր 80 հայ վաճառականաց Նախիջևանցւոց և Թիֆլիզեցւոց . Ի մէջ կրպակացս է ընդարձակ հրապարակ, որ ունի կըրկին դրունս . զորս փակեն 'ի գիշերի ։ Ուրանօր յարևմտեան անկեան գոյ փոքրիկ եկեղեցի փայտաշէն յանուն սրբոյն Գէորգայ . յիւրաքանչիւր եօթնեկի լինի անդ տօնավաճառ զգանելեաց և ուտելեաց այլովքն հանդերձ ։

Գտանին աստ և անդ ջերմուկք և աղբիւրք թթուահամ ջուրց 'ի վերայ սրածայր լերանց 40 մղոնաւ հեռի 'ի քաղաքէն . որպէս տեսանին և յանդս Ճանապարհին, որ գոլով դժուարակոխ՝ իբր կիրճ ինչ ձևացեալ է զկողմամբք երկուց բարձրաբերձ լերանց սեպացելոց դէմ ընդդէմ միմեանց . որոց ընդ մէջ անցանէ Թերեք գետ, որ ելեալ 'ի լերանց առատ բաժանի յերկուս առաջս, մին անկանի 'ի Կուր գետ, և միւսն 'ի ծովն Կասպից . որպէս ասացաւ (596) ։

Բազմութիւն Ռուսաց և այլոց ազգաց 'ի հեռաւոր վայրաց յաճախեն 'ի մայիսի յայսոսիկ ջերմուկս և բնակին զամօրեայ ժամանակ 'ի պատրաստական իջևանս, որք շինեալ են սակս ախտաժետաց, և գտանեն զառողջութիւն ։

## ՄԱՃԱՌ

609 . Է երևելի գիւղ 60 մղոնաւ հեռի 'ի քաղաքէն ընդ հիւսիս . ուր գոն 60 տունք Հայոց և եկեղեցի փայտաշէն յանուն Ս. Աստուածածնի ։ Բնակիչք առ հասարակ են հողագործք, և երկիրն է արգաւանդ, որ բերէ զընդեղէնս ընտիրս և պտուղս ։

'Ի մերձակայ վայրս երևին բազում աւերակք վաղեմի անձև շինուածոց . զորս հետզհետէ քանդեալ դնեն 'ի նոր շինուածս ։ Ուր գոն և հին գերեզմանք հսկայից ծածկեալք ընդ հողով . երկայնութիւն տապանաց է 5 կանգնաչափ, և լայնութիւն 2 . յորոց վերայ երևին անծանօթ ձևք տառից՝ փորագրեալք 'ի մէջավայրի անդ ընդ երկայն, որ բարձր է քան զշըջանակն քառանկիւնաձև ։

Նոյն էր արդեօք հին երեւելի քաղաքն Մաճիար չի-նեալ 'ի նախնի Սկիւթացւոց։ Սորանօր զառաւելին զանեղի առեւին Հիւսիսային Թաթարք յարշաւել անդ իւրեանց յարեւմուտս. յորմէ առեալ կալան զանուն այժմեան Մաճառք սերունդք նոցա (324)։

## ԱԼԻՔՍԱՆԴՐՈՎ

610. Ի փոքրիկ քաղաք ոչինչ կարի հեռի 'ի Մա-ճառէ. ուր գոլով զանազան ազգաց՝ լինի և երթեւե-կութիւն անցաւորաց և վաճառականաց։ Հայք աստ չունին բնակութիւն. այլ են կրպակաւորք անդադար 'ի Նախիջեւանցոց և 'ի Մօզդօգցոց։

## ՍՏԱՒՐՕՓՕԼ

611. Ի անուանի այժմեան մայրաքաղաք այսր նա-հանգի՝ մեծատարած և գեղեցկաշէն հեռի 'ի Գէօրգ-կայէ 168 մղոն. ունի բազում վիմանկերտ շինուածս և փողոցս ուղղաձիգս։ Երկիր նորա է արգաւանդ. օդն և ջուրն առողջ, անտառք և գիւղօրէք բազում. մինչ զի ունի զամենայն պիտանիս։

Նոյն քաղաք շինեալ է 'ի բարձրաւանդակի. ուր գոն իբր 20 տունք Հայոց, և 30 կրպակաւոր օտարա-կանք։ Ունին զեկեղեցի յանուն սուրբ Լուսաւորչին կառուցեալ 'ի կանոնաձեւ վիմատաշ քարանց. բայց զմբէթն է անկատար։ Սորանօր յիւրաքանչիւր եօթ-նեկի լինի տօնավաճառ. այլ յամին երիցս լինի մեծ. ուր ժողովին հազարաւոր անձինք յայլեւայլ կողմանց։

Նոյն ամ աստ փոխադրեցաւ 'ի Գէօրգկայէ գաւա-ռական կառավարութիւն, եղեալ իշխանանիստ, որով օրըստօրէ ծաղկի և մեծանայ երեւելի շինուածովք։

## ՄՕԶԴՕԳ

612. Ի բարեշէն քաղաք 115 մղոնաւ հեռի 'ի Գէա-կօրգկայէ. 184 'ի Կզլարէ. և 398 և կէս 'ի Թիֆ-լիզէ. ուր գտանին զանազան ազգք՝ Ռուսք, Հայք, Վիրք, Չերքեզք, և Օսք։ Տունք Հայոց են 250, ունին և 3 եկեղեցիս. սուրբ Աստուածածին և սուրբ

Սանփաննոս են 'ի քաղաքի անդ. իսկ ասուրբ Պէտրոս առաքելոյ քաղաքին 'ի հանգստարանի :

Նշանաւոր է վաճառանոց քաղաքին բաժանեալ յերկուս կարգս բոլորաձեւս դէմ ընդդէմ միմեանց իբր Պէշտաղիստան . ուր վաճառին կերպասք և կտաւեղէնք : Կան աստ և Հայկազն հաւատացեալք իբր 15 տունք, որք ունին առանձին եկեղեցի նորաշէն յանուն սրբոյն Սերովբէի, առ երի և վանատուն : Ընդ այս քաղաք ունին անցանել տամ ուղեւորք 'ի գնալն 'ի Թիֆլիզ, ուղեւորեալ ընդ երիս բերդս Կովկասու շինեալս 'ի վերայ ճանապարհին 'ի պաշտպանութիւն . յորս նստին բերդապահք իշխանք հանդերձ զօրօք Ռուսաց : 'Ի վերջին ժամանակս շինեցաւ 'ի Մոզդոք գեղեցիկ արգելանոց բարեկարգ . ուր պարտին սպասել զաւուրս 4 . ամենայն ուղեւորք, որք եկեալք 'ի Ռուսաստանէ անցանեն ընդ բերդս :

613 . Այսոքիկ բերդորայք կոչին Աժօհլողուխ, Կէշղէլը, Վլադիկաւկաս, որ է 'ի մուտս լերանց Կովկասու : Վասն զի երեքօրեայ ճանապարհ մեծի լերին Կովկասու մինչև ցՄոզդոք կարի վտանգաւոր է սակս աւազակաց ամբարշտաց մահմետականաց յանուանի անդ առ Ախօխլաղախաւ . ուր դարանեալ կան Չաչանք մահմետականք նման Չերքեզաց, որք արեանարբուք, որոց լեզու տարբեր է (587) :

Սոքա բազում անգամ ելեալք 'ի դարանէ՝ յեղակարծում ժամու յանկնեն 'ի վերայ անցաւորաց և կողոպտեն : Նմին իրի բերդականն այս ուղեւորաց տուրհանդակ զօրս . որք բազում պատրաստութեամբ ելանեն 'ի ճանապարհ : Յամենայն եօթնեկի աւուրսն տուրհանդակին կազմէ զկարաւան հարիւրաւոր զինուորօք և 3 թնդանօթովք տանի զթուղթս 'ի Վլադիկաւկաս, և անտի 'ի Թիֆլիզ :

614 . 'Ի Վլադիկաւկասէ մինչև ցՍտեփան Ծմինդայ են վերամբարձ և ձիւնապատ լերինք անուանեալք Նշալֆուղ . 'Ի գլուխ լերանց երեւին վանք կառուցեալք 'ի նախնի Վրաց : Յայս միջոց լերանց բնակին Օս լեռնականք, որք են աւազակք ծառայաշատք . բայց պատուեն և զկատու և զկով զարդարելով զեղջիւրսն թանձրամբ սնապաշտութեամբ :

'Ի Ստեփան Ծմինդայէ, որ է վանք Վրաց յանուն

սրբոյն Ստեփաննոսի, մինչև ցԹիֆլիզ են վայրենիք ընտանական ազգք Վրաց կոչեցեալք Թուշէ:

## ԹԻՖԼԻԶ

615. Ի մայրաքաղաք կուսակալութեան Վրաստանու, և երբեմն Թագաւորանիստ վաղեմի քաղաք Վրաց. որ յարևմտից ընդ հարաւ պատեալ է ապառաժ լերամբք. յարևելից ունի զԿուր գետ հոսեալ 'ի հիւսիսոյ ընդ հարաւ: Յայնկոյս գետոյն է լեառն Հաւլաբար. յորոյ վերայ է ընդարձակ դաշտ, ուր բնակին գիւղականք Էջմիածնի, զորս վարեաց աստ մեծ կուսակալն Ռուսաց Ցիցիանով 'ի վերջին պատերազմին ընդ Պարսից: Ուրանօք սկսան շինել բնակութիւն և ընդարձակել զքաղաքն:

Այս մեծահռչակ քաղաք կառուցեալ է 'ի զառ 'ի վեր լերին սկսեալ յեզերաց անտի Կուր գետոյն, և ունի պարիսպ կաւակերտ խախուտ: Անդր քան զկամուրջն 'ի հարաւակողմն ընդ արևելս են 5 բաղանիք բնական ջերմաջերմ ջուրց. որք շինեալ են բազում կամարօք և մեծագործութեամբ, ունելով զանազան քարուկիր աւազանս խորինս: 'Ի ձախակողմն բաղանեաց է ճանապարհ Պարսկաստանու. իսկ յայնկոյս կամրջին բաղանեաց է բարձր աշտարակ Նարինգալէ ձայնեալ. ուր պահեն զէնս և կարասիս պատերազմի:

616. 'Ի հիւսիսակողմն արտաքոյ քաղաքին գոյ դաշտ տափարակ. ուրանօր է արուարձան, որ է ծայր մեծի Թաղին կոչեցելոյ Տոփխանայ: Առ մերձ 'ի գետն է Վանք Հայոց, կամ Առաջնորդարան արքեպիսկոպոսանիստ. հնաշէն եկեղեցին Կաթողիկէ անուամբ հիմնեալ է 'ի 600 թուականին մեր. որ ունի 3 սեղանս միակարգս և 5 կաթուղիկէս, նկարեալ 'ի ներքուստ զանազան պատկերօք:

Երևելի է ուսումնարանն նորաշէն կանգնեալ 'ի մեծանուն Ներսիսէ Արքեպիսկոպոսէ Հայոց Վրաստանու, յորում մարզին մանկունք հայկազնեայք 'ի լեզու Հայ, Ռուս, Պարսիկ, ընդ վերակացութեամբ խոհական Յարութիւն վարդապետի Ալամդարեանց: Բնակիչք մեծի քաղաքիս են զանազան ազգք. ընդ ամենայն հաշուին քան հազար տունք. իսկ տունք Հայոց

են 5000, որք յաւաղջագոյն ունէին 24 եկեղեցիս. այլ յաւուրս Մէհէմմէտ խանին զայս քաղաք՝ շատք քանդեցան: Այժմեան եկեղեցիք Հայոց բաց 'ի վանաց են 10. զորս նոքա կոչեն ա Սուրբ Նշանի ծովու. բ Ջէնդաղչէն. գ Նէնքրէնէք. դ Սէծ Էնրգէ. ե Փոքր Էնրգէ. զ Սուրբ Գէորգայ. է Սուրբ Սարգսի. որ է արտաքոյ քաղաքին մերձ 'ի վանս. ը Խէնէլէցի Խօճենց որ 'ի Հավլաբարն. թ Սուրբ Սարգիս մերձ 'ի բաղանիս. ժ Սուրբ Աստուածածին յանկոյս գետոյն:

617. Նախարարն Աստանայ է մեծապատուան Հայկազն միանձնուհեաց, որք կրօնաւորին 'ի վաղուց հետէ ընդ հպատակութեամբ աբբայուհւոյ:

Սէն է մայր եկեղեցի Վրաց Թագաւորաչէն գմբէթայարկ և բարձրագոյն հանդերձ բարձր զանգակատամբ, կառուցեալ յափն Կուր գետոյ. որ ընդարձակ է և մեծագործ՝ նկարեալ 'ի ներքուստ բոլոր պատմութիւն Ածաշնչի: Նոյնպէս մեծաշէն է եպիսկոպոսարանն Սիոնաց: Գոն 'ի Տփխիս և Հայկազն հռովմէական իբր 40 տունք. ունին քարաշէն եկեղեցի յանուն սուրբ Ածածնին շինեալ 'ի 1803. ընդ նմին և վանատուն, յորում բնակեալ Լատին քահանայից՝ հովուեն զժողովուրդն: Ուրանօր գոն և Յոյնք եկեալք յայլևայլ կողմանց: Տունք մեծամեծաց են կրկնայարկք և աղիւսակերտք. միջակայնոց՝ միայարկ. իսկ հասարակ ժողովրդեան՝ կաւաշէն խճախառն. որոց տանիք կոչին Գարդաս: Փողոցք քաղաքիս նեղ են և անկանոն. տունք այնպէս խճողեալ են առ միմեամբք, զի տեղիք ինչ և ոչ փողոցս ունին:

Այժմ սկսան 'ի Տափիլթաղի շինել տունս ձևաւորս 'ի վերայ լայնաձիգ և ուղիղ փողոցաց ըստ եւրոպեան կարգի. ուրանօր կառուցեալ կայ մեծ պալատ կուսակալին. առ որով և զարդարուն պարտէզ արքունի, կանոնաւոր կրպակք, և պալատք մեծամեծաց:

'Ի թիկանց Տափիլթաղին ընդ արևմուտս են այգիք և գեղեցիկ պարտէզք. այնպէս զի 'ի նկատել 'ի բարձանց անտի կարի իմն զուարճալի երևի դիրք և տեսիլ մեծի քաղաքիս՝ ունելով 'ի միջի զեկեղեցկահօս և զաւարեալն Կուր գետ: Յերկոսին ծայրս քաղաքին շինեալ են կրկին արգելանոցք. մին սակս եկաւորելոց 'ի Պարսկաստանէ, և միւսն 'ի Կովկասէ:

մարականդ զմեծԹաւար կառուցեալ 'ի մեծ գիւղն միով աւուրբ հեռի 'ի Թիֆլիզէ. ուր գոյ մեծ կամուրջ փայտաշէն։ Իւրաքանչիւր անցաւոր պարտի տալ պամ եկեղեցւոյ 2 Սպղպասի առ մի բեռն ։

ԳԱՆՁԱԿ

620. Սոյն քաղաք տոհմորաբար կոչի Կէնճէ. այլ յետ անցանելոյ առ Ռուսս կոչեցաւ Ելիսաւէթբօլ. որ էր երբեմն բերդաքաղաք ամրացեալ երբեմն յՕսմանեանց։ Բայց 'ի վերջին պատերազմի պաշարեաց Ցիցիանով քաջ զօրապետ Ռուսաց, և կարի իմն արկ 'ի նեղ. մինչև խաբեբայ Պարսից ուխտել նմա երդմամբ անձնատուր լինել։ Սաստի բացին զդրունս քաղաքին, և խորամանկ քաղցր բանիւք յորդորեցին զնա գնալ 'ի կոչունս Պարսիկ խանին. որ ընդ մտանելն քանի մի զօրօք 'ի քաղաք անդր՝ փակեցին զդրունս, և սուր եդեալ 'ի վերայ կոտորեցին զամենեսեան։ Յարոց անդէն եհան զվրէժս տէրութիւն Ռուսաց չարաչար կոտորելով զմնակիչսն ընդ Խանին։ 'Ի Գանձակէ տանին ընդ գետն 'ի Թիֆլիզ զապխտեալ ձկունս և զայլ ուտելիս։

ԿՈՐԻ

621. Սա գիւղաքաղաք Վրաց կառուցեալ 'ի դաշտի 2 աւուրբք հեռի 'ի Թիֆլիզէ. ուր գան զանազան ազգք. բայց տունք Հայոց են 150. և ունին զեկեղեցի քարաշէն. որք Թէպէտ անգիտակ են հայկական լեզուի, զի առ հասարակ խօսին վրացերէն, սակայն գրասէր են և ընդունակք ուսման։ Գոն անդ և հռովմէական հայկազունք. ունին նորաշէն եկեղեցի և վանատուն քահանայի։

Առ Թիկամբք քաղաքիս է մի ծայր Կովկասու, ընդ որ իջանէ մոխրագոյն գետն Լիախւի, և անցեալ Ը քաղաքն անկանի 'ի Կուր գետ միով ժամաւ հեռի։ Այնչ կարի հեռի զատանի առաւել մեծագործ կամուրջն երկքկամարեան քարաշէն և ահագին, որոյ մի ծայրն հաստատեալ կայ 'ի լեառն բարձր. ընդ որով անցեալ գնայ Կուր։

622. Ի հռչակաւոր վանքս 2 աւուրբք հեռի 'ի Թիֆլիզէ ընդ հարաւ. որոյ արեւելեան կողմն է անտառախիտ շրջապատեալ 'ի լերանց անտի. 'ի հիւսիսային կողմն է ձորն աղօրեաց վանաց. իսկ յարեւմտեան կողմն է անապատ և այգեստանեայք մինչև ցԼօռի. ուր գետն հոսեալ 'ի հարաւոյ ընդ հիւսիս՝ խոտորի ապա յարեւմուտս: Հաղբատայ լեառն ունի մի եւեթ Ճանապարհ, որ ձգի մի ժամ ընդ զառ 'ի վեր՝ այնչափ դժուարակոխ, զի պատմեն թէ Լէնկթէմուր չկարաց զօրութեամբ իւրով ելանել 'ի վեր անդր:

Ի մէջ ընդարձակ հովտին յարեւելեան կողմն կառուցեալ կայ վանքն Հաղբատայ սուրբ Նշան պարըսպապատ և ամրաշէն: Եկեղեցին է 'ի միջակէտի անդ ընդարձակ և հոյակապ՝ համակ 'ի վիմատաշ քարանց. առ որով են կրկնայարկ շինուածք քարաշէնք 'ի բնակութիւն միաբանից: Յարեւելեան կողմն գոյ դուռն և այլ եկեղեցի կցորդեալ նմին: Նոյնպէս 'ի հիւսիսակողմն գոյ այլ եկեղեցի յանուն Համազասպայ՝ ընդարձակ և գմբեթայարկ. բայց գմբէթն է անկրացեալ:

Կիրակոս պատմիչ յիշէ կրկին եկեղեցիս, մեծ և փոքր, և յարէ, թէ Համազասպ եպիսկոպոս * Շի-
„նեաց եկեղեցի 'ի տեղին հրաշալի, և զանգակատուն
„և ժամատուն մեծ և սքանչելի ||:

623. Այսքիկ երեքին տաճարք միակցորդք են կրկնայարկք. թէ 'ի վերին և թէ 'ի ստորին յարկս գոն ընդ ամենայն 44 խորանք, և սեղանք, զանազան դրուագք, քարաշէն և սիւնազարդ դրունք, այլովքն հանդերձ: Ուրանօր լուսամուտք շրջանակաւորք և փառաւոր բարձրահայեաց կաթուղիկէք կամ գմբէթք հրաշալի երեւին 'ի հեռուստ:

Ի հիւսիսակողմն ամփոփեալ կան մարմինք թագաւորաց մերոց Աշոտի և Սմբատայ, որք երբեմն փախուցեալք յերեսաց Թշնամեաց՝ ամրացան յանմատչելի լեառն և յանտառախիտ մայրս, զորս ապա ետուն հատանել և առնել հովիտ գեղեցիկ: Նոքա շինեցին զայս մեծահռչակ վանս. ուր հին պատմիչք միաբանամայն յիշեն զվանս Հաղբատայ և Սանահնի. ըստ որոյ և մեք եդաք 'ի սկիզբն մատենիս (17): Սակայն

Թուի թէ Սանահնին 'ի վաղուց շինեալ էր. ոմանք աւանդութեամբ ասեն, թէ հիմնեալ է այն 'ի սրբոյ Լուսաւորչէն: Սոր 'ի Ժ դարուն կրօնաւորք փախուցեալք 'ի Հոռոմոց շինեցին զեկեղեցի: Ըստ այսմ բերէ և Վարդան յասելն * Շինեցին և զեկեղեցի „ մի յանուն Սբ. Ածածնին 'ի վանքն որ կոչի Սանահին „ 'ի սահմանս Լօռէ քաղաքին ‖:

Բայց որպէս ասացաք, զայս վանս և զՀաղբատ նորոգ. հիմնարկեալ կանգնեաց Խոսրովանոյշ թագուհին Աշոտոյ Գրդի ողորմածի. զոր յիշէ Վարդան ընդ այլոց յասելն. * Թագուհին մի շինեաց զՀաղբատ և զսա„ նահին զհռչակաւոր վանորայս 'ի թվին ՆԺ (961) ‖:

Հաղբատ 'ի ԺԱ դարուն եղև եպիսկոպոսանիստ 'ի ձեռն Կիւրիկէ արքային. ուր ըստ պատմելոյ Կիրակոսի՝ Յովհաննէս եպիսկոպոս * Զգաւիթն փոքրա„ գոյն քակեաց, որ 'ի դուռն կաթուղիկէին Հաղբա„ տայ, և շինեաց մեծ և գեղեցիկ շինուածս, որ զար„ մացուցանէ զտեսօղս հիացմամբ ‖:

Պարծեալ նաև ինքն ասէ վասն միոյ Յովհաննու եղբօրորդւոյ առաջնոյն. * Շինեաց բերդ մի ամրագոյն „ պարսպօք 'ի մէջ Հաղբատայ և Սանահնի. վասն որոյ „ գժտութիւն ընդ երկուս մեծամեծ վանորայս եղև, „ որպէս թէ 'ի հողոյ Սանահնին իցէ. և վրէժխնդիր „ եղև իշխանն Շահնշահ որդին զաքարէ Սանահնին... „ զի Հաղբատ 'ի վրաց թագաւորին հաշուին էր յայնմ „ ժամանակի. իբրև մեռաւ եպիսկոպոսն յովհաննէս՝ քակե„ ցին և զպարիսպն բերդին հրամանաւ թաթարին ‖:

624. Սմին իբրև ականատես պատմեաց, թէ բազումք ամօք յառաջ կային յանկեան եկեղեցւոյն Հաղբատայ բազում գրչագիր մատեանք գրեալք հին գրով, զորս ապա փոխադրեցին 'ի Թիֆլիզ, և անտի ցրուեցան աստ և անդ 'ի պատերազմին: Նա տեղեաւս էր գերեզմանատուն վարդապետաց, զոր յիշէ և Կիրակոս յասելն սակս Թորոս վարդապետին. * Կայ „ թաղեալ 'ի հռչականուն վանքն Հաղբատ 'ի գլուխ „ վանացն 'ի գերեզմանս եպիսկոպոսացն և վարդապե„ տացն ‖: Տես և 'ի կարգս Յիշատակարանաց զգերեզմանս նախնեաց այլովքն հանդերձ (126): 'Ի հնումն առ սոսս լերին կային գիւղօրէք Կախմախոտ, Խմէշէ, և Խնձորատէնող:

